ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

# ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

---

ԺԳ.

# ԱՌԱԿՔ ԼԱՓՈՆԴԵՆԻ

# ԱՌԱԿՔ ԼԱՖՈՆԴԵՆԻ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. Մ. ԳԱՐԱԳԱՇԵԱՆ



ՎԻԵՆՆԱ
Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆԻ
1894.

# ՑՈՒՑԱԿ

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ



## ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

## ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ



## ԳԻՐՔ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ԳԻՐՔ ՎԵՑԵՐՈՐԴ



## ԳԻՐՔ ԵՕԹՆԵՐՈՐԴ

## ԳԻՐՔ ՈՒԹԵՐՈՐԴ

## ԳԻՐՔ ԻՆՆԵՐՈՐԴ



## ԳԻՐՔ ՏԱՍՆԵՐՈՐԴ

## ԳԻՐՔ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ



## ԳԻՐՔ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Տեսեալ զի ի դպրոցս մեր չէ անսովոր ինչ տալ ի ձեռս աշակերտաց գաղիերէն լեզուի, ի մէջ այլոց ընտիր ընտիր մատենից գաղիացւոց, եւ զգիրս առակացն Լաֆոնդենի, զոր եւ ախորժելով իմն ընթեռնուն մանկտին որպէս տեսանեմք իսկ, ոչ վասն վայելչութեան եւ զուարթութեան լեզուին միայն, այլ եւ վասն պէսպէս եւ ազգի ազգի դարձուածոց նիւթոյն եւ ոճոյն, եղաք ի մտի թարգմանել ի հայ:

Աւելորդ համարիմք տողել երկայն բանս զովեստից զԼաֆոնդենէ. զթարգմանութենէս միայն ասասցուք որչափ ինչ կարեւոր է: Թարգմանութիւն մեր է չափով, այլ ոչ յանգաւ, որ ոչ դժուարութիւն միայն տայ թարգմանչին տուայտել գտանել բանս նմանս վերջիւք, այլ եւ բազում անգամ ստիպիցէ բուռն առնել մտաց բնագրին, եւ այս մանաւանդ հակառակ էր դիտաւորութեան մերում, որ էր, որչափ ինչ մարթ էր, տալ զբնագիրն հաւատարմութեամբ եւ գրեթէ բան առ բան, ջան ի գործ արարեալ պահել զբուն խորհուրդ եւ զդարձուածս մատենագրին, միանգամայն մարթել ածել ազատօրէն զվայելչութիւն եւ զմեծութիւն եւ զպատշաճաւորն արդ եւ զարդ մերոյ լեզուիս ըստ ճաշակին եւ ըստ արուեստի ընտիր մատենագրաց մերոյ ոսկեղէն դարուն:

Հատածք մեր են 4—4—4—4, առաջինն միայն թողեալ է երքեմն ազատ, այն է 3: Բայց ոչ իւրաքանչիւր տող է նովին չափով, այլ է տող որ է 4 միայն, կամ 4—4, եւ միով եւս աւելի, բայց ոչ երբեք առաւել քան չորիցս չորս: Սակայն են եւ առակք որ ըստ աղեքսանդրեան անուանեալ չափոյ Գաղիացւոց են վեցաչափ, այն է 6—6: Եւ զի դիւրութիւն լիցի ընթերցողաց, իւրաքանչիւր առակի զչափն նշանակեմք առ ընթեր վերնագրին:

Ակն ունիմք եթէ ոչ անօգուտ ինչ կամ անհաճոյ լինիցի խորհուրդ մեր եւ ջան հայերէնասէր մանկանց, յորոց ուսումն եւ ի զուարճութիւն նուիրեմք զայս դոյզն մեր աշխատութիւն:

ԹԱՐԳՄԱՆԻՉՆ



## ԱՌ ՏԷՐՆ ԻՄ ՏՈՓԷՆ[1]



4—4

Տզղխուցազունս երգեմ որոց
Եսովպ[2] է հայր.
Խումբ մի որոց պատմու-
թիւնն է արդարեւ սուտ,
Սակայն ունի ճշմարտու-
թիւնս ի մեր ուսումն:
Ի մատեանիս իմում խօսի
ամենայն ինչ, ձրկունք անգամ.
Եւ զոր ասենն ուղղի քաջ քաջ
առ ամենայն մարդ որչափ եմք.
Առ ի կրթել ըզմարդ պաշտիմ ես անասնովք:
Շառաւիղ քաջ, թագաւորի յերկնից անտի սիրեցելոյ,
Յորոյ վերայ ողջոյն աշխարհ ունի արդ զակն,
Առ որ գլուխք խոնարհեցին պերճացեալք յոյժ.
Որ յաղթութեամբք իւրովք զաւուրս
իւր հաշուեսցի այսուհետեւ:

Ըզօրագոյն բարբառովք այլ ոք պատմեսցէ
Զարութեան գործըս քոց հաւուց,
եւ զլաւութիւնս թագաւորաց.
Ես խօսեցայց առ քեզ զերաց դուզնաքէից,
Նըկարեցից ի վէպս իմ աստ թեթեւ պատկերս.
Եթէ հաճոյ լինելոյ քեզ ըզմրցանակըն տալայց ոչ,
Գոնեայ պատիւն ինձ եղիցի արկանելոյ ի սոյն ըզձեռն:



# ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

## ԱՌԱԿ Ա.

*Ճպիռն եւ Մրջիւն. 4—4*



Երգեալ ճպռան
Զամառն ողջոյն,
Ի կերակրոյ գըտաւ անմասն,
Երբեւ եհաս հողմըն ձմերան,
Եւ ոչ նշխար մի դուզնաքեայ
Ունէր ճանճի եւ կամ որդան։
Ի տուն մրջեան իւրոյ դրացւոյն
Չոքաւ գուժկան լինել սովոյ·
Աղերս արկեալ տալ նըմա փոխ
Յորենահատս ինչ առ ի կեալ։
«Մինչեւ ի սկիզբն Ամանորայ
Հատուցանեմ ես, ասէ, քեզ
Երդուեալ յիմ ցեղ, նախ քան զարեգն ամիս Թերեւս,
Ըզփոխորդին եւ ըզփոխն իսկ։»
Մըրջիւն բընաւ չէ փոխատու·
Մի միայն ախտ է նորա այս։
«Զի՞նչ առնէիր յաւուրս ջերմոյն,» մրջիւնն ասէ
Յայն որ եկեալ խնդրէր ըզփոխն ի նըմանէ։

"Յայգ եւ ցերեկ, ում եւ դիպէր,"
Ասէ ճռպիռն, "մի՛ մեղադրեր, երգէի ես։"
"Երգէի՞ր, գոհ եմ արդարեւ,"
Ասէ մրջիւնն, "այսուհետեւ երթ կաքաւել։"

---

## ԱՌԱԿ Բ.

*Ագռաւ եւ Աղուէս. 4—4*

Խնամին ագռաւ որ կայր յոստոյ միոյ վերայ՝
Ունէր կտցով իւրով պանրոյ մանձաւակ մի.
Ըզխանձ առեալ խնամին աղուէս՝
Առ նա խօսել գայ համարեա թէ զայս գունակ.
"Ողջոյն քեզ, ով տէր իմ ագռաւ,
Ո՜վ գեղեցիկ ես, զի՞ չքնաղ թուիս ինձ, բարէ.
Հաւատա ինձ, եթէ ձայն քո
փետրոցըդ քոց իցէ նման,
Ես արդարեւ փիւնիկն հիւրոց այսց անտառաց։"
Յայս բան ագռաւն առ խնդութեան լեալ անըզգայ,
Իբր ի հանդէս գեղոյ ձայնին,
Բացեալ ըզկտուց իւր լայն՝ որսոյն թող անկանել.
Եւ աղուէսուն առեալ ասէ. "Գեղեցի՛կ դու,
Ուսի՛ր, աղէ, զի ամենայն սուտակասպաս
Կեայ ի վնասու է այնորիկ որ լսէ նմա.
Այո՛, խրատս այս գլուխ մի պանրոյ արժէ անշուշտ։
Զամօթի՛ հարեալ ագռաւն
Երդնու երդումն, այլ անագան,
ոչ եւս ի նոյն խաբ անկանել։

---

## ԱՌԱԿ Գ.

*Գորտ որ ցանկայ լինել յաղթ իբրեւ զեզն. 4—4*

Գորտ, ասեն, զեզըն մի տեսեալ,
Որ անձնեայ յոյժ թուեցաւ նըմա,
Նա որ չէր ինչ բովանդակ մեծ քան ըզձու մի՝
Նախանձ բերեալ ձգտի, ուռնու եւ ջանայ քաջ
Ընդանոյն այնմիկ մարմնով հաւասարել:
Ասէ ցընկեր իւր, “Հայեաց,„ քոյր,
Իցէ՞ արդեւք բաւ, ասա ինձ. տակաւին ո՞չ հասի նըմա:
“Ոչ,„ ասէ միւսն: — “Ահա ուրեմն:„ —
“Ո՛չ տակաւին:“ — “Ուրեմն ահա:„
“Չեղեր բնաւ մօտ,„ յասել միւսոյն, մողէսն ապուշ
Այտնու այնչափ մինչեւ պայթել:
Աշխարհըս լի է որերով որ քան զայս չեն ինչ իմաստուն:
Քաղաքացին ցանկայ շինել
իւր տուն իբրեւ զայր թագաւոր.
Ընցնիւր իշխան, թէպէտեւ դոյզն, ունի դեսպան.
Մէն մի սեպուհ կամի ըզհետ իւր թիկնապահս:

---

## ԱՌԱԿ Դ.

*Ջորիք երկու. 4—4*

Ջորիք երկու անկան յուղի.
մին էր բարձեալ յուս իւր վարսակ.
Միւսն ըստանձնեալ տանէր զարծաթ աղոյ մաքսին:

Վերջինս ա՛յս պարծելով իմն ընդ այնպիսի գեղեցիկ բեռն,
Կամէր իսկ ոչ թեթեւանալ անտի բընաւ։
Մինչ երթայր նա ընդոստնելով՝
Հնչեցուցեալ զվըզէն զանգակ,
Յանկարծ հասեալ աւազակաց՝
Արծաթոյն վասըն գան ի վէգ։
Ի ջորւոյն վերայ որ կրէր զարծաթն՝ անդէն անկանի հէնն,
Ունի զսանձէն, արգելու զնա։
Ի պաշտպանել զանձն իւր ջորին՝
Լեալ չարագան, չարալըլուկ, ողբայ, կոծի.
“Բա՛բէ,” ասէ, “ա՜յս իցէ զոր ինձ խոստացան։
Ջորիս այս որ գայ զիմ կրնի՝ զերծաւ ահա ի վըտանգէն,
Մինչ ես, եղո՛ւկ, անկայ ի վիշտս յայս եւ կորեայ։”
“Ընկեր,” ասէ ցնա միւսն անդուստ,
“Չէ միշտ բարւոք ի պաշտօն ինչ մեծ ամբառնալ.
Եթէ իբրեւ զիս ի սպասու մըլաղացի կացեալ էր քո,
Ոչ հասանէր քեզ այս եղեռն։”

---

## ԱՌԱԿ Ե.

*Գայլ եւ Շուն. 4—4*

Գայլ մի էր ոսկըր լոկ եւ մորթ,
Զի հսկէին խնամով շանին։
Գայլս այս ետես շուն մի հըզօր եւ գեղեցիկ,
Թաւ եւ մըսեղ, որ մոլորեալ էր ըստ դիպաց։
Յարձակել եւ ածել ըզըռամբ
Ըզնա ցանկայր սեպուհըն գայլ.
Սակայն կռուել հարկ էր նըմա.

Նա էր վիրագըն կաշըմբուռն, յաղթամարմին,
Ի պաշտպանել զանձըն ձեռնհաս։
Ուստի եւ գայլըն մատուցեալ մեղմեխանօք,
Նա բանս արկեալ, ցուցանէ զանձըն խնդակից
Ընդ գիրութիւնն, ափիբերան իմն եւ ապշեալ։
«Ի քեզ է, ով քաջդ, ապաստան
Լինել քան զիս գէր,» ասէ շունն.
«Թողուլ զանտառըս պարտ է քեզ,
Ուր ընկերօքըդ կեաս թըշուառ,
Գըրծուծ, խարուեալ, նրիթացեալ,
Չարալըլուկ եւ սովամահ.
Չիք ձեր ռոճիկ եւ ոչ պաշար.
Ի սայր սըրոյ հայթայթել կայ ձեզ զամենայն։
Եկ դու զիմ կնի, եւ ունիցիս վիճակ բարւոք։»
«Ըղէ, զի՞նչ պարտ իցէ առնել ինձ,» ասէ գայլն։
«Ոչինչ,» ասէ շունն, «այլ պնդել ըզհետ արանց
Որ ցուպ ի ձեռն շըջին ի մոյր.
Ողոքել զորս իցեն ի տան,
եւ տանուտեառնըն տալ քըծինս.
Այսպէս տացեն քեզ ի ռոճիկ
Զազգի ազգի խորտկաց նշխարս.
Հաւու ոսկերս եւ զաղաւնւոյ.
Իսկ ըզգգուանս թողում ասել։»
Գայլն համարի զանձըն հասեալ յերանութիւն.
Մինչեւ յարտօսըր լուծանել առ խնդութեան։
Զճանապարհայն տեսանէ նա
ըզպարանոց շանըն ցետեալ,
Նա ասէ, «Զի՞նչ է այդ։» — «Ոչինչ։» —
«Զիա՞րդ ոչինչ։» — «Չընչին իմն է։»

— “Աղէ, ասա։„ —
“Թէեւ անուրն որով կապիմ
Է պատճառ այդր զոր տեսանես։„
“Կապի՞ս,„ ասէ գայլն, “ապա չես կարող երթալ
Յո եւ կամիս։„ — “Այո, ոչ միշտ.
այլ զի՞նչ վնաս անտի, աղէ։„
“Եւ կարի իսկ քաջ,„ ասէ գայլն. “համադամոց
Քոց չեն ինձ պէտք.
Ես զանձս անգամ չառնուի յանձըն յայս պայման։„
Զայս ասացեալ սէպուհըն գայլ
փախեաւ անտի, եւ փախչի ցարդ։

---

## ԱՌԱԿ Զ.

*Երինջ, Այծ եւ Ոչխար ընկերացեալք ընդ Առիւծու. 4—4.*

Երինջ եւ այծ, որպէս եւ քոյր նոցին ոչխար,
Ընդ գոռոզին առիւծու, տեառն ի դրացութեան,
Մ՚ըտին, ասեն, յընկերութիւն երբեմն ուրեմն.
Շահն եւ վնաս էր լինելոց հասարակաց։
Եղջերու մի ի թակարդ անդր անկաւ այծին.
Անդէն պատգամ առ իւր ընկերսըն յղէր նա։
Ի գալ նոցա, առիւծն հաշուէ ի ճիրանունսն.
Ասէ, “Ո՞չ չորք եմք մեք յառնուլ աւարամասն։„
Ապա յօշեալ յայնչափ մասունըս զեղջերուն,
Առ զառաջին բաժինն անտի ինքն իբըր տէր։
“Այդ ինձ արժան է,„ ասէ, “եւ պատճառ այն է,
Զի եմ առիւծ,

Եւ զայս կարծեմ չուրանայ ոք.
Երկրորդն ինձ անկ է 'ստ իրաւանց.
Իրաւունքս այս, գիտէք դուք քաջ,
են իրաւունք զօրագունին.
Նաեւ զերրորդըն պահանջեմ,
զի քաջագոյնն ի ձեզ՝ եմ ես.
Թէ ժըռեսցի ոք ի չորրորդ բաժինն հըպել,
Պատառեցից ըզնա իսկոյն։

---

## ԱՌԱԿ Է.

*Ծաղակ. 4—4*

Որմիզդ յաւուր միում ասէ.
"Թող ամենայն որ ունի շունչ
Եկեսցէ այսըր զառաջեաւ իմոյ գահուն.
Զյօրինուածոյ մարմնոյն թէ ոք ունի տրտունջ,
Հրամայեալ է նըմա խօսել աստ աներկիւղ.
Դարման իրացըն տարայց ես։
Ե՛կ, ով կապիկ, խօսեաց դու նախ, որպէս կամիս։
Տես զանասունսդ. ասէ, գամ մի
Ըզգեղ նոցին հար ընդ քոյումդ.
Իցե՞ս դու հաճ։" "Ե՞ս," ասէ նա, "եւ ընդէ՞ր ոչ.
Զիցե՞ն, ասէ, որպէս այլոց, եւ իմ ոտք չորք.
Պատկերագիր իմ ցարդ ըստգիտ զիս ոչ իւիք.
Մինչդեռ արջոյն, իմոյ եղբօր,
ըստուերագիր ինչ եւեթ է.
Ինձ թէ անսայ, մի տացէ բնաւ
հանել զպատկերն ի նըկարու։"

Գտայ արջն յայս բան. կարծի թէ էր քանքատելոց.
Այլ ոչ այնպէս. առնու զովել նա զերեսաց իւրոց ըզգեղ:
Ապա ըզփիղն խծբծեալ՝
ասէ. "Պարտ է դոյզն ինչ գոնեայ
Յաւելուլ մասն յազի նորա,
եւ յականջացն յապաւել ինչ.
Զի՞ յերկարեմ, զանգուած իմն է
նա անհեղեդ եւ անճոռնի:"
Ապ՝ հարցաւ փիղ:
Իմաստուն որչափ եւ է սա, խօսեցաւ ճիշդ ըզնոյն գունակ.
Նա ըզկէտ ձուկն համարեցաւ
Անհընարին յաղթ անդամովք:
Մրջիւնն ըզմուն եգիտ այնչափ չնչենագոյն
Մինչեւ կարծել զանձն առնովաւ յաղթահասակ:
Ապ՝ արձակէ հայրն աստուածոց
այսպէս փորձեալ զամենեսին,
Գոհ լեալ կարի: Այլ քան զանմիտն ազգ անասնոց
Անմըտագոյն է տոհմըն մեր. զի մինչդեռ. եմք
Լուսանն առ այլս, առ մեզ եմք խլուրդ.
Զամենայն ինչ ներեմք մեզ, այլոց՝ ոչինչ.
Այլովք աչօք հայիմք ի մեզ,
եւ ոչ որովք հայիմք յընկերն:
Արարչապետն
Արար ըզմեզ գոգ շալակաւ զամենեսին,
Ե՛ւ զանցելոց դարուց որեարն, եւ զայսր աւուր.
Վասն յանցանաց մերոց տըւեալ
զյետոյ կողման շալակամասն,
Իսկ զառաջոյ կողմանն այլոցն յանցանաց սակս:

---

## ԱՌԱԿ Ը.

### Ծիծառն եւ Թռչունք փոքունք. 4—4

Ճանապարհորդ եղեալ ծիծռան յաճախագոյն,
Բազում ինչ էր, տեսն, ուսեալ.
զի որ բազում ինչ տեսանէ,
Բազում ինչ եւս ունել կարող է ի մըտի:
Զթեթեւ մրրիկս անգամ գիտէր նա կանխագոյն.
Եւ մինչեւ լեալ՝
Նաւավարաց գուշակէր նա:
Դէպ եղեւ զի մինչ ըզկանեփըն ցանէին,
Ետես նա զայր մի շինական
ծածկել նովաւ ակօս բազում:
«Զթուի ինձ այդ հաճոյ,» ասէ նա թռչնեկաց.
«Դըլթամ ի ձեզ, զի յայսմ յետին տագնապի ես
Մարթիմ խուսել, եւ կամ յանկեան
ուրեք թաքչել:
Տեսանէ՞ք զայդ ձեռն որ յածի ի մէջ օդոյդ.
Եկեսցէ օր որ չէ հեռի,
Զի զոր ցանէ նա եղիցի բայ ձեզ յեղեռն:
Ընտի ելցեն վարմք առ ըզձեզ պարաւանդել.
Եւ երագագք յունել ըզձեզ.
Համառօտիւ ասել՝ անօթք ազգի ազգիք,
Որ եղիցին պատճառք յետոյ
Մահուան ձերոյ կամ կալանաց.
Խող ըզվանդակն եւ ըզկաթսայ:»
«Վասն այսորիկ,» ասէ ծիծառն,
Կերայք ըզսերմնըդ զայդ, եւ ինձ հաւատացէք:»

Թռչունք յընչաց քերեն ըզնա.
Զոր ի դաշտին գըտանէին՝ էր նոցա շատ։
Իբրեւ եղեւ արտըն կանաչ,
Ծիծառն ասէ. «Խըլեցէք այժըմ կարճովին
Զոր անիծեալըդ այդ հատ բուսոյց,
Թէ ոչ կորուստ մնայ ձեզ անշուշտ։»
«Գուշակ չարի, շատախօս դու,» ասեն ցընա.
Գեղեցի՛կ գործ զոր դու տաս մեզ.
Ո՞չ բիւրք բիւրոց իցեն պիտոյ
Ի քաղ հանել զայդ ամենայն։»
Իբրեւ կանեփըն ջովացաւ,
Յաւել ծիծառն. «Չէ այդ բարւոք.
Ատոքացաւ,» ասէ, «չար սերմն.
Եւ զի չեղէ ցարդ լըսելի,
Ընդ տեսանել ձեր զի գետինն
Ընդրէն վարի, եւ զցորենիւ
Իւրեանց ոչ եւս գալով որեայն,
Տան ընդ թռչունս փոքունըս մարտ,
Յորժամ ծուղակք, թակարդք եւ ցանցք
Ըմբռնեն մանըր մանըր հաւս,
Մի՛ այսր եւ անդըր թռանիցէք.
Կացէք ի բոյնըս ձեր եւ կամ երթայք յայլ վայր.
Նըմանո՛ղ լերուք ճայի, խորդոյ, կռընկան.
Սակայն դուք ոչ էք բաւական
Անցանե՛լ ընդ անապատս եւ ընդ ալիս պէս գունակ մեզ,
Եւ ոչ իսկ այլ աշխարհ խնդրել.
Ուստի եւ ոչ այլ հընար գոյ ձեզ ապահով,
Բայց յորմածերպ ուրեք զանձինըս ձեր փակել։»
Ի լըսելոյ ըզնա թռչունքըն տաղտկացեալ՝

Ակսան խօսել այնպէս խառնակ,
Որպէս երբեմըն Տրովացիք,
յորժամ Թշուառըն Կասանդրէ[3]
Բանայր եւեթ ըզբերան իւր։
Պատահեցաւ սոցա, որպէս նոցա յայնժամ.
Շատք ի Թռչնոց տեսին զանձինս ի դիպահոջ։
Ի բնէ սովոր եմք մերայոց լսել միայն.
Եւ ոչ չարեաց ինչ հաւատամք, բայց յորժամ գան։

---

## ԱՌԱԿ Թ.

*Մուկն ընտանի եւ Մուկն վայրի. 4—4*

Երբեմն, ասեն, ընտանի մուկն
Կոչեաց ի տուն զմուկն վայրի
Քաղցր բանիւք,
Ուտել ըզմիս դրախտահաւու։
Ի պարսկական իմն օթոցոյ
Վերայ եդեալ էր նա սեղան.
Թողում ասել ձեզ ըզմըտաւ
Ըզսէր երկուց բարեկամաց։
Արդարեւ ճաշն էր մեծապաս,
Ուր պակասէր գրեթէ ոչինչ.
Այլ ոմն յանկարծ իմըն խռովէր
Զնոսա մինչդեռ էին յուտել։
Անդէն առ դուրըս տաճարին
Լսեն նոքա շըշնջիւն իմն.
Իսկոյն տայ խոյս քաղաքացին,
Ընկերն անդէն ըզհետ նորա։

Ձայնըն լըռէ, հեռանայ այըն,
Խակոյն դառնան մըկունքն այսրէն։
Քաղաքացին ասէ, “Օ՛ն, եկ,
Կատարեսցուք մեք ըղձաշ մեր։„
“Ոչ,„ ասէ միւսըն, “շատ է ինձ.
Այլ առ վաղիւ ե՛կ դու առ իս.
Ոչ պարծիմ ես իբրեւ ըզքոյն
Ունել սեղան արքունական.
Այլ ոչ ոք անդ վրդովէ զիս.
Ուտեմ ըղձաշ իմ ես հեշտիւ։
Մ՚եկնիմ ահա. վա՜յ խրախութեան
Զոր պղտորել կարէ երկիւղ։„

---

## ԱՌԱԿ Ժ.

*Գայլ եւ Գառն. 4—4*

Են լաւագոյն միշտ իրաւունք զօրագունին.
Օ՛ն առ ցուցցուք զայս յաջորդաւս։
Գառն ըղծարաւ իւր հարկանէր
Ի հոսանըս ջինջ առուի,
Հաս ի վերայ գայլ մի նօթի որ խնդրէր որս,
Եւ զոր վարեալ ածէր յայն վայր սովոյն տագնապ։
“Ուստի՞ քեզ այդ յանդգնութիւն
ի պղտորել զիմ ըմպելի,„
Ասէ գազանըն լի ցասմամբ.
“Լուծցես ըզվրէժ ժպրհութեան քո։„
Ասէ գա՛ռնըն, “Քա՛ջարանց, մի ինչ այդպէս
Ի բարկութիւն բրդեսցի տէրդ.„

"Աղէ՛, ած գամ մի զմրտաւ,
Զի՛ հարկանել զիմ ծարաւ ես
                    Ի խաղ առուիս
Ոտըս քըսան խոնարհագոյն կամ քան զքեզ.
Ուստի եւ չէ ինձ մարթ ընաւին
Զըմպելի տեառնըդ պղտորել:"
"Պղտորե՛ս," կրկնեաց գազանն անագորոյն.
"Նա, գիտեմ եւս զի անիծեր դու զիս հերու:
"Առնել զա՛յդ զիա՞րդ մարթ էր ինձ, զի հերուն
        իմ չէր ծընեալ,"
Ասաց գա՛ռն, "ի կաթըն մօր իմոյ եմ ես:"
— "Ապա եղբայր քո էր երէց."
— "Չիք իմ եղբայր:" —
                "Մ՛ին ի քոյոց անտի էր նա.
Զի դուք խնայէք ինձ ոչ երբէք,
Դուք եւ հովիւք ձեր եւ շանին:
Զայս քաջ գիտեմ. ըզքէն վրիժուն հանել պարտիմ:
Զայս ասացեալ յալս անտառին
Տարեալ ըզնա կերաւ անդէն
Առանց իրիք դատաստանի:

---

## ԱՌԱԿ ԺԱ.

*Այր եւ Պատկեր Աորա. 4—4*

Այր մի որ զանձըն սիրէր յոյժ,
        եւ իբր այն թէ չունէր ոսոխ,
Խորհէր ի միտըս թէ իցէ
        քան զամենայն մարդ գեղեցիկ.

Հանապա՛զ ըզհայելիս խոտէր նա թէ իցեն յոռի.
Այսպէս կեայր նա զոհ յիւրում խոր մոլորութեան.
Առ ի բուժել ընդնա դիպէր զի ըստ բախտին,
Գող ամենայն ուրեք նըմա գայր յանդիման
Խորհրդականն համըր զոր մեր տիկնայք սիրեն.
Ըզհայելեաց սահմ, որովք
լի են սենեակք, լի են խանութք.
Զոր հոմանին կրէր ի ծոցի,
Եւ ամենայն կին ի գօտւոջ:
Զի՞նչ Նարկիս մեր առնէ: Երթայ նա առանձին
Ի ծածկագոյն տեղիս ուր եւ խորհի թէ գոն,
Ոչ կամեցեալ փորձել այլ եւս ըզհայելիս:
Ջըրակոյտ ինչ կազմեալ ի վճիտ առուէ ուստեք
Գըլտանի յայն անքոյթ տեղիս.
Ի նա հայի, ցասնու, եւ աչք իւր զայրագինք
Համարին իմըն տեսանել ունայն ըստուեր.
Ջանայ հնարի ի ջըոյ անտի երթալ ի բաց.
Այլ, բա՜բէ, ջուրն է այնպէս ջինջ,
Մինչեւ հազիւ իշխել նըմա խոյս տալ անտի:
Յայտ է թէ յո՛ գալ կամ է ինձ.
Առ ամենայն ոք խօսիմ ես, զի վըիպակս այս
Է ախտ զոր մարդ իւրաքանչիւր ունի յանձին:
Անձըն մեր է այրն այն որ էր հարեալ անձին.
Հայելի՛ք ոչ այլ ինչ են,
բայց լօղ մարդկան յիմարութիւնք.
Հայելի՛ք որ նըկարեն ըզթերութիւնս մեր հաւաստեաւ.
Իսկ ջըրակոյտ է այն զոր այր
Իւրաքանչիւր գիտէ, այն է Գիրք առակաց:

---

# ԱՌԱԿ ԺԲ.

*Վիշապ բազմագլուխ եւ Վիշապ բազմաստուն.*

*4—4*

Պատգամաւոր ոմըն Թուրքաց Թագաւորին
Նախամեծար, ասեն, առնէր
առ Գերմանաց կայսեր երբեմն
Զզօրութիւն տէառըն իւրոյ
քան զկայսերըն զօրութիւն։
Գերմանացի ոմն ըսկըսաւ ասել ցընա.
"Թագաւոր մեր ունի իշխանս
Որ են այնպէս հըզօր ինքնին
Մինչեւ անցնիւր է բաւական
պահել ռոճկօք իւրովք բանակ։"
Պատգամաւորն, այր հանճարեղ,
Ասէ, "գիտեմ ի համբաւոյ
Իւրաքանչիւր ընտրող՝ ո՛րչափ ինչ հանէ զօրս.
Եւ այս առնէ ինձ աստէն յուշ
Պատահար իմըն նորանշան որ ճշմարիտ է արդարեւ։
Յապահո՛վ ուրեք էի, յորժամ տեսի զի անցանէր
Հարիւրգլխեան օձ մի ընդ նեղ ինչ ծերպ ցանկի.
Արիւն յերակս իմ պաղեցաւ.
Եւ կարծեմ է իսկ ահաւոր։
Սակայն երկիւղ միայն կրեցի, եւ ոչ վտանգ ինչ.
Քանզի մարմին գազանին բնաւ
Առ իս գալ ոչ եղեւ ատակ, զի չեգիտ անց։
Մինչ զերազովս այսուիկ գայի,
Յանկարծ միւս եւս վիշապ միով գլխով եւեթ,

Այլ բազմագոյն տոնովք ընդ այն եկն անցանել։
Ընդէն կալաւ զիս միւսանգամ
Ահ եւ երկիւղ։
Նանց գըլուխն, իրանն ապա, նոյնպէս տոտունն.
Մինչ եղեւ նոցա արգել,
մին ճանապարհ առնէր միւսում։
Որպէս թըւի ինձ է նոյն բան
Օկայսրէն ձերմէ եւ ըզմերմէն։

---

## ԱՌԱԿ ԺԳ.

*Գողք եւ էշ. 6—6*

Գողք երկու վասն իշոյ զոր գողացան՝ կռուին.
Մին կամէր պահել զայն, եւ միւսըն վաճառել։
Մինչ հարուածք բըռընցիք երթան գան երկուստեք,
Մէն մի ի պաշտպանել զանձն իւր է մըտադիր,
Երրորդ ոմն աւազակ գայ հասանէ անդէն,
Իակոյն ըզգըռամբ ածէ ըզսեպուհն յաւանակ։
Յաւանակն է երբեմն աշխարհ մի դուզնաքեայ,
Եւ աւազակք են այս կամ այն անուն իշխան,
Որպէս են Տրանսիղուանն, Հունգարացին, Գաղմատն.
Փոխանակ ընդ երկուց գըտաք ահա երիս.
Շատ է կարծեմ այսչափ։
Բայց ոչ միում յաճախ է աշխարհն ի ստացուած։
Այլ ոմըն չորրորդ գայ, եւ համոզէ զնոսա՝
Յիւր վըտարեալ զիշուկն։

---

# ԱՌԱԿ ԺԴ.

*Սիմոնիդէս պաշտպանեալ ի դից. 6—6*

Զերիս ազգըս մարդկան որչափ գովես չէ շատ,
Ըզդիս եւ ըզհարճ քո, եւ ըզԹագաւոր քո,
Ասէր Մալէրպ, ես եւս արկանեմ ձեռնագիր.
Արդարեւ են սոքա խըրատք միշտ կարեւորք:
Գովութիւն ողոքով ածէ զիւրեւ զոգիս.
Գեղեցկի ուրուք շնորհք են յաճախ գինք նորա.
Տեսցուք զիարդ երբեմն ետուն դիք նըմա վարձս:
Սիմոնիդէս[5] ձեռն արկ
Գովել զայր ոմն ըմբիշ, եւ այն ինչ փորձեալ զիւրն,
Եգիտ ըզնիւԹըն լի անցիւք համակ մերկօք:
Ծնողք ըմբշին էին նախ մարդիկ անծանօԹք.
Քաղաքացի լոկ հայրն, ինքն առանց վաստակոց.
Նիւթ անպըտուղ եւ դոյզն:
Ըզդիւցազնէն իւրմէ ճարտարըն խօսի նախ:
Յետ ասելոյ զառնէն զոր ինչ մարԹ էր ասել,
Փոխի յայլ կոյս. առնու գովել ըզԴիոսկուրս,[6]
Կաստոր, Պողիտեւկիս. չըմոռանայ ասել
Թէ օրինակ նոցա էր փառք ըմբշամարտկաց.
Հուշակէ ըզկըռիւսն, եւ ըզտեղիսն յայտնէ
Ուր եղեալք այնոքիկ եղեն գեր ի վերոյ:
Համառօտիւ ասել՝ գովեստ դիցն այնոցիկ
Էր երկու երրորդ մասն համօրէն իսկ գործոյն:
Ըմբիշն էր խոստացեալ քանքար մի տալ ի վարձ.
Այլ իբրեւ ետես զայս այրըն խորախորհուրդ,
Եդ զերիր մասն եւեթ, եւ ասէ յայտնապէս.

“Կաստոր, Պողիտեւկիս տացեն ըզմընացեալն.
Հաճեսցեն ըզքեզ այն երկուորեակք երկնաւորք.
Սակայն կամիմ եւ ես ինքն ըզքեզ մեծարել.
Եկ դու ընթրել առ իս. արբասցուք խըրախունս.
Հըրաւիրեալ որեարն են արդարեւ ընտիրք.
Ըզգականք իմ են, եւ կարեւոր բարեկամք.
Լեր դու ընդ մեզ զովողք:„
Սիմոնիդէս յանձն առ: Թերեւըս զի երկեաւ
Կորուսանել ընդ գնոյն եւ զարդիւնս յարգանացն:
Զոքաւ, եւ խրախացան, եւ կերան եւ արբին:
Մինչ ի զըւարթութեան էր այր իւրաքանչիւր,
Ըսպասաւոր մի գայ ազդ առնել թէ առ դրան
Արք. երկու կան խնդրեն տեսանել ըզքեզ փոյթ:
Ելանէ ի ճաշոյն նա, սակայն ոչ մի ոք
Ի բազմելոց անտի կասէ ի պատառոյն:
Երկոքին արքն էին երկուորեակք գովեստին:
Շնորհ ունին նըմա, եւ երգոյն փոխարէն
Ելանել ի տանէն պատուէր տան ճարտարին,
Զի հանդերձեալ էր տունն հիմն ի վեր տապալել:
Կանխասացութիւնն էր արդարեւ ճշմարիտ:
Ի հեծանաց անտի մին խախտի, եւ ձեղունն
Ոչ գըտեալ իւր նեցուկ՝
Ընկանի ի վերայ սեղանոյն, բեկանէ
Պընակ, սըրուակ, եւ ոչ մատռուակաց խնայէ.
Եւ որ չարն էր քան զայս, ի գործել կատարեալ
Ըզքէն վրիժու պուետին՝
Գերան մի գայ զըմբշէն սըրունսն խորտակէ,
Ցըրուէ ըզբազմականսն
Յորոց բազումք խեղին:

Զեղեւ անփոյթ համբաւն հռչակել զոր եղեւն.
"Արշա՛ն," գոչեաց անցնիւր, եւ վարձք տըւան կրկին
Երգոց վիպասանին, սիրելւոյն աստուածոց։
Չէր որդի հօրամոյն
Որ ի տալ նըմա վարձս առնելով ելեւել
Զըտայր վասըն նախննեաց իւրոց յօրինել երգս։
Եկից այսրէն յիմ բան, եւ ասացից նախ զայս,
Թէ յարգանս որչափ եւ յաճախէ ոք, չէ շատ,
Պլից եւ նոցին նմանեաց, եւ թէ՝ Մեղպոմենէ[7]
Զաղարտէ զանձն՝ արկեալ սակ զիւրոց վաստակոց։
Մի բան՝ պարտ է ունել զարուեստ մեր ի պատուի։
Այլ աւագ պատուէ զանձն, եթէ առնէ մեզ շնորհս.
Ողիմպոս[8] եւ Պառնաս[9] յառաջ ժամանակաւ
Էին, ասեն, եղբարք, եւ բարեկամք սերտիւ։

---

# ԱՌԱԿ ԺԵ.

*Մահ եւ Թշուառ. 4—4*

Ոմն հէք կոչէր զօրհանապազ
Զմահ ի թիկունս։
"Ո՛վ մահ," ասէր, "զի՛նչ գեղեցիկ թըւիս դու ինձ.
Աճապարեա, եկ տալ վախճան անգութ բախտիս։"
Եկեալ մահուն կարծէր շընորհս առնել նըմա.
Բախեաց ըզդուռն, եմուտ, եկաց յանդիման առնն։
"Զի՛նչ տեսանեմ," գոչեաց այրն այն,
"ո՛ն, ըզճիւաղդ հանէք ի բաց.
Քանի՛ տըգեղ է, եւ ո՛րչափ տեսիլ դորա
Տայ ինձ սարսափ եւ արհաւիրս։"

Մի մերձենար, ո՜վ մահ, ո՜վ մահ, մեկնեաց աստի։„
Մեկենաս[10] էր այր հանճարեղ.
Ասաց ուրեք. “Թող արասցեն զիս ապիկար,
Անդամալոյծ, խեղ, պատագրոս, եթէ միայն
Կեցից, շատ է, եղէց միշտ գոհ։
Մի գար երբէք, ո՜վ մահ, եւ այս է քեզ պատուէր։

---

## ԱՌԱԿ ԺԶ.

*Մահ եւ Փայտահար. 6—6*

Մայրեւոր ոմն աղքատ ընտանձնեալ փայտ խրձամբ,
Ընդ ծանրութեամբ խրձանն, եւ ընդ բեռամբ ամաց
Հեծելով եւ ճնշեալ, դէմ եդեալ յամրագնաց
Հասանել գուն գործէր ի մրճոտ իւր տընիկ։
Չունելով հուսկ ուրեմն ժոյժ ճըգան եւ ցաւոյն,
Եդ ըզբեռն ի գետին, խորհէր զիւր հիքութիւն,
“Զի՞նչ բարիս տեսի ցարդ,„ ասէր, “յաշխարհի աստ.
Իցե՞ն քան զիս թշուառ որք տուայտին առ երկան.
Չիք իմ բազում անգամ հաց, հանգիստ ոչ երբէք.
Կին իմ եւ մանկունք իմ, զինուորք եւ հարկահան,
փոխատուն եւ պահակ,
Առնեն ողորմելւոյ զիս պատկեր կատարեալ։„
Ասէ զայս, եւ կոչէ ըզմահ որ գայ իսկոյն.
Հարցանէ, “Առ իմէ՞ կոչեցեր զիս, այր դու։„
“Զի օգնեսցես,„ ասէ,
“Բառնալ զայս փայտ յուս իմ. մի յամեսցես կարի։„
Օրհասին ժամ, այո՛, գայ բուժել զամենայն.
Չէ պարտ սակայն փութալ։

Կորել քան մեռանել.
Զայս յեղյեղուն մարդիկ։

---

## ԱՌԱԿ ԺԸ.

*Այր միջնաժեր եւ Երկոքին Աղիճք նորա. 4—4*

Այր մի որ էր ի միջին տիս,
Նա, մերձեալ իսկ յալեւորել,
Համարեցաւ եթէ էր ժամ
Ձեռն արկանել զամուսնութեամբ։
Ունէր արծաթ,
Թող զայս նաեւ
Կանայս պատրաստ. ամենեցուն ակն էր ի նա։
Ուստի եւ առնըն չէր այնչափ հարկ փութալոյ,
Ըզլաւն ընտրել չէ դոյզըն գործ։
Յայրեաց երկուց սէր մանաւանդ այլն էր հարեալ.
Մին մանկամարդ, եւ միւսն հասուն էր բաւական,
Այլ նորոգէր նա արուեստիւ
Զոր բընութեանն էր աւերեալ։
Այրիքս երկու մերթ խաղոյ բանս
Ասեն, եւ մերթ ծիծաղէին, է զի գգուելով
Զննեն ըզգլուխ առնըն մեղմով,
Այն է զի զգէսն յարդարիցեն։
Որ ծերագոյնն էր՝ խըլէր միշտ
Ըզսակաւ թուխ մազն որ մընայր,
Զի հոմանին պատշաճագոյն լիցի նըմա։
Իսկ մանկագոյնըն զըսպիտակ մազըն կապտէր։
Երկոքին եւս արարին այնչափ զի գործ մեր

Մ՛ընաց կընդակ, եւ ի վերայ եհաս խաղոյն։
“Շընորհ ունիմ ձեզ,” ասէ այրն,
“բիւրապատիկ, ո՛ գեղեցիկք,
Որ խըզեցէքըդ զիս այդպէս.
Շահեցայ քան թէ կորուսի.
Մի՛ եւս համբաւ ըզհարսանեաց.
Այն զոր առից՝ կամեցայ զի ըստ իւր հեշտի
Կեցից, բընաւ ոչ՝ ըստ իմումն.
Չիք գըլուխ կունտ որ կալցի ժոյժ.
Ըզխընամոցդ ունիմ շընորհ, ո՛ գեղեցիկք։”

---

## ԱՌԱԿ ԺԲ.

*Աղուէս եւ Արագիլ. 4—4*

Խնամին աղուէս ծախս արարեալ յաւուր միում,
Զընտանեգոյն իւր զարագիլ կոչեաց ի ճաշ։
Էր դուզնաքեայ ճաշն եւ առանց հանդերձանաց.
Կոչնատեառնըն մերոյ խորտիկըն չէր այլ ինչ
Բայց խիւս թեթեւ. կեայր նա ճըղճիմ։
Զայս խիւս եբեր նա ի սեղան սկաւառակաւ.
Երկայնակտուցն արագիլ չէր
ատակ առնուլ եւ ոչ մի կաթ.
Եւ չարաճճին լափեաց զամէնն յական քըթթել։
Առ ի ըզվըրէժ քինուն խնդրել ըզխաբկանացն,
Աղաչէ զնա եւ արագիլն յետ աւուրց ինչ։
“Մըտադեւր իսկ,” ասէ աղուէսն. “ընդ բարեկամս
Իմ համարձակ։”
Եւ ընթանայ ի ժամադիր ժամուն յընթրիս,

Եւ կոչնատէրն իւր արագիլ.
Զազնուութիւն նորա գովէ.
Գտանէ ըզճաշըն պատրաստեալ ի դէպ ժամուն.
Ընձուկ յուտել ունի սաստիկ.
Նըշանաւոր է յայսմ աղուէս:
Ցընծայ յառնուլն ըզհոտ մըսոյն
Որ էր յօշեալ մանրիկ, եւ թուէր ախորժական,
Եւ վասն հեճուկս իմն առնելոյ նըմա՝ բերաւ
Երկեալ յաման երկայնավիզ, նեղաբերան:
Արագիլն էր դիւրին մըխել զիւր կըտուց յայն,
Եւ ցըռուկ տեառն աղուիսուն է այլատարազ:
Հարկեցաւ հէքն այսրէն դառնալ
յիւր տուն նօթի,
Կծկեալ ըզձետ, եւ տանելով զականջն ի վայր,
Կոր ի գըլուխ իբրեւ զաղուէս մի զոր կալեալ լիցէ մարդոյ:
Ի ձեր խըրատ գըրեցի զայս, ով խաբեբայք.
Նմանւոյն եւ դուք կալարուք ակն:

---

# ԱՌԱԿ ԺԹ.

*Մանուկ եւ Վարդապետ դպրոցի. 6—6*

Ի պատմութեանս յայսմիկ կամ է ինձ ցուցանել
Զանհանճարոյ ուրումն յանդիմանութիւն սին:
Տըղայ ոմըն մանուկ անկաւ յանկարծ ի ջուր,
Ի խաղալն յանզգաստս առ եզերբ Սէն[11] գետոյ:
Երկինք ետուն այնպէս զի գըտաւ ուռի մի
Որոյ՝ յետ Աստուծոյ՝ ոստք փրկեցին ըզնա:
Մինչ կառուեալ կայր մանուկն ի բարունակս ուռւոյն,

Այլ չեկն ի յայտ աւելի ինչ։
«Աղէ, առ ի՞նչ այս ամենայն,»
Ասէ մեղու մի ըզգօն յոյժ.
«Վեց ամիսք են զի ձըգի դատն,
Եւ եմք ահա որպէս յառուրսըն յառաջինս.
Այսպէս եւ մեղըն ապականի.
Ժամանակ է դատաւորին աճապարել.
Ո՞չ բաւական ըէղէւոյ նա զօրըն։[12]
Առանց այնչափ պատասխանւոյ
եւ պայքարի յերկուց կողմանց,
Բաջաղանաց եւ սին բանից,
Աշխատեսցուք, պիծակք եւ մեք.
Տեսցի թէ ո իցէ ձեռնհաս այդպիսի քաղ-
ցըր նիւթ գործել
Ի մոմակերտ գուբըս չքնաղս։»
Ոչ առին յանձըն զայս պիծակք, եւ եղեւ յայտ,
Թէ արուեստն էր քան զգիտութիւն նոցա ի վեր.
Եւ ձիաստացն ի մեղուաց կողմըն տայ վըճիռ։
Իցի՜ւ այսպէս առնոյր վախճան ամենայն դատ,
Եւ երթայաք յիրիդ յայդմիկ ըզհետ Թուրքացն օրինակի,
Թէ միայն բանն հասարակաց
ունէր զտեղի օրինաց մեզ,
Ոչ եւս այլ պէտք էին յայնժամ այնչափ ծախուց.
Ուր, բա՜բէ, այժմ հիւծիմք, մաշիմք.
Յերկարութեամբ տապալեն հիմն ի վեր ըզմեզ.
Առնեն այնչափ զի հուսկ ուրեմն
ոստրէն լինի դատաւորին.
Ոլոց վարեն զդատըն՝ խեցին։

---

## ԱՌԱԿ ԻԲ.

*Կաղնի եւ Եղէգն. 4—4*

*Կաղնին, ասեն, յաւուր միում ասէ ցեղէգն.*
*“Յիրաւի դու սրտունջ լինիս ըզբնութենէ.*
*Սարեկիկն հաւ է վասըն քո բեռըն մի ծանր.*
*Հողմըն թեթեւ որ ըստ դիպաց*
*Տայ խորշոմել մըկանանց ջուրց՝*
*Ստիպէ ըզքեզ ծըռել ըզգլուխ.*
*Մինչ իմ ճակատ Կովկասու[13] պէս*
*Չըհամարեալ շատ արգելուլ զարեւուն շող՝*
*Ըզմըրըրկաց իսկ բռնութիւն արհամարհէ.*
*Քեզ ամենայն է հիւսիսոյ*
*հողմն, ամենայն թուի ինձ զեփիւռ.*
*Դարձեալ եթէ էր քո ծընեալ*
*ընդ տերեւոց իմոց շըքով,*
*Որով ծածկեմ զօրս շուրջ զինեւ,*
*Ոչ լինէիր դու նըշաւակ այնչափ վշտաց.*
*Զքեզ ի հողմոց պահէի ես.*
*Այլ բազում այն է զի ծնանիս*
*Դու առ խոնաւ եզերբք հողմոց իշխանութեան:*
*Բնութիւն, թուի ինձ, դէպ ի քեզ է անիրաւ:„*
*“Արգահատանք քո,„ թուփըն տայ պատասխանի,*
*“Գայ ապաքէն յոգւոյ բարւոյ, այլ թող ըզհոգդ.*
*Հողմք քան ինձ քեզ մանաւանդ են ահագին.*
*Կըքիմ, այլ ոչ խորտակիմ ես: Դու մինչեւ ցարդ*
*Ընդդէմ ահեղ փըքոց նոցա*
*Կացեր առանց կորանալոյ.*

*Այլ կալցուք ակըն վախճանին։» Մինչ ասէր զայս,*
*Ահա յերկնից ծագաց խուժէ կատաղութեամբ*
*Ի մանկա՛նց անտի ահեղն*
*Զոր հիւսիսի ի կշտին էր կրեալ ցայնժամ։*
*Կաղնին կքըրի, ծըռի եղէգն.*
*Ըղձգունս իւր հողմըն կրկնէ,*
*Մինչեւ խըլէ արմատաքի*
*Զայն զոր գըլուխն էր մօտ յերկինս,*
*Իսկ ոտք յաշխարհըն մեռելոց հասանէին։*



# ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ



## ԱՌԱԿ Ա.

*Առ որս դժուարին է ճաշակ. 4—4*

է ի ծննդեան առեալ էր իմ
 ի Կաղեդոնեայ[14]
Ըղձիրըն զորըս խոստանայ
 մուսայս իւրոցըն հոմանեաց,
Եսովպական առասպելաց
 նըւիրէի ես ըզնոսա.
Առակք եւ երգք եղեն միմեանց
 միշտ բարեկամք։
Այլ համարիմ ես ոչ այնչափ
 սիրելի զանձն իմ Պառնասայ,
Մինչեւ մարթել ըղկցկցանսըն զայնուիկ սեթեւեթել։
Ապաքէն մարթ է տալ շօղիւն գիւտին այնմիկ.
Մարթ է. փորձեմ ես, թող քան զիս
 այլ հանճարեղ կատարեսցէ։
Սակայն մինչեւ ցայժըմ նոր իմըն լեզուաւ ես

Նաւու խօսել զայլոյ, եւ տալ
զառին Նըմա պատասխանի։
«Նա՛, յառաջ ես իսկ անցի. ծառք
եւ տունկք անգամ
Նղեն առ իս խօսուն անձինք.
Ո՛չ, աղէ, համարեցի զայս կախարդանս։
Ապաքէ՛ն ասիցեն ինձ խծբծողք մեր.
«Ճառես, այո, գեղեցիկ յոյժ
Հինգ եւ կամ վեց մանկտւոյ վէպս։»
Բանակրկիտք. ճշմարտագոյն
քան զիմ առակս կամի՞ք լսել,
Եւ յոծ ըստիր։ Ո՛ն, լուարուք։ Տրովադացիք
Յետ տասնամեայ կռուոյ զիւրեանց պարսպօք իսկ
Արարի՛ն աշխատ ըզՅոյնս որ բիւր հնարիւք,
Բիւր յարձակմամբք, հարիւր մարտիւք
Չեղեն ատակ ըզսէգ քաղաքըն կործանել,
Մինչեւ փայտեայ ձին հընարեալ յԱթենասայ[15]
«Նորանըշան իմն արուեստիւ,
Յահագին կողս իւր ընկալաւ
զիմաստնագոյնըն զՈդիսեւս,[16]
ԸզԴիոմեդ[17] քաջ եւ զԱյաքս[18] ըզըռնագոյնն,
Զորս հսկայն այն կազմած ճիւաղ
Վաշտիւք նոցա էր տանելոց ի քաղաք անդր,
Ըզդիս անգամ նորա մատնել քինուն իւրեանց։
Հընարք անլուր որ զչինողացն
Համբերութեան եւ ըզջանիցն հատոյց ըզվարձ...։
«Բաւ է,» Թերեւս ասիցէ ոք
ի մերոց քաջ մատենագրաց.
«Յերկարեցեր ըզճառդ, աղէ, տուր առնուլ շունչ.

Եւ դարձեալ ձին քո փայտեղէն,
Եւ դիւցազունքդ հանդերձ գնդիւք
Են առասպելք եւս իմն անճահք
‹Քան աղուիսուն գովել զագռաւ վասըն ձայնին։
Եւ դարձեալ՝ քեզ ոչ վայելէ այն ոճ ճռուոմ։„
Օ՛ն, փոխեսցուք ուրեմն ըզնիւթ
մեր։ ‹Նախանձոտն Ամարիղլիս,[19]
Ձիւրն Եղկիպպոս[20] խորհէր, զիւրմէ
հոգոյն կարծեալ
Չունել քան զիւր խաշն եւ ըզշուն զայլ ոք վըկայ։
Տիրկիս[21] տեսեալ ըզնա եմուտ ի մէջ ուռեացն,
Լուաւ զի կինն հովիւ ուղղէր ըզմըմունջ իւր
Առ քաղցրըն սիւք, արկանելով նըմա աղերս,
Տանել զիւր բանսն առ հոմանին....։
“Ահա կալայ ըզքեզ յայդ յանգ,„
Ասիցէ ինձ որ դատին զիս.
“Չըհամարիմ ինչ ես ըզդա ըստ օրինի,
Եւ ոչ մեծի ճարտարութեան,
Արկ առ ուղղել զայն ի հալոց....։„
Անիծեալ դու քննիչ, լռե՞ս.
Չիցէ՞ ինձ թոյլ ի յանգ ըզվէպն իմ հանելոյ։
Տագնապ մեծ է
Ջանալ հաճել ըզմիտըս քո։
Որ կարի գիրգն են՝ են թշուառք.
Չիք որ զնոսա հաճել կարէ։

---

## ԱՌԱԿ Բ.

*Մկունք առնեն խորհուրդ. 4—4*

*Կուզ մի անուն Ռոդիլարդոս[22]*
*Առնէր մկանց նախճիրս այնչափ,*
*Մինչ գող անհետ լինել նոցա.*
*Յոգունս արկ նա ի գերեզման.*
*Սակաւք ոմանք որ մնացին ողջ՝*
*Թողուլ ըզբոյնսըն չիշխելով,*
*Ըզչորրիր մասն իւրեանց ուծկին*
*գըտանէին հազիւ ուտել.*
*Եւ Ռոդիլարդըն յաչըս հէք այնր ջոկոյ*
*Ոչ այնչափ կուզ էր որչափ դեւ:*
*Արդ մինչդեռ օր մի ի հեռի ուրեք եւ բարձր*
*Իգամոլն այն էր ի կընոջ միոյ խնդիր,*
*Զողջոյն շաբաթըն զոր անցոյց ընդ կնոջն այնմիկ,*
*Կաց մնաց մըկանցն արար յանկեան ուրեք ժողով՝*
*Ըզկարեւոր հարկէն խորհել:*
*Որ գահերէցն էր, անձն ըզգօն յոյժ, իսկ եւ իսկ*
*Ասէր թէ պարտ էր վաղագոյն քան անագան*
*Կախել զանգակ ի պարանոց[23] Ռոդիլարդայ.*
*“Այսպէս յորժամ,„ ասէր, “ելցէ նա ի ճակատ,*
*Զարշաւանին նորա առեալ*
*զազդ փախիցուք մեք ընդ երկրաւ.*
*Ես զայս հընարս եւեթ գիտեմ:„*
*Իւրաքանչիւր էր ի կարծիս գահերիցուն*
*Փրկարար ինչ ամենեցուն չթուէր քան զայս:*
*Դժուարութիւնն էր ըզզանգակըն զայն կախել.*

Մ՚ին ասէր, "Ո՛չ երթամ ես, չեմ այնչափ անմիտ."
Մ՚իւսն ասէր, "Չեմ կարող:" Այսպէս
առանց իրիք վճարելոյ,
Թող այր զընկեր: Ես իմ տեսեալ բաղում ժողովս
Որ վայրապար գումարեցան զայս օրինակ.
Ժողով՝ որ չէր մրկանց, այլ էր աբեղայից,
Այա, եւ աւագ երիցանց իսկ:
Խորհե՞լ միայն կայ առաջի,
Զեղուն սրբահոգ խորհրդատուօք.
Գործե՞լ ինչ գործ իցէ պիտոյ,
Հանդիպիս այլ եւս ոչ ումեք:

---

## ԱՌԱԿ Գ.

*Գայլ դատախազ զԱղուէսն յատենի Կապկի. 4—4*

Գայլ մի ասէր, "Կողոպտեցայ:"
Գրացի նորա աղուէս մի յոյժ չարաճճի,
Իբրեւ ըզգող լեալ դատափետ՝ ձգձգեցաւ
Յատեան կապկին: Հրաման տուաւ նոցա խօսել,
Ո՛չ խօսնակօք, այլ առ անցնիւր կողմն առանձին:
Թեմիս[24] անգամ չեղեւ աշխատ,
Որչափ յիշէր կապիկն, ի դատ քան զայս խառնակ:
Իրաւարարն քրտնէր անդէն յիւրում բեմի:
Իբրեւ եղեն վէճ եւ պայքար,
Պատասխանիք, աղմուկ, մրրիկ,
Ի միտ առեալ դատաւորին զերկոցունց եւս
ըզնենգութիւն,

Ասէ ցերկուսն. "Գիտեմ ըզձեզ
ես ի վաղուց, ով սիրելիք,
Երկոքին եւս պարտիք տուժել.
Դու, գայլ եղբայր, պահանջես զոր
ինչ չէ ի քէն հանեալ ուրուք.
Եւ դու, աղուէս եղբայր, առեր զայն ապաքէն:"
Դատաւորին խորհուրդ այն էր,
Թէ բնաւ առանց ինչ խղճելոյ,
Դատապարտել ըզվատշուէրն չէ անիրաւ:

---

## ԱՌԱԿ Դ.

*Ցուլք Երկու Եւ Գորտ. 4—4*

Մրցէին ցուլք երկու թէ որն յերկուց անտի
Լիցի միոյ երընջոյ տէր.
Գորտ մի յոգւոց հանէր ընդ այն:
"Զի՞ լիցէ քեզ," սկսաւ ասել
Ի կարկաչող ազգէն մի ումն:
"Բամբէ," ասէ, "ոչ տեսանես,
Զի կատարած այսըր կըռուոյ
Լիցի աքսոր միոյն, եւ միւսն հալածեալ զայն՝
Տացէ նըմա ի ծաղկաւէտ դաշտաց տալ խոյս.
Ոչ կարացեալ այլ եւս իշխել խոտոյ մարգաց՝
Գայցէ ի մեր ճահիճըս նա տիրել շամբից,
Եւ արարեալ կոխան ոտից ցըխորըս ջուրց
Մերթ ըղմին, եւ ըզմիւսըն
մերթ, մնասցէ կրել մեզ փաշաման
Ընդ կռուոյն ում եղեւ պատճառ երինջ տիկինն:"

Իրաւացի էր այս երկիւղ.
Մ՛ին ի ցըլուց ի բնակութիւն անդըր նոցա
Զօրաւ թափչել անդ առ նոցա եղեռանէ.
Ի նոցանէ քսանս ի միում ժամու ճմլէր։
Եղո՛ւկ, յայտ է թէ ի վաղուց
Անտի փոքունք վիշտըս կրեալ են յաւագաց խօլութենէ։

---

## ԱՌԱԿ Ե.

*Թռչուն կաքաւ ի ձեռն. 6—6*

Մ՛ահացու վէրս առեալ ի թեւաւոր նետէ՝
Թռչուն մի զիւր տըխուր ճակատագիր ողբայր.
Եւ ասէր, ի ցաւոյն վերայ կրկնեալ նոր ցաւ.
“Իցէ՞ արժան լինել նըպաստ յիւր եղկութիւն։
Անգութ մարդիկ, առնուք ի թեւոց մերոց զայն
Որով թըռուցանէք ըզմահացու գործիսդ։
Այլ մի խնդար ընդ այդ, անագորոյն սերունդ,
Յաճախ հանգոյն մերումն հանդիպի եւ քեզ բախտ։„
Ի մանկանց Յապետայ[25] մի կէան հանապազորդ
Պատրաստէ զէն միւսում։

---

## ԱՌԱԿ Զ.

*Չղջիկն եւ Աքիսք երկու. 4—4*

Յանզգաստս իմըն չըղջիկան եկն անկանել
Ի բոյն աքսի, եւ այն ինչ լեալ էր նորա անդ,
Մ՛իւսն ի վաղուց քինախնդիր ընդդէմ մըկանց՝

Յարձակեցաւ ուտել ըզնա։
«Օ՛ի՞նչ, իշխե՞ս դու,» ասէ, «լինել
ինձ յանդիման,
Մինչ ցեղ քո մեզ վնասել այնչափ ջանայ հնարի.
Ո՞չ դու մուկն ես, ասա, աղէ.
Այո, ես մուկըն դու, եւ կամ չեմ ես աքիս։»
«Ներեսջիր ինձ,» ասէ հէքն այն.
«Իմ արուեստ չէ այն զոր ասես։
Ե՛ս մուկըն, զայդ համբաւ ետուն քեզ չարախօսք.
Փառք Արարչին տիեզերաց,
Թռչուն եմ ես, տես ըզթեւս իմ.
Կեցցէ ազգն այն որ ճեղքէ զօդ։»
Զանդէս բանից նորա բարւոք յոյժ թըւեցաւ.
Արար այնպէս զի թոյլ ետուն
Նըմա մեկնել անտի ի բաց։
Ապ՝ յետ աւուրց երկուց ապուշն
Այն կուրաբար եկըն մըխել
Ի բոյն այլոյ աքսի որ էր հաւուց ոսոխ։
Ահա դարձեալ ի վըտանգի կենաց չիղջ մեր։
Տիկինըն տան երկայնացուկ
Իբրեւ թռչուն ի ջախջախել ըզնա անդէն եկն ատամբք,
Մինչ չըղջիկանն եբարձ բողոք
Թէ թշնամանս առնէ նըմա։
«Օ՜հս առ թռչունս ունիս,» ասէ,
«հայեաց զամ մի
Ոչ փետուրք են որ առնեն հաւ.
Եմ, եմ ես մուկն, կեցցեն առնէտք.
Ամիզդ ըզկուզըս կորուսցէ։»
Այսու յաջող պատասխանեաւ

Ապրեցոյց նա ընկեանս իւր այս երկրորդ նըւագ։
Ոչ սակաւք են որոց ծպտեալ
Ի տագնապի որպէս ըզսա,
վայըլս յաճախ արարին խաղ։
Ըզգօնն ասէ 'ստ քըմաց մարդկան,
“Կեցցէ՛ արքայ,[26]” կամ “Կեցցէ՛ խումբ
դաշնաւորաց։”

---

## ԱՌԱԿ Է.

*Շունն եւ ընկեր նորա. 4—4*

Շուն մի լեալ մերձ ի ծընանել՝
Ոչ գիտէր թէ ուր ըզբեռն իւր դիցէ ըզծանր.
Բռնադատէ այնչափ զի հուսկ ուրեմն ընկեր
իւր առնու յանձն
Տալ նըմա զիւր խըղիկն ուր շունն ապաւինի։
Յետ աւուրց ինչ ընկերըն գայ,
Շունըն խնդրէ այլ եւս աւուրս հնգետասան.
“Կորիւնքս հազիւ հազ ըսկըսան”, ասէ, “գընալ։”
Զի հատից կարճ, առ զոր խնդրէրն։
Հաս պայմանեալ ժամն եւ ընկերըն պահանջէ
Ըզտուն, ըզխուց իւր, ըզխշտեակ։
Շունն այս անգամ ցոյց զատամունս իւր եւ ասէ,
“Ելանել եմ պատրաստ ողջոյն խմով գնդաւ,
Թէ արտաքսել կարող ես զիս։”
Մանկունքն էին արդէն հըզօր։
Զոր ինչ տայ ոք անըզգամաց՝ զըղջանայ միշտ.
Առ ի կորզել ի նոցանէ զոր ետըն փոխ՝

Հարկ է գժտել,
Երթալ յատեան, տալ պատերազմ։
Թող առնուլ մի ոտն ի տան քում,
Նոքա իսկոյն առնուցուն չորս։

---

## ԱՌԱԿ Ը.

### *Արծուի եւ Բզէզ. 4—4*

Արծուի լինէր հետամուտ տեառըն ճագարի,
Որ դէպ ուղիղ յորջ իւր փութայր փախստական։
Բոյն բըզէզի հանդիպի նմա զճանապարհայն։
Թողում խորհել թէ այս խոռոչ
Է՞ր ամուր ինչ։ Այլ յո՞ երթալ
մարթէր. ճագարն անդէն կծկի։
Սակայն արծուին յապաստան անդըր խոյանայ.
Բզէզն առնու բարեխօսել զայս օրինակ.
“Դշխոյդ հաւուց, դիւրին է քեզ,
Զառեալ ինձ ակն՝ յափշտակել տանել զայս հէք.
Այլ աղաչեմ, մի առներ ինձ զայդ թշնամանս.
Եւ զի խնդրէ ճագարդ ի քէն շնորհել զարեւն,
Տուր զայն նըմա, կամ զերկոսինս արկ յարեւէ.
Դրացի իմ է եւ մըտերիմ։„
Արամազդեայ թռչունն առանց պատասխանւոյ,
Ըզբըզէզն հար թեւով իւրով,
Ընդարմացոյց, ստիպեաց լռել,
Առ ըզճագարն. սակայն բըզէզըն զայրանայ,
Թռուցեալ երթայ ի բոյն արծուոյն,
եւ մինչ նա չէր անդ, խորտակէ

Ըզձուս նորա, ըզնորոգ ձուս,
ըզյոյս նորա ըզկարին քաղցր,
Ոչ խնայեալ միոյն անգամ։
Դարձեալ այսրէն արծուոյն յիւր բոյն՝ ետես զաւերն,
Ելից զերկինս գուժիւ. ընդ այն
դըժուարանայր նա մանաւանդ,
Զի ոչ գիտէր յումմէ առնուլ ըզվրէժ քինուն.
Հեծէ ընդ վայր. կական նորա ցնդի ընդ օդս.
Իբրեւ ըզմայր սրտառուչ կեալ
զամ մի ողջոյն ըստիպի նա։
Ի գալ տարւոյն յեւըրս բարձու դընէ զիւր բոյն։
Որսացեալ ժամ պատեհ բըզէ-
զըն խորտակէ դարձեալ ըզձուսն։
Այսպէս մահուան ճագարին վրէժ
խնդրի դարձեալ։
Այս երկրորդ կոծն էր այնպիսի
մինչ անտառաց կրկնել ընդդէմ
Զամիսըս վեց՝ ոչ տեսեալ քուն։
Հաւն որ կըրէ ըզԴանիմէդ՝[27]
Առ դիցն իշխան գայ պաղատել.
Ի գիրկ նորա արկ ըզձուս իւր, համարէր թէ յապահովի
Կացցեն անդէն, եւ թէ յիւրոյ օգտին աղագս
Բռնաւորի Որմիզդ պաշտպան լինել նոցին։
Ո՞ր այն յանդուգն իշխէր առնուլ անտի զնոսա.
Եւ արդարեւ իսկ չէառ ոք։
Այլ թշնամին խառնէ այլ խելս.
Ի պատմուճան անդր աստուծոյն արկանէ ցիխ,
Զոր թօթափել կամեցեալ դիցն
ետ անկանել ձըւոցն ի վայր.

Ընհոգութեանս այսմիկ արծուին լեալ իրազգած,
Ըսպառնացաւ Արամազդայ
Զարքունիս նորա լքեալ երթալ նստել յանապատի,
Լինել ազատ ի պալատոյից հպատակութեան
Եւ յայլ բազում անհարթութեանց։
Բարին Որմիզդ լռեաց, ասեն։
Բըզէզն ելեալ յատեան նորա՝
Եղեւ տրտունջ, եւ պատմեաց զիրսն։
Ազգ արարին արծուոյն, ասեն թէ քո է մեղ·
Այլ թշնամիքն երկու հաշտել ոչ կամեցեալ՝
Իշխանըն դից հընարեցաւ, համարեալ լաւ,
Ըզժամանակ խառնից արծուոյն փոխեալ՝ դընել
Յայնմ մասին տարւոյ մինչ տոհմ կոյադնդիւ
Ի ձմերոցի է, եւ հանգոյն իմն առնիտաց
Թաքչի եւ ոչ տեսանէ լոյս։

---

## ԱՌԱԿ Թ.

*Առեւծ եւ Մժղուկ. 4—4*

“Ի բաց գնա, ով գըծուծ միջատ, դու աղբ երկրի։„
Այսպիսի ինչ բանիւք առիւծ
Սաստէր յաւուր միում մժխոյ։
Մրիւն ի կըռիւ եւ ընդ նըմա·
“Համարիցի՞ս„, ասէ, “աղէ, թէ յորջորջելըդ քո Արքայ
Արկանէ ինչ յիս երկիւղուկս, կամ տայ հոգալ·
Ո՞չ եզն ուժեղ է քան ըզքեզ·
Վարեմ եւ զնա ես ըստ հաճոյս։„
Այն ինչ ըզբան իւր վախճանեալ՝

փուլանըշանս հարկանէր նա․
Ինքն էր եւ փող, եւ ախոյեան։
Ի սկզբան անդ խաղայր արձակ․
Յետուստ ուրեմըն գըտեալ դէպ ժամ խոյացաւ
Ի պարանոց անդր առիւծուն զոր գըրեթէ ցընորեցոյց։
Փրփրէ գազանըն, փորոտայ
եւ կայծակունս աչքն արձակեն․
Մռընչէ, բընաւք ղօղէն, դողան շուրջ ըզնովաւ։
Վըխշտ վըտանգիս այս համօրէն
Նըր մըժղըկի միոյ գործուած։
Ճանճի վիժած մ'ի բիւր տեղեաց ծակոտէ զնա․
Մերթ խայթէ զողն, եւ մերթ ըզցռուկ,
Մերթ մըտանէ ի ծակ ռընգացն։
Կատաղութիւնն յայնժամ ի ծագ անդր հասանէր։
Աներեւոյթըն թշնամի լեալ յաղթական կայ ծիծաղի,
Զի ոչ ճիրան, ոչ ժանի գոյր ի զայրացեալ գազանի անդ
Որ համակել ըզնա յարիւն չեղեւ նըպաստ․
Իւրովի զանձն իւր պատառէ չըւառականն․
Բատէպ ընդ կուշտսըն շառաչել տայ նա ագւոյն․
Զօղըս ծեծէ, սակայն ի զուր, զայրոյթն յետին
Վաստակեցոյց, ըզգետնի հար,
ահա յորսայս անկեալ դընի։
Մըժեխն յաղթող եւ ի կռուէն․
Որպէս եհարն ի սկզբան փող,
հարեալ եւ այժմ յաղթութեան փող՝
Երթայ 'նդ հանուր տալ աւետիս,
սակայն դիպի զճանապարհայն
Յոստայն սարդի
Ուր եւ զօրհաս իւր գըտանէ։

Զի՞նչ ուսանիմք աստի. ասէ.
Թուի ինձ երկուս ինչըս. մին՝ թէ ի թշնամիս
Մեր ի փոքունց առաւել պարտ է երկնչել.
Միւսըն թէ որ ի վըտանգաց մեծաց զերծաւ՝
Ի փոքրագոյնսըն կորնչի։

---

## ԱՌԱԿ Ժ.

*Էշ բարձեալ սպունգ, Էշ բարձեալ աղ. 4—4*

Իշավար ոմն ի ձեռին ցուպ
Տանէր որպէս կայսըր Հռոմայ
Նըժոյգ երկու երկայնականջ։
Մին բարձեալ սպունգ գընայր զօրէն սուրհանդակի
Միւսն աղերսել տալով ըստէպ՝
Տանէր, որպէս ասեն, սրուակս
Էր շառաշեղ աղի բեռն իւր։ Պանդուխտք մեր ժիրք
Ընդ լեառն, ընդ ձոր, ընդ արահետս
Ի հուն գետոյ միոյ հասին ի վախճանի,
Եւ արգելեալ գըտին զանձինս։
Իշավարն որ զօր զամենայն
օր անցանէր ընդ հունն ընդ այն,
Եւ ի վերայ իշոյն որ էր բարձեալ զսպունգն,
Ըզմեւս զըրաստըն վարելով առաջի իւր,
Որ կամեցեալ ազատօրէն խաղալ յառաջ,
Սուզաւ ի խոր ուրեք յանկարծ.
Ապա յերեաս անդըր ջըրոյն ելեալ զերծաւ.
Զի յետ նըւագս ինչ լողալոյ,
Հալեալ աղին ողջոյն այնպէս

Մինչեւ չզգալ նըմա ծանր ինչ
Յուսոց իւրոց վերայ, գըտաւ թեթեւացեալ։
Ընկեր նորա ըսպնգակիրն առնէ ըզնա իւր օրինակ.
Որպէս ոչխար որ խըրատուն անսայ այլոց։
Ահա էշ մեր ի մէջ գետոյն, պարանոցաւ չափ խորասոյզ,
Ինքն, իշավար իւր եւ ըսպունգ,
Երեքին եւս ծըծեն նոյնչափ. եւ իշավարն, եւ էշըն գորշ
Ոչ գըտեան քան զըսպունգն յետնեալ։
Վերջինս այս այնպէս ծանրացաւ,
Եւ ջուր այնչափ ծըծեաց խմեաց,
Մինչեւ իշոյն ընկճեալ չիշխել ելանել յափն։
Իշավարն հար բուռըն զիշոյն՝ ակըն կալեալ
Դառն օրհասին որ ըստուգիւ կայր մօտալուտ,
Թէ ի թիկունս չէր հասեալ ոք,
այլ թէ ով՝ չէ արդարեւ փոյթ.
Բաւ է զի այս ցուցանէ մեզ թէ չէ արժան
Նոյն օրինակ ամենեցուն վարել ի գործ.
Եւ իմ կամք իսկ յայս կէտ էր գալ։

---

# ԱՌԱԿ ԺԱ.

*Առիւծ եւ Մուկն. 6—6*

Պարտ է, որչափ մարթ է, առնել բարիս այլոց։
Մարդ ունի պէտս յաճախ փոքուն անգամ քան զինքն։
Ճշմարտութեանս այսմիկ առակք երկու վկայեն։
Զանպէսք հաւանութեան առ այս առատ են յոյժ։
Յերկուց թաթից միջի առիւծու, ասեն, եւ
Յանկարծ յանզգաստից մուկըն մի ի գետնոյ։

Թագաւորն անասնոց ի ժամուն անդ յայնմիկ,
Որպիսի էրն եցոյց՝ շնորհելով զարեւն։
Երախտիք առիւծուն ոչ եղեն ընդունայն։
Ո՞ ոք երբեք, ասէ, կարող էր հաւատալ,
Թէ մըկան չընչենոյ կարօտանայր առիւծ։
Սակայն դէպք ետուն զի յելանելն ի մորւոյն
Ընկաւ յանզգաստից առիւծն այն ի թակարդ,
Յորմէ թափել ըզնա չեղեն ատակ մռընչիւնք։
Մուկնըն քաջ փութացաւ, արար այնչափ ժանեօքն,
Զի օղակ մի կրծեալ եղծ քայքայեաց ըզվարմն։
Երկայնամիտ լինել եւ ջանալ ընդ երկար
Քան զոյժ եւ ըզցասումն առնել են բաւական։

---

## ԱՌԱԿ ԺԲ.

*Աղաւնի եւ Մրջիւն. 4—4*

Յեւըս փոքունց անասնոց է միւս օրինակն։
Աղաւնի մի առ ջինջ առուի կայր ըմպել ջուր,
Մինչ մրջիւնիկ մի ի ջուր անդր հակեալ անկաւ։
Էր տեսանել յովկիանու անդ ըզմրջիւնն
Որ զուն գործէր, սակայն ի զուր, հասանել յափն։
Աղաւնեակն այն իսկոյն ի գութ խանդաղատեալ,
Շեղ մի խոտոյ փութայ ի ջուր անդր ընկենուլ։
Յայն շիղ որպէս ի սար մրջիւնն ապաւինի։
Ազատի նա. յետ սակաւուց
Գայր անցանէր ընդ այն հէք ոմըն բոկ ոտիւք։
Դէպ այնպէս իմն եղեւ զի այլն ունէր կապարճ.
Ընդ տեսանել նորա զթռչունն Ափրոդիտեայ,[28]

Համարի զնա իւր որս, անդէն խայտայ խնդայ։
Մինչ հարկանել ըզնա գեղջուկըն պատրաստէր,
Մրջիւնն ըզկրունկ նորա խայթեաց։
Հայեցաւ յետ կոյս շինականն,
Եւ աղաւնոյն լուեալ խօշիւն թռեաւ ի բաց.
Զոյգ ընդ նըմին թռեաւ եւ ճաշ շինականին։
Բնաւ աղաւնի միոյ դանգի։

---

## ԱՌԱԿ ԺԴ.

Աստեղագէտ որ անկանի ի ջրհոր. 4—4

Աստեղագէտ ոմըն յաւուր միում անկաւ
Ի ջրհոր մի։ Ասեն ըզնա, “Ո՛վ աղաջուր,
Մինչ առ ոտամբ քո տեսանել հազիւ կարես,
Զորս են ի վեր քան ըզգլուխ քո գիտել ժըտիս։„
Այս դէպք ինքնին, առանց յառաջ եւս երթալոյ,
Մարթեն լինել ի խրատ բազմաց ի մարդկանէ։
Ի մէջ այնչափ խուռն որերոյ որ կեան յերկրի,
Սակաւք են յոյժ բազում անգամ
Որ լսել բնաւ չախորժիցեն
Եթէ ըզգիր ճակատագրին
ընթեռնուլ քաջ կարեն մարդիկ։
Սակայն այս գիր զոր երգեցին Հոմեր եւ իւրքն,
Զի՞նչ այլ ինչ է թէ ոչ դիպուած ըստ առաջնոց,
Իսկ առ մեւք է այն Տեսչութիւն։
Ըզդիպուածոյ չիք գիտութիւն,
Ապա թէ ոչ, յանիրաւի
Կոչէին զայն պատահար, բախտ, ճակատագիր.

Իւր անըստոյգք են այսոքիկ:
Իսկ ի վերին կամաց աղագս,
Այնորիկ որ զամենայն ինչ
առնէ, եւ ոչ ինչ անխորհուրդ,
Ո՞ գիտէ զայն եթէ ոչ նա, ի ծոց նորա է ընթեռնուլ.
Միթէ յաստեղց ի ճակատուն է՞ նա դրոշմեալ
Զոր ինչ գիշեր յաւիտենից ծածկէ 'նդ քողով.
Եւ հի՞մ, աղէ: Առ ի կրթել արդեւք ըզմիտս
Այնոցիկ որ գրեցին զերկնից եւ զերկրէ գիրս.
Կամ ի տա՞լ մեզ խուսել յանխոյս պատահարաց:
Կամ ի գործե՞լ ի յաջողուածս
ըզմեզ անկարս ի վայելել.
Եւ տալով մեզ ի գուշակեալ բարեաց զարշել՝
Զնոսա փոխել ի չարիս չեւ հասեալ առ մեզ:
Մոլորութիւն է, մանաւանդ վըննաս այսպէսըն հաւատալ:
Շարժի կամարն երկնից, աստեղք
զիւրեանց զընացըն կատարեն,
Եւ զամենայն օր արեգակըն ծագէ մեզ,
Զամենայն օր պայծառութիւն
իւր յաջորդէ սեաւ մըթութեան,
Առանց կարող լինելոյ մեզ անտի զմըտաւ ածել այլ ինչ,
Բայց թէ հարկ իմն է նմա ծագել եւ տալ մեզ լոյս,
Ըզփոփոխմունս տարւոյն բերել,
հաստուցանել ըզսերմանիս,
Եւ ի վերայ մարմնոց թափել ազդեցութիւնս,
Ըստ ի՞ւ իցէ նըման յողդողդ պատահարաց
Այս անշարժ կարգ որով գընան միշտ տիեզերք:
Ո՛վ զըրախօսք, դիտողք ժամուց
ծնընդոց մարդկան,

*Թողէք, աղէ, զեւրոպական*
*Թագաւորաց վայելչութիւնս դուք.*
*Տարայք ընդ ձեզ եւ ըզփըլչողըս*[29]
*փաղընջուց ժամանակաց.*
*Չէք դուք այլ եւս հաւատալոյ*
*արժանաւորք քան ըզնոսա։*
*Սակայն կարի սրտմըտեցայ.*
*ի պատմութիւն անդր, ո՛ն, եկից.*
*Աստղագիտին որ այբ բունի։*
*Թո՛ղ զայրուեստին նորա սրտոյ զունայնութիւն,*
*Է նա պատկեր որոց պնդին ըզհետ ցնորից,*
*Մինչ ի տագնապ տարակուսի*
*Են եւ ինքեանք, եւ գործք նոցա։*

---

## ԱՌԱԿ ԺԴ.

*Նապաստակ եւ Գորտք. 4—4*

*Նապաստակ մի յորջի խորում կայր մըտախոհ։*
*Արդարեւ զի՞նչ առնել մարթ է*
*յորջի թէ ոչ մըտախոհ կալ։*
*Ի խոր տաղտուկ էր ընկղմեալ Նապաստակ մեր։*
*Անասունս այս տրտում տըխուր*
*է, եւ մաշի միշտ յերկիւղէն։*
*"Ի բուսոյ բարուց երկչոտք*
*Քանի՛ թշուառ են," ասէր նա.*
*Պատառ մի հաց անգամ ուտել չիշխեն օգտիւ.*
*Չիք խնդութիւն նոցա անխառն.*
*միշտ յարձակմունք ազգի ազգիք։*

Ահա որպէս կեամ. անիծեալս այս խուճապանք
Ոչ թողու ինձ ննջել թէ ոչ աչօք բացօք։
Թերբեւս, ‘Ուղղեա զանձն,, ասիցէ
Ցիս ուղեղ մի շատահանճար։
Միթէ ուղղի՞ երկիւղ, ասէ։
“Նա՛, թուի ինձ թէ, խոստովանել թէ կամիցին,
Քան զիս ոչինչ ընդհատ երկչոտ են եւ մարդիկ։„
Այսպէս անձամբ անձին խօսէր նապաստակ մեր,
Սակայն եւ այնպէս խընամով կայր ի զգուշի.
Ի կասկածի էր, չէր անքոյթ.
Շունչ, հովանի, եւ այլ չնչին
ինչ, ամենայն տայր նըմա ահ։
Սեւամաղձոտն անասուն մինչ
Ածէր զմըտաւ զայս օրինակ,
Լըսէ թեթեւ աղմուկ, եւ այս բաւ էր նըմա
փութալ ապրել յորջէ իւրմէ։
Խոյս ետ, եւ այն ինչ առ մօրիւ անցանէր նա,
Գորտք իսկ եւ իսկ սկսան ի մօր անդր ոստուցեալ՝
Ի խոր անձաւս իւրեանց ղօղել։
“Բա՛բէ,„ ասէ, “տամ ես առնել այլոց այնպէս,
Որպէս եւ այլք տան ինձ առնել։ Մօտըն լինել
Իմ արկանէ ահ. ըզքանակըս խախտեմ ես.
Եւ ուստի՞ ինձ այս քաջութիւն։
Օ՜ ինչ, անասունք դողան յինէն.
Ապա եմ շանթ պատերազմի։„
Չիք, տեսանեմ, յաշխարհի մարդ այնպէս երկչոտ,
Ում չիցէ մարթ գըտանել այլ երկչոտ քան զինքն։

---

# ԱՌԱԿ ԺԵ.

*Աղուէս եւ Աքաղաղ. 4—4*

Յոտոյ միոյ վերայ կայր դէտ
Աքաղաղ մի չարաճըճի յոյժ եւ ճարտար։
"Եղբայր," ասէ ցնա աղուէսըն փաղաքուշ,
"Գիտե՞ս արդեւք զի գուպարածըն դադարեաց
Որ ի միջի մերում, եմք հաշտ այսուհետեւ.
Եկի պատմել, էջ, գիրկ ընդ խառըն փարեսցուք,
Օ՛ն, փարելի ասեմ, մի տար ինձ յապաղել.
Երթալ մըղոնըս քըսան պարտ է ինձ այսօր։
Ազդ արասջիր դու ձերայոց զ՚ իցեն անքոյթ.
Խող զարարովք իւրովք դայցէ իւրաքանչիւր.
Ջեռըն տալ ձեզ իբրեւ եղբարք պատրաստ են մերք
Ճըրագալոյց մեծ լիցի ձեզ այս երեկոյ.
Այլ դու առ ժամս եկ ընդունել
Եղբայրական իմոյ սիրոյ համբոյր աննենգ։"
"Եղբայր," ասէ խորագէտ հաւն, "հաւատա ինձ,
Չէր մարթ լսել ինձ աւետարեւ քաղցր եւ հաճոյ
Քան զայդ համբաւ
Խաղաղութեան.
Նա մանաւանդ ընդ այն ուրախ եմ զի ի քէն
Ունիմ զայդ լուր։
Բարակք երկու զոր տեսանեմ՝ են օժընդակք
Որ առաքին, որպէս թըւի, ըզնոյն իրաց տալ աւետիս։
Գան տագնապաւ, յական քըթթել լիցին աստէն.
Իջանեմ արդ, միմեանց տացուք համբոյր սրտիւ։"
"Մնասջիր բարեաւ," ասէ աղուէսըն լուեալ զայս.

«Յոր դէմ եղեալս եմ ճանապարհ երկայն է յոյժ.
Զյաջողուածոյ գործոյս ուրախ
լերուք յայլում դիպող ժամու:»
Զայս ասացեալ նենգաժետին՝ ամբարձեալ զոտս
Նա լոյս անտի՝ դժգոհ ընդ դաւն:
Իսկ հինօրեայն մեր աքաղաղ ունչս արարեալ,
Փայտի 'նդ երկիւղ վեհերոտին:
Ըզխաբեբայն է արդարեւ խաբել կրկին ուրախութիւն:

---

## ԱՌԱԿ ԺԶ.

*Ագռաւ որ ցանկայ նմանել Արծուոյ. 4—4*

Արամազդեայ հաւըն զօշխար մի առ տարաւ.
Ականատես լեալ ագռաւուն՝
Թէպէտ տըկար երիկամամբք,
այլ շատակեր ոչինչ ընդհատ,
Ըզնոյն եւ ինքն առնել առ ժամըն ժըտեցաւ:
Շուրջ ըզհօտիւն յածի ըստէպ.
Ի մէջ հարեւր խաշանց ընտրէ
ըզգեղեցիկն եւ ըզպարարտ.
Խոյ արժանի ողջակիզաց.
Որ բերանոյ դիցն էր պահեալ:
Մըտակորոյս ագռաւն ի նա լեալ ակնակուլ,
«Չըգիտեմ, ո՛ ըզքեզ սընոյց,»
Ասէ, «սակայն մարմին քո ինձ թըւի չքնաղ.
Նըղեցիս ինձ ի կերակուր:»
Յայս բան ագռաւըն խոյանայ ի բառաչող օդւոյն վերայ:
Ոչխարազգին այն արարած

Քան զմաճառակ պանրոյ էր ծանր,
Թող զի գրգալթն
Էր մազեղ յոյժ,
Եւ խառնիխուռն գոգցես այնպէս,
Որպէս մօրուք Պողիփեմայ.[30]
Խիղճս արկ այնպէս պինդ
զագռաւուն մերոյ մագլաց,
Զի անասունն հէք ճողոպրել չեղեւ ատակ:
Եկըն հովիւն, կալաւ ըզնա, արկ ի վանդակ,
Եւ ետ մանկանցն ի խաղալիկ:
Զանձին ըզչափ գիտել պարտ է.
պատճառն է պարզ.
Գողոց փոքունց վայ թէ ժըտին լինել գող մեծ,
Օրինակն է թելադրութիւն չար ապաքէն:
Ոչ ամենայն որ շըռայլէ ի ծախս իցէ ընչեղագոյն,
Ընդ ուր պիծակն անցանէ՝ մունն առնու ըզկայ:

---

## ԱՌԱԿ ԺԸ.

*Սիրամարգ որ տրտունջ լինի առ Հերայ. 4—4*

Սիրամարգն հաւ առ դիսն Հերա[31] լինի տրտունջ.
"Ո՛վ դիք," ասէր, "չէ վայրապար,
Զի տրտնջեմ, զի քըրթմնջեմ.
Երգըն զոր ինձ պարգեւեցեր՝
Ողջոյն բնութեան է անհաճոյ,
Մինչդեռ սոխակ, դոյզն արարած,
Ունի բարբառ քաղցրը եւ յորդ,
Ինքն է միայն պարծանք գարնան:"

Հերա ցասմամբ պատասխանի տուեալ ասէ,
„Հաւ Նախանձոտ, որում բընաւ լըռել պարտ էր,
Իցէ արժան քեզ սոխակի
երգոյն բերել այդպէս նախանձ,
Քեզ՝ զորոց շուրջ պարանոցաւն է տեսանել
Ծիածան իմն որ ունի զերփն ըզձամկաւորըն դիպակաց.
Որ սիգալով ճեմես պարզեալ
Ըզպերճ տուտունդ որ թըւի իմըն յաչըս մեր
Իբր ըզխանութ ակնագործաց։
Իցէ՞ թռչուն մի ընդ երկնիւք
Որ քան ըզքեզ հաճոյ լինել այլոց կարէ։
Ոչ ամենայն անասնոց են ամենայն ձիրք.
Քեզ տուաք մեք ձիրըս պէսպէս.
Կիտոց տուեալ է մեծութիւն, եւ այլոց ոյժ.
Բազէն թեթեւ է, եւ արծուին է քաջասիրտ.
Ագռաւ՝ դիպող ի գուշակել.
Ձայն ըզգալոց չարեաց տայ գոյժ.
Անձնիւր է գոհ ընդ գեղգեղանս իւրոյ երգոյն։
Դադարեցո ըզքըրթմնջիւնդ ապա թէ ոչ ի պատուհաս
Հանեմ ըզթեւսդ քո ի քէն։

---

## ԱՌԱԿ ԺԲ.

*Կոռզ փոխեալ ի կիա. 4—4*

Այր ոմըն զիւր կուզ սիրէր յոյժ.
Ասէր, „Սիրուն եւ գեղեցիկ է, եւ քնքուշ.
Նըւայ մեղմիկ։"
Էր քան ըզխօլս նա խօլագոյն։

Այրն աղօթիւք եւ արտասուօք,
Կախարդանօք եւ հըմայիւք
Ջանայ այնչափ մինչեւ առնու ի հրամանաց,
Զի կուզն յաւուր միում այգուց
Լինի կին մարդ, եւ ի նմին իսկ առաւօտուն
Տէրն այն անմիտ առնէ ընդ իւր հասարակ:
Որ ի սիրոյ լոկ էր յիմար՝
Առնի յիմար առ տռփանաց:
Բընաւ երբեք կին գեղեցիկ
Ոչ ապշեցոյց զիւր հոմանին
Այնչափ որչափ հարսնըս նորեկ
Զմաղձոտ զիւր այր:
Սա գգուէ զնա, նա ողոքէ.
Ի բուսոյ բարուց կըզոյ ոչինչ ի նմա գըտանէր այրն.
Նա՝ ընդպատրանսն հասոյց ցայն վայր,
Մինչեւ կարծել յամենայնի եւ ամենայն ուրեք զայն կին
Մինչ մըկունք ինչ որ ընդփախաթըն կրծէին,
Պղտորեցին զուրախութիւն նոր ամուսնոյ:
Իսկոյն յառնէ կայ կինն յոտին.
Այլ յաջողել վըրիպի նա:
Դառնան մըկունքն,
եւ կինըն կայ անդրէն յակձիռս.
Այլ զայս նըւագ հաս ի վերայ.
Քանզի յայլ կերպըս լեալ նորա,
Երկնչէին ոչ եւս մըկունք ի նըմանէ:
Այս ինձ եղեւ նըմա հրապոյր:
Այնչափ սաստիկ է ոյժ բնութեան.
Ծաղր առնէ նա զամենայնիւ.
անց ժամանակ ինչ ի վերայ,

Ծծեաց անօթն, եւ ըղձալ իւր էառ կըտաւն.
Յընդելական գնացից ի զուր
Եւ զնա ջանալ դարձուցանել.
Զինչ եւ առնել հնարիցի ոք,
Նորոգել չէ հընար ըզնա։
Հարուած գանի, ոչ խարազան
Կարէ զպայման իւր տալ նըմա փոխել երբեք։
Երկ գաւազան ի կիր, աղէ,
Մըճարել ինչ չառնիս կարող։
Թէ փակեսցես ըզդուրս ընդդէմ,
Ընդ պատուհանըս մտցէ նա։

---

# ԱՌԱԿ ԺԹ.

*Առիւծ եւ Էշ որ նշանձն. յորս. 4—4*

Եղեւ օր մի զի Թագաւորն անասնոց եւ
Յորս էրէոց։ Խմբէր նա զօր տօնին իւրոյ։
Որս առիւծուն ոչ են ճնճղուկք,
Այլ յաղթանդամ կինճք,
այծեմունք, եղինք ընտիրք։
Առ յաջողել յայս գործ՝ կալաւ
Ի սպասու զէշն
Ստենտորաձայն։[32]
Քաջի արանցն, առիւծուն, էշն. եղեւ փողար։
Կացոյց առեւծն ըզնա պահակ, ծածկեաց ոստովք,
Խանչել նըմա տըւեալ պատուէր,
գիտելով չափ թէ յայն բարբառ,

՝Նոքին իսկ որ չէին երկչոտ յոյժ տալոց էին խոյս ի տանէ.
Երամք նոցա տակաւին ոչ էին սովոր
Որոտընդոստ ձայնի նորա.
Օդըն թնդէր յաղմուկ ահեղ.
Զանտառաց հիւրսն ունէր սարսուռ.
Ամենեքին փախեան, յանզերծ
Թակարդն անկան ամենեքին,
Ուր կայր մընայր նոցա առիւծն։
“Բարւոք,կարծեմ, ծառայեցի ես զայս նըւագ,„
Ասէ էշ մեր, անձին տըւեալ
ըզբովանդակ պատիւ որսոյն։
Պատասխանի տըւեալ առեւծն
ասէ, “Այո՛, քաջ է գոչիւնդ.
Եթէ չէի ծանօթ անձին քում եւ ցեղիդ,
Ես ինքն արդեւք զարհուրէի։„
Էշն, եթէ էր համարձակեալ,
ի բարկութիւն բրդէր ընդ բանն,
Թէպէտ կատակն էր յիրաւի.
Զի ժուժկալել ո՞ կարիցէ պարծուկ իշոյ.
Ոչ է նոցա այդ բոյս բարուց։

---

## ԱՌԱԿ Ի.

*Կոռակ զոր մեկնէ Եսովպոս. 4—4*

Թէ ճշմարիտ է զոր ասենըն զԵսովպայ,
Ապաքէն էր նա աշխարհին Յունաց պատգամ.
Իմաստութիւն նորա էր բամ

Առաւել քան զԱրիսպագին:[33]

Եւ ի հանդէս սորին դիցուք
Ըստ պատմութիւն մի՝ գեղեցիկ,
Եւ ընթեռնլեաց հաճոյ անշուշտ:
Ասեն թէ առն ուրումն էին դստերք երեք.
Իւրաքանչիւր այլազգ բարուք.
Մին արբեցող, եւ պչրող միւսն.
Երրորդն էր յոյժ ճղճիմ կըցիր:
Այրըն կտակաւ
Ըստ օրինաց երկրին իւրոյ
Նոցա ըզգոյս իւր հաւասար բաժնիւ եթող,
Տըւեալ եւ մօր նոցա նոյնչափ,
Զոր հատուսցեն, ասէր, յորժամ իւրաքանչիւր
Ձունիցի ինչ յիւրմէ բաժնէն:
Մեռանի հայրն, աղջկունք երեք
Դիմեն ի կտակն առանց բընաւ դանդաղելոյ.
Ընթեռնուն զայն, եւ ջանան իսկ
Ըզկտակագրին հրաման լսել:
Սակայն ի զուր, զի զիա՛րդ մարթ էր իմանալ
Զայն բան թէ մէն մի քոյր յորժամ
Ձունիցի՛ այլ եւս ինչ մասն յիւրմէ բաժնէն,
Յայնժամ իւրում մօրն հատուսցէ:
Քանզի զանինչըն լինել չէ ,
Մարթ հատուցման դընել պայման:
Զի՞նչ հայրն ասել կամէր ուրեմն:
Կալան խորհուրդ այսր աղագաւ, եւ օրէնսգէտք
Յետ ըզխնդիրըն շրջելոյ
Հազար եւ բիւր օրինակաւ,
Լեալ յուսահատ, ըզպարտութիւն խոստովանին,

Եւ տան խորհուրդ ժառանգորդաց
Առնուլ մէն մի զիւր ըզբաժին
առանց ընդ բանս ինչ ածելոյ.
Իսկ ըզբաժնէն կընոջն այրւոյ՝
Զայս իմըն խրատ ետուն նոքա,
"Թող յերից քերց," ասեն, "անցնիւր
առնուցու յանձըն մուրհակաւ
Հատուցանել զնորա բաժնին զերրորդ զինչ եւ կամիցի.
Կամ տացի հաս, թէ կամի կինն,
Յօրէ անտի առնըն մահուան։
Այսպէս կարգեալ բաժանեցին՝ զինչսըն յերիս.
Յառաջնում անդ տունք սրուակի,
Ընդ ձողաբարձ որթովք սեղանք սկաւառակաց,
Սպասք սեղանոյ արծաթեղէնք, կոնքք եւ ստոմանք
Եւ Մաղուազեան[34] գինւոյ մառանք,
Ըերանոյ ծառայք, միով բանիւ ասել,
Կահ եւ կազմած շռայտութեան.
Յերրորդումն անդ ըսպասք զարդուց,
Տուն քաղաքի եւ կահք ընտիրք,
Ականակապ զարդք, պատուական ագանելիք.
Իսկ յերրորդումն անդ ագարակք, առտընին հող,
Հօտք եւ անդեայք, մարգագետինք,
Ծառայք եւ գրաստք։

Այսպէս կարգեալ՝ խորհին յետոյ
թէ դէպք այնպէս տացեն թերեւս,
Զի ոչ միում ի քերց անտի
Ելցէ վիճակ զոր նայն սիրէ,
Ուստի անցնիւր էառ անձամբ զոր ախորժէրն,
Հատեալ նախ գինս ամենայնի։

ՅԱթենացւոց քաղաքի անդ
Պատմի թէ այս պատահեցաւ։
Փոքունք եւ մեծք, ամենքին հաճեցան յոյժ
Ընդ այս բաժին եւ ընտրութիւն.
Եսովպ միայն, ասեն, եցոյց,
Թէ յետ բազում ժամանակի, յոլով ջանից,
Ամենեւին իսկ հակառակ
Ալտակագրին էր այն վճիռ։
«Եթէ մեռեալն էր կենդանի,»
ասէ, «ո՛վ դուք, Ատտիկեցիք,
Որչափ արդեւք կշտամբանաց
Բանս ի նմանէ լսէիք դուք.
Զիա՛րդ այս ազգ որ ձեռն յանձին հարեալ պարծի,
Թէ իմաստուն քան զամենայն ազգ է այսօր,
Իմացաւ ա՛յնպէս չարաչար ըզվերջին կամս
Ալտակագրի ուրումն։» Զայս ասացեալ նա՝
Բաժանեաց ինքն օրինակ զայս.
Իւրաքանչիւր քեռ ետ բաժին
ընդդէմ իւրում յօժարութեան,
Ոչինչ որ էր պատշաճագոյն,
Ուստի եւ ոչ հաճոյ նոցա։
Զարդասիրին ետ զամենայն
Որ արբեցող մարդկան անկ է.
Գինետէրն առ ոչխար, արջառ.
Ըզյօրինիչ հերաց կանայս առ տընարարն։
Այս էր խորհուրդ Փըռիւգացւոյն.[35]
Ասէր թէ ոչ գոյր այլ հընար
Այնպէս զօրեղ առ ի ստիպել զայն աղջըկունս
Զքւրեանց բաժինսըն վաճառել.

Ամուսնանալ եւըս մարթ է
նոցա ՚նդ տոհմիկ երիտասարդս,
Յորժամ տեսցի եթէ ունին նոքա արծաթ.
Յայնժամ եւ մօր իւրեանց կարեն տալ զիւր բաժին,
Զի յընչից հօր իւրեանց մնասցէ նոցա ոչինչ,
Որպէս եւ կտակըն պատուիրէ։
Յապուշ կրթալ ժողովրդեանն՝
ասեն, “Զիա՞րդ իցէ հընար
Միոյ մարդոյ ունել հանճար
Քան զբազմութիւն այնչափ մարդկան։„



# ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ



## ԱՌԱԿ Ա.

*Մշաղաց, Որդին եւ*
*էշ. 4—4*

Ո’ է իրաւունք անդրանկութեան
գիւտ արուեստից,
Պարտական եմք զառակն Հընոյն
Յունաստանի։
Այլ զարտորայս զայս չէ հընար
հնձել այնպէս,
Զի որ յետոյն գան չգտցեն
հասկ ի քաղել։
Յառասպելաց երկրին է հող
բազում անտէր.
Մատենագիրք մեր միշտ անդէն զըտանեն ինչ։
Ասացից քեզ պատմութիւն մի հանճարեղ յոյժ,
Զոր Րաքանայ[36] երբեմն, ասեն,
պատմեաց Մալէրպ։[36]
Ովրատեայ[37] այս ոտիւք երկու,
ժառանգաւորք քնարի նորա,

Աշակերտք Ապողոնի,[38]
Նա մեր իսկ տեարք, լաւ եւս ասել,
Դիպին միմեանց յաւուր միում
միայն, առանց այլոյ ուրուք:
Եւ զի զգաղտնիս իւրեանց եւ զհոգս
յայտնել միմեանց էին սովորք:
Բաքան ըսկիզըն արար այսպէս.
"Աղէ, ասա ինձ, աղաչեմ,
Դու որ պարտիս լինել տեղեակ աստի իրաց,
Որ անցեալ ես ընդ ամենայն կարգս աշխարհի,
Եւ յորմէ յայդ տիս ծերութեան չվրիպէ ինչ,
Յի՞նչ գործ արկից
ձեռն. արդ խորհել հաս ժամանակ:
Չես ինչ անգէտ ընչից իմոց
եւ քանքարոյ եւ ծընընդեան:
Ի գաւառի ուրե՞ք արդեւք
հաստատեցից զիմ բնակութիւն.
Ի բանակի՞ կալայց պաշտօն,
թէ յարքունիս ինչ բարձ պատուոյ.
Ամենայն ինչ յաստիս է խառն
եւ դառնութեամբ, եւ հեշտանօք.
Պատերազմն իսկ զիւր քաղցրութիւն
ունի, զիւր ցաւս՝ ամուսնութիւն.
Թէ ճաշակին իմում անսամ,
գիտեմ թէ յո՛ դիմել է լաւ.
Այլ հաճել պարտ է զիմս եւ զազգն եւ զարքունիս:"
Առ այս Մալէրպ ասէ. "Հաճել զամենեսի՞ն:
Չեւ տըւեալ իմ պատասխանի, լուր դու զառակս.
Ընթերցեալ իմ է ուրեք թէ ոմըն մլաղաց եւ որդին իւր,

Մ՛ին ծեր եւ միւսն մանուկ, թէպէտ ոչ կարի փոքր,
Այլ պատանի հնգետասան ամաց, եթէ յիշեմ բարւոք,
Վաճառել զէշ իւրեանց երթան
 օր մի որ էր տօնավաճառ։
Որպէս զի զրաստն իցէ կայտառ,
 եւ դիւրագոյն ի վաճառել,
 Զոտս անասնոյն կապեն պնդեն տանել ի կախ·
Այրն եւ որդին ապա բառնան
 յուս զանասունն իբրեւ կանթեղ։
Ո՛վ հէք որեար, ո՛վ աղաջուրք,
 ո՛վ զոյգ տըգէտ շինականաց։
 Առաջին այրն որ տեսանէ՝ բառնայ քըքիջ·
 ՙԶի՛նչ խաղ, ասէ, խաղան մարդիկդ
 այդ խեղկատակ·
 Յերից աստի իշագոյն չէ այն որ կարծի։,
 Յայս բան մլաղացն առնու ի միտ զիւր խակութիւն·
 Կացուցեալ զէշն յոտից վերայ՝ թողու գընալ։
 Էշն որում էր հաճոյագոյն երթալ ի կախ,
 Բանքատի յիւր բարբառ· չառնէ փոյթ մըլաղացն·
 Հեծուցանէ զորդին, եւ ինքն գընայ· յանկարծ
Վաճառականք երեք անցին·
 չախորժեցան ընդ այն տեսիլ·
Երիցագոյնն առ պատանին
 գոչեաց, որչափ ինչ մարթացաւ·
 ՙՕն, էջ այտի, մի մեղադիր լեալ ասիցեն,
 Բա՛բէ, մանուկ մարդ որ վարես զայր ալեւոր·
 Քեզ պարտ է գնալ հետի, ծերոյդ՝
 հեծանել յէշ։,
 ՙՏեարք, եւ ըզձեզ պարտ է հաճել,, ասէ մլաղացն։

Էջ պատանին իսկոյն, եւ ծերն ել յանդրուարն,
Մինչ աղջըկունք երեք անցեալ
ընդ այն՝ ասէ մին, ‘Ամօթ մեծ.
Իցէ՞ արժան մըղել այդպէս մանուկ մատաղ.
Մինչ գագաշեալըս քըմաբար անցեալ նստի.
Լայնեալ իբրեւ զորթ ի վերայ
իշոյն, կարծէ զանձն իմաստուն։,
Մըլաղացն ասէ, ‘Յիմ տիս չէք որթ,
Հաւատա ինձ, աղջիկ, մատո յառաջ զուղէդ։,
Յետ այլեւայլ ծաղու բանից որ երկուստեք արձակեցան,
Ըզչարեալ այրն, հան ի գաւակ իշոյն զորդին։
Այն ինչ երթեալ քայլս երեսուն՝ այլ խումբ երրորդ
Եգիտ այլ իմըն մեղադրանս.
‘Մոլին որեարդ’, գոչեաց մին.
‘Էշըն չունի ժոյժ, ի գանէն մեռցի անշուշտ.
Ըզգըրաստիկն իցէ՞ արժան տանջել այդպէս։
Չունին բընաւ գութ ընդ իւրեանց վաստակաւորն.
Թերեւս ըզմորթըն վաճառել երթան դոքա։,
‘Բա՛բէ’, ասէ մլաղացն, ‘յիմար է նա խելօք,
Որ համարի հաճել զաշխարհ եւ ըզհայր իւր.
Բայց եւ այնպէս եկ փորձեսցուք, միթէ իւիք
Լիցո՞ւք ատակ։, Իջին յայնժամ երկոքին եւս.
Էշն իբր իշխան խաղայր յառաջ։
Ոմն հանդիպեալ՝ ասէ. ‘Միթէ նո՞ր ինչ է այդ.
Իշոյն երթալ ըստ իւր հեշտի,
եւ մլաղացին այդպէս տուայտել.
Իշո՞յն թէ տեառն իցէ արժան լինել աշխատ.
Իրաստ տամ արանցդ փակել ըզդա ի վանդակի.
Ըզհողաթափս իւրեանց մաշեն, խնայեն իշոյն.

Ընդ հակառակըն Նիքողա.
յերկթալ սորա յայց Յովհաննայ,
Հեծանի յէշ իւր, որպէս եւ հին երգն ասէ:,
Ո՛վ գեղեցիկ երրեակ իշոց:, Ասէ մլաղացն.
Է՞շ եմ ես, ճշմարիտ է.
հաճ եմ ընդ այդ, խոստովանիմ.
Բայց յայսմ հետէ թէ՛ պարսաւեն զիս, թէ՛ գովեն,
Ասիցեն ինչ կամ չասիցեն,
Կամիմ առնել ըստ հաճոյս իմ:,
Արար այնպէս, եւ յիրաւի:
"Եւ դու, Բաքան, գնա զհետ Արեայ,[39]
կամ Ատենի, կամ արքայի,
Ե՛կ, երթ, ընթա՛, կաց ի գաւառս.
Առ դու քեզ կին, աղարողոն,
պաշտօն եւ կամ իշխանութիւն,
Մարդիկ գտցեն միշտ ասել ինչ, մի՛ երկմըտիր:„

---

## ԱՌԱԿ Բ.

*Անդամք եւ Ստամոքս. 6—6*

Պարտ եւ պատշաճ էր ինձ յառնէ թագաւորէ
Ըզկիզըն առնել յայս գործ:
Թէ մանըր քննեսցուք,
Թագաւորի ճշգրիտ պատկեր է որովայն.
Թէ ունի պէտս իմիք՝ ողջոյն մարմինն ըզգայ:
Վասըն նորա անդամք յաշխատելոյ խոնջեալք,
Մէն մի ի նոցանէ կեալ ուրոյն խորհեցաւ.
Ոչ իւիք ըզբաղել զօրէն որովայնի:

“Առանց մեր,” ասէին, “Ճարակեսցի օդով.
Մեք քրտնիմք, տառապիմք պէս գու-
նակ գըրաստուց.
Եւ վասն ո՞յր, եթէ ոչ նորա վասն անօգուտ.
Վաստակք մեր ըսպառին ի տալ նըմա ճարակ։
Բաւ է. կամի նա մեզ զայս արուեստ ուսանել։”
Ասեն եւ կատարեն։ Յունելոյ կասին ձեռք,
Բազուկք՝ ի գործելոյ, եւ ի գընալոյ՝ ոտք.
Եւ ասեն ցորովայնն։ “Երթ, խըն-
դրեա քեզ սընունդ։”
Սակայն սըխալեցան, եւ զղջացան փութով.
Բամբէ, թշուառականք, լուծան անկան իսկոյն։
Ոչ եւըս կազմեցաւ արիւն նոր ի սրտին.
Իւրաքանչիւր անդամ խօթացաւ, կորոյս զոյժ
Յայնժամ ի միտ առին խակագործքն այնոքիկ,
Եթէ այն զոր ինքեանք կարծէին ծոյլ եւ յոյլ,
Առաւել քան նոքա՝ օգնէր ամենեցուն։
Արքունի մեծութեան պատշաճի այս առակ
Առնու նա, բայց եւ տայ. հասարակաց է գործն.
Վասըն նորա մէն մի աշխատի, այլ առնու
փոխարէն զիւր սընունդ
Նա տայ ձեռագիտին կեալ յիւրոց վաստակոց.
Մեծացուցանէ նա զվաճառականըս մեր,
Տայ վարձ պաշտօնէից, եւ զինուորաց թոշակ.
Պահպանէ ըզմըշակն, բաշխէ ի բիւր տեղիս
Ըզշընորհսն արքունի.
Նովաւ յակաստանի կայ աշխարհն համօրէն։
Մենենիոս գիտաց ասել զայս բարւոք յոյժ։
Ազգն ի ծերակուտէն սարտուցեալ ել ի բաց։

«Ամենայն ի ձեր ձեռս է,» ասէին դժգոհքն,
«Եւ՛ գանձ, եւ զօրութիւն, ծոխու-
 թիւն եւ պատիւ.
Ուր ի մերում կողման համակ վիշտ եւ վըտանգ.
Սակ հարկաց եւ տըրոց, ծըգունք պատերազմի։»
Արտաքոյ քաղաքին էր բանակեալ խուժանն,
Նա՛, բազումք գընացեալ խնդրէին այլ երկիր.
Մինչ Մենենիոս[40] ոմն ելեալ եցոյց նոցա,
Թէ անդամոց մարմնոյ էին նոքա նըման.
Եւ առակաւն այնուիկ որ է նըշանաւոր՝
 Ած զամբոխն ի հաւան։

---

## ԱՌԱԿ Գ.

*Գայլ ծպտեալ. 4—4*

Գայլ մի որ այն ինչ ըսկըսեալ էր ունել մասն
 Ի մերձակայ խաշինս հօտին,
Համարեցաւ ի դէպ վարեալ աղուեսաբար՝
 Ծպտել զանձն իւր ի նորոգ ոք։
Ագաւ հանդերձ հովուի, մաշկեակ արկաւ զուսով,
 Զօրէն հովուաց ցուպ ի ձեռին.
 Եգիտ եւ տիկ մի հովուական.
Եւ զի մի ինչ իցէ պակաս խորագիտին,
Կամէր գրել, եթէ մարթ էր, շուրջ ըզլխուրիւն,
«Եմ, եմ ես ինքն իւրաւափառն, հովիւ հօտիս։»
 Կեղծաւորեալ պէս զայս գունակ,
Եւ առաջոյ կողման ոտիւքն յեցեալ յիւր ցուպ,
Իւրաւափառըն[41] խաբուսիկ մատչէր յառաջ։

Ճշմարիտ իրաւափառն ի կողմըն լեալ,
Անդ ի լոտոյն վերայ խորդայր նա խոր ի քուն.
Ի քուն էր շունն, ի քուն եւ տիկըն հովուական.
Յոլովք նոյնպէս եւ յոչխարացն էին ի քուն։
Կեղծաւորն այն Թողու զնոսա 'ստ իւրեանց հեշտի,
Այլ առ կորզել ըզխաշն յիւր որջ,
Ըզձայն իւր եւս կամէր առնել ընկեր դաւոյն.
Վերջին այս նենգ զոր կարեւոր յոյժ կարծէր նա,
Ըզմեքենայն եղծ զլխովին։
Ըզհովուին ձայն ածել ճշդիւ չեղեւ կարող.
Գոչիւնըն զոր հան՝ հնչեցոյց զանտառն ողջոյն,
Եւ առժամայն ել դաւն ի վեր։
Յայն ձայն բոլորք զարթնուն ընդոստ,
Ոչխարք եւ շուն եւ խաշնարած.
Գայլն աղաջուր յաղմըկի անդ
Շաղեալ պատեալ ի մաշկեկին,
Ո՛չ պրծել կարաց եւ ոչ պաշտպանել զանձն։
Կանուխ կամ անագան խայտառակի այր խորամանկ։
Գայլըզգայլոյ գործեսցէ գործ.
Ճշմարտագոյն է այս կարծեմ։

---

## ԱՌԱԿ Դ.

*Գորտք որ խնդրեն թագաւոր. 4—4*

Գորտք տաղտկացեալ
Ընդ տէրութեամբ ռամկավարաց,
Արարին աղաղակաւն իւրեանց այնպէս,

Մինչեւ Որմիզդ[42] արկ ըզնոսա
ընդ միահեծան իշխանութեամբ։
Ընկեցաւ նոցա յերկնից թագաւոր ոք խաղաղասէր.
Այլ թագաւորս այս յանկանելն
արար դղրդիւն իմն այնպիսի,
Մինչեւ սերունդն այն մօրական,
Սերունդ վատ յոյժ, եւ յոյժ երկչոտ,
Գնաց ղօղել զանձն ընդ ջըրով,
Ի կընիւնս անդ եւ յեղեգունս
Ի մէջ մօրին լեալ ծակամուտ։
Դէմ յանդիման հայել չիշխէր ոք ընդ երկար
Յայն որ թուեցաւ նոր ոմն հսկայ։
Էր նա սակայն հեծան մի մեծ,
Ոյր ծանրութիւնն արկ յառաջինն ի նոցունց ահ,
Որ հուսկ ուրեմն հայել ի նա համարձակեալ՝
Եթող զիւր որջ,
Գնաց ի հուպն ըզդողանի.
Միւսն ըզկընի չոքաւ նորա, միւս եւս նոյնպէս.
Եկին ապա այլք բազմախուռն.
Յետուստ ուրեմն ողջոյն երամն ընդելացաւ,
Մինչեւ ոստնուլ յուս արքային։
Բարին իշխան տայ նոցա թոյլ, կայ միշտ հանդարտ։
Յետ սակաւուց փոքըր միւս եւս ցնորէր Որմիզդ.
“Տուր մեզ,„ գոչէր այն խառնաղանճն,
“այլ թագաւոր գնայուն շարժուն.„
Եւ թագաւորն դից առաքէ նոցա ըզկռունկ,
Որ ջախջախէր զնոսա, մերթ եւս եւ սպանանէր.
Էր զի կլանէ ողջ, թէ կամէր։
Յայնժամ բարձին գորտք ըզբողոք.

Նա Արմիզդ մեծն ասէ ցնոսա. «Բա՛րբէ, ձեր կամք
Բռնադատեա՞լ ինչ իցէ զիս:
Ո՞չ լաւ այն էր ձեզ ի սկզբան
Զազատութիւն ձեր ունել պինդ.
Զի չարարէք դուք զայն, արժան էր ձեզ հաճել
Ընդ Թագաւորըն ձեր որ էր հեզ ոմն եւ լուռ:
Ապա զայժմու տեառնէդ ձերմէ եղերուք գոհ,
Գուցէ քան զայն հանդիպեսջիք յոռեգունին:»

---

## ԱՌԱԿ Ե.

*Աղուէս եւ Քօշ. 4—4*

Սեպուհն աղուէս ընկերշակեալ ընդ նոխազի,
Որ բարեկամ էր նորա, բարձըր յոյժ եղջերբք,
Բայց որ ըստ քիթն անդըր հազիւ թէ տեսանէր:
Ուր միւսն ի բնէ, որպէս յայտ է,
մարդահաճոյ է եւ մեղմեխ:
Նըքողեա՛լ ի ծարաւոյ իջին առքա ի գուբ մի խոր,
Իւրաքանչիւր հար ըզպասուք ծարաւոյն անդ:
Յետ ըմպելոյ ցպարպատել երկոքին եւս,
Ասէ աղուէսըն ցընկեր իւր.
«Զի՞նչ արասցուք նոխազ եղբայր.
Ըմպել արբաք, գործ է այժմիկ պրծել աստի.
Բարձ դու զաքեացըդ զառաջոյ
ի վեր, եւ ես ընդ կուռըն քո
Ելից ի վեր նախ մագլելով,
Ապա յեղջիւրըս քո կոխեալ,
Մեքենայիդ օգնութեամբ քաջ

Գտամ մի ի դուրս ելանել թէ յաջողեցայց,
Ապա եւ զքեզ հանից աստի։»
«Ի մօրմէս իմ,» ասէ քօշն,
«երդնում թէ քաջ է խորհուրդ այդ.
Թանկօն սիրելի է ինձ այր ըզգօն իբրեւ ըզքեզ.
Իմ չէր երբեք, խոստովանիմ,
Լեալ այսպիսի գաղտնեաց գիտակ։»
Եւ աղուէսն ի ջրհորոյն, թողեալ զընկերն,
Եւ ի յորդոր համբերութեան
Արկանէ ճառ զայս օրինակ.
«Եթէ այնչափ,» ասէ, «տուեալ էր քեզ երկնից
Զանձար որչափ ունիս ի ծնօտըս քո մօրուս,
Չէր քո, թուի ինձ, իջեալ ի գուբդ։
Արդ ինձ զի՞ փոյթ. յապահովի եմ աւասիկ.
Ջանա եւ դու ճողոպրել զանձն,
եւ զամենայն փոյթ արկ ի կիր.
Զի կարեւոր ինչ գործ է իմ,
Որ չտայ թոյլ ինձ ժամավաճառ լինել յերկար։
Ըզվախճան պարտ է նկատել յամենայնի։»

---

## ԱՌԱԿ Զ.

*Արծուի, կինճ եւ կուզ. 4—4*

Արծուի զիւր ձագսն ունէր ի գլուխ
Ծառոյ ուր մէջն էր փուտ եւ փոր.
Կինճ առ ոտամբն, եւ յերկոցունց ի միջի կուզ.
Եւ անխըռով, այսու բաժնիւ,
Մարք ընդ սանուց իւրեանց կէին անդ խըժաբար։

Կուզըն նենգաւ ըզմիութիւնըն խանգարեաց.
Ել առ արծուին, ասէ, "Մա՜հ մեր
Իմա՝ մանկանց մերոց, զի մահ
որդւոց է մարց մահ ապաքէն.
Չէ յամելոց:
Ո՞չ տեսանես զի ընդ ոտիւք մերովք փորէ խորէ անդուլ
Անիծեալըն այն կինճ, եւ ական իմն հատանէ.
Զկաղնիս անշուշտ տապալել է խորհուրդ նորա,
Ածել կորուստ ձագուց մերոց:
Ընդ անկանել ծառոյն նոքա լինիցին կեր.
Մի ինչ բընաւ երկմըտիցես:
Եթէ մընայր ինձ մի միայն,
ըսփոփէի զիմ վիշտ անշուշտ:"
Յետ երկիւղիւ պաշարելոյ այսպէս զարծուին,
Էջ նենգաւորըն փոյթ ընդ փոյթ
Ի տեղի անդր
Ուր կինճն անկեալ դընէր այն ինչ
զերծեալ յերկանց:
"Ո՛վ բարեկամ իմ եւ դըրացի,"
Ասէ ցընա մեղմով, "ահա ազդ առնեմ քեզ,
Յելանել քո արտաքս՝ արծուին
իջցէ ի քոց ձագուց վերայ.
Զոր ասացիս, աղաչեմ մի հանցես, ի վեր.
Ըզվըրէժ ցասման հանցէ յինէն:"
Ի կասկածանս արկեալ եւ զնա,
Առանձնացաւ կուզն ի ծակ իւր:
Արծուին չիշխէ ելանել եւ հոգալ ըզպէտս
Ձագուց իւրոց, նոյնպէս եւ կինճն:
Անմիտք, չածեն ըզմըտաւ թէ մեծագոյն հոգ

Էջ ի սովոյն կարեաց խուսել:
Երկոքին եւս յամառեալ կան յիւրեանց բունին՝
Իւրաքանչիւր օգնել իւրոցն ի վըտանգի.
Արծուին՝ եթէ տապալի ծառն,
Կինճն յերեսաց արշաւանին:
Քաղցն ըսպառեաց զամենեսին, մընաց ոչ մի
Ի խոճկորաց, եւ ոչ յարծուեաց.
Որ ի կենաց չդարձաւ ի մահ,
Պաշար առատ կըզոցն, ասեմ, չարաճըճեաց:
Զի՞նչ բանսարկու լեզու չեցէ կարող նիւթել
Վ ընաակարըն քըսութեամբ:
Ի չարեաց զորոց ասեն եթէ ելին
Ի Պանդորեան[43] տըփոյ անտի,
Այն զոր ատեայ, եւ յիրաւի, աշխարհ ողջոյն՝
Նենգութիւնն է, որպէս կարծեմ:

---

## ԱՌԱԿ Ը.

*Այր արբշիռ եւ կին նորա. 4—4*

Իւրաքանչիւր ունի զիւր ախտ զորով գայ միշտ.
Ո՛չ ամօթ, ոչ երկիւղ նըմին լինի դարման:
Այսր աղագաւ հնագոյն զըրոյց մի յիշեմ ես,
Չասեմ ինչ զոր չիցեմ կարող ի հաստատել
Օրինակաւ: Յարբանեկաց Բաքոսի[44] ումն,
Ասեն, վատնէր եւ զողջութիւն իւր,
եւ զոգին, եւ ըզքըսակ.
Այս ազգ մարդկան մինչեւ ի կէս
անդր կենաց իւրեանց հասեալ,

*Են ի սպառուած ընչից իւրեանց։*
*Որ մի յաւուրց մինչ խաղմրզով լցեալ սորա*
*Զգայութիւն իւր էր թողեալ*
*ի յատակի անդ սրուակին,*
*Կինն արկ ըզնա ի տապան մի։*
*Ընդ գոլորշիք գինւոյն նորոյ*
*Եռան հանդարտ։ Այրն ի սթափելըն գըտանէ*
*Զմարմինով իւրով շուրջանակի զմահուն կազմած.*
*Ճըրագարան մի եւ պատանըս մեռելոյ.*
*“Բա՛բէ, զի՞նչ այս,„ ասէ, “կի՞ն իմ եղե՞ւ այրի։„*
*Յայս բան կին իւր արկեալ հանդերձ զԱղեկտոնի,*[45]
*Եւ զերեսօք իւրովք դիմակ,*
*փոխեալ եւ զձայն իւր ի նորայն՝*
*Մատուցանէ թան, ըմպելի Արուսեկին։*
*Զերկմըտի այրն ամենեւին*
*Թէ դըժոխոց չիցէ բնակիչ։*
*“Ո՞վ իցես դու,„ ասէ ցՈգին.*
*“Մատակարար արքայութեանն*
*Սատանայի,„ ասէ տեսիլն. “իմ գործ տանել է կերակուր*
*Առ որս փակէ գերեզման սեաւ։„*
*Եւ այրն ասէ հանդարտութեամբ,*
*“Ըմպելի եւս տանի՞ս նոցա։„*

---

## ԱՌԱԿ Ը.

*Յօղացաւ եւ Սարդ. 4—4*

Յորժամ դըժոխք ծընոյց ըզսարդ եւ զյօղացաւ,
"Որդեակք," ասէ, "կարէք պարծել,
Թէ երկրքին եւս էք մարդկան
Ցաւ եւ յերկիւղ:
Այլ արդ տեսցուք թէ ուր բնակել է ձեզ արժան:
Տեսանէ՞ք զայդ անձուկ տընկունս,
Եւ զապարանսըդ հոյակապ, ըզգեղեցիկ եւ զոսկեզօծ:
Ես ի մըտի եդի զնոսա առնել ձեզ տունս:
Ո՜ն, երկու շեղք են աւասիկ,
Իրաւախոհ լերուք, աղէ, կամ ձըգեցէք:"
"Յանձուկ տնկունս," ասէ սարդ մեր,
"չէք ինչ որ ինձ իցէ հաճոյ:"
Միւսն հակառակ նըմին՝ տեսեալ լի զապարանսն
Այնու մարդկամբ որ անուանեալ կոչին բժիշկք,
Ոչ ունէր ակն ըստ իւր հեշտի բընակել անդ.
Ընտրեաց ըզմիւս բաժինն, արար անդէն իւր վանս,
Ի բոյթ ոտին առն աղքատի
'ստ անձին դիւրի զետեղեցաւ.
Ասէ, "Թուի ինձ թէ չեղէց ես աստէն դատարկ,
Եւ ոչ աստի խախտել երթալ վըտարանդի
Ըստիպեսցէ զիս Հիպոկրատ:"[46]
Սակայն սարդ մեր զիւր բնակութիւն
ետ ընդ ձեղուամբ,
Իբր այն թէ զայն տեղի կալաւ վարձու ցըկեանս.
Աշխատէր կալ մընալ անդէն. անդ արկ ոստայն.

Եւ ահա ճանճք եկեալ ի վարմս անկանէին։
Այլ աղախին աւել ի ձեռն
գայ եւ տանի զոստայնն ի բաց։
Ընկանի այլ ոստայն, դարձեալ ածի աւել։
Ընտանիքն հէք զօր ամենայն փոխէ զտեղին.
Հուսկ ուրեմն յետ ունայն ջանից՝
Գայ զգտանել ըզյօղացաւն։ Էր նա ի գեղջ.
Էր եղկելի բիւրապատիկ
Քան զամենայն սարդ եղկելի։
Ասպնջական նորա տանէր
ըզնա երբեմըն ճեղքել փայտ.
Երբեմըն բրել, պեղել։ Ասէր
թէ զյօղացաւ աշխատ առնել
Դարմանել է զնա կիսով չափ։
Բա՛բէ, ասէ յօղացաւ մեր, Զունիմ այլ ժոյժ.
Փոփոխեսցուք, եղբայր իմ սարդ։
Եւ զայս լըւեալ սարդին անդէն
Ունի ըզնա յիւրոց բանից, եւ ի հիւղ անդըր սըպրդի.
Անդ չէք աւել ածել որ տայր նըմա խախտել։
Իսկ յօղացաւն իսկոյն երթայ առնել իւր վանս
Առ երիցու ումեմըն զոր դատապարտէ
Յանկողնոյն մի ուրեք շարժել։
Ըսպեղանիք, Աստուած գիտէ.
ոչ ամաչեն բընաւ մարդիկն
Հիւանդութեան տալ երթալ միշտ
յեւրս վատթարն։
Իւրաքանչիւր այսպէս խորհեալ զիւր շահ օգտին,
Ըզտեղին իւր փոխանակեաց իմաստութեամբ։

---

# ԱՌԱԿ Թ.

*Գայլ եւ Արագիլ. 4—4*

*Ուտել անյագ սովոր են գայլք։*
*Գայլ մի, ասեն, լեալ ի կոչունս՝*
*Վերաւ այնպէս իմն ըշտապաւ,*
*Զի փո՛քր միւս եւս եւ սատակէր.*
*Ոսկըր մի 'խոր անդ կոկորդին, ասեն, մընաց։*
*Յաջողեաց բախտ գայլոյն որ չէր կարող գոչել,*
*Զի արագիլ մի անցանէր անդ ի մօտուստ.*
*Ըկնարկէ գայլն. աճապարեալ արագիլըն.*
*Եւ արկանէ ձեռն ի դարման*
*Զոսկրըն ձգեաց հան, փոխարէն*
*Ճարտարութեանն,*
*Խնդրէր զիւր վարձ։*
*“Վարձ,„ ասէ գայլն,*
*“Ընդ խա՛ղ ասես զայդ, բարեկամ.*
*Ըղէ՛, միթէ չիցէ՞ այն շատ,*
*Զի յորկորոյս ըղպարանոց քո զերծուցեր։*
*Երթ, ապաշնորհ,*
*Մի՛ գուցէ թէ ընդ ձիրանամբք իմովք անկցիս։„*

---

## ԱՌԱԿ Ժ.

*Առեւծ զգետնեալ ի մարդոյ. 4—4*

Ուրեք պատկեր մի կայր կախեալ,
Ուր նկարեալ էր ճարտարին
Առեւծ հըսկայ
Զոր ըզգետնէր մի միայն այր։
Հանդիսատեսքըն պարծէին։
Այլ ըզպարծանս նոցա քակէ
առեւծ յանկարծ անցեալ ընդ այն։
«Այո,» ասէ, «տեսանեմ քաջ,
Աստ յաղթութիւն ի ձեր կողմն է,
Սակայն ճարտարն ըզձեզ խաբէ,
Զի ստեղծանել էր նա ազատ։
Այլ յաղթութիւնըն լինէր մեր, եւ յիրաւի,
Եթէ յեղբարց իմոց գիտէր ոք նկարել։»

---

## ԱՌԱԿ ԺԱ.

*Աղուէս եւ Խաղող. 4—4*

Երբեմն աղուէս մի Գասգոն,[47] այլք
ասեն Նորման,[47]
Սովալըլուկ, ետես կախեալ զորթոյ բարձուէ
Ողկոյզս ինչ որ թուէին խայծեալ,
Եւ կարմրագոյն պատեալ մորթով։
Ջանկալ ցանկայր մեղմեխն առնել անտի իւր ճաշ,
Այլ զի կարող չէր հասանել,

"Խակ են," ասէ,
"եւ խառնալանձ մարդկան ի ճաշ:"
Ո՞չ լաւ էր թէ մեղադրէր զանձն:

---

## ԱՌԱԿ ԺԲ.

*Կարապ եւ Խոհակեր. 6—6*

Ի գառագղի ուրեք
Ուր էին հաւք բազումք,
Կէին ի միասին կարապ եւ ձագ սագի:
Նա զաչըս տեառն իւրոյ ի հաճել միայն էր,
Ըզքիմըս նորա սա: Մին պարծէր թէ իցէ
Երգանեակ պարտիզին, միւսըն տան հացակից:
Զպըշեղջք ապարանիցն են նոցա ձեմելիք:
Եւր տեսանել զերկուսն
ի լիւղ մերթ թեւ առ թեւ,
Մերթ ի վերայ ալեաց ընթանալ կամ սուզել,
Ոչ մարթացեալ հաճել զունայն նախանձ իւրեանց:
Յաւուր միում կարի իմն արբեալ խոհակերն,
Ըզկարապն համարեալ սագ՝ կալաւ ըզվըզէն,
Եւ կամէր փողոտել եւ արկանել ի սան:
Թռչունըն մերձ ի մահ, մինչ է քաղցրաձայն:
Զարմացեալ խոհակերն՝
Ի միտ առ ըզսըխալն
"Զի՞նչ," ասէ, "յեփ արկի՞ց
ես զայս գունակ երգիչ.
Ո՛ն անդըր, քաւ լիցի, թէ ձեռք իմ կորեսցեն

Ըզփող որոյ այսպէս գիտէ վարել նովին:„
Այսպէս ի վըտանգի որ պնդի ըզհետ մեր,
Խօսել մեղմով եւ քաղցր երբեք չառնէ վընաս:

---

## ԱՌԱԿ ԺԳ.

*Գայլք եւ Ոչխարք. 4—4*

Յետ իբր հազար եւ աւելի ամաց կռուոյ,
Գայլք արարին խաղաղութիւն ընդ ոչխարաց:
Այս ապաքէն երկուց կողմանց էր յօգուտ մեծ.
Զի եթէ գայլք մոլորեալ խաշն ինչ ուտէին,
Ոչ սակաւուց գայլոց մորթն էր հովուաց մաշկեակ:
Չէր արդարեւ ազատութիւն արածելոյ,
Բայց կոտորած եւըս հօտին չէր ինչ դիւրին:
Յաւար իւրեանց վայելել չէր
հընար գայլոց՝ բայց յերկիւղ մեծ:
Արդ, հաշտութիւն եղեւ, նաեւ տըւան պատանդք:
Գայլք տան զիւրեանց կորիւնս, ոչխարք՝
զիւրեանց շանին:
Փոխանակելն ըստ օրինի կատարեցաւ,
Վճարեալ ձեռամբ գործակալաց:
Յետ աւուրց ինչ գայլակորիւնք
Լեալ կատարեալ գայլ գիշախանձ,
Որսան պարապ, իբրեւ չէին ի գաւթի անդ
Հովիւք հօտին,
Եւ խողխողեն ըզկէս գառանցըն պարարտաց,
Խածեալ տանին, թաքչին յանտառս:
Ազդ արարեալ էր նոցա գաղտ իւրեանցայոց:

Շանին որ յուխտ նոցա վստահ անկասկած իմըն ննջէին,
Են խեղդամահ ի մէջ քընոյն։
Այսամենայն եղեւ արագ,
մինչչեւ ուրուք լեալ իրազգած։
Ամենեքին պատառեցան գէշ գէշ, եւ ոչ մին ապրեցաւ։
Աստի դիւրին է իմանալ,
Թէ հանապազ պարտ է կռուել ընդ անզգամս։
Խաղաղութիւն է արդարեւ ինքնին բարւոք,
Չեմ անհաւան, այլ զի՞նչ օգուտ անտի, աղէ՛,
Մինչ խորամանկ է թշնամին։

---

## ԱՌԱԿ ԺԴ.

*Առեւծ ծերացեալ. 4—4*

Առեւծ մի՛, ահ անտառաց,
Անցեալ զաւուրբք, եւ ընդ հին ոյժ իւր սրտառուչ։
Յետուստ եղեալ էր խաղ իւրոց հըպատակաց,
Որոց էր լեալ տըկարութեամբ նորա հըզօր։
Ձին մատուցեալ կիցս արձակէր.
Խածատէր գայլն, եւ խեթկէր ցուլ։
Թշուառն առեւծ հաշեալ մաշեալ
տրտում տխուր,
Մռնչել հազիւ իշխէր՝ հաշմեալ առ ծերութեան։
Կալեալ իւրում վախճանին ակն՝ էր անտրտունջ,
Մինչ տեսանէ զէշն իսկ դիմեալ ի մորին իւր։
"Ո՛հ, խիստ է ինձ այս," ասէ ցէշն.
մեռայց, չէ փոյթ,
Այլ կրել զայս վիշտ ի քէն երկիցս է մեռանել։

---

## ԱՌԱԿ ԺԵ.

*Փիղոմեղ եւ Պրոգնէս. 4—4*

*Երբեմն, ասեն, Պրոգնէս[48] ծիծառն*
*Յիւրմէ բունոյն երթայր ի բաց,*
*Ի քաղաքաց հեռի վարեալ*
*Յանտառ ուրեմն ուր Փիղոմեղ[48] գեղգեղէր, հէքն.*
*"Քոյր իմ," ասէ ցընա Պրոգնէս, "ողջո՞յն իցէ.*
*Ահա հազար ամք են զի ոչ տեսաք ըզքեզ.*
*Ոչ յիշեմ բնաւ թէ եկիր դու*
*Յաւուրց անտի Թրակայ լինել ի միջի մեր։*
*Ասա ինձ, զի՞նչ առնել խորհիս.*
*Չիցե՞ս թողլոց ըզբնակութիւնդ զայդ ամայի։"*
*"Բա՛մբէ," ասէ ցնա Փիղոմեղ,*
*"քաղցրագոյն քան զայս իցէ՞ ինչ։"*
*Պրոգնէս ասէ, "Եւ զի՞նչ. զայդ երգ*
*Նուագել աստէն յունկն անասնո՞ց,*
*Եւ կամ թէ շատ՝ շինականա՞ց։*
*Վասն այսպիսի չքնաղ ձիրի՞ց է անապատն.*
*Զըսքանչելիս քո ի քաղաքս եկ ցուցանել.*
*Նա մանաւանդ ի տեսանելդ քո զանտառս,*
*Յուշ լիցին քեզ եթէ զիա՛րդ Տերեւս երբեմն*
*Ի բնակութիւնըս նոյնպիսիս*
*Զանգըթութիւն իւր հան ի գլուխ*
*ընդ քո չքնաղ գեղեցկութիւն։"*
*"Ի յիշատակ անագորոյն թշնամանացն*
*Ես մանաւանդ," պատասխանի*
*ետ քոյր նորա, "զի ոչ գամ ես.*

Ի տեսանել իմում, բամբէ, ըզմարդիկ ես,
Ըզչարագոյնն յիշեմ քան զայն:»

---

## ԱՌԱԿ ԺԶ.

*Կիա Քեղձեայ. 4—4*

Զեմ յայնցանէ ես որ ասեն թէ «Չէ ինչ մեծ,
Թէ կին մարդ է այն որ հեղձնու:
Ես ասեմ թէ մեծ է. կանանց ազգ արժէ քաջ
Զի զըթացուք. ուրախութիւն մեր է այն ազգ:»
Զոր ասացիս՝ չէ վայրապար,
Զի բանք մեր են յառակի աստ
Ըզկընոջէ որ ի յորձանս
Վճարեաց զաւուրս իւր չարաչար:
Այր իւր խնդրէր ըզդի նորա
Առնել նըմա յայնմ աղետի
Պատիւ թաղման:
Դէպ եղեւ այնպէս զի յափունս
Գետոյն որ էր պատճառ մահուն՝
Շըջէին արք, անգէտք գործոյն:
Հարցանէ այրըն ցընոսա.
«Տեսէ՞ք արդեւք,» ասէ, «հետս ինչ
Ըզկնոջն իմոյ:»
«Ոչ ուրեք,» ետ պատասխանի
Մին, «այլ խնդրեա խոնարհագոյն.
Երթ հոսանաց գետոյն ըզհետ:»
Միւս ոմն ասէ, «Մի՛ ի խոնարհ,
Այլ դարձ ի վեր կոյս մանաւանդ:

Ո՛րչափ եւ դար իցէ տեղին եւ զառիթափ,
Ընդ որ խաղաց ջըրոյն մարթէր տանել ըզնա,
Ընդդիմակաց ոգլին թերեւս
Նա նըմա յայլ կողմըն ծըփել։»
Այս բանք ծաղու առնըն չէին ի դէպ ժամու։
Իսկ որ ինչ վասն ընդդիմակաց ոգւոյն իցէ,
Ունէ՞ր արդեւք իրաւունս այրն այն, ոչ գիտեմ։
Այլ դիմակաց բալք թէ՛ իցեն եւ թէ՛ չիցեն
Բիծ եւ միտումն արանց եւ կամ կանանց ազգի,
Որ ոք այնու ախտիւ ծնանի,
Անվրէպ այնու եւ մեռանի.
Ընդդիմանայ մինչ ի վախճան,
Նա՛, թէ հնար էր, եւ անդըր եւս։

---

## ԱՌԱԿ ԺԷ.

*Աքիս մտեալ յամբարանոց. 4—4*

Աքիս տիկինն, երկայնիրան եւ նրբաւարտ,
Յամբարանոց մի մըտանէ ընդ ծակ անձուկ.
Այն ինչ ելեալ էր նա ի ծանր խօթութենէ։
Անդ ըստ հեշտի
Զարածըրճին այն հագածի,
Ուտէ, կրծէ. թէ որչափ ինչ՝ Աստուած գիտէ,
Արար նախճիր, ըսպառեաց ճարպ ի տեղւոջ անդ։
Յայտ անտի է զի եղեւ նա
Գէր եւ այտոյց եւ պնդակազմ։
Ի կատարել աւուրց եւթանց, յետ ընթրելոյ,
Լըւեալ աղմուկ աճապարէ խոյս տալ ընդ ծակն,

Այլ անցանել ոչ կարացեալ,
սըխալեալ զանձն իւր համարի։
Յետ յածելոյ շուրջ ըզտեղեաւն,
"Այս է," ասէ, "տեղին. ահա անկայ ի քուն.
Այլ հինգ եւ վեց աւուրքք յառաջ անցի ընդ այս։"
Մըկան միոյ տեսեալ ըզնա ի վարանի,
Ասէ ցընա, "Ոչ այնչափ ինչ
լի էր յայնժամ որովայն քո.
Մըտեր վըտիտ այսըր, վըտիտ ելցես աստի։
Զոր քեզն ասեմ՝ այլոց բազմաց է ասացեալ.
Այլ մի՛ կալի ի խոր մըխեալ՝ շըփոթեսցուք
Զխրըս նոցա ընդ ձերայոց։"

---

## ԱՌԱԿ ԺԸ.

*Կուզ եւ ծեր մուկն. 4—4*

Ընթերցեալ է իմ յառասպելս,
Թէ երկրորդ ումն Բոդիլարդոս
որ գոդ կըղզոյն էր Աղեքսանդրի,[49]
Կամ Ատտիղաս,[50] մըկանց հարուած,
Որ ըզվերջինսըս զայսոսիկ առնէր Թշուառ։
Ի մատենի ուրեք, ասեմ, ընթերցայ ես,
Եթէ այս կուզ աշխարհաւեր,
Ըստոյգ Կերպեր,[51] էր ահաւոր
լեալ մըղոն մի շուրջանակի։
Կամէր զաշխարհ ողջ ի մըկանց առնել անճետ։
Տախտակք եդեալք ի յողդողդուն նեցկի վերայ,
Որհաս մըկանց, Թակարդ նոցա,

Չէին այլ ինչ բայց խաղալիկ իմն առ նովաւ։
Տեսեալ սորա թէ յորջ իւրեանց
Կային մրկունք արգելական,
Նշանել ոչ իշխեն արտաքս, ինքն ի զուր կայր ի դարանի,
Խորամանկն այն իբրեւ մեռեալ ըզձեղուանէ
Գլխի վայր կայ կախեալ, ժանտն այն
Թաթիւքն ունէր պինդ ըզլար մի։
Մականց ժողովն համարի զայս ի պատուհաս,
"Անշուշտ," ասեն, "գողացաւ նա
խորովլոյս ինչ կամ շերտ պանրոյ,
Հար ճիրանօքն զոք, կամ վնաս ինչ մեծ գործեաց,
Օխարդ եւ է, հանին ըզժանտն ի կախաղան։
Ամենեքին ի մի բերան
Խրախոյս կարդան ուրախութեամբ
կալ ի զընին թաղման նորա.
Ըզցռուկ իւրեանց հանին արտաքս, ապա ըզգլուխ,
Յետոյ ի բոյն իւրեանց խուսեն.
Ապա անդէն ելեալ գընան չորս ոտնաչափ.
Նա հուսկ ուրեմն ի խոյզ շըջին։
Սակայն փոխի տեսիլն յանկարծ.
Յառնէ կախեալն, եւ ի վերայ թաթիցն անկեալ,
Ըզյուլագոյնսն ըմբռնէ նա։
"Յոլով հընարըս գիտեմք մեք,"
ասէ յուտելն իւր ըզնոսա.
"Այս են հընարք հին ճակատուց.
անձաւք ձեր խորք
Փրկել ըզձեզ չեն բաւական. առնեմ ձեզ ասդ.
Ամենեքին գայցէք ի տուն։"
Գուշակութիւնն էր ճշմարիտ. Լուռլուռըն[52] մեր

Խաբէ զնոսա եւ հրապուրէ երկրորդ անգամ։
Սպիտակազգեստ լինի, յալեւր համակեալ զանձն․
Եւ ծպտեալ նա զայս օրինակ,
Բռնեալ կծկի ի տաշտ մի լայն։
Քաջ էր խորհուրդ խորամանկին։
Ոստոստող ազգն այն ի խնդրել գայ զեւր կորուստ․
Մի միայն մուկն, ոչ աւելի,
ըզգուշանայ երթալ ի հուպն ի հոտոտել․
Էր սա հըմուտ ոմն հինաւուրց, հնարագէտ քաջ
Կորուսեալ իսկ էր նա զագին ի ճակատու։
«Զթուի ինձ այս զանգուած ալեր բարւոյ նըշան,»
Աղաղակէր նա ի հեռուստ գլխոյն մըկանց․
«Ի ներքոյ այդըր կասկածեմ ես որոգայթ։
Ի զուր է քեզ լինել ալեւր․
Նա՛, թէպէտեւ քուրձ էիր դու,
չառնուի յանձըն հըպել քեզ։»
Բարւոք ասէր ծերունի մուկն․
զզգօնութիւն նորա գովեմ․
Ոչ էր նա փորձ,
Գիտէր այո՛ թէ կասկածելն
Է յապահով լինելոյ մայր։



# ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ

## ԱՌԱԿ Ա.



*Առեւծ ի տարփեան. 4—4*

*Առ օրիորդ Սեւինեէ.*

Ի Սեւինեէ[52] որոյ հրապոյրք
Շնորհաց անգամ են օրինակ,
Եւ որ ծընարըդ գեղեցիկ,
Անխտրութեամբ
ըրդ քով հանդերձ.
Կամի՞ս արդեւք լինել ներող
Ընդէմ խաղուց այսր առակի,
Եւ տեսանել, առանց ահի,
Առեւծ զոր սէր կարաց ընկճել։
Աղխտարար տէր են տարփանք.
Երանի այնմ որ ոչ լինի գիտակ այլազգ
Ե՛ւ հարուածոց նորա, եւ նմա, բայց ի լրոյ։
Յորժամ խօսի զնըմանէ ոք առաջի քո,
Թէ վիշտ տայ քեզ ճշմարտութիւնն,

Առակի գէթ հանդուրժեսցես։
Եւ առակս իսկ վստահութեամբ
Գայ արկանել զանձն յոտըս քո,
Ի յայտնել քեզ շնորհակալ միտս եւ մեծարանս։
Ժամանակաւ մինչ անասունք սովոր էին խօսել բանիւ,
Հանդերձ այլովք եւ առիւծունք փափաքեցան
Գըտանել մուտ ի մեր ժողովս։
Եւ ընդէ՞ր ոչ, զի զարմ նոցա
Ոչ քան ըզմերն էր ապաքէն յետնեալ իւիք։
Եւ՛ քաջութիւն էր նոցա, եւ իմաստութիւն,
Ի գեղդ եւս չէին անմասն։
Ահա որպէս ինչ դիպեցաւ,
Առեւծ մ՚ի մեծ ազգատոհմէ
Յանցանել իւր զմարգաւ ուրեմն
Հանդիպեցաւ կընոջ հովուի յոր հաճեցաւ։
Խնդրեաց ըզնա իւր ի կնութիւն։
Հայր աղջըկանըն ցանկանայր
Ունել փեսայ, այլ ոչ այնչափ ինչ ահագին։
Զաղջիկըն տալ թըւէր նմա խիստ,
Բայց եւ մերժել չէր ապահով.
Նա եւ մերժելըն տայր թերեւս
Տեսանել օր մի ընդ այգուն
Ամուսնութիւն լեալ գողունի.
Զի ոչ միայն ամենայնիւ
Աղջիկն ի բնէ գոռոզ մարդկան էր կաթոգի,
Այլ եւ թըւէր իմն ախորժել
Ընդ հոմանին երկայնագէս.
Վասն որոյ հայր նորա յայտնի
Ազատաբար ժխտել ոչինչ համարձակեալ,

Ասէ ցառեւծն, “Դուստր իմ կարի է փափկասուն.
Ճիրանունք քո կարեն դընել վէրս ի նըմա
Ի կամել քո գգուել ըզնա.
Թոյլ տուր ուրեմն ի թաթլոց քոց
Ըզճիրանունըս քո թափել. իսկ ըզժանիսդ
Թող խարտեսցեն միանգամայն:
Համբոյրքդ յայնժամ ոչ լինին խիստ,
Նա եւ քեզ եւս ախորժական.
Զի դուստր իմ լաւ եւըս տացէ քեզ զիւր համբոյր
Լեալ անկասկած ի նոցանէ:„
Հաճի առեւծն,
Զի կարի իմն էր կուրացեալ:
Ահա առեւծն առանց ժանեաց եւ ճիրանանց,
Իբրեւ ամրոց մի անպարիսպ:
Արձակեցին շունս ի վերայ,
Ըզդէմ ունել կարաց հազիւ:
Ո՜վ սէր, ո՜վ սէր, եթէ ունիս դու երբեք զոք,
Թող այնպիսին տացէ հրաժեշտ իմաստութեան:

---

## ԱՌԱԿ Բ.

*Հովիւ եւ ծով. 4—4*

Արօտեամբք խաշին իւրոյ յորմէ յանհոգըս կեայր,
Էր վաղուց գոհ Ամփիտրիտեայ[53] ոմըն դըրացի:
Եթէ դոյզն էր ստացուած նորա,
Սակայն էր գէթ յապահովի:
Ի վախճանի, գանձք ի ցամաք անդըր հանեալք
Նմա թելադիր եղեն այնպէս,
զի վաճառեաց նա ըզհօտ իւր.

Գընեաց վաճառս, եւ հան ի նաւ։
Նաւաբեկեալ կորեաւ վաճառն,
Եւ եղեւ այրըն խաշնարած,
Այլ ոչ շըպետ որպիսի էրն յառաջագոյն,
Յորժամ ոչխարք նորա զափամբն արածէին։
Որ Կորիտոնն[54] էր եւ Տիրկիս,[54]
Եղեւ Բերոյ,[55] ոչ աւելի։
Յետ ամաց ինչ արար նա շահ,
Գընեաց անդրէն նա անասունըս գեղմնաւորս,
Եւ մինչ յաւուր միում հողմոց
նահանջեալ յետըս զեւրեանց շունչ,
Ետուն նաւաց թոյլ մերձենալ յափըն խաղաղ,
“Կամի՞ք,„ ասէ, թերեւս արծաթ,
ով տըկնայք ջուրք,
Ո՞ն առեալ յայլ ոք դարձարուք․
Բա՛ւ թէ յիմոցն առնուցուք ինչ։„
Ոչ է այս վէպ ինչ կարկատուն․
Ճշմարտութիւն առնում ի կիր,
Զի ի փորձոյ արարից յայտ,
Թէ դանգ մի լոկ զօր ունի ոք՝
Լաւ է քան հինգն յոր յուսայ նա․
Թէ՝ իւրայովքըն շատանալ պարտ է մարդոյ,
Եւ թէ՝ ծովու եւ սին փառաց թելադրութեան
Խըռնուլ զականջըս լաւ է մեզ։
Փոխանակ ընդ միոյ ուրուք տրտմեսցին բիւրք․
Ծով խոստանայ լերինս եւ մեծ զարմանալիս,
Թէ վստահիս, հողմունք եւ գողք գան հասանեն։

---

# ԱՌԱԿ Գ.

*Ճանճ եւ Մրջիւն. 4—4*

*Ճանճ եւ մրջիւն մրցին թէ ո՛ առաւել է։*
*«Ո՜ Զեւս,»[56] ասէ առաջինն այն,*
*«Իցէ՞ արժան զի սէր անձին*
*կուրացուսցէ ըղձողւոյն ակն*
*Ա՛յնպէս սաստիկ*
*Մինչեւ ծըծի մի արհամարհ եւ գետնաքարշ*
*Դստերս օդոյ ժըտիցի զանձն ասել հանգոյն։*
*Ո՞չ յաճախեմ ես յարքունիս,*
*եւ սեղանոյ եմ բարձակից.*
*Ի զենուլ քեզ մարդկան եզինս,*
*ճաշակեմ ես քո առաջի,*
*Մինչ անաստունս այս վատ եւ հէք*
*Զաւուրս երիս կեայ մըղեղիւ*
*զոր տանի յորջ իւր քարշելով։*
*Բայց դու, սիրունդ իմ, ասա ցիս,*
*Հանգչի՞ս երբեք դու ի գլուխ Թագաւորի,*
*Կայսեր եւ կամ կնոջ գեղեցկի.*
*Ես առնեմ զայդ. տամ գեղեցիկ*
*ըստեան համբոյր յորժամ կամիմ.*
*Նա խաղամ իսկ ի մէջ հերաց.*
*Ըզգըլնական սպիտակութեան*
*զոյն առնեմ ես պայծառագոյն*
*Ո՞չ վերջին դեղ զոր տայ իւրում գեղեցկութեան*
*Այն որ երթայ ի յաղթութիւն,*

Ես զարդն առեալ փոխ ի ճանճից։
Այսուհետեւ երթ ըզգըլուխ իմ բեկանել
Շտեմարանօք քովք։» — «Ըզքեան քո
կատարեցե՞ր,» Ասէ տնարարն.
«Ունիս, այո՛, մուտ յարքունիս,
այլ անդ անէծըս կարդան քեզ։
Իսկ որ ինչ վասն ճաշակելոյդ է զառաջինն
Յորոց պաշտին առաջի դից,
Համարիցե՞ս դու զայդ մեծ ինչ։
Թէ ամենայն ուրեք մտանես,
պղծագործք եւս առնեն ըզնոյն.
Երթաս ի գլուխ թագաւորաց, բայց իշոց եւս,
Հանգչել, չեմ այդմ հակառակ ինչ,
Սակայն գիտեմ եթէ յանկարծ իմըն մահուամբ
Յանդգնութիւնդ այդ քո յաճախ պատուհասի։
Զարդք ինչ, ասես, յաւելուն գեղ.
Գիտեմ, այո՛, այլ այն զարդք սեաւ
են որպէս եմքըն դու եւ ես։
Թող կոչեսցի զարդուցն անուն
ճանճ. միթէ այն իցէ՞ պատճառ
Հուչակելոյ զայնս իբրեւ քո ինչ քաջութիւն։
Ո՞չ ճանճ կոչին եւ հացկատակք։
Ի պարծանաց այտի սընոց կասեաց ուրեմն.
Մ՛ի մեծամիտ լինիր այդպէս։
Յապարանից ճանճք արտաքսին,
Լրտեպք[57] կախին, եւ մեռանին դուք ի սովոյ,
Կամ ի ցրտոյ, առ նուազութեան
եւ չուառութեան,

Յորժամ փերոս[58] երթայ տիրել
յայլում կիսու գնդին երկրիս,
Իսկ ես յայնժամ վայելեցից
յարդեանց իմոյ աշխատութեան.
Ոչ ընդ լերինս եւ ոչ ընդ ձորս կայ ինձ երթալ՝
Մատնեալ հողմոց եւ անձրեւաց.
Կեցից առանց ինչ տխրութեան.
Հող զոր կալայ՝ ազատեսցէ զիս ի հոգոց:
Իմ կամք այս են, ուսուցանել
Քեզ թէ սուտ փառք
զինչ են, եւ զինչ ճշմարիտ փառք:
Ո՛ղջ լեր, եղէ ժամավաճառ.
Թող զի աշխատ եղէց գործով:
Ոչ համբարք իմ եւ ոչ դարանք
Շատխօսութեամբ լինուն երբէք:„

---

## ԱՌԱԿ Դ.

*Պարտիզպան եւ Գաւառատէր նորա. 4—4*

Այր մի որ յոյժ սիրէր պարտէզս
Էր նա եւ լաւ քաղաքացի եւ շինական.
Ունէր, ասեն, ի գեղջ ուրեմն
Պարտէզ ընտիր արտիւն հանդերձ որ առընթեր:
Մատաղատունկ տնկովք փակեալ էր ըզտեղին:
Ընդ ածէին ինքնօրէն իմն
Թրթնջուկ խոտ, հազար վայրի,
Եւ առ կապել փունջ ի տօնին Մարգարիտայ,
Յասմիկք սակաւք Սպանիացւոց, ծոթրին բազում:

Այլ նապաստակ մի խանգարէր զայս յօրինուած,
Մինչեւ երթեալ առնըն պատմել
գաւառատեառն։
"Նապաստակ մի անիծեալ գայ առնել զիւր որս
Յայգ եւ ցերեկ," ասէ, "եւ ծաղր առնէ զհաղբիւք.
Բար, գաւազան արժեն ոչինչ.
Կարծեմ կախարդ է, տէր։" "Կախարդ.
Թող յապարէզ ելցէ," ասէ
Գաւառատէրն, "եթէ դեւ եւս իցէ, Միրոյ[59]
Ոչինչ ըզնենգըն համարեալ՝ կալցէ ըզնա.
Երդուեալ յարեւ իմ զերծուցից
ըզքեզ, այր դու։"
"Ե՛րբ," ասէ այրն։ —
"Վաղիւ, առանց յապաղելոյ։"
Ի բանի լեալ այսպէս արամբք իւրովք գայ նա։
"Օ՛ն, ճաշեսցուք," ասէ, "իցե՞ն
հաւք քո մատաղ։"
Յրկուսարն ասէ, "Աղջիկ դու, եկ մօտ զի տեսից։
Ե՞րբ, աղէ, զդա հալանացուսցուք, ածցուք փեսայ.
Բարեկամ, զոր ասեմ՝ իմա. պարտ է յայս գործ,
Պարտ է մըխել ձեռս ի քըսակ։"
Յասելըն զայս՝ խօսի աղջկանն,
Առեալ առ իւր նատուցանէ.
Պնդէ ըզձեռն, ունի զբազկէն,
բառնայ ըզծայր փարշամակին։
Այսպէս լինի, թէպէտ աղջիկն
Ակնածութեամբ մեծաւ կայ լուռ.
Մինչեւ եւ հօրն իսկ կասկածել։
Սակայն մընայր ճաշոյն, պնդէր 'խոհակերոցն,

„Ապուխտդ,„ ասէ, երբո՞ լիցէ, Թըւի բարւոք։„
“Տէր,„ ասէ այրըն, “քո է այդ։„
“Բատո՜յֆ,„ ասէ գաւառապետն.
“Ընդունիմ զայն, եւ մըտադիւր։„
Ընթրէ բարւոք, նոյնպէս եւ իւրքն,
Շանին, ձիան, ծառայք եւ որ են ատամունք։
Հրամայէ նա, Թէպէտ է հիւր, ազատաբար.
Ըմպէ զգինին, շամբշի 'նդ աղջիկն։
Զընթրեացն ըզհետ գայ որսորդացըն ժըխոր մեծ.
Իւրաքանչիւրն է կազմ, պատրաստ.
Փողք եւ շեփորք հնչեն այնպէս,
Մինչեւ տխմարըն մեր ապշի։
Զարագոյն այն էր զի եղեւ աւեր, կոխան
Բանջարանոցն, այլ եւ ածուք պէսպէս եղծան,
Եղծան նոյնպէս եղերդ եւ պրաս,
Եղծաւ եւ մնաց ոչինչ ի Թան։
Իսկ Նապաստակն էր որջացեալ
ընդ կաղամբով ջովացելով.
Արկեալ արանցըն խիլ հանեն
ըզնա, այլ նա պրծի 'նդ ծակ մի.
Դան ծակ՝ խրամատ էր մանաւանդ,
խոց աճագին, լայնաբերան,
Զոր արարեալ էին ընդ ցանկն,
Ի հրամանէ գաւառատեառն, զի չէր վայել
Ի պարտիզէն ելանել, բայց՝ հեծեալ ի ձի։
Ասէ տխմարն, “իշխանի խաղ խաղան դոքա։„
Զքանից նորա չառնէ ոք փոյթ. շունք եւ որեարն
Առնեն այնչափ վնաս ի միում ժամու միայն,
Որչափ չէր մարթ Թերեւս առնել զամըս հարիւր

Նապաստակաց ողջոյն երկրին։
Իշխանք փոքունք, ըզվէճըս ձեր լուծէք անձամբ,
Եթէ դիմէք ի Թագաւորս, յիմար մեծ էք.
Չէ պարտ տալ թոյլ նոցա խառնել ի ձեր կըռիւս,
Եւ ոչ դընել ոտն յերկիր ձեր։

---

## ԱՌԱԿ Ե.

### *Էշ եւ Շնիկ. 4—4*

Մի՛ հանճարոյ մերում երբեք արասցուք բուռն,
Գուցէ անճահս ինչ գործեսցուք։
Որ բիրտն է՝ զինչ եւ առնիցէ,
Ազնուի ումեք հաւասարել ոչ է կարող։
Սակաւք զօրս յակն առեալ երկնից լըցին ձըրիւք՝
Ի բընածին բարուց հաճոյ լինել մարթին.
Զայս այնպիսեաց թողուլ պարտ է,
Եւ մի լինել նըման իշոյն առասպելիս,
Որ ի գործել զանձըն սիրուն,
Եւ տեառն իւրում հաճոյագոյն՝ երթայ քծնել։
«Զիա՛րդ,» ասէր նա ի մըտի,
«Շունս այս այնու զի բարենշան է, բարեկիր,
Իբրեւ ընկեր կեայ հաւասար
Տեառըն մերում եւ տիկնոջ տանս.
Մինչդեռ եւ զան եւս ըմպեմ ես։
Զի՞նչ առնէ նա. ըզթաթ իւր տայ,
Եւ ընդունի իսկոյն համբոյր։
Եթէ այնպէս առնել պարտ է, զի եւ զիս եւս ողոքիցեն,
Չէ դժուարին ինչ կարծեմ այս։»

Զայս գեղեցիկ խորհուրդ կալեալ,
Ի տեսանելն ըզտէր իւր զուարթ
անհեղեդս իմըն գայ ի մօտ,
Բառնայ սըմբակ մի հին եւ մաշ,
Տանի ի ծնօտ տեառըն իւրոյ յոյժ կաթոգին,
Կըցելով եւս իբրեւ պճնանս,
Զիւր քաղցրաձայն երգ ի յանդուգն
յայն արարուած:
«Ո՜վ, զի՜նչ գըգուանք, զի՜նչ գեղգեղանք,»
Ասացեալ տէրն, ետ ձայն մանկանն ասպաստանի:
Այրն ընթանայ գաւազանաւ,
եւ ըզնըւագ իւր փոխէ էշն:
Ծաղու տեսիլն առ զայս վախճան:

---

## ԱՌԱԿ Զ.

*Կռիւ Մկանց եւ Աքսից. 4—4*

Աքսիցըն տոհմ,
Որպէս կըզոց,
Չկամի երբեք բարիս մըկանց.
Եւ թէ չէին անձուկ դըրունք
Որջոյն նոցա,
Ընտասունքն այն երկայնողունք
Նախճիրս արեան մեծ գործէին:
Որպէս կարծեմ:
Ամ մի յամաց,
Մինչ բազմացեալ էր մըկանց ճեռ,
Բատապոն ոմն, արքայ նոցա,

*Հանէ թաղում զօրս ի ճակատ։*
*Նոյնօրինակ աքսիցըն ցեղ*
*Պալզէ գնըշան դրօշուն իւրեանց։*
*Թէ հաւատալ պարտ է զըուցաց,*
*Ի տատանի կայր յաղթութիւնն։*
*Ոչ սակաւ անդք պարարտացան*
*Բազում վաշտուց արեամբ հեղլով.*
*Այլ մեծագոյն կորուստն անկաւ*
*Գող ամենայն ուրեք, ասեն,*
*Ի մըկանց կողմն,*
*Այն ազգ եղեւ գող բընաջինջ։*
*Արար զոր ինչ առնել կարող էր Արտապաքս,*[60]
*Եւ Փսիկարպաքս,*[60] *Մերիդարպաքս,*[60]
*Որոց ի քիրտըն համակեալ եւ ի փոշի,*
*Ժամըս հարուստ եղեն մարտկացըն զօրավիգն.*
*Այլ վայրապար եղեւ ըզգէմն ունել նոցա։*
*Բախտին տեղի տալ եղեւ հարկ։*
*Իւրաքանչիւրն անկաւ ի վայր ինչ ամրագոյն,*
*Ե՛ւ զօրական, ե՛ւ զօրավար։*
*Իշխանք կորեան ամենեքին.*
*Ի ծակս, ի սորըս խառնաղանճն*
*Գըտեալ ամուր ապաստանի՝*
*Ընկալ առանց աշխատութեան։*
*Սակայն աւագք որ ի գըլուխս*
*Ունէին մէն մի գարգմանակ,*
*Եւ կամ եղջեւրըս կամ ցըցունս,*
*Թէ ի պատուոյ ինչ նըշանակ,*
*Եւ թէ որպէս զի աքսից կողմն*
*Հարցի զահի,*

Գըտին եղեռն։
Ոչ ծակ, ոչ ծերպ եւ ոչ փապար
Էր բընաւ լայն վասըն նոցա,
Ուր խաժամուժն
Ի նեղագոյն խորըս սողէր.
Եւ կոտորածըն գլխաւոր
Եղեւ մըկանց գլխաւորաց։
Զըրցունս ունել ի գըլուխ իւր
Չէ փոքըր խոչ։
Ըսպասք կարի իմըն շըքեղք
Կարեն բազում անգամ ի չուս
Լինել պատճառք յապաղելոյ։
Որ փոքունք են առ հասարակ
Պըծին դիւրաւ.
Բայց ոչ այնպէս ինչ մեծամեծք։

---

## ԱՌԱԿ Է.

*Կապիկ եւ Դելփին. 4—4*

Սովորութիւն իմն էր առ Յոյնս,
Զի ամենայն որ միանգամ նաւէր ընդ ծով՝
Տանէր ընդ իւր ի ճանապարհ
Շունս եւ կապիկս ընչապըտուկս։
Նաւ մ'այսպիսի ուղեւորօք
Ոչինչ հեռի ի քաղաքէն Աթենացւոց ընկղմեցաւ։
Ամենեցուն էր կորուսեալ,
Թէ դելփինաց չէր հասեալ անդր։
Ընտանունս այս է բարեկամ

Մերոյ Ջոկոյ. Պըլինիոսն ի պատմութեան
Իւրում ասէ, եւ հաւատալ պարտ է կարծեմ:
Զո՛ն եւ կարաց՝ զերծոյց դելփինն:
Կապիկ մի եւս ի վըտանգին,
Այնու զի նման է նա մարդոյ,
“Փրկիմ անշուշտ,„ ասէ, “եւ ես:„
Դելփին մի զնա համարեալ մարդ
Թոյլ տայ նստել ի թիկունս իւր
Այնպէս շըքով, մինչեւ թըւէր բայ տեսանել
Զերգիչըն[61] զայն, ըզգովեալն յոյժ:
Դելփինըն մերձ էր ի ցամաք հանել ըզնա,
Մինչ ըստ դիպաց իմն հարցանէ.
“Ի քաղաքէ՞ն ես դու մեծէ Աթենացւոց:„
“Կարի իսկ քաջ,„ ասէ կապիկն.
“Ծանօթ իսկ եմ ամենեցուն.
Թէ դիպեսցի քեզ գործ ինչ անդ,
Վստահ լեր յիս, զի ազգականք իմ ամենայն
Ունին անդէն զառաջին բարձ.
Ազգաթիւ մի իմ է մեծ ոմն ատենակալ:„
Դելփինն ասէ, “Շնորհ մեծ ունիմ.
Պերէա[62] եւս ունի՞ արդեւք
Մասն ի պատուոյ երեսաց քոց.
Որպէս կարծեմ, տեսանես դու ըզնա յաճախ:„
“Յաճախ,„ ասէ կապիկն, “է ինձ յոյժ մըտերիմ,
Վաղուց ծանօթ:„
Զարաճըճին մեր զայս նըւագ
Ըզքաղաքին անուն կարծեաց անուն մարդոյ:
Ժըպտի դելփինն, ըղձըլուս բառնայ,
Յառեալ հայի յընչապըտուկն.

Ի միտ առնու թէ զոր եհանն
Ի ջուրց անտի ոչ այլ ինչ էր բայց անասուն.
Ընկլուզանէ ըզնա անդրէն, ինքըն մեկնի
Գըտանել մարդ զի զերծուցէ։
Բազում մարդիկ զայս օրինակ
Ըզվոժիրար[63] կարծեն Հըռոմ.
Եւ վեր ի վայր շաղփաղփելով,
Խօսին զորոց չեցեն երբեք ականատես։

---

## ԱՌԱԿ Ը.

*Մարդ եւ Դրօշեալ փայտեղէն. 4—4*

Կռապաշտ ոմն առ իւր պահէր
աստուած փայտեայ,
Յայնց աստուածոց որ թէպէտեւ
ունին ականջ, սակայն են խուլ.
Այլ կռապաշտն ի նըմանէ յուսայր նըշանս
Նըմա երիւք չափ արժէր նա.
Հանապազ ուխտք եւ պատարագք,
Զոհք յարջառոց պըսակելոց։
Ո՛չ եւ իցէ կռոց բընաւ
Երբեք չեղեւ խոհակերոց այնպէս պարարտ.
Այլ փոխանակ ընդ պաշտամանն
այնորիկ չեւ պաշտօնէին
Ժառանգութիւն ինչ եւ կամ գանձ,
շահ ի խաղու, կամ այլ ինչ ձիր.
Նա մանաւանդ եթէ ուրեք դոյզըն մըրրիկ
Կուտէր զայս կամ զայն օրինակ,

Այրն ունէր մասն, եւ կրէր վընաս քըսակ նորա.
Բայց աստուծոյն պարէն ոչինչ ընդհատ էր ճոխ։
Ի վախճանի զայրացեալ այրն
ընդ այն զի ոչ ընկալաւ ինչ,
Առեալ լըծակ խորտակէ մանր ըզդըրոշեալն,
Զոր գըտանէ լցեալ ոսկւով։
«Յորժամ բարիս առնէի քեզ,
Միթէ մի դանգ միայն,» ասէ, «արժեցե՞ր ինձ.
Ոն առեալ եւ դու ի տանէս,
այլ ուրեք քեզ խնդրեա բագին.
Դու նըմանող ես այն ոգւոց
Որ հէք եւ բիրտ են եւ ապուշ.
Առնուլ ինչ մի ի նոցանէ
չէ մարթ թէ ոչ գաւազանաւ.
Որչափ ըզքեզ լընուի ես,
այնչափ մնային ձեռք իմ ունայն։
Փոխել ըզգնացս իմ արարի ես բարւոք յոյժ։»

---

## ԱՌԱԿ Թ.

*Ագռաւ զգենի փետրովք Սիրամարգի. 4—4*

Փոխէր զփետուրս իւր սիրամարգ,
եւ ագռաւուն առեալ զնոսա,
Արկ զանձամբ.
Ապա յայլոց սիրամարգաց միջի երթեալ սկսաւ սիգալ,
Գեղեցիկ ոմն համարեալ զանձն։
Ամըն ծանեաւ ըզնա, եղեւ հէքըն ծանակ,
Յայ յու, հայ հուչ, հենգըն եւ խաղ.

փետեալ, ցանեալ ի տեարց անտի սիրամարգաց։
Առ իւրսն ապա ապաստանեալ՝
Ի նոյունց եւս հանաւ ի դուրս։
Գիտեմ են ոչ սակաւ ագռաւք,
երկոտանիք իբրեւ ըզնա,
Որ աւարաւ այլոց պճնեն զանձինս յաճախ,
Եւ զորս կոչել սովորութիւն է բանագող։
Լռեմ, ձանձրոյթ տալ նոցա աստ ոչ են իմ կամք.
Չէ այդ իմ գործ։

---

# ԱՌԱԿ Ժ.

*Ուղտ եւ Գաւազանք ծփեալք. 4—4*

Առաջին այն որ ետես զուղտ՝
փախեաւ կարծեմ ընդ տեսիլն այն նորանըշան։
Երկրորդըն գայ ի հուպ, երրորդն առնել ժըտի
Վարըն սանձիկ ուղտուն պախուց։
Սովորութիւնն այսպէս ըզմեզ
առնէ ընդելս առ ամենայն.
Որ ինչ թըւէրըն մեզ ահեղ իմն եւ օտար՝
Ընդելանայ աչաց մերոց,
Թէ գայ ի մէջ յաճախագոյն։
Եւ զի անկաք ահա յայս նիւթ,
Ասացուք. Արք ոմանք երբեմն կացուցան դէտ.
Որոց տեսեալ ինչ մ'ի վերայ ջուրց ի հեռուստ
Ասել ոչինչ վարանեցան,
Թէ էր այն նաւ մի հաստաբեստ։

Վայր մի յետոյ եղեւ որ նաւն էր կարկուրայ·
Ապա նաւակ, եւ ապա ծրար·
Յետուստ ուրեմն յաւեաց վերայ ցուպ տատանեալ։
Գտնեմ, բաղումք են յաշխարհի
Որոց առակըս գայ ի դէպ·
Ի հեռուստ են ինչ, ի մօտոյ՝ են եւ ոչինչ։

---

## ԱՌԱԿ ԺԱ.

*Գորտ եւ Մուկն. 4—4*

Էն որ, որպէս ասէ Մ՝էրլին,[64]
կարծեն ի միտս խաբել զայլ ոք,
Սակայն յաճախ խաբեն զանձինս,
Եղուկ զի այս բան է այսօր անցեալ զաւուրբք,
Այլ ազդող յոյժ թըւեցաւ ինձ այն հանապազ։
Սակայն եկից յայն զոր եդեալ եմ ի մըտի։
Մ՝ուկըն մի յոյր մարմնով եւ գէր, բարուք սընեալ,
Որ բընաւ ոչ գիտէր յինակ, ոչ աղուհաց,
Զափամբ մօրի միոջ երբեմն զըւարճանայր։
Մ՝ատուցեալ գորտ մի բարբառի
առ նա իւրով լեզուաւ այսպէս.
“Էկ,„ ասէ, “յիմ տուն, արարից
ես քեզ կոչունս։„
Տէր մուկն իսկոյն յանձն առ երթալ։
Չէին ինչ պէտք երկայն ճառից,
Սակայն յիշեաց գորտն ըզքերկրանս լողանալոյն,
Ըզքէնալ իւր եւ ըզհեշտանս ճանապարհին։

“Ո՜վ իմ հրաշալիքս,” ասէ, “զափամբ
մօրին անսցես.
Յաւուր միում պատմեսցես ուրս թոռանց քոց,
Ըզգեղ վայրացն, ընդընտանեաց երկրին բարոյս,
Զհատապակաց իւրոց ընկալեալ
Զբրակենաց:”
Ինչ մի միայն ոչ աւելի էր գիւ ցազնին մերում արգել.
“Ողալ ըղալ,” ասէր, “այլ պարտ է ինձ օգնել:”
Գորտըն գտանէ առ այս հընար մի բարւոք յոյժ:
Ընդ ոտըն մի նորա կապի մուկն ի թաթէն.
Կատարեաց զայս գործ կընիւն մի:
Ի մըտանել նոցա ի մօրն, անդէն գորտն այն չարաճըճի
Մըտաբերէ ձըգել ընհիւր
իւր ի յատակ անդըր ջըրոյն,
Ընդ հակառակս իմն իրաւանց
ազգաց եւ յեսս ընդդէմ երդմանն:
Պատճառի թէ բաժին որսոյ էր այն նըմա,
Եւ համարէր ըզնա կոտոր ըսքանչելի
Արդէն ճաշէր ըզնա ի միտս իւր նենգաւորն:
Մուկն ի դիս անդըր բողոքէ.
այլ առնէ ծաղր զկժողն այն:
Ընդդէմ կայ մուկնըն, նա ձըգէ:
Մինչդեռ կըռուին նոքա այսպէս,
Ցին մի որ յօդըս սաւառնէր՝ շուրջ դայր, յածէր.
Տեսեալ ըզմուկն հէք ի բարձուէ
ի վերայ ջուրցն ի տագնապի,
Խոյացեալ գայ, բառնայ ըզնա, նովաւ հանդերձ
Եւ ըզգորտն եւս, եւ ըզկընիւն:
Այս ամենայն կատարեցաւ այնպէս հեշտեաւ,

Մինչեւ ընդ այս որս իւր կրկին
Թռչնոյն ուրախ լինել սրտիւ,
Վասնզի եղեւ այսպէս նորա
Ե՛ւ միս, եւ ձուկն ի կերակուր:
Որչափ բարւոք նիւթեցի դաւ,
Մարթի վնասել դաւաճանին.
Եւ բաղում այն է զի նենգ ինչ
Ի նենգագործ անդր դառնայ:

---

## ԱՌԱԿ ԺԲ.

*Հարկ զոր առաքեն Անասունք առ Աղեքսանդր.*

*4—4*

Առ հինան առակ մի էր ծանօթ,
Որոյ մըտացըն չեմ տեղեակ.
Զի ընթերցողն հանցէ անտի խըրատ վարուց,
Ահաւասիկ առակըն մերկ:
Համբաւն ասէր ի բիւր տեղիս,
Եթէ որդի Արամազդայ, ոմն Աղէքսանդր,
Ոչ կամեցեալ թողուլ ազատ ինչ ընդ երկնիւք,
Հրաման եհան զի առանց ինչ յապաղելոյ
Թող ամենայն ազգ երթիցէ յոտըս նորա.
Չորքոտանի, մարդ, փիղ եւ որդն,
Երամք Թռչնոց:
Դիք, ասեմ, ոյր բերանք հարիւր[65]
Են, ամենայն ուրեք արկ ահ,
Ի հրապարակ զինքնակալին
Նորոյ հանեալ ըզհրովարտակ:

Ընտանիք, եւ ամենայն ազգք արբանեկաց
Ընձին նորա, համարեցան թէ զայս նուագ
Այլ ինչ օրէնս կրել պարտ էր։
Գումարեցան յանապատի.
Իւրաքանչիւր եթող զիւր որջ։
Յետ այլեւայլ կարծեաց եղաւ, սահմանեցաւ
Մեծարանս ինն հպատակութեան յղել, եւ հարկ։
Մեծարանաց բանք եւ պայմանն
Յանձն արարան կապկին, եւ տուն նմա գրով
Զոր ինչ ասել թուէր պատշաճ։
Դժուարութիւնն էր ընդհարկէն։
"Զ՞ինչ," ասէին, "տացուք. պիտոյ
է մեզ արծաթ։"
Ընտրել առին զայն յիշխանէ բարերարէ,
Որոյ էին յերկրին իւրում
Մետաղք ոսկւոյ. եւ ետ որչափ ինչ կամեցան.
Սակայն գործ էր տանել ընդհարկն.
Ջորի եւ էշ յանձն առին զայս,
Օժանդակեալք յերիվարէ եւ յուղտէ եւս։
Չորեքին եւս անկան յուղի,
Կապկաւ հանդերձ որ էր դեսպան։
Չուն ի կլճի ուրեք յանկարծ հանդիպեցաւ
Տեառն առիւծու. չթուեցաւ այս նոցա հաճոյ։
"Ի դէպ ժամու պատահեցաք,"
Ասէ առիւծն, "եւ աւասիկ եմք ուղեկիցք։
Մատուցանել երթայի ես զիմ բեռն ուրոյն.
Բայց թէպէտեւ իցէ թեթեւ,
ի բեռանէ նեղիմ ես յոյժ.
Ո՛ն, արարէք ինձ զայս շնորհ,

Իւրաքանչիւր բարձցէ անտի ընչորիր մասն.
Ոչ կարի ծանր լիցէ ձեզ այն.
Եւ ես եղէց տուեալ եւս զերծ եւ կարող
Ի յարձակել յանկարծ գողոց ի մեր վերայ,
Եւ ի սախպել մեր ի կռուել:»
Զառեւծ ունայն արձակել զուն ուրեք դիպլի:
Ընսան նըմա, առնուն ըզքեռն, պատուեն ըզնա:
«Նա առանց ինչ ակնածելոյ ի դիւցազնէն որմըզգչածնէ,[66]
Ուտէ, ըմպէ, կեայ ի մըտից հասարակաց:
Գնան ի մարգ մի
Զոր շուրջ պատեն առուք եւ երփն երփըն ծաղկանց.
Ուր հօտք խաշանց լինէրեն զարօտ.
Վայր հովասուն, բուն հայրենիք
Թեթեւ հողմոց: Առեւծն հասեալ անդըր լինի
Խօթապատճառ:
«Զդեսպանութիւն ձեր մատուցէք,»
ասէ, «յառաջ.
Տենդ տապախառն տոչորէ զիս.
Խնդրեմ աստ լոտ ինչ փրկարար:
Այլ ձեզ չէ պարտ կորուսանել ըզժամանակ.
Տուք զիմ արծաթ. թերեւս լիցի ինձ այն պիտոյ:»
Լուծան ծըրարք, անդէն առեւծըն ձայն բարձեալ,
Ըզխնդութիւն իւր առնէ յայտ:
«Բարէ,» ասէ, «որչափ զատերս զահեկանք իմ
Ոըհան. տեսէք, շատք ի նոցունց
Խըրեւ ըզմարս իւրեանց են մեծք:
Այսչափ ամսման պատճառ ես եմ:»
Զայս ասացեալ՝ առ զամենայն.
Եւ կամ, եթէ ոչ զամենայն, մընաց լ ունն ինչ:

Կապիկ եւ գրաստքըն վարանեալք,
Ասել ինչ ոչ համարձակեալ՝ անկան ի չու։
Տրտունջ լինել զան առ որդին Արամազդայ.
Այլ իրաւունք չեղեն նոցա։
Օ՛ն ինչ կարող էր առնել նա։
Ընդ առիւծու կռուի՞ առիւծ։
Առակն ասէ թէ «Ձկնք առ հէնս
Մատչել ի կռիւ ոչ առնուն յանձն։»

---

# ԱՌԱԿ ԺԳ.

*Զի որ կամի խնդրել վրէժս յԵղջերուէ. 4—4*

Ձիք ոչ ի բնէ վասն մարդոյ ինչ արարան.
Մինչդեռ մարդկան ազգ շատանայր կաղնով վայրի.
Էշ, ձի, ջորի բընակէին դեռ ի մայրիս.
Եւ տակաւին տեսանէր ոչ ոք որպէս արդ յաւուրըս մեր
Այնչափ համետ եւ այնչափ թամբ,
Ոչ ասպազէնս այնչափ ի մարտ,
Ոչ կառս այնչափ, եւ ոչ դեսպակս.
Որպէս եւ ոչ էր տեսանել
Այնչափ խնջոյս եւ հարսանիս։
Արդ, յայնժամ ձի մի ասեն թէ ել ի պայքար
Ընդ եղջերուի արագոտին,
Եւ ոչ բաւեալ յաղթել նըմա յարշաւանի,
Դիմէ առ մարդ, ապաւինի հնարից նորա։
Մարդըն նըմա արկանէ սանձ, ոստնու ի նիւս.
Բըռնաւ հանգիստ ոչ տայ նըմա

Մինչեւ ի բուռն եղջերուն այն
անկաւ, զարեւն եւրս կորոյս։
Յետ այնորիկ շնորհ ունի ձին
Զառնէն, զեւրմէ բարերարէ, ասէ, «Քո եմ.
Ո՛ղջ լեր, դառնամ ի բնակութիւն իմ վայրենի։»
«Քա՛ւ,» ասէ մարդն,
«է քեզ բարւոք լինել առ մեզ.
Գիտեմ թէ իմ ունիս դու պէտս։
Կաց ուրեմն աստ, խնամեսցիս ի մէնջ բարւոք.
Լցցես ըզփոր քո առ մարդոյն։»
Բա՛րբէ, առ ի՞նչ ուտել ցյագ,
Ուր չիք բնաւ ազատութիւն։
Զանմտութիւն իւր ըզգաց ձին,
Այլ անագան, զի ապաստանն
Արդէն իսկ կազմ էր եւ պատրաստ։
Ընդ մեւաւ նա խառան ի փող։
Իցիւ թողեալ էր զեղջերուին ըզդոյզն յանցուած։
Ո՛րչափ եւ քաղցր իցէ լինել քինախնդիր,
Ի գնել կարի յոյժ ծանրագին գընեն իւիք
Առանց որոյ[67] այլք են ոչինչ։

---

## ԱՌԱԿ ԺԴ.

*Աղուէս եւ Կուռձ. 4—4*

Յաւագ մարդոյ բազումք դիմակ են թատրոնի.
Տեսիլ նոցա խաբէ զռամիկըն կըռապաշտ։
Նշ չգիտէ դատել թէ ոչ ըստ երեւաց.
Ընդ հակառակն աղուէս է յոյժ խորաքննին.

Զամենայն կողմըն նըկատեալ,
եթէ յանկարծ առնու ի միտ
Թէ երեւոյթ է արտաքուստ,
Ասէ զայն ինչ զոր զիրանէն առաց ուրումըն դիւցազին։
Էր այն իրան սին, թէպէտ մեծ քան բընականն։
Գովեալ աղուէսն ըզգըրոշողին ճարտարութիւն,
«Ո՜վ գեղեցիկ գըլուխ,» ասէ, «այլ չունի խելս։»
Ո՜րչափ ստուգ արք են նըման այնմ իրանի։

---

## ԱՌԱԿ ԺԵ.

*Գայլ, Այծ եւ Ուլ. 4—4*

Այծին երթեալ լընուլ զստինսն ի վայրաձիգս,
Յարածել անդ ըզխոտ դալար
Գոռնափակօք աղխէ ըզդուռն,
Ազդ արարեալ ուլուն իւրում,
«Զգոյշ լեր,» ասէ, «դու յարեւ քո,
Չըբանալ բայց ում ասիցէ
Իբր ի նըշան բանից այսպէս,
'Խար գայլոյ եւ տոհմի նորա։,»
Իբրեւ ասէր նա զայսոսիկ,
Գայլն անցանէր յանկարծ ընդ այն.
Քաղէ ըզբանն ըստ պատշաճի,
Պահէ յուշի։
Որպէս մարթ է կարծել, այծին
Ոչ էր տեսեալ զորկորեայն մեր։
Ի տեսանել սորա զի այծըն մեկնեցաւ, ըզնորին ձայն
Ածեալ մանչի մեղմեխելով.

Ասէ, “Գայլդ խար,„ աղաչեալ զդուռն բանալ.
Կարծէր անդէն գտանել մուտ:
Կասկածեալ ուլն՝ հայի ընդ ծերպն,
Ասէ, “Ցոյց ինձ թաթ ըսպիտակ,
ապա թէ ոչ՝ ոչ բանամ քեզ:„
Գոչեաց այսպէս: Այնպիսի ինչ է սպիտակ թաթ,
Զոր գուն ուրեք է տեսանել
ի մէջ գայլոց, որպէս յայտ է:
Զարմանք կալան ըզգայլն յայս բան.
Ընդ որ եկեալն էր դարձաւ նա ի բայոց իւր:
Ո՞ւր լինէր ուլն, եթէ հաւատս էր ընծայեալ
Նշանաբանին զոր ըստ դիպաց
Գայլն էր լուեալ:
Ըզգուշութիւն կրկին է լաւ քան մին միայն.
Յիրիդ յայդմիկ աւելին ոչ կորեաւ երբեք:

---

## ԱՌԱԿ ԺԶ.

*Գայլ, Մայր եւ Մանուկ. 4—4*

Սակայն գայլս այս առնէ ինձ յուշ
Ըզմին յիւրոց ընկերակցաց որ եւըս չար ըմբռնեցաւ.
Կորեաւ նա անդ: Ահա պատմեմ:
Շինական ոմն ունէր ուրոյն ուրեք զիւր տուն.
Սեպուհըն գայլ դարանակալ կայր առ դըրանն.
Տեսեալ էր նա իւր որս բազում ելեալ անտի.
Որթ կաթընկեր, գառն եւ ոչխար,
Երամս հնդիկ հաւուց, ի մի բան պաշար մեծ:

Գայլն ընկեալ էր ձանձրանալ:
Լըսէ զմանկան միոյ լալուն.
Մայրըն սաստէ նըմա խակոյն.
Սպառնայ, "Թէ ոչ," ասէ, "լռես,
Ըզքեզ գայլոյ տամ:" Կայր գազանն
անդէն պատրաստ.
Շնորհակալ եղեւ նա դիցն ընդ այս դիպուած.
Մինչ ցածուցեալ մօրն ըզորդւոյն՝
Ասէ, "Մի լար. եթէ գայ գայլ, սպանից ըզնա:"
"Բամբէ," գոչէ ոչխարակերն.
"Ասել մերթ զայս ինչ եւ մերթ զայն:
Իցէ՞ արժան գնալ այդպէս
Ընդ որս իցեն, որպէս եմ ես,
միթէ առ ի օ՞լս ունիցին զիս:
Թող երբեք օր մի մանուկս այս
Գայցէ յանտառ քաղել կաղին . . .:"
Յասել նորա զայս ելանեն արք ի տանէն.
Շուն մի գաւթի ունի ըզնա.
սուինք եւ տէգք
փշտնին ըզնա ազգի ազգի:
"Զի՞նչ խնդրել գաս դու այսր, աղէ," ասեն ցնա:
Առնու պատմել փաղփաղակի.
Եւ մայրն ասէ ցնա, "Ազնիւ.
Ուտել զորդեակն իմ. միթէ յայն սակըս ծընայ,
Զի ցածուցէ նա ըզքաղց քո յաւուր միում."
Արբ գան սաստիկ չուառականն.
Շինական ոմն անդէն եհատ
զոտըն նորա զաջ եւ ըզգլուխ.
Գաւառատէրն եդ ըզնոսա առ դուրըս տանն.

Եւ այսպիսի ինչ գրեցաւ շուրջանակի.
«Միրուն տէր գայլ, մի ինչ անսար
Մ՚օր որ սաստէ մանկան իւրում որ լայ դոչէ:»

---

## ԱՌԱԿ ԺԷ.

*Բան Սոկրատայ. 4—4*

Սոկրատ,[68] ասեն, տայր շինել տուն.
Եւ խնդրէր իւրաքանչիւր ըզգործ նորա:
Մին ըզներքին տանն համարէր,
— զի մի բնաւ սաիցէ նըմա, —
Ոչ արժանի տուն այնպիսւոյ.
Միւսն ըզճակատըն պարսաւէր.
Եւ բնաւք յայն կարծիս էին,
Թէ կարի փոքր էին սենեակք:
«Որպիսի՜ տուն,» ասեն, «աղէ,
Հազիւ շարժել կարիցէ ոք:»
«Ո՜ տայր,» ասէ Սոկրատ, «թէ տոյգ բարեկամօք,
Եւ այսչափին իսկ մարթէր լնուլ:»
Բարին Սոկրատ չէր անիրաւ,
Վասն այսպիսեաց կարծել ըզտուն իւր կարի մեծ:
Ընցնիւր ասէ. «Եմ բարեկամ,»
այլ է յիմար որ վստահին:
Չիք առաւել հասարակաց քան այս անուն.
Չիք առաւել անօսրագոյն քան ըզբուն իրն:

---

# ԱՌԱԿ ԺԸ.

*Ծերունի եւ Որդիք նորա. 4—4*

*Չիք զօրութիւն հզօր թէ ոչ է միացեալ։*
*Ո՛հ, զայսմանէ լուր ըզգերին փըռիւգացի։*[69]
*Թէ յաւելում ինչ ես յանձնէ ի գիւտ նորա,*
*Նա նըկարել է ըզմեր բարս, եւ ոչ ըբնաւ առ նախանձու։*
*Ի սնապարծիկ փառաց անտի ազատ եմ ես։*
*Փեդրոս յաճախ յայն ժըտեցաւ պարծանաց վասն.*
*Ինձ չէ պատշաճ ի նոյն խորհուրդ մըտաբերել։*
*Ո՛հ, եկեսցուք մեք յառակ անդր,*
*կամ մանաւանդ ի պատմութիւն*
*Նորա այնորիկ որ ջանացաւ զի զորդիս իւր միացուսցէ։*
*Ծեր ոմն էր սա մերձ ի գընալ*
*ուր հրաւիրէր ըզնա օրհաս։*
*"Որդեակք," ասէ, "իմ, սիրելիք*
*առ իւր որդիսըն խօսէր նա.*
*Տեսէք եթէ խորտակիցէք ըզկապեալ նետսդ ի միասին,*
*Յայտնեցից ձեզ ըզկապն որ ած ի մի զնոսա։*
*Երէցն առեալ, եւ զամենայն ոյժ իւր տըւեալ*
*Թողու. "Քան զիս զօրագունից,"*
*ասէ, "տամ զայդ։"*
*Երկրորդն ըզհետ նորա փորձէ,*
*Սակայն ի զուր. ապա մատչի փորձէ կրտսերն։*
*Ամենեցուն ջան ի դերեւ ել, եւ մշտիկն ըզդէմ կալաւ։*
*Ի կապելոց նետից եւ ոչ մին խախտեցաւ։*
*"Ո՛վ տկարք," ասէ ցնոսա հայրըն,*
*"մատիք զի ցուցից ձեզ,*

Եւ զօրութիւն իմ է ձեռնհաս յայդպիսի դէպս։»
Համարէին թէ ծաղր առնէր.
ժպտին, սակայն յանիրաւի։
Քակէ ըղկապըն ծերունին,
եւ խորտակէ ըզնետսն անջան։
«Արդ, տեսանէք,» յաւելու նա,
«ըզմիութեան զարգասիս դուք.
Լերուք փակծոյժ միմեանց, որդեակք,
թող սէր ըզձեզ արասցէ մի։»
Որչափ տեւեաց հիւանդութիւնն, չասաց այլ ինչ.
Զգացեալ ապա ըն մերձենայր օր վախճանին.
«Որդեակք», ասէ, «ահա երթամ
ուր հարք մեր են.
Մնացէք ողջամբ. խոստացարուք
ինձ կալ մնալ իբրեւ եղբարս.
Առից գոնեա ի ձէնջ զայդ շնորհ մինչեւ մեռեալ։»
Իւրաքանչիւր հարեալ յարտօսր՝
հաւատարիմ առնէ զհայր իւր,
Որ տուեալ զաջն ամենեցուն՝
մեռաւ։ Եղբարքն այն երեքին
Ժառանգեցին ստացուած բազում,
բայց դատիւք խառն։
Պարտատէր ոմն գայ գրաւել.
այլ ոք դրացի կոչէ ի դատ։
Եղբարք երեք յաջողեցան ի սկզբան անդ.
Այլ սէր նոցա, թէեւ չքնաղ, տեւեաց սակաւ։
Միացուցեալ էր ըզնոսա արիւն, զատոյց ագահութիւն.
Փառաց տենչանք, նախանձ, հանդերձ
խորհրդատուօք

Մխահաղոյն խակ գլուանեն
մնայ ի նոցա ժառանգութիւն.
Հուսկ ապա գան ի բաժանել.
սղոցել կոգ, եւ նենգ եւ մանգ.
Ի յոլով հրս պատապարանէ զնոսա առեանըն մի առ մի.
Վաղվաղակի եւ պարտատեարք,
եւ ղըրացիք գան միւսանգամ,
ՙՆոքա ասեն, “Արխալ եղեւ. սոքա պնդին թէ գոյ թերի:„
Նղեալք ղատեալք միմեանց ընդդէմ ունին կարծիս.
Ախն յօժարի միաբանել,
միւսըն չառնու յանձն առնել զայն:
Երկքեն եւս կորուսին զինչս, եւ կամեցան; այլ անագան,
Ի միացեալ նետից անափ եւ ցրուելոց առնուլ խըրատ:

---

## ԱՌԱԿ ԺԹ.

*Պատգամ եւ Ամբարիշտ. 4—4*

Խաբել զերկինս եթէ կամին
մարդիկ, գործեն յիմարութիւն:
Բաւիղ սրտին ի մանուածս անդ իւր չունի ինչ,
Զոր ոչ իցէ մարթ դից ածել անդէն ի լոյս.
Զոր ինչ առնէ մարդ ոչ ծածկի յաչաց նոցա,
Ըզգործս անգամ զոր ի մըթան առնել կարծէ:
Հեթանոս ոմն որ սակաւ մի հոտէր խարոյկ,[70]
Եւ որ զհաւատան ունէր յԱստուած,
եթէ արժան իցէ ասել,
Քաղանդութեանց պէս որ ազատ
են ի սպասուց հաստուցմանէ,

Չոգաւ առնուլ, ասեն, պատգամ յԱպողոնէ։
Ընդ մըտանելն ի մեհեան անդր,
«Զոր ի ձեռին ունիմ,» ասէ,
«կենդանի՞ ինչ իցէ թէ ոչ։»
Ունէր ճնճղուկ նա ի ձեռին,
Պատրաստ խեղդել զանասնիկն հէք,
Եւ կամ թողուլ անդէն արձակ,
Առ առնելոյ սուտ զԱպողոն։[71]
Ապողոնի եղեւ հասու մըտաց նորա,
«Ողջ թէ մեռեալ, ցոյց մեզ», ասէ,
ըզճընճղուկ քո,
Եւ մի՛ եւս ինձ լարեր թակարդ,
Առ չարոյ քում եղիցի նենգ այսօրինակ.
Զի ըզհեռւին տեսանեմ ես,
եւ հասանեմ եւըս նոյնպէս։»

---

## ԱՌԱԿ Ի.

*Ագահն որ կորուսեալ է զիւր գանձ. 4—4*

Որով վարի ոք է ստացուած։
Հարցցուք նոցա ոյց ցանկութիւն
Է դիզել միշտ, եւ յաւելուլ արծաթ յարծաթ։
Զ՞ինչ աւելի ունին նոքա զոր այլ մարդիկ ոչ ունիցին։
Դիոգինէս[72] իբրեւ զնոսա է մեծատուն անդ ի խոնարհ,
Եւ աստ ի վեր ագահըն կեայ ճըղճիմ կըսկիր իբրեւ ըզնա։
Այրըն, գանձուն թաղելոյ տէր,
զոր առաջի մեր դնէ Եսովպ,
Մարթի լինել մեզ օրինակ։

Թշուառականս այս ըսպասէր,
Ի վայելել զիւր ըստացուած, երկրորդ կենաց.
Ոչ նա ունէր զոսկին, ոսկին ունէր ըզնա։
Թաղեալ էր նա ինչս ընդ հողով.
Սիրտ նորա յայն հարեալ չունէր այլ ըզբօսանս,
Թէ ոչ խորհել ի նոյն ըզցայգ եւ ըզցերեկ,
Առնել զարծաթ իւր նուիրական անձին իւրում։
Եթէ երթայր եւ եթէ գայր, եթէ ուտէր, եթէ ըմպէր,
Թուէր շտապել, բայց թէ յորժամ էր մըտախորհ
Զտեղւոյն ուր կայր թաղեալ արծաթն։
Այնչափ յածի նա ըզտեղեաւն,
մինչեւ տեսեալ դիպաթաղի,
Կալաւ կասկած զաւանդէն, հան տարաւ անձայն։
Ագահըն մեր յաւուր միում եգիտ լոկ փոս։
Կական բարձեալ առնըն՝ հեծէ, հանէ յոգւոց.
Ըզտուգ առեալ ողբայ, կոծի։
Ոմն յանցորդաց հարցանէ՝ հի՞մ այն ողբ եւ կոծ։
Ասէ, “Ըզգանձն իմ դողացան։„ —
“Ըզգանձ քո՞. ո՞ւր։„ — “Աստ առ վիմիս։„ —
“Միթէ գոռան պատերազմունք,
Զի տարար զայն այնչափ հեռի.
ո՞չ բարւոք եւս առնէիր դու,
Եթէ ի տան քում թողուիր, ի քում խցկան,
Քան այլ ուրեք փոխել ըզնա.
Ապաքէն մարթ էր քեզ առնուլ յամենայն ժամ։„
— “Յամենայն ժա՜մ. բա՜բէ, հընա՞ր ինչ իցէ այդ.
Գայցէ՞ արծաթ որպէս երթայն։
Մերձենայի յայն ոչ երբեք։„ “Աղէ, սաս,„
Ասէ անցորդն, “ընդէր ուրեմն տխրիս այդպէս.

Զի թէ յարծաթն յայն երբեք ոչ մերձենայիր,
Դնիր ի տեղի նորա վէմ մի.
Ոչ միեւնոյն է վասըն քո:»

---

## ԱՌԱԿ ԻԱ.

*Աչք Տեառն. 4—4*

Եղջերու մի ապաւինեալ ի գոմ եզանց,
Եղեւ նըմա ազդ ի նոցունց
Խնդրել այլուր իւր ապաստան:
«Եղբարք,» ասէ եղջերուն, «մի՛ մատնեսջիք զիս.
Ցուցանեմ ձեզ պարարտագոյն վայրս արօտից.
Յաւուր միում եղիցի ձեզ այն օգտակար.
Եւ ոչ երբեք զղջանայցէք:»
Արդ, խոստանան նըմա եզինք,
զիարդ եւ է, պահել գաղտնիս,
Եւ Թաքչի նա յանկեան ուրեք,
քաջալերեալ առնու ոգի:
Ընդ երեկոյս քերեն եւ խոտ դալար, եւ խար,
Որպէս առնել էին սովոր հանապազօր:
Երթեւեկեն ըսպասաւորք, ըստէպ գան շուրջ,
Հազարապետն անգամ, այլ ոչ ոք ըստ դիպաց
Ետես եղջիւր եւ ոչ բողկուկ.
Ապա եւ ոչ իսկ եղջերու: Անտառաբնակն
Շնորհ կալեալ եզանց՝ մընայ ի գոմի անդ
Զի երթիցէ անցնիւր ի գործ մըշակութեան,
Եւ եղիցի նըմա պարապ ելանելոյ անտի արտաքս:
Յեզանց անտի մին յորոճալն, ասէ. «Բարւոք.

Այլ զի՞նչ. դեռ այրն հարիւրաչեայ չալար հանդէս.
Ի գալստեան նորա երկիւղ է: Վ՛աղն քո.
Մինչեւ ցայնժամ, հէք եղջերու, մի ինչ խնդար:„
Յայս բան գայ տէրն, ելանէ յայց.
"Զ՛ի՞նչ այդ," ասէ ցորս ընդ նմայն.
"Խոտ ի մըսուրըդ սակաւ է.
Յարդ լուշտեկիդ է հին. եկէք ի համբար այդր.
Այսուհետեւ անասունք մեր
Թող բարւոք եւս խընամեսցին.
Զի՞մ ոչ բառնայք զայդ ամենայն սարդի ոստայն.
Լ՛ուծքդ այդոքիկ եւ սամետիք ընդէ՞ր կան ցիր:„
Մինչ զամենայն դիտէր այսպէս,
միւս եւըս գլուխ նշմարէ նա,
Օտար իմն յայնց զոր տեսանէր անդ հանապազ:
Եղջերուն մեր անկանի յակն. իւրաքանչիւր առնու սըւին.
Իւրաքանչիւր տայ անասնոյն մէն մի հարուած.
Արտասուք իւր ի մահուանէ փրկել ըզնա չեն բաւական:
Տանին ըզնա, յաղեն, առնեն խորտիկ բազում,
Եւ ի դրացեաց անտի յոլովք առնին խըրախ:
Զ՛այսմանէ փեդր ասաց կարի վայելչութեամբ.
"Չիք," ասէ, "չիք քան զակըն տեառն ի տեսանել."
Եւ ես յաւելում յայն թէ քան զակըն սիրողին:

---

# ԱՌԱԿ ԻԲ.

*Արտոյտ եւ ձագք նորա հանդերձ Տերամբ արտի. 4—4*

"Ի քեզ միայն դիր զյոյս քո."
Հասարակաց առած է այս։
Տեսցուք զիա՞րդ զայս Եսոպոս
Ցուցանէ մեզ։
Արտոյտք զբոյն իւրեանց եդին
Յարտ ցորենոյ որ այն ինչ էր արձակեալ բոյս.
Այսինքն յայնժամ
Մինչ ամենայն գրգայ, եւ է
ի բազմանալ յաշխարհի աստ.
Գազանք ծովու ի խորս ալեաց,
Վագերք յանտառս, եւ արտոյտք յարտս։
Մին ի վերջնոց աստի եւեթ
Զկէս գարնան թող անցանել
Առանց առնլոյ գարնանային խառնից զհամ։
Այլ հուսկ ուրեմն հաճեցաւ նա
Անսալ բնութեան եւ լինել մայր։
Շինեաց նա բոյն, եւ ածեալ ձուս,
Նստաւ ի թուխս եւ եհան ձագ
Ճեպով, սակայն ըստ պատշաճի։
Ցորեանն էր շուրջ առողջացեալ, մինչչեւ ձագուց
Եղեալ հուժկու 'ստ բաւականին
Յառնուլ թռիչս եւ ի սլանալ։
Արտոյսն ի հոգս պաշարեալ,
Երթայ խնդրել պաշար, եւ ազդ առնէ ձագուցն

Ունել դիտակն եւ կալ ըզգոյշ։
«Թէ տէր արտին
Գայցէ որդւովքն, որպէս եւ գայ իսկ,» ասէր նա,
«Ունկըն դիք քաջ, զի ըստ բանին զոր ասիցէ,
Իւրաքանչիւր մեկնեսցուք մեք։»
Այն ինչ արտոյտն էր թողեալ զիւրսն
Տէր արտին գայ որդւովն հանդերձ։
«Հասեալ են հունձք,» ասէ, «երթայք
առ բարեկամս.
Աղաչեցէք զի ըզմանգաղ իւր բերելով իւրաքանչիւր՝
Օգնեսցէ մեզ վաղիւ այգուն։»
Դառնայ արտոյտն.
Ի վարանի գըտանէ զիւրսն։
Մին ասէ. «Այրն ասաց, վաղիւ ընդ այգս այգոյն
Ըզբարեկամս իւրեանց կոչել օգնել նոցա։»
«Թէ զայս միայն ասաց,» ասէ արտոյտըն մայր,
«Ոչինչ ըզմեզ ստիպէ փոխել ըզկայան մեր.
Այլ ունկնդիր լերուք խնամով եւըս վաղիւ.
Այժըմ լերուք խըրախ, ահա զինչ ուտիցէք։»
Յետ ճաշելոյն ի քուն լինին եւ մայրն եւ ձագք։
Հասանէ այգ, եւ բարեկամ ոք չերեւի։
Մեկնի արտոյտն, եւ տէրըն գայ,
Որպէս սովորն էր առնել այց։
«Ցորենոյդ չէր արժան,» ասէր,
«այդպէս կալ յոճ։»
Բարեկամաց դընէր նա բիծ. «Նոցա է մեղ,»
Ասէր, «զի ծոյլ են. վեհերոտք ի ծառայել։»
Ապա ցորդին ասէ. «Որդեակ, առ ազգականըս մեր գընա,
Եւ աղաչեա գալ առ վաղիւն։»

Արտոյտըն գայ յերեկոյին ի բոյն առոյգ քան զառաջինն.
Ձագքն ասեն, «Մայր, զազգականաց
իւրոց յըղեաց, ժամանակ է...»
— «Ո՛չ, ո՛չ, որդեակք,
ի քուն լերուք խաղաղութեամբ.
Մի խախտեսցուք ի տեղւոջէս։»
Թռչունն ասաց զայս յիրաւի. ոչ մի ոք չեկն։
Երրորդ անգամ խորհեցաւ տէրն.
Յայց ելանել արտին, ասէ, «Սըխալիմք յոյժ,
Այլոց կալեալ ակըն քան մեզ.
Չիք ազգական, ոչ բարեկամ լաւ քան զիւր անձն.
Բաջ ի միտ առ դու զայս, որդեակ։
Գիտես արդեւք
Զի՞նչ առնել պարտ է մեզ. պարտիմք
հանդերձ մերովք
Ի վաղուէ իսկ առնուլ մանգաղ իւրաքանչիւր։
Կարճագոյն այս է, եւ մեզէն յաջողեսցուք
Հնձել զարտ մեր ըստ մարթելոյ։»
Լուեալ արտոյտըն զայս խորհուրդ,
«Ահա եհաս ժամ մեկնելոյ,» ասէ, «որդեակք.»
Եւ ձագքն իսկոյն
Մերթ թրթռելով, մերթ թաւալգլոր,
Գաղտագողի մեկնին անտի։



# ԳԻՐՔ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ԱՌԱԿ Ա.



*Մայրեւոր եւ Հերմէս. 6—6*

*Առ տէր ապպեա տը Պոայենը.*

Բարւոք ճաշակ քո է իմոյ գործոյս
կանոն.
Ըստանալ ջանացայ ըղհաճու-
թիւն նորին։
Կամիս զի զգուշասցուք
ի մանրախոյզ փութոյ
Եւ ի հըպարտ ջանից ունայն պա-
ճուճանաց,
Ըզնոյն կամիմ եւ ես. այն ջանք չառնին հաճոյ։
Ընչափ փոյթ հաճելոյ եղծանէ զամենայն.
Ոչ թէ մերժել պարտ է ասացածս ինչ փափուկս։
Զայսպիսիս սիրես դու. եւ ոչ ես ատեամ ինչ։
Իսկ որ գլխաւորն է, եւ Եզովպ պատուիրէ,
Առ այն եւ ես ձկտիմ, որչափ եմըն կարող։

Ի մի բան, թէ յերգս իմ ոչ հաճեմ, ոչ կրթեմ,
Ոչ թէ իմ մեղ է այն, այլ է ինչ պատճառ միշտ։
Այժմ է կարեւոր կէտ,
Զոր ոչ պարծիմ ունել.
Սակայն նըշաւակել զախտըս գործեմ ես գուն.
Ազորել ոչ բաւեալ բազկօքըն Վահագնի։[73]
Այն այս է իմ հանճար. չգիտեմ թէ բաւէ՞։
Մերթ պատմութեամբ իւիք նըկարել ձեռնարկեմ
Բըզխօղն ունայնութիւն կցեալ ընդ նախանձու.
Երկու առանցք զորովք դառնան կեանք մեր այսօր։
Այսպիսի ինձ էր այն չըքոտին անատուն
Որ կամեցաւ մարմնով հաւատարել եղին։
Ես զի դընեմ հանդէպ, իբրեւ երկուս պատկերս,
Առաքինութեան՝ զախտ, խօլութեան՝ ըզհանճար,
Յափշտակիչ գայլոյ՝ ըզմին յանմեղ գառանց,
Ճանճի՝ մրջիւն. այսպէս արարեալ զայս մատեան
Տեսիլ մեծ ձաղութեան պէս պէս արարուածովք.
Որոց թատր է աշխարհ։
Մարդիկ, դիք, անասունք ունին ինչ խաղ անդէն.
Արամազդ, որպէս այլք։ Ո՜ն, ի մէջ ածցուք զայն
Որ սովոր է տանել պատգամ առ գեղեցիկս։
Այլ ոչ թէ այսպիսի ինչ է մեր նիւթ այսօր։
Մայրեւոր ոք կորոյս զոգեպահին գործի,
Այսինքն զիւր կացին, եւ խնդրէր, այլ ի զուր։
Խանդաղատանաց էր արժանի առնըն կոծ.
Եւ ոչ կարասի ինչ ունէր ի վաճառել.
Զոր ինչ ունէրն՝ էր այն։
Ոչ գիտաց թէ ուր դընիցէ ըզլոյս իւր,
Երեսք նորա ըստէպ թանային արտասուօք։

“Ո՛վ իմ կացին,„ ասէր,
“ով իմ թշուառ կացին։„
“Ո՛վ Արամազդ,„ գոչէր,
“տուր ինձ զոր կորուսի.
Ըզկեանս իմ միւսանգամ ի քէն ակն ունիմ ես։„
Արդ, ողբք նորա լինին լսելի յՈղիմպոս.
Գայ Հերմէս.[74] “Ոչ կորեաւ
կացին քո, ո՛վ այր դու,„
Ասէ ցնա աստուածն. “միթէ ճանաչե՞ս զայն.
Թո՛յլ ինձ, մօտ ուրեք հանդիպեցայ նմին։„
Զայս ասացեալ՝ եցոյց նմա կացին ոսկի։
“Զոր խնդրեմդ չէ այդ,„
պատասխանի տայ այրն։
Միւս եւս յարծաթոյ յաջորդէ առաջնոյն.
Եւ ընդ մերժէ այրն. ապա գայ փայտեայ մի.
“Ահաւասիկ„ ասէ այրն, “փայտեղէնդ այդ է իմ.
Ապաքէն լինիմ գոհ, թէ “առից ընդ վերջինդ։„
“Երեքին եւս քո եղիցին,„ ասէ դիքն,
“Ի հատուցումն քոյ ճշմարտասէր բարուց։„
“Յայս պայման,„ ասէ այրն. “առից զերիսին եւս։„
Այս պատմութիւն, ասեն, հռչակեցաւ անդէն.
Եւ իսկոյն փայտահատք կորուսանեն կացինս,
Եւ բառնան ղաղաղակ զի տացի նոցա այն։
Թագաւորն աստուածոց անկանի ի վարանս։
Դարձեալ որդին Հերմէս առ ողբացողսն գայ.
Առ մէն մի ցուցանէ նա տապար ոսկեղէն։
Իւրաքանչիւր ոք զանձն առ անասունս ունէր,
Եթէ չասէր իսկոյն, “Ահաւասիկ իմ է դա։„
Այլ Հերմէս փոխանակ տալոյ նոցա զկացինն,

Ընդ կատուփըն նոցա հանէ զայն մի առ մի։
Մ՛ի բընաւ սըտել, այլ իւրովըն լինել գոհ,
Յապահովագոյն է, սակայն շատք ըղհետ են
Խօսելոյ բանըս սուտս առ ինչըս կորզելոյ։
Այլ զի՞նչ օգուտ անտի. Արամազըդ ոչ խաբի։

---

## ԱՌԱԿ Բ.

*Պոյտն խեցեղէն եւ Պոյտն երկաթի. 6—6*

Երկաթի պոյտն ասէ
Ցըպոյտըն խեցեղէն, երթալ ի տար աշխարհ։
Վերջինս այս հրաժարի.
Ասէ. “Լաւ եւս է ինձ
Կալ մընալ առ հըրովս,
Զի ինձ պիտի սակաւ,
Սակաւ, դուզնաքեայ ինչ,
Որ ի սպառ խորտակման իմոյ լիցի պատճառ.
Մ՛ինչեւ ոչ մի նշխար յինէն դարձցի այսրէն.
Մ՛ինչդեռ դու որոյ մորթ
Կարծրագոյն է քան զիմն,
Ունել, գիտեմ, կարես ամենայնի ըղդէմ։”
“Պատսպարեմք ըզքեզ,”
Ասէ պոյտն երկաթի,
“Եթէ երբեք խիստ ինչ
Ըսպառնայ քեզ եղեռն,
Անցից ի մէջ երկուցդ,
Եւ յընդհարկանելոյ ես զերծուցից ըզքեզ։”
Յայս բան միւսն հաւանի։

Ընկերն, երկաթի պոյտն,
Երթայ կից առ նըմին։
Յուղի անկեալ նոցա գընան երիւք ոտիւք,
Կաղ ի կաղս ըստ կարի.
Հարկանէր ի գընալ անդ մին ընդդէմ միւսոյն,
Ընդ դոյզըն խոչ կամ խութ որում պատահէին։
Պոյտն ի խեցւոյ վնասի. չեւ երթեալ հարիւր ոտն,
Յիւրմէ իսկ ընկերէն խորտակի չարաչար,
Առանց ունելոյ բնաւ տրտնջելոյ պատճառս։
Լիցուք ընկեր որոց ենըն մեզ հաւասար,
Ապա թէ ոչ պարտիմք յիրաւի երկնչել
Ի պատահարէ այսց երկուց պուտանց միոյն։

---

# ԱՌԱԿ Գ.

*Ձուկն փոքրիկ եւ Ձկնորս. 4—4*

Ձուկըն փոքրիկ լինիցի մեծ,
Եթէ Աստուած տայ նըմա կեանս.
Այլ ըզկալեալն արձակ թողուլ
Յիմարութիւն համարիմ ես.
Զի միւսանգամ ունել ըզնա չէ ինչ ըստոյգ։
Ըզծածան մի, տակաւին մանր,
Կալաւ ձկնորս մի ըզգետոյ միոյ զափամբ։
"Ամենայն է թիւ," ասէ նա հայեցեալ յորսն.
"Ահա ընթրեաց եւ խնջոյից ըզկիզըն է սա.
Արկցուք ըզնա ի մախաղ մեր։"
Ասէ ձկնիկն որպէս զհարդ եւ էր կարող.
"Զի՞նչ օգուտ քեզ յինէն, ասէ. լինիցիմ ես

Թէ շատ հազիւ կէս պատառոյ.
Թող զի եղէց ես ձուկըն մեծ.
Լինիցիմ քեզ որս միւսանգամ.
Մեծատուն ոմըն գընեսցէ զիս ծանրագնոյ.
Մինչ այժըմ պարտ է քեզ խնդրել
Թերեւս հարեւրս ոմանս յիմոց հասակակցաց
Առնել խորտիկ. այլ որպիսի՛
խորտիկ չնչին, հաւատա ինձ։"
"Չնչին, չէ՛ փոյթ," կրկնէ որսորդն.
"Բարեկամ դու, ձկնիկ, որ կաս վարդապետել,
Զի՛նչ եւ կամիս, ասա, արկցիս դու ի տապակ.
Աստաստին իսկ յերեկոյէս տապակեսցիս։"
Բարւոք է կա՛լն, որպէս ասեն, քան ըղձալցիս.
Մին է ըստոյգ, ոչ նոյնպէս միւսն։

---

## ԱՌԱԿ Դ.

*Ակռաճյք Ճաւպաստակի. 4—4*

Անասուն մի եղջերաւոր վիրաւորեաց, ասեն, եղջերբ
Զառեւծ մի որ լի բարկութեամբ,
Զի մի այլ եւս անկցի յայն վիշտ,
Հալածականս ի սահմանաց իշխանութեան իւրոյ առնէ
Նա զանասունս որ կրեն եղջեւրս ի ճակատու։
Այծ, խոյ եւ ցուլ իսկոյն տան խոյս,
Եւ այծեմունք ընդ եղջերուաց գաղթեն այլուր.
Իւրաքանչիւր կազմ եւ պատրաստ կայր ի մեկնել։
Նապաստակ մի տեսեալ զիւրոց ականջաց շուք,
Երկեաւ, "Գուցէ," ասէ, "մի ոմն ի լրտեսաց

‘Նմանեցուցեալ զերկայնութիւն նոցա եղջեր,
Բուն եղջերաց համարեցի զնոսա հանգոյն:
Մնասջիր ողջամբ, գլացիդ ծղրիդ,”
ասէ, “Մեկնիմ ես աւասիկ:
Թերեւս ականջք իմ հուսկ ուրեմն լիցին եղջեւրք,
Թէեւ էին կարճ քան զականջըս ջայլեման,
Երկնչէի ես տակաւին:” Ասէ ծղրիդն,
“Դոքա եղջեւրք. միթէ առ խօլս ունիս դու զիս.
Աստուած ականջս արար զդոսա:”
“Այլ առ եղջեւրս ունին թերեւս,”
Ասէ երկչոտն անասուն մեր,
“եւ առ եղջեւրս մի եղջերուի.
Ի զուր յայնժամ բողոքեցից.
հաւանութիւնք իմ եւ պատճառք
Ի յիմարաց տուն երթիցեն:”

---

## ԱՌԱԿ Ե.

*Աղուէս որոյ ձետ հատեալ է. 4—4*

Հինաւուրց ոմն աղուէս, այլ յոյժ չարաճըճի,
Հաւակեր քաջ, եւ քաջ որսորդ նապաստակաց,
Մինչեւ մըղոն մի ի հեռուստ հոտէր աղուէս,
Ի վախճանի անկաւ ի հաղբ:
Պրծեալ անտի ըստ դիպաց իմն,
Ոչ ողջանդամ, զի թող զագին անդ իբրեւ գրաւ,
Պրծեալ, ասեմ, առանց ձետոյ եւ կորակոր,
Որ ունելոյ իւր հաւասարս, զի էր ճարտար,
Յաւուր միում մինչ ունէին խորհուրդ աղուէսք,

"Զի՞նչ արասցուք," ասէ, "զայս բեռն
անօգուտ մեզ,
Որ չառնէ այլ ինչ բայց ածել աւել գռեհաց.
Ջի՞մ մեզ այս ձեռ. հատանել պարտ է զայն ի բաց.
Թէ հաւատայք
ինձ, Թող անցնիւր հաճեսցի յայս."
"Լաւ է խորհուրդ," ասէ մի ոմն ի ժողովոյն.
Այլ աղաչեմ, դարձո ըզկուռն,
եւ տացուք քեզ պատասխանի:"
Յայս բան նորա բարձաւ քրքիջ մեծ այնպիսի,
Մինչեւ լսել չըլինել մարդ ըզհէք կրճատն:
Զուր էր ջանալ այնուհետեւ
տալ հատանել ումեք զիւր ձեռ.
Եւ նորաձեւըն տեւեաց միշտ:

---

## ԱՌԱԿ Զ.

*Պառաւն եւ երկու Աղախնայք. 4—4*

Էր պառաւ ոմն որ աղախնայս ունէր երկուս,
Որ մանէին այնպէս ճարտար
մինչեւ երից քերց մանողաց[75]
Աղօտանալ իմն առ նոքօք:
Ոչինչ այնպէս հոգայր պառաւն,
Որպէս բաշխել իւրաքանչիւր աղջկան զիւր գործ:
Այն ինչ Թետիս[76] հալածական
առնէր զփեբոս ոսկեգիսակ,
Սկսանէին անիւք խաղալ, ձըգէին իլք,
Երթեւեկել աստի անտի.

Չէր բընաւ դուլ, բընաւ դադար։
Այն ինչ, ասեմ, այգ նըշանէր ի կառս իւրում,
Եւ գըծուծ հաւ մ'ի ժամադիր ժամուն երգէր,
Պառաւն անդէն քան զայն գըծուծ,
Ըզմիջով չափ վտաւակ զազիր եւ աղտեղի,
Եւ ի ձեռին կանթեղ երթայր ի մահիճս անդր
Ուր բովանդակ ուժով իւրեանց, բոլոր անձկաւ
Էին ի քուն հէք աղախնայք նորա երկու։
Մին կիսով չափ զաչսըն բանայ,
միւսըն ձկտէ զմին ի բազկաց,
Երկոքին եւըս դժգոհք յոյժ,
Բըրթմընջէին ընդ ատամունս,
«Անիծեալ հաւ,» ասեն, «մեռցիս։»
Եւ արդարեւ իսկ արարին. կալան ըզհաւն.
Զարթուցիչն այն առաւօտեան խողխողեցաւ.
Սակայն չեղեւ ըսպանութիւնն
այն ի դարման վշտին նոցա.
Ընդ հակառակն հազիւ ի քուն լեալ ամոլոցն,
Երկուցեալ կինն թէ զուցէ ժամն անցանիցէ,
Իբր ուրուական յածէր ընդ տունըն բովանդակ։
Այսպէս յաճախ,
Մինչ կարծէ ոք ի տագնապէ ուստեք պրծել,
Եւս առաւել մըխի յառաջ.
Վըկայ զոյգս այս եւ վարձ նոցա.
Փոխանակ ընդ հաւուն պառաւն արկ ըզնոսա
Ի Քարիբդեայ[77] ի Սկիղլա անդր։

---

# ԱՌԱԿ Է.

*Սատիր եւ Անցորդ. 4—4*

Ի վայրենի ուրեք այրի
Սատիր[78] մի եւ որդիք նորա
Յուսել էին ըզթան իւրեանց
Եւ ի լեզուլ զսկաւառակն։
Անդ ի մամռոյն վերայ զնոսա էր տեսանել,
Զնա, ըզկին իւր, ըզմանկտին.
Ոչ էր նոցա, ոչ նըւարտան ինչ, ոչ օթոց.
Սակայն անձուկ մեծ ուտելոյ ամենեցուն։
Առ յանձրեւոյ պատսպարել
Եմուտ անցորդ մի բլտացեալ։
Ի փոխինդ անդր հրաւիրի նա.
Յանգգաստս իմն էր նա եկեալ։
Ասպնջականըն չետես հարկ
Երկրորդելոյ ըզհրաւէր իւր։
Նա զառաջինն իւրով շնչով
Ջեռուցանէ ըզմատունս իւր.
Ապա ի խիւս անդըր զոր տան՝
փափկասունն այն փչէ նոյնպէս։
Յապուշ կրթեալ Սատիրն՝ ասէ.
“Հիւր մեր, հ՞մ այդ։„
“Մ՞ին ըզխորտիկդ իմ առնէ զով,„ ասէ այրն հիւր.
“Ջեռուցանէ միւսն ըզձեռս իմ։„
“Օն,„ վայրենին ասէ ցըհիւրն,
“Ընկեր յուղի։„
“Ննջել,„ ասէ նա, “քան լեցի

Ինձ ընդ միով յարկաւ ընդ քեզ։
Ի բա՛ց նոքա որոց բերան
Հնչել սովոր է ցուրտ եւ ջերմ։»

---

## ԱՌԱԿ Ը.

*Ձի եւ Գայլ. 4—4*

Գայլ մի յաւուրս գարնայնոյ,
Մինչ քաղցրաշունչ զեփիւռք խոտոց
տան մանկանալ,
Եւ անասնոց ամենեցուն թողեալ ըզտուն
Երթան խնդրել զիւրեանց պաշար,
Գայլ մի, ասեմ, յելանել անդ
ի խստութեանց ձըմերայնոյն,
Տեսանէ ձի զոր արձակեալ էին յարօտ։
Զմըտաւ ածել ըզխնդութիւն գայլոյն թողում։
«Բա՛րւո՜ք որս այնմ որ կալիցէ,»
ասէ, «ի կարթ իւր արկանել.
Իցի՛ւ թէ խոյ էիր, դիւրաւ լինէիր իմ.
Ուր արդ հընարս մընայ խորհել
առ ի զըլրուամբ ածելոյ զորսդ.
Այլ, ո՛ն, մըտցուք ի հայթայթանս։»
Ասաց եւ եկն առ նա մեղմով։
Հիպպոկրատեայ աշակերտ զանձն ասէր լինել.
Թէ՝ էր տեղեակ հանգամանաց եւ զօրութեան
խոտոց մարգաց,
Եւ թէ՝ գիտէր բուժել, առանց ինչ պարծելոյ,

Զամենայն ասաց։ «Եթէ տէրդ իմ
նըժոյգ կամի,» յաւել ասել,
Զըծածկել զիւր հիւանդութիւն,
Ես գայլըս, ձրի ապաքինիմ,
Զի տեսանել միայն ըզքեզ ի դաշտի աստ
Այսպէս արձակ ճարակել խոտ՝
Հիւանդութեան է նշանակ,
ըստ բժշկաց ճարտարութեան։»
«Ես, անասունն երիվարիկ» ասէ, «ունիմ
Ընդ սմբակաւըս խաղաւարտ։»
«Որդեակ,» ասէ բժիշկըն, «չիք մասն ի մարմնի
Որ նըշաւակ իցէ այնչափ հիւանդութեանց.
Պատիւ է ինձ զի ծառայեմ տերանց իմոց երիվարաց,
Նաեւ ըզվէրըս բժշկեմ։»
Զարաճճին մեր ըսպասէր պատեհ ժամու
Գիշատելոյ ըզհիւանդ իւր։
Միւսն որ ունէր կասկած՝ այնպէս հար աքացի,
Մինչեւ տրորել
Ծնօտից նորա եւ ատամանց։
«Յիրաւի էր այս,» ասէ գայլն
անձամբ անձին՝ լեալ սրտառուչ,
Իւրաքանչիւր պարտի զիւրով արուեստիւ գալ,
Կամեցար աստ բանջարագէտ ումըն լինել,
Դու որ չեղեր երբեք թէ ոչ մըսավաճառ։

# ԱՌԱԿ Թ.

*Հողագործ եւ Որդիք նորա. 4—4*

*Ջան յանձն առէք. լերուք աշխատ,*
*Այս արծաթ է որ դուն ուրեմն պակասէ։*
*Հողագործ մին մեծատուն*
*տեսեալ ըզմահ իւր մօտալուտ,*
*Կոչէ զորդիսն, եւ հաւաստեաւ մեծաւ խօսի։*
*"Զգոյշ լերուք," ասէ ցնոսա,*
*"չվաճառել ձեզ զայս կալուած,*
*Զոր հարց մերոց թողեալ է մեզ։*
*Գանձ մեծ թաղեալ կայ ի սմա.*
*Զտեղին ոչ գիտեմ ես, բայց ժըրացարուք.*
*Գըտանել զայն լինիք ձեռնհաս.*
*Հերկեցէք զանդն ի հասանել արեգ ամսոյ.*
*Փորեցէք, արկէք խիլ, պեղեցէք,*
*մի՛ թողուցուք բընաւ տեղի*
*Ուր ոչ հասցեն ձեռք ձեր անգամ մի եւ երկու։"*
*Մեռանի հայրն, շրջեն որդիքըն զարտորայն,*
*Աստի անտի, ընդ բընաւ կողմն,*
*այնպէս զ'ի գալ ամին նորոյ,*
*Բերէ երկիրն քան զոր սովորն էր առհմականս։*
*Արծաթ թաղեալ չգըտաւ ուրեք.*
*Այլ հայրն արար իմաստութեամբ,*
*Զի ցոյց նոցա մինչեւ մեռեալ,*
*Թէ գանձ մեծ է աշխատութիւն։*

---

## ԱՌԱԿ Ժ.

*Լեառն ծննդական. 4—4*

Լեառըն մի լեալ յերկունըս մեծ՝
Արձակէր ճիչ այնպէս սաստիկ,
Մինչ ի գոչիւնն անդր ընթացեալ ուրաքանչիւր,
Կարծել եթէ ծնանելոց էր նա ըստուգիւ
Քաղաք մի մեծ քան ըզՊարիս.
Այլ որ ծընաւն էր մուկըն մի:
Իբրեւ խորհիմ ես յայս առակ,
Որ պատմութիւն է սըտայօդ,
Այլ ըստ մըտացըն ճշմարիտ,
Յիշեմ զայր ոմն մատենագիր
Որ ասէր բայ. «Զճակատն երգեմ
Զոր Տիտանեանք[79] ետուն ընդ դիւն որ որոտայ:»
Այս է բազումըս խոստանալ.
այլ զի՞նչ անտի ծնանի յաճախ,
Հողմ ապաքէն:

---

## ԱՌԱԿ ԺԱ.

*Բախտ եւ Մանուկ փոքր. 4—4*

Առ եզե՛րբ խոր ջրհորոյ
Երկայնութեամբըն տարածեալ ննջէր, ասեն,
Մանուկ մի դեռ ի վարժոցի:
Ուսանողաց ամենայն է մահիճ եւ բարձ:
Այր լաւ եթէ դիպէր անդէն,

Դիրկըս քըսան վազէր ի բաց.
Այլ ի տեղին մօտ ըստ բախտի
Ճակատագրին անցեալ՝ զարթոյց ըզնա մեղմով.
Ասէ, «Սիրունդ իմ, աւասիկ փրկեմ ըզքեզ,
Այսուհետեւ իմաստնագոյն լեր, աղաչեմ.
Եթէ յանկարծ անկանէիր,
ապաքէն ինձ դընէին մեղ.
Այլ քո է վնասն:
Խնդրեմ, աղէ, ասա քեզէն,
Մի՞թէ այս մեծ անմըտութիւն
Յիմմէ՞ կուսէ գայ:» Ասացեալ զայս մեկնի նա.
Ես հաստատեմ ըզբան նորա:
Ոչ հանդիպի ինչ յաշխարհի,
Որում չառնի Ճակատագիրըն պարտական.
Նըմա դընեմք մեղ հանապազ.
Նա համարի երաշխաւոր համօրէն իսկ պատահարաց:
Ե՞ ոք անմիտ, ապուշ, թերի ի հաշիւ իւր
Արդարանալ կարծէ բախտին լեալ մեղադիր.
Համառօտիւ Ճակատագիրն է յանցաւոր յամենայնի:

---

## ԱՌԱԿ ԺԲ.

*Բժիշկք. 4—4*

Յոռի-յոռին երթայր ի տես առն հիւանդի,
Որում առնէր այց եւ ընկեր նորա Լաւ-լաւն:
Յուսայր վերջինս այս, թէպէտեւ ընկեր նորա
Պնդէր թէ էր հիւանդն առ հարս իւր յաւելոց:
Դարմանոցն վասն երկոքին եւս լեալ այլակերպ,

Զիւանդն ըղձարկն հատոյց բնութեան.
Յետ որոյ խրատք Յոբի-յաւելոյն հաւատացան:
Այլ տակաւին անցնիւր ձաղանս
համարէր զայն հիւանդութիւն:
Մի՛ն ասէր թէ, «մեռաւ, որպէս եւն ասէի:»
«Թէ՛ անասցեալ էր ինձ,» ասէր
ընկերն, «ապրէր նա բատուգիւ:»

## ԱՌԱԿ ԺԳ.

Հաւ որ ածէր ձուս ոսկեղէնս. 4—4

Ագահութիւն ի կամել իւր շահել ըզլինաւ՝ կորուսանէ.
Օ՛ն, ի հանդէս բանիս տեսցուք
Զայրն որոյ հաւ, ըստ առակին,
Աւուր աւուր ածէր մէն մի ձու ոսկեղէն:
Այրն կարծեաց թէ հաւն ունէր գանձ ի մարմնի.
Սպան զնա, եբաց զփորն, եւ գտանէր զնա նըման
Այլոց հաւուց որոց ձուք ոչ բերէին շահ:
Այսպէս անձամբ անձին եբարձ ըզգեղեցիկն յինչից իւրոց:
Գեղեցիկ խրատ ժլատ մարդկան.
Յաւուրըս մեր որչափ յոլովըս յայնպիսեաց է տեսանել,
Որ ի ցայգուէ մինչեւ ի տիւ եղեն աղքատք,
Ի կամել անդ վաղվաղակի լինել ընչեղ:

## ԱՌԱԿ ԺԴ.

*Էշ որ տանէր նշխարս սրբոց. 4—4*

Էշ մի բարձեալ սրբոց նշխարս՝
Համարեցաւ թէ տանէին նմա պաշտօն։
Զմտաւ ածեալ այսպէս սիգայր,
Զերգըս եւ զխունկս համարեալ իւր։
Տեսեալ ուրումն ըզնա ի խաբս՝ ասէ ցընա.
“Տէր յաւանակ, հան ի մըտաց
Զայդ խօլ պարծանս.
Ոչ քեզ ինչ է, այլ նշխարացդ
Որոց պատիւդ այդ ընծայի.
Վայել են իսկ նոցա այն փառք։„
Դատաւորի որ տըգէտ է՝
Պատմուճանին է տալ ողջոյն։

---

## ԱՌԱԿ ԺԵ.

*Եղջերու եւ Այգի. 4—4*

Եղջերու մի ընդ հովանեաւ որթոյ բարձու,
Որպիսիս է իսկ տեսանել ուրեք ուրեք,
Պատսպարեալ ազատեցաւ ի մահուանէ.
Որսորդք կարծեն թէ զայս նըւագ
շանին իւրեանց վըրիպեցան.
Ուստի կոչեն յետս ըզնոսա։
Եղջերուն զերծ ի վըտանգէ,
Ըզբարերարն իւր զորթ կրծէ. ապախտիք մեծ։

Լըսեն որսորդք, դառնան այսրէն, հանեն արտաքս.
Մեռանի նա յայնըմ տեղւոջ:
«Յիրաւի անց ընդ իս,» ասէ, «այս պատուհաս:»
Խըրատեցարուք, ապախտաւորք: Անկաւ անդէն,
Եւ պառակմանն առ զիւր բաժին.
ոչինչ օգուտ եղեւ նըմա
Լալ առ որսորդըս խուճապեալս ի մահ նորա:
Ճշգրիտ պատկեր որոց դըժեն ապաստանին
Որ ըզնոսայն պատսպարեաց:

---

## ԱՌԱԿ ԺԶ.

*Օձ եւ Խարտոց. 4—4*

Պատմի թէ օձ մի մերձաւոր ժամագործի.
Դրացութիւն ժանտ ժամագործին
Մուտ ի խանութ նորա, խնդրէր ինչ առ ուտել,
Եւ ոչ եգիտ անդ այլ խորտիկ
Բայց խարտոց մի պողովատիկ
զոր կրծել նա արար ըսկիզբն.
Խարտոցն ասէ ցընա առանց զայրանալոյ.
«Պանրդո́յր, աղէ, գիտե՞ս արդեւք զոր ինչ առնես:
Ի վէգ գաս դու ընդ որում կարծր է քան ըզքեզ,
Ո՛վ օձ դու, փոքըր, գլխագար.
Մինչչեւ տաշեալ է քո յինէն
Հազիւ չորիր մասըն դանգի,
Խորտակեսցես ըզժանիս քո:
Ես չերկնչիմ բայց ի ժանեաց ժամանակին:»
Առակս առ ձեզ է, ով մարդիկ յետնոյ կարգի.

Ուր առ ոչինչ լեալ պխտանի,
խածանել լոկ էք մըտադիր.
Այլ տըւայտիք տարապարտուց։
Կարծէք թերեւս թէ ժանիք ձեր ըստնանեն ինչ
Անչափ չքնաղ չքնաղ գործոյ։
Այլ վասըն ձեր են արդարեւ
պըղինձ, երկաթ եւ ադամանդ։

---

## ԱՌԱԿ ԺԷ.

*Նապաստակ եւ Կաքաւ. 4—4*

Չէ պարտ ծաղրել ըղտառապեալս.
Զի ո՞ կարէ յուսալ լինել միշտ երջանիկ։
Ճարտարն Եզովպ յառակս անդ իւր
Տայ օրինակ մի եւ երկուս։
Զոր առաջի դընեմ ես աստ
Ընդ նորայոյն է նոյն եւ մի։
Նապաստակ մի եւ կաքաւ որ ի նմին դաշտի բընակէին՝
Կէին կարծեմ խաղաղիկ յոյժ,
Մինչ պառականք հասեալ ի հուպ՝
Տան առաջնոյն խնդրել անձին այլ ապաւէն.
Յաւուր միում խոյս ետ նա անդր,
եւ ըզշանին հան ի դերեւ,
Զ Որկորեայն[81] իսկ։
Այլ մատնեաց զանձն ի վախճանի
Վասըն շոգւոյն որ ի ջեռեալ մարմնոյն ցնդէր։
Միրոյ[81] ի միտ առ ի հոտոյն.
"Նապաստակ մեր է," ասէ այդ, եւ մեծ փութով

Պնդլի զհետ. իսկ Բիւոդոյ[81] որ է միշտ անսուտ՝
Ասէ, “Զերծաւ նապաստակ մեր:”
Ողորմելին եկըն յորջ իւր, եւ հան զոգին:
Նաղը ապարեալ կաքաւն՝ ասէ.
“Պարծէիր դու լինել արագ.
Զի՞նչ գործեցեր ոտիւքըդ քովք:”
Մինչդեռ այսպէս կատակէր սա,
Եհաս որհան, եւ գտաւ նա:
Ի թեւս իւր էր նա ապաստան.
“Ի տագնապի պահեն նոքա զխս,” ասէր նա:
Այլ եղկելին ոչ էր հաշուեալ
Զբազէն, թռչուն չարամագիլ:

---

## ԱՌԱԿ ԺԲ.

*Արծուի եւ Բու. 4—4*

Արծուի եւ բու դադարեցան ի գժտելոյ,
Մինչեւ միմեանց զիրկս արկանել.
Մին յաթոռ իւր երդուաւ, եւ միւսն
յարեւ բուոց,
Ըզմիմեանց ձագս այնուհետեւ չուտել երբեք:
“Ճանաչե՞ս զիմսն,” ասէ թռչունն Աթենասայ[82].
Արծուին ասէ. “Ո՛չ:” “Վայ,” կրկնէ
տըխուր թռչունն.
“Երկիւղ է ինձ վասըն նոցա.
Կախեալ են կեանք նոցա զդիպաց,
Զի թագաւոր ես դու, բընաւ չէ ինչ քեզ փոյթ

Ոմն, եւ ոչ Զինչ թագաւորաց
եւ դից զինչ եւ ասիցէ ոք,
Ընդ մի համար է ամենայն.
Վճարեալ է վաղն ձագուց իմոց, եթէ դիպիս նոցա:”
“Երկատեա դու ինձ ըզնոսա,”
ասէ արծուին, “եւ կամ ցոյց ինձ.
Ոչ մըխեցից ձեռս ի նոսա, ցորչափ իցեմ ես կենդանի:”
Բուն ասէ. “Ձագք իմ են սիրուն,
Գեղեցիկ, լաւ մարմնով, ազնիւ.
քան զամենայն ընկերս իւրեանց.
Ի նըշանաց աստի զնոսա ճանաչես դու կարծեմ դիւրաւ:
Մի մոռանար, կալ ի մըտի,
Զի անիծեալ Պարկայն յիմ տուն
Մի՛ գտցէ մուտ ի քո պատճառս:”
Դէպ եղեւ զի Աստուած ծընունդըս բուոյն եւս.
Եւ ընդ երեկըս գեղեցիկ աւուր միոյ մինչ եւ նա յորս,
Արծուին ետես ըստ դիպաց իմն,
Յանկեան ուրեք կարծըր վիմի,
Եւ կամ ի ծերպս աւերածոյ,
Ոչ գիտեմ յորն յերկուց աստի
Ճիւաղս փոքունըս, տըգեղս յոյժ,
Խոժոռադէմ, ժանտատեսիլ եւ չարաձայն:
“Բարեկամին մերոյ մանկունքս
այսոքիկ չեն,” ասէ արծուին.
“Կերիցուք արդ,” ասէ, “զդոսա,” եւ չեթող կէս.
Ընթրիք նորա չեն ինչ թեթեւ:
Բուն ի դարձին չեգիտ այլ ինչ բայց միայն զոտս
Իւրոց ձագուց. այն էր մնացեալ:
Տրտնջէ բուն, մատուցանէ բողոք առ դիս,

Պատուհասել ըզվատշուէրն
որ էր պատճառ սըգոյն իւրոյ:
Յայնժամ ասէ ամըն ցընա.
"Ընձին քում լեր դու մեղաւոր,
Կամ օրինացն հասարակաց
Որ կամի իմըն զի գտցէ իւրաքանչիւր զիւր նըմանին
Գեղեցիկ, լաւ, եւ բընաւըն իսկ սիրելի:
Դու առ արծուըն նըկարեցեր զորդիսդ այնպէս.
Արդ թէ սակաւ ինչ ունէի՞ն ըզնըշմարանս այնըր նոքա:"

---

## ԱՌԱԿ ԺԹ.

*Առեւծ որ երթայ ի պատերազմ. 4—4*

Առեւծ ի գործ ինչ ձեռնարկել եդ ի մըտի.
Կալաւ խորհուրդ պատերազմի, հան հըրեշտակս,
Եւ եդ առնել ազդ անասնոց:
Ամենեցուն յանձն եղեւ գործ,
իւրաքանչիւր 'ստ իւրում չափոյ.
Փըղըն տըւաւ յուսին իւրում
Բարձեալ ըզկահ պատերազմին
Որպէս սովորն էր՝ մարտնչել.
Արջոյ՝ կալ կազմ ի յարձակումն.
Աղուեսու՝ ուշ առնել դաւոյ.
Կապկին՝ խաղովք իւրովք զըւարճել
տալ թշնամւոյն:
"Արքայ," ասէ ոմն, "արձակեա դու զէշ դանդաղ,
Եւ ըզնապաստակըն վատասիրտ:"

"Ո՛չ ինաւ," ասէ արքայն, "մարթ է
ըզնոսա եւս վարել ի գործ.
Առանց նոցա բանակ մեր ոչ է կատարեալ.
Էշ արկանէ ահ՝ լինելով մեզ փողահար,
Եւ նապաստակ լինիցի մեզ ի սուրհանդակ:"
Այլ թագաւոր որ իմաստուն է եւ ըզգօն՝
Ըզփոքունս իսկ ի հպատակաց
իւրոց կարէ վարել ի պէտս.
Ազգի ազգի ձըրից նոցա է խելամուտ:
Չիք ինչ անպէտ խորագիտաց:

---

## ԱՌԱԿ Ի.

*Արջ եւ երկու ընկերք. 4—4*

Ընկերք երկու որ արծաթոյ ունէին պէտս՝
Վաճառեցին ումեք, որ էր մորթավաճառ,
Ըզմորթ արջոյ միոյ որ էր դեռ կենդանի,
Բայց զոր անշուշտ սպանանելոց եւք, ասէին:
Թէ հաւատալ պարտ էր նոցա,
էր թագաւոր արջոց արջն այն:
"Լիցիս ընչեղ," ասեն ցընա, "մորթով նորա.
Պատսպարէ այն ի կիզիչ ցրտոյ ձմերան,
Երկուս մաշկեակս առնել անտի մարթ է քան մի:"
Տենանոյ[83] զոչխարս իւր ոչ այնչափ
գովէր որչափ սոքա զարջն այն.
Այլ յիւրեանց շահ էր այն գովեստ,
եւ ոչ ի շահ ինչ գազանին:
Եդին պայման ըզմորթըն տալ,
Թէ անագան՝ յերկուս աւուրս,

Եւ ըզգընոյն միաբանեալ անկան ի խոյզ։
Գըլաանեն զայրն որ փութացեալ
գայ առ նոսա ընդոստ ընդոստ։
Արք մեր ահա իբրու հարեալ իմն ի շանթէ,
“Ժամ պայմանին,„ ասեն, “անց, թող
լուծցի եւ սակն.
Տոյժ ընդ արջոյն ի պայմանին մերում չեղաւ։„
Մին յընկերաց կռուեցաւ ել ի գլուխ ծառոյ.
Քան ըզկուճ միւսըն ցրտագոյն,
Կործան յերեսս, կերպարանի
մեռեալ, ըզշունչ իւր ունի պինդ,
Զի էր լուեալ նա ի զրուցաց,
Թէ արջք կողել ոչ են սովոր բազում անգամ
Ի մարմին որ չէ կենդանի, եւ ոչ շարժի, եւ ոչ շնչէ։
Տէրըն մեր արջ յիմարաբար անկաւ յայս խաբ.
Տեսեալ մարմին գետնատարած՝
զըկեալ կարծէ զնա ի կենաց.
Եւ առ ահին թէ խաբիցի,
Դարձուցանէ յայս կոյս, յայն կոյս,
մատուցանէ ըզցըռուկ իւր,
Եւ հոտոտեալ յանցըս շնչոյն,
“Դի է,„ ասէ, “մեկնեսցուք արդ, քանզի նեխի։„
Զայս ասացեալ արջոյն տայ խոյս
ի մօտակայ անտառ անդըր։
Մին յընկերաց անտի յայնժամ էջ ի ծառոյն.
Առ ընկեր իւր փութայ, ասէ, “Աքանչելիք են,
Զի վընաս ինչ ոչ կրեալ, բայց
երկիւղ միայն, ճողոպրեցար։„
“Բարւոք,„ յաւել, “բայց մորթ նորա՞։

Զի՞նչ ասաց նա քեզ յունկանէ.
Զի այնպէս հուպ նա եկն ի քեզ,
Եւ ճիրանամբքն ըզքեզ դարձոյց։„
— "Ասաց ցիս, 'Չէ արժան երբեք
Հանել զարջոյ մորթ ի վաճառ,
մինչչեւ հարեալ ըզնա զգետնի։'„

---

## ԱՌԱԿ ԻԱ.

*Էշ զգեցեալ զառիւծենի. 4—4*

Իշոյ արկեալ զանձամբ իւրով առիւծենի,
Ամենեցուն շուրջանակի էր ահաւոր.
Թէպէտ եւ չէր առաքինի,
Տայր նա դողալ ամենեցուն։
Ծայր ականջին ցցուեալ արտաքս ըստ դիպաց իմն,
Խայտառակեաց ըզնենգութիւնն եւ ըզպատրանս.
Մ`ըլաղացի ծառայն յայնժամ
եւ ըզպաշտօն իւր կատարեաց։
Ոմք միանգամ չէին գիտակ հնարից իշոյն չարաճըճոյ,
Զարմանային ի տեսանել անոր ըզծառայն,
Զի յաղօրի անդըր վարէր նա առիւծունս։
Բազումք են որ առնեն աղմուկ յերկրի մերում,
Յորոց ի ձեռն ծանօթագոյն լեալ է առակս։
Զօրական մի ի հեծելոց
Զերիս չորրորս ըզքաջութեան նոցա արժէ։



# ԳԻՐՔ ՎԵՑԵՐՈՐԴ

## ԱՌԱԿ Ա.

*Հովիւ եւ Առիւծ. 4—4*



Առակք չեն այն զոր թուին լինել.
Գոյզն անասուն ունի մեզ անդ
  ըզտեղի տեառն:
Խըրատ վարուց, եթէ է մերկ,
  առնէ ձանձիր.
Վէպ ըզպատուէրն
  ընդ իւր տանի:
Յայս ազգ խրատուց
  ուսուցանել պարտ է, բայց եւ լինել հաճոյ.
Վիպել յաղագըս վիպելոյ՝ թուի ինձ չնչին:
Յայս սակս իսկ է զի զիւրեանց միտս զբօսեցուցեալ՝
Գրեցին բազում արք անուանիք յայս ոճ բանից:
Ամենեքին ըզգուշացան ի պճնելոյ,
  եւ յերկար բանըս թողելոյ.
Զիք տեսանել առ նոսա բան ինչ աւելորդ:
Փեդրոս այնպէս կարճ հատանէր,
  մինչեւ յոմանց լինել պարսաւ.

Եսովպ եւս էր սովոր սակաւ բանիւք ասել.
Սակայն յոյն ոմն անցեալ ըստ չափ, եւ պարծի եւս
Լակոնական ունել հանճար։
Զառակս իւր նա ամփոփէ միշտ ի չորս ըստիքս.
Լա՞ւ թէ յոռի, թողում դատել որոց են վարժ։
Տեսցուք ըզնա ընդ Եսովպայ ի միում նիւթ։
Մ՚ին զորսորդ ոմն ածէ յառակ իւր, միւսն՝ հովիւ։
Ես չոքայ զհետ գիւտին նոցա ըստ դիպուածոյն,
Կարկատեալ յայն զճանապարհայն ինչ ինչ միայն։
Ահա գրեթէ որպէս Եսովպըն պատմէ մեզ։

Հովուի ուրումըն յոչխարս իւր գտեալ պակաս,
Ջանայ խնամով ունել ըզգողն։
Երթայ նա մօտ յանձաւ ուրեք, արկանէ շուրջ
Հողը յըմբռնել զայլս. ըզնոցունց կասկածէր նա։
Մինչչեւ մեկնեալ ի տեղւոջէն,
"Եթէ շնորհես,„ ասէ նա, ո՜վ Թագաւոր դից,
Զի չուառականն անկցի ի հաղբս առաջի իմ,
Եւ զայս հաճոյս ճաշակեցից,
Ի միջոյ քսան որթուց ընտրեալ
Զկարլին պարարտ՝ մատուցից քեզ։„
Յասել նորա զայս՝ յանձաւէն ել առիւծ մեծ եւ ահագին։
Թաքչի հովիւն, եւ կիսամահ ասէ ի միտս.
"Քանի՜ անգէտ է մարդ,„ ասէ, "որում խնդրէն.
Ի գտանել ըզգողն որ զիմ հօտ սատակէր,
Եւ տեսանել ըզնա կալեալ
ի թակարդիս, չեւ մեկնեալ իմ,
Ո՛վ Թագաւոր դից, ուխտեցի ես քեզ երինջ,
Արդ ուխտեմ ես եզըն մի քեզ,
Թէ տաս նըմա մեկնել աստի։„

Այսպէս գըրէ առակախօսըն գլխաւոր.
Ընցցուք այժմիկ առ նըմանողըն:[84]

---

## ԱՌԱԿ Բ.

*Առեւծ եւ Որսորդ. 4—4*

Մեծաբան ոմն սիրող որսոյ,
Կորուսեալ շուն յազնիւ տոհմէ,
Եւ կասկածեալ թէ առիւծու էր կերեալ զայն,
Ետես հովիւ մի. «Ո՛ն, ասա ինձ, աղաչեմ,»
Ասէ, «զգողոյն իմոյ դադար.
Զի արարից ինձ իրաւունս:»
Հովիւն ասէ, «ի լեռնակողմըն կոյս անդր է:
Տըւեալ նըմա հարկ ոչխար մի
Ամսոյ ամսոյ, ի դաշտի աստ շրջիմ որպէս
Հաճոյ է ինձ ի հանգստեան:»
Ի ժամու անդ յորում ասէր նա զայսոցիկ.
Առիւծն ի դուրս ել, գայր առ նա խուճապելով,
Որ մեծամեծարըն կոտորէր՝ խոյս տայ իսկոյն.
«Ո՛վ Արամազդ, ցոյց ինձ տեղի ապաստանի,»
Գոչէր ըստէպ, «ուր մարթասցայց ապաւինել:»
Ըստոյգ հանդէս քաջութեան առն
Ի մօտալուտ վըտանգի անդ լինի յայտնի:
Է որ ասէ, «Եմ դիմագրաւ.»
սակայն իսկոյն փոխի լեզուն.
Ի հասանել անդ վըտանգին անդէն տայ խոյս:

---

## ԱՌԱԿ Գ.

*Փեբոս եւ Բորեաս. 4—4*

Բորէաս[85] եւ Արեւ տեսին ճանապարհորդ
Պատսպարեալ յաջողութեամբ
Ընդդէմ ցրտոյ։ Աշնանային էր ժամանակն,
Յորժամ բարւոք է զգուշութիւն ուղեւորաց։
Տեղայ անձրեւ, ծագէ արեւ, եւ ծիածան[86]
Որոց արտաքս ելանեն՝ տայ այսպէս խրատ,
Թէ յայն ամիս է կարեւոր նոցա մաշկեակ.
Լատինք[87] յայն սակս անստոյգ ամիս
սովոր էին կոչել զնոսա։
Ակըն կալեալ այրն անձրեւի՝
Մաշկեակ բարւոք պաստառալիր
ունէր զուսով, կարի ըստուար։
«Սա,» ասէ հողմն, «համարի զանձն
ամրացեալ յոյժ
Առ ամենայն անհարթութիւն, այլ ոչ գիտէ
Թէ ես կարեմ շնչել այնպէս,
Զի ոչ տոկան ճարմանդք. հարկ է, եթէ կամիմ,
Տառատոկին երթալ ի բաց.
Այս տեսիլ մեզ լինելոց է կարծեմ հաճոյ.
Հաճի՞ս ընդ այս։» «Բարւոք,
ո՛ն եկ, դիցուք գրաւ,»
Ասէ Արեւն, առանց ըզբանսն յերկարելոյ,
«Ո՞վ վաղագոյն տեսցուք տացէ մերկանալ զուս
Ազնուականիս զոր տեսանեմք։

Ակսիր ուրեմն, արդ թողում քեզ
մթացուցանել ընկերշդյս իմ:»
Ջեղեն ինչ պէտք այլոց բանից:
Ընչողըն մեր որ եդ ըզգլրաւն՝
Լընու փըքով, եւ ուռուցեալ որպէս ըզգունդ,
Ըռնէ շըռինդըն դիւական.
Սուլէ, շնչէ, մըրկէ, քանդէ յանցանելըն անդ
Յարկըս բազումս որ չեն կարող,
կորուսանէ նաւս ոչ սակաւ.
Այս ամենայն ի մաշկեկի միոյ աղագս:
Ճանապարհորդըն մեր ջանայ չըտալ հողմոյն
Ի մաշկեակ անդըր մըտանել:
Զայս օրինակ պահեցաւ նա:
Հողմըն կորոյս զիւր ժամանակ.
Որչափ նա բուռն առնէր, այնչափ
միւսըն կայր պինդ:
Զօձիս եւ զխորշըս հանդերձին զուր առ ի ձեռն:
Այն ինչ հասեալ ի վախճան անդըր պայմանին
Որ ի գրաւին էր սահմանեալ,
Արեւըն զամպըն փարատէ,
Զուարթացուցեալ ջեռուցանէ զազնըւականն,
Մինչեւ տըւեալ քըտնել նըմա ՚նդ տառապակաւն,
Մերկանալ զայն բռնադատել.
Թէեւ. Արեւն ոչ զամենայն
զօրութիւն իւր էարկ ի կիր:
Քան բռնութիւն՝ ազդողագոյն է քաղցրութիւն:

---

## ԱՌԱԿ Դ.

*Արամազդ եւ Հողագործ. 4—4*

Արամազդայ էր ագարակ մի ի վարձու.
Զերմէս արար ազդ, եւ բազումք մատեան յառաջ,
Մատուցին գինս, լուան զայլոցն.
Նշէն սակայն բազում պարձուածք:
Մին պատճառէր թէ կալուածն էր
Կարօտ ծախուց եւ կորդ, եւ այլ ոք այլազգ ինչ:
Մինչդեռ նոքա են ըղձանիւք զայս օրինակ,
Ոմն յորերոյն յանդգնագոյն,
այլ ոչ քան զայլս իմաստուն ինչ,
Խոստանայ տալ այսչափ, միայն թէ Արամազդ
Թողցէ նմա յարդարել զօդն,
Եւ փոփոխմունս տարւոյ տացէ
այնպէս որպէս նայն ախորժէ.
Զի ունիցի ջերմ եւ ցուրտ, ջեր, սառամանիս,
Երաշտութիւն եւ անձրեւածս
Յետ պայմանին հաստատելոյ:
Հաճեալ ընդ այն Արամազդայ՝
հաստատէ դաշն, եւ այրն մեր
Լինի իշխան օդոյն, ածէ անձրեւ եւ հողմ.
համառօտիւ
Օդն է միայն վարըն նորա:
Դրացիք նորա մերձաւորք յոյժ
Ոչինչ ըզգան աստի այնչափ
որչափ ընակիչք Ամերիկայ.
Ի նոցա շահ էր այն. եղեւ տարին բարւոք վարըն նոցա.

Լի հարաւունք, լի այգեկութ,
Տէր հողագործն ոչ առ սակայն
ըզբաժին իւր ըստ արժանւոյն։
Ի գալ ամին ահա փոխի ամենայն ինչ.
Յարդարէ նա այլ օրինակ
Զօդոյն խառնուած.
Այլ արտք նորա չեղեն այնու ազնըւագոյն,
Ուր դըրացեացն ամեթացեալ բերին արդիւնս։
Զի՞նչ առնէ նա։ Առ թագաւորըն դէպ դիմէ.
Խոստովանի զիւր խակութիւն։
Որմիզդ, ասեն, քաղցրութիւն մեծ եցոյց նըմա։
Ի միտ առցուք թէ տեսչութիւն
Գիտէ թէ զինչ պիտոյ է մեզ՝ լաւ քան ըզմեզ։

---

# ԱՌԱԿ Ե.

*Արաղաղ, Կոռզ եւ Մկնիկ. 4—4*

Մկնիկ մի փոքր յոյժ որոյ ոչ էր տեսեալ ինչ,
Յըմբռնեալ մերձ եղեւ յանգէտս։
Տես զհա՞րդ նա պատմէ զդիպուածըն մօր իւրում.
“Անցի ’նդ լերինս որ են սահմանք երկրին մերոյ.
Վազվազէի ոչ այլազգ քան մանուկ առնէտ
Որ խնդրիցէ խաղալ արձակ,
Մինչ անասունք երկու ինձ յակն անկանէին.
Մին քաղցըր, լաւ եւ բարեմոյն,
Միւսն ըստամբակ, խըռովարար.
Ունի նա ձայն սաստիկ եւ խիստ,
Եւ ի գլուխ իւր կատոր մըսոյ,

Աղգ լինչ բազկի որով ընդ օդըս բարձրանայ
Որպէս թէ թռիչս առնուլ կամի.
Ագին պարզեալ որպէս ցրցունս:„
Արդ, աքաղաղ էր սա զորոյ մկնիկըն մեր
Օպատկերն ապար իւրում մօրկան,
Իբր անասնոյ եկելոյ նոր յԱմերիկայ:
"Ռազկօքըն նա," ասէր, "ըզկողըն բաբախէ,
Արարեալ շռինդն, աղմուկ այնպէս,
Մինչեւ ինձ որ, փառք Աստուծոյ,
եմ քաջասիրտ, որպէս կարծեմ,
Փախուստ առնուլ առ երկիւղի,
Տըւեալ անէծըս մըտադիւր:
Առանց նորա ընդելնուլի
Ընդ անասնոյն որ այնպէս քաղցր ինձ թըւեցաւ:
Իբրեւ ըզմեզ է նա մազեղ,
Խայտախարիւ, երկայնագի, խոնարհամիտ,
Ականողէք համեստ, սակայն արձակեն լոյս.
Անշուշտ ընդել, համակարիք
Մըկանց ազգի, քանզի եւ են նորա ականջք
Չեւով հանգոյն իմըն մերոց:
Մատչել առ նա յօժարէի,
մինչ ի բարբառ սուր եւ սաստիկ
Միւսն ի փախուստ դիմել ետ ինձ:„
Մայր մուկն ասէ ցընա, "Որդեակ,
քաղցրն այն է կուզ,
Որ ընդ մեղմեխ կերպարանօքն
Հակառակ քո առհմին ողջոյն
Կըրէ ոգի նա չարակամ:
Միւս անասունն ընդ հակառակն,

Թող զի հեռի է յառնելոյ մեզ չարութիւն,
Թերեւս յաւուր միում լեցի մեզ կերակուր.
Իսկ կուզն ի մեր վերայ չինէ
համապազ զիւր խոհակերոց:„
Որչափ իցես կենդանի լեր ըզգուշագոյն
Գտանել ըզմարդ ըստ երեսաց:

---

## ԱՌԱԿ Զ.

*Աղուէս, կապիկ եւ Անասունք. 4—4*

Ազգ անասնոց ի մեռանել անդ առիւծու,
Որ էր իշխան երկրին յորժամ էր կենդանի,
Գումարեցան ընտրել իւրեանց նոր թագաւոր:
Հանին ըզթագն ի պատենէն.
Ի դիպահոջ ուրեք վիշապ մի պահէր զայն:
Յամենեցուն վերայ փորձեալ, առեն, գըտաւ,
Զի ոչ միում պատշաճէր այն:
Կիսոց գըլուխն էր կարի փոքր,
Այլոց էր մեծ, դարձեալ այլոց՝ եղջերաւոր.
Կապիկ փորձէր զայն իբր ընդ խաղ.
Եւ նա ըզխոյլն առ ի զբօսանս.
Շուրջ գայր հպտել,
Խեղաթիւրէր, առնէր բիւր խաղս.
Թափ անցանէր իբր ընդ անուր:
Այս ամենայն թուեցաւ այնպէս հաճոյ այլոց,
Մինչեւ ընտրել ըզնա արքայ,
Եւ մեծարել իբր այնպիսի:
Աղուէս միայն ըստրջացաւ ընդ քըւեայն իւր,

Այլ ոչ ի վեր հան զիւր խորհուրդ
Փոքր ի շատէ ըզմեծարանս իւր մատուցեալ,
Ասէ ցայլքայ, «ի Թաքստեան
ուրեք, այլքայ, գիտեմ ես զանձ.
Եւ ոչ կարծեմ թէ քան զիս այլ ոք գիտէ զայն.
Ամենայն զանձ ըստ իրաւանց արքայութեան
Քում մեծութեան է անկ, այլքայ:»
Ուր թագաւորին ըզմուտ եւ զել գիտել ցանկայր.
Երթայ անձամբ զի մի գուցէ խաբեսցի ինչ:
Այլ հաղբ էր այն, ըմբռնեցաւ:
Աղուէսն ասէ յանուն այլոց.
«Առաջնորդել մեզ համարիս ըզքեզ ձեռնհաս,
Դու որ անձին առաջնորդել չես բաւական:»
Իսկոյն արկաւ նա յաթոռոյն.
Ժողովն յայն իմն էր միաբան,
Թէ սակաւուց վայելէ թագ:

---

## ԱՌԱԿ Է.

*Ջորի որ պարծի ընդ ծախծիս իւր. 6—6*

Ջորի մի երիցու պարծէր թէ էր տոհմիկ,
Եւ խօսէր անդադար
Զիւրմէ մօրէն ճայկէ,
Զորմէ բազում ինչ գործ
քաջութեան պատմէր նա:
«Զայս ինչ,» ասէր, «արար,
յետոյ գնաց յայն տեղի:»
Աստի որդին պնդէր,

Թէ էր արժան յիշել ըզնա ի պատմութեան։
Նախատինս համարէր ծառայել բժշկի։
Այլ իբրեւ ծերացաւ, եղաւ նա յաղօրիս.
Յայնժամ հայրըն նորա էջ եղեւ նըմա յուշ։
Եթէ չաջողութիւն չէր յայլ ինչ շահաւոր
Թէ ոչ ի զգաստութիւն ածել զայր անհանճար,
Իւր ապաքէն արժան
Համարելոյ ըզնա օգտակար ի գործ ինչ։

---

## ԱՌԱԿ Ը.

*Ծերունի եւ Էշ. 6—6*

Ծեր ոմըն հեծեալ յէշ՝ յանցանել իւր ետես,
Ասեն մարգագետին խոտաւէտ, ծաղկալից։
Արձակէ անդըր զէշն, եւ գըրաստըն դիմէ
Ընդ մանրախոտըն մարգ.
Մերթ թաւալի եւ մերթ քորի եւ քոշքոտի,
Վազվազէ եւ խանչէ, եւ մերթ եւս արածի,
Բազում վայրս առնէ ջինջ։
Մինչդեռ նա զայնուիկ էր, հասանէ թշնամին,
“Օ՛ն, փախիցուք,„ ասէ ծերունին մեր յայնժամ.
Իսկ յաւանակըն տայ պատասխանի, “Ընդէ՞ր.
Միթէ տացե՞ն ինձ կրել կրկին թամբ,
կրկին բեռն։„
“Ոչ,„ ասէ ծերունին որ փութայր ի փախչել։
“Ապա զի՞ փոյթ,„ ասէ էշըն, “թէ ում եղէց.

Ապրեցո զանձըն քո, եւ Թող զիս ճարակել:
Թշնամին տէր մեր է,
Ասեմ քեզ համարձակ:»

---

## ԱՌԱԿ Թ.

*Եղջերուն որ տեսանէ զանձն ի ջուր. 4—4*

Ի հայելւոջ աղբեր միոյ
Զանձըն տեսեալ եղջերու մի,
Գովէ ըզգեղ եղջեր իւրոյ,
Այլ ոչ կարէր առանց վշտի
Տանել սրունից իւրոց նըրբոց,
Զորոց ըզհետըս տեսանէր գոգ կորուսեալ ի մէջ ջըրոյն:
«Զի՞նչ նմանութիւն գլխոյ իմոյ 'ւ ոտից իմոց,»
Ասէր, տեսեալ զըստուերըն ոտիցըն, սրտառուչ.
«Ի բարձրաբերձ ծառոց մինչեւ
ի ծագ՝ ճակատ իմ հասանէ,
Ուր ոտք իմ չեն ինձ ի պատիւ:»
Մինչ նա խօսէր զայս օրինակ,
Շուն որսորդին առնէ ըզնա հալածական:
Զանայ պրծել,
Վարի յանտառս.
Եղջեւրք նորա զարդ վընասու,
Եղեալ արգել յանցնիւր վայրկեան՝
Լինին խափան պաշտաման զոր մատուցանեն
Ոտք իւր զորոց կախի արեւ կենաց նորա:
Փոխէ ըզբան իւր նա յայնժամ,
կարդայ անէծըս պարգեւին,

Զոր սովոր են տալ նմա երկինք ամի ամի։
Ըզգեղեցիկն յարգեմք, խոտեմք մեք զօգտակարն,
Եւ գեղեցիկն յաճախ ըզմեզ կորուսանէ։
Եղջերուս այս պարսաւէ զոտս
իւր որ առնեն ըզնա թեթեւ,
Եւ եղջերաց իւրոց գովէ շուք որ նըմա են վնասակար։

---

## ԱՌԱԿ Ժ.

*Նապաստակ եւ Կրայ. 4—4*

Ընթանալ չէ ինչ մեծ օգուտ,
գործ է մեկնել ի դէպ ժամուն։
Այսըմ վըկայ են Նապաստակ մի եւ կըրայ։
"Արասցուք գրաւ," ասէ վերջինս,
թէ կարիցե՞ս դու հասանել
Վաղ քան զիս յայս ինչ նըպատակ։"
"Մոլիս, ով դու,"
Պատասխանի ետ անասունն արագընթաց.
"Ընկեր ըզքեզ պարտ է սրբել
Եղեբորոսիւ ցորեանըս չորս։"
"Մոլիմ թէ ոչ, մտանեմ," ասէ
կըրայն, "ի դաշն։"
Եղեւ այնպէս, եւ յերկոցունց
Եդաւ գըրաւ մօտ ի նպատակն։
Թէ զինչ, գիտել չէ կարեւոր,
Եւ ոչ իսկ թէ ով դատաւոր եկաց նոցա։
Նապաստակին առնուլ չորս վազս էր բաւական.

Զվազից, ասեմ, զոր առնու նա,
յորժամ մերձ է յանկանել բուռն.
Ի շանց անտի հեռանայ նա,
ի կաղանդ[88] անդր յղէ զնոսա,
Եւ ամայի դաշտըս նոցա տայ հատանել:
Արդ, զի ունէր նապաստակ մեր
ժամ պարապոյ ի ճարակել,
Ի ննջել եւս եւ դնել ունկն
Թէ ուստի հողմ գայցէ, թողու նա կրիային
Գնալ մեղմով իշխանաբար:
Կրիայն մեկնի, ջանայ հնարի,
փութայ հանդարտ:
Իսկ նապաստակն արհամարհէ զայն յաղթութիւն,
Ըզգըրաւէն չառնէ ինչ փոյթ,
Նա պատիւ իսկ իւր համարի
Ընագանի մեկնել: Հանգչի, կայ ճարակել.
Զբաղում իւիք ըզբաղի նա,
Ըզգրաւէն ոչ: Յետուստ ուրեմըն նշմարէ,
Զի միւսըն կայր հասեալ ի կէտ նըպատակին.
Արանայ որպէս սըլաք, սակայն վազք զոր առնու՝
Ըռնին ունայն. կրիայն արդէն էր ժամանեալ:
«Բա՛բէ,» ասէ կրիայն յայնժամ,
«Ո՞չ յիրաւի ասէի քեզ,
Արագութիւն քո չարժէ ինչ:
Յաղթութիւնն իմ եղեւ, եւ զի՞նչ
լինէր արդեւք,
Եթէ եւ տուն մի կրէիր:»

---

## ԱՌԱԿ ԺԱ.

*Էշ եւ Տեարք Նորա. 4—4*

*Պարտիզպանի ուրուք գրաստն*
*եղեւ տրտունջ ճակատագրին,*
*Զի յառաջ քան զայգըն տային նըմա յառնել:*
*"Հաւք," ասէր, "ի զուր երգեն առաւօտուն.*
*Բան ըզնոսա առաւել եմ վաղայարոյց.*
*Եւ հի՞մ արդեւք. բառնալ տանել խոտ ի վաճառ:*
*Գեղեցի՜կ հարկ խափանելոյ զիմ քաղցրը քուն:"*
*Ճակատագրին խանդաղատեալ ընդ վիշտ նորա՝*
*Տայ նըմա այլ ատէր, եւ գրաստ մեր*
*Անց ի ձեռաց պարտիզպանին*
*ի ձեռս ուրումն խաղախորդի:*
*Եւ ծանրութիւն մորթոց, եւ հոտըն նոցա ժանտ*
*Տաղտկացուցին յետ սակաւուց զէշըն անհամբեր:*
*"Առաջնոյ տեառն իմում," ասէ ցանկամ ես արդ.*
*Յորժամ ըզգլուխ իւր նա," ասէ, "դարձուցանէր,*
*Կորզէի ես, թէ յիշեմ քաջ,*
*Կաղամբոյ մասն ինչ, եւ առանց դժուարութեան.*
*Իսկ աստ ոչինչ այնպիսի շահ,*
*եւ կամ եթէ իցէ երբեք,*
*Դայ զաւազան:" Պայման կենաց նորա փոխի.*
*Յածխագործի ուրուք յերկրի*
*Ընկողմնեցաւ նա հուսկ յետոյ:*
*Դարձեալ տրտունջ: "Զի՞նչ այս," ասէ*
*ճակատագիրըն ցասուցեալ.*
*"Ինչէ առնէ զիս այնչափ աշխատ,*

Որչափ առնել չէր մարթ հարիւր թագաւորաց։
Մինթէ կարծէ թէ ի՞նքն եւեթ իցէ դժգոհ,
Չունի՞մ ես այլ հոգ ի մտի քան ըզնորայն։„
Ճակատագրին բանք են արդար։
Մարդիկ այսպէս են համօրէն.
Կենաց մերոց պայմանք չըտան մեզ լինել գոհ.
Վերջինըն միշտ է յոռեգոյն։
Աշխատ առնեմք զերկինս գըրովք պաղատանաց։
Թէ Արամազդ տայր եւ անցնիւր զիւր խնդրուած,
Դարձեալ ըզգըլուխ նորա նոյնպէս կոշկոճէաք։

---

## ԱՌԱԿ ԺԲ.

*Արեգակն եւ Գորտք. 4—4*

Ի հարսանիս բռնաւորի համօրէն ազգն ուրախութեամբ
Հեղձուցանէր ըզթախծութիւն իւր ի պուտուկս։
Եսովպ միայն ասէր, “Յիմար են որեարս այս,
Յայտնել այնչափ ուրախութիւն։„
“Երբեմն կամ եղեւ,„ ասէր, “արեգական
Ձեռն արկանել յամուսնութիւն։
Անդէն եղեւ լու զի ողջոյն
Բնակիչք մօրաց
Զբախտէն իւրեանց սրտնջէին։
‘Զի՞նչ արասցուք, եթէ լիցին նորա մանկունք,,
Ասեն նոքա ճակատագրին, ‘Արեգական միում հազիւ
Մարթ է տանել, թէ լինին վեց արեգակունք,
Յամաքեսցին ծով եւ բնակիչք նորա ի սպառ։
Ողջո՛յն, ճահիճք, ձեղ, եւ պլտուք. ազգ մեր ջնջի.

Յետ սակաւուց տեսչիք ըղձա ոչ այլ ուրեք,
Թէ ոչ յափունս Ըստիւքս գետոյ։„ Հէք անասնոց,
Իմա՝ գորտոց, այսպէս խորհել,
որպէս կարծեմ, չէր ինչ անդէպ։

---

## ԱՌԱԿ ԺԳ.

### Շինական եւ Օձ. 4—4

Շինական ոմն, ասէ, Եզովպ
Բարի, այլ ոչ այնչափ ըզգօն,
Յաւուր ձմերան, իբրեւ ճեմէր
Ըզտամբ իւրով շուրջանակի,
Տեսանէ օձ ի վերայ ձեան
Թմբրեալ, պաղեալ, ընդարմացեալ, անշարժ, անզօր,
Թէ շատ՝ կեցոց էր նա չորիր մասըն ժամու։
Շինականն առ ըզնա, տարաւ ի տընիկ իւր.
Եւ ոչ ածեալ զմըտաւ թէ զինչ
լինիցի դարձ փոխարինի
Ընդ երախտեաց այնըր գործոյ,
Դնէ ըզնա մօտ ի կրակարանն,
Ջեռուցանէ եւ տայ յառնել։
Սակայն գազանըն բըրտացեալ
այն ինչ ըզգայ ըզջերմութիւնն,
Սզին իսկոյն դառնայ ի նա հանդերձ ցասմամբն։
Բառնայ ըզգլուխն, ապա չէ,
Ապա գելեալ եւ գալարեալ՝ ջանայ վազել
Ընդդէմ իւրոյ բարերարին, փրկչին եւ հօր։
“Անշնո՛րհ, „ ասէ ցնա շինականն, “ա՞յս են իմ վարձք։

Մեռցիս։„ Յայս բան արդար ցասման,
Զկացինն առնու, կորէ զգազանն,
Առնէ երիս օձըս, տըւեալ կրկին հարուած,
Իրան, տըտուն եւ գըլուխ մի։
Մողէսն ոստնու, ջանայ կցել,
Այլ չէ ձեռնհաս։
Ապաքէն լաւ է ունել գութ,
Սակայն առ ո՞։ Այս է խնդիրն։
Յապաշնորհաց չէք ոք բընաւ
Որ ոչ մեռցի հէք եւ թշուառ։

---

## ԱՌԱԿ ԺԴ.

*Առիւծ հիւանդ եւ Աղուէս. 4—4*

Արքայն, ասեն, չնչաւորաց
Որ ի մորուոջ իւրում անկեալ դընէր հիւանդ,
Առ հըպատակս իւր հան հրաման,
Զի մէն մի ջոկ դեսպանութեամբ
Յըղեսցէ այս յայցելութիւն,
Տըւեալ խոստումն դընելոյ շուք
Ե՛ւ դեսպանաց, եւ որոց զան ընդհետ նոցա,
Յանձն իւր երդուեալ յայտնի բանիւք,
Եւ տըւեալ եւս վստահութեան գիր ի ժանեաց,
Ի ճիրանեանց իւրոց նոյնպէս։
Կատարեցան բանք արքային.
Իւրաքանչիւր ջոկ առաքէ պատգամաւոր։
Աղուէսք միայն մընան ի տան.
Պատճառի մին զայս օրինակ.

“Հետք դղրդմեալք ի փոշւոջ անդ
Գըրնացելոց,„ ասէ, “ի տես խօլթացելոյն,
Ամենեցուն, առանց ի բաց
հանելոյ ըզմին, հայլին յորջ անդր,
Եւ ոչ մին իսկ ցուցանէ դարձ.
Այս է որ տայ մեզ կասկածել:
Թող ներեսցէ մեզ տէր արքայ.
Ըզգըրոյն նորա վստահութեան ունիմք շընորհ.
Բարւոք է այն. այլ յանձաւ անդր
Տեսանեմք քաջ զի մըտանեն,
Այլ թէ ել ոք, ոչ տեսանեմք:„

---

# ԱՌԱԿ ԺԵ.

*Հաւորս, Բազէ եւ Արտոյտ. 4—4*

Անզգամութիւնք անիրաւաց
Մերոցըն տան բազում անգամ արդարանալ:
Այս են օրէնք տիեզերաց.
Եթէ կամիս զի խնայեսցեն
քեզ, խընայեա եւ դու այլոց:
Շինական ոմըն հայելեաւ ըմբռնէր հաւս:
Երեւոյթն այն փայլուն ձըգէ յինքն արտոյտ մի.
Անդէն բազէ մի որ յածէր շուրջ զակօսիւ՝
Իջեալ յօդոյն գայ խոյացեալ
Ի վերայ հէք թռչնոյն որ կայր
երգէր, թէպէտ մերձ ի շիրիմ:
Ի նենգաւոր գործւոյ անտի էր խուսափեալ,

Յորժամ տեսեալ զանձն ընդ ձեռամբ գիշակերին,
Ըզճիրանանց նորա ժանտից առնու ըզփորձ։
Մինչ ի փետել ըզնա բազէն կայր ըզբաղեալ,
Ինքն ի վարմին շաղեալ պատի։
"Հաւո՛րս, թո՛ղ զիս," ասէ իւրով բարբառով նա.
"Չիք իմ ինչ չար արարեալ քեզ։"
Հաւորսըն տայ պատասխանի, "Միթէ թռչնիկդ
Է՞ր արարեալ քեզ վընաս ինչ։"

---

# ԱՌԱԿ ԺԶ.

*Ձի եւ էշ. 4—4*

Յաշխարհի աստ պարտի օգնել այր ընկերի.
Եթէ դըրացին քո մեռանի,
Բեռն անկանի ի վերայ քո։
Էշ մի եղեալ ընկեր ձիոյ
որ չէր կարի ազնուական.
Սա ոչ այլ ինչ կըրէր բաց յիւր սապազինէն.
Մինչ էշն այնպէս էր բեռնաւոր մինչեւ ընկճել։
Աղաչէ նա ըզձին օգնել նըմա դոյզն ինչ.
"Ապա թէ ոչ," ասէ, "մեռայց,
չեւ ի քաղաք անդըր հասեալ։
Խնդըրուածս իմ ոչ է կարծեմ անպատեհ ինչ.
Բեռին իմոյ կէսն է թերեւս խաղ վասըն քո։"
Ձին հրաժարի՝ փուքս արձակեալ.
Այլ մինչ ետես մեռեալ զընկեր իւր ընդ բեռամբ,
Ըստրջացաւ.

Զիջոյն յայնժամ
Բարձին ըզբեռըն յուս նորա,
Յայնըր վերայ նաեւ ըզմորթն։

---

## ԱՌԱԿ ԺԷ.

*Շուն որ թողու զորս իւր վասն ստուերին 4—4*

Ուրաքանչիւր խաբի յաստիս.
Զքստուերի զհետ պնդեալ երթան
Այնչափ յիմարք մինչեւ գիտել չէ հնարաւոր
Բազում անգամ ըզթիւ նոցա։
Առ եսովպեան շունն առաքել պարտ է զնոսա։
Շունս այս տեսեալ զորսոյն իւրոյ պատկեր ի ջուր,
Եթող նա զորսն ընդ պատկերին,
եւ փոքր միւս եւս եւ հեղձնոյր։
Գետն յանկարծ խմբըն պղտորի.
Հազիւ յափունս անդր հասանէ.
Չունի զըստուերն, ոչ ըզմարմին։

---

## ԱՌԱԿ ԺԸ.

*Սայլորդ խրեալ ի տիղմ. 6—6*

Փայեթոն[91] ումըն խար բարձեալ տանէր ի կառս.
Խըրեցաւ սայլըն յանկարծ ի տիղմ։ Հեռի էր այրն
Յօգնութենէ մարդոյ։ Էր ի վայրի ուրեք

Ի Ստորին Պըրդանեի մօտ գաւառաց ի մին,
Որոյ կոչումն անուան է Քեմբէր — Քորանդէն։
        Ճակատագիրն, յայտ է,
Ընդր առաքէ մարդիկ զորըս տանջել կամի։
Մի տացէ Աստուած մեզ ճանապարհորդել անդ։
Եկեսցուք առ սայլորդն որ ընկղմեալ ի տիղմ
Նըզովէր եւ երդնոյր որպէս զհարդ կարէր,
Ընէծըս կարդալով խոռոջաց եւ ձիոց,
Սայլակին իւրում եւս, եւ անձին իւրում իսկ։
Ապա կարդայ առ դիսն որոց գործք արութեան
        Են ծանօթ աշխարհի։
“Ո՛վ վահագն„, ասէ, “ե՛կ, օգնեա ինձ.
        Թէ թիկամբ
Քով բարձեալ տարար դու զոլորակ մեքենայն,
Բազուկ քո կարող է հանել եւ զիս աստի։„
Զայս աղօթս արարեալ՝ լուաւ անդուստ յամպոց
        Ձայն որ խօսէր այսպէս.
“Վահագնի այս են կամք զի անցնիւր շարժեսցի,
Եւ ապա ինքն օգնէ։ Հայեաց թէ ուստի գայ
        Խոչն որ ունի ըզքեզ,
Ի բաց սրբեսջիր շուրջ զիւրաքանչիւր անուով
Զանիծեալ զայն շաղախ, ըզնըզովեալըն ցեխ,
Որ մինչեւ ի սռնն անդ ծեփեալ է ըզնոսա.
Ա՛ռ զուրագ քո եւ բեկ ըզվնասիչ կոպիճդ,
Լից ըզխըրամդ։ Արարե՞ր։„ “Այո՛,„ ասէ սայլորդն։
“Արդ ուրեմն օգնեմ քեզ,„
            ասէ Ձայնն, “առ մտրակ։„
“Առի,„ ասէ սայլորդն,
            “զի՞նչ այս. սայլն իմ գընայ.

Գոռլեալ լեցի վահագն։„
Յայնժամ ձայնըն, “Տեսե՛ր,„
Ասէ, “զիարդ հեշտեաւ ել անդրուարն ի դիւր։„
Օգնեա անձին, երկինք եւս քեզ օգնեսցէ։[92]

---

## ԱՌԱԿ ԺԹ.

*Սուտ բժիշկ. 4—4*

Ձեղեն պակաս մեզ յաշխարհի աստ սուտ բժիշկք.
Գիտութիւնս այս ի վաղնջուց
Վարդապետօք եղեւ յուռթի։
Մին ի նոցունց ի թատրոնի
զԱքերոն[93] իսկ արհամարհէ.
Եւ միւս ոմն այլ ի քաղաքի հանէ համբաւ
Եթէ իցէ նոր Կիկերոն.[94]
Դարձեալ միւս ոմն պարծի լինել
Այնպիսի մեծ ճարտարախօս
Մինչեւ մարթել առնել խօսող զկարին ապուշ,
Զայր շինական բիրտ եւ տխմար.
Այո՛, տեարք իմ, տխմար, գըրաստ եւ յաւանակ։
“Ածէք,„ ասէ, “առ իս էշ մի, եւ կրկին էշ.
Առնեմ ըզնա տէր կատարեալ.
“Նա՛, կամիմ իսկ զի կրեսցէ նա պատմուճան։„[95]
Լու եղեւ այս թագաւորին, յղեաց կոչել ըզհըռետորն։
“Ունիմ,„ ասէ, “յասպատանիս
Ընտիր նըժոյգ մի Արկադեայ.[96]
Եւ արդ կամիմ առնել ըզնա ճարտարախօս։„
“Ալքայ,„ ասէ նախ խաբեբայն,
“ամենայնի ես դու կարող։„

Տրուաւ նըմա սակ արծաթոյ։
Խոստացաւ նա ընդ ամըս տասն
Գնել զէշ նորա ի բազմոցի.[97]
Ապա թէ ոչ, յանձն առնոյր նա,
կալ ի բարձու ուրեք տեղւոջ,
Եւ արկեալ տոռն ընդ փող լինել անդ խեղդամահ,
Առեալ զմատեան հռետորութեան
իւրոյ զթիկամբ,
Այլ եւ երկուս ականջս իշոյ։
Ոմն յարքունեաց անտի ասէ.
"Յեղանել քո ի կախաղան
Յանկամ լինել ականատես. թէեւ կախեալ,
Վայելուչ յոյժ երեւեցիս եւ հոյակապ.
Եւ մանաւանդ եթէ քեզ յուշ
լիցի առնել մօտակացաց
Ճառ ուր զարուեստ քո ածցես յայտ
երկայն բանիւք.
Ճառ խանդակաթ եւ որոյ ձեւն
Լիցի կանոն բանախօսաց,
Հասարակաց բանիւ՝ գողոց։"
Պատասխանի ետ միւսն, ասէ.
"Յառաջագոյն քան ըզպայմանն
Արքայ կամ էշ կամ ես՝ մեռցուք։"
Իրաւունս այլն ունէր։ Չիցէ յիմարութիւն
Յուսալ թէ տասն ամ եմք կելոց։
Լեցուք, աղէ, քաջ արբեցողք եւ քաջ կերողք.
Պարտիմք մահուան յերից անտի զմին ի տասն ամս։

---

# ԱՌԱԿ Ի.

*Գժտութիւն 4—4*

Գժտութեան դիցն արկեալ, ասեն,
Հերձուած ի դիս,
Եւ յարուցեալ դատաստան մեծ
ի բարձունս անդ խնձորոյ վասն.
Յերկնից հանաւ վտարանդի,
Եւ շնչաւորք որ կոչին մարդ՝
Ասպնջական եղեն նմա դրկախառնեալ։
Նա, որպէս եւ Այոն եւ Ոչ, եղբայր նորա,
Եւ հայրն որ է Սա իմ, սա քո,
Ետուն պատիւ մեզ ի խոնարհ յաշխարհի աստ,
Ըզկիսագունդ մեր պարեալ նախամեծար
Քան ըզմարդկան որ ենըն մեզ ընդդիմակաց.
Մարդկան որ բիրտ են եւ սակաւ առաքինիք.
Եւ որ, ասեն, ամուսնացեալ ոչ երիցամբք, ոչ նոտարօք,
Ընդ գժտութեան չունին ինչ գործ։
Ի տալ նմա գտանել ուր հարկն այնպէս իմն
Պահանջէր զի գտցի նա մօտ,
Համբաւըն փոյթ յանձին ունէր
Ազդել նմա, եւ նա փութով
Ի կռիւ անդր աճապարեալ
լինէր խափան խաղաղութեան։
Ի միջէ կայծէ առնէր հրդեհ երկար ի շիջանել։
Ի վախճանի համբաւն ըսկիզըն առ տրտնջել,
Զի ոչ երբեք գտանէր նմա
Տեղի անշարժ եւ հաստատուն.

Բազում անգամ խնդրել ըզնա
մարդիկ ի զուր տառապէին.
Հարկ էր ուրեմն ունել նորա տեղի ծանօթ,
Այն է վանս ինչ ուստի մարթէր յամենայն տուն
Յըղել ըզնա ի սահմանեալ ժամանակի։
Եւ զի ոչինչ ուրեք յայնժամ գոյր մենաստան,
Զոր նայն խնդրէր՝ դժուարացաւ։
Աստ՝ իջեւանն ամուսնութեան
Եղեւ նորա սահմանեալ տուն։

---

## ԱՌԱԿ ԻԱ.

*Մանկամարդ այրին. 4 — 4*

Առն ամուսնոյ կորուստ չերթայ առանց ողբոց.
Կինն առնէ կոծ բազում յետոյ մխիթարի։
Ժամանակին թեւովք տխրանք թռչին ի բաց.
Նոյն ժամանակ բերէ հեշտանս։
Ընդ կին այրի միոյ տարւոյ,
Եւ ընդ այրին միոյ աւուր,
Խըտիր մեծ է. ոչ ոք երբեք հաւատայցէ,
Թէ նոյն մի անձն են երկոքին։
Մին խուսխուսէ ի մարդկանէ,
միւսն հըրապոյրըս բիւրս ունի.
Ճշմարտիւ կամ առ ականէ, հառաչանաց տայ զանձըն նա.
Միշտ նոյն մըմունջ են, եւ նոյն խօսք։
Կարծի թէ չէ մարթ այսպիսեաց մխիթարել.
Կարծի, սակայն չէ այնպէս ինչ.
Որպէս ցուցցէ քեզ այս առակ,
Կամ մանաւանդ ճշմարտութիւն։

Ամուսին կնոջ մանկամարդոյ եւ գեղեցկի
Չըւեաց ի միւս աշխարհ։ Նա կինն անդ առընթեր
Գոչէր, «Սպասեա ինձ, գամ ըզկնի քո, հոգի իմ
Իբրեւ ըզքոյն կազմ եւ պատրաստ է ի թռանել։»
Այլ յուղարկի այրըն միայն։
Գեղեցկին էր հայր, այր ըզգօն եւ իմաստուն.
Սա՛ հեղեղին եթող հոսել։
Ի մխիթարել ըզնա ապա,
«Դուստր իմ,» ասէ,
«Հերիք այդչափ հեղուլդ արտօսր.
Օ՛ ի՞նչ պէտք, աղէ, ննջեցելոյն
հեղձուցանել ըզչքնաղ գեղդ.
Մինչ կենդանիք գոն, մի խորհիր դու զմեռելոց։
Չասեմ աստէն ի ժամուս յայսմ
Ազնուագոյն իմըն պայման
Ըզկսկիծ քո զայդ փոխեսցէ ի հարսանիս.
Այլ յետ աւուրց թող արկանել քեզ առաջի
Յամուսնութիւն զայր գեղեցիկ,
առոյգ, մանուկ, եւ բնաւ այլազգ
Քան զհանգուցեալըն։»
«Ահ,» ասէ կինն անդէն եւ անդ,
«Արգելանոց մի վայելէ ինձ փոխանակ ընդ ամուսնոյ։»
Եթող նըմա հայրն ամոքել զաղէտ վշտին։
Այսպէս ամիս մի անցանէ.
Յամենայն միւսում ըսկիզըն առնէ նա փոփոխել օրըստօրէ
Ինչ ինչ, հանդերձ, ձորձ, շուք գլխոյ.
Ի վախճանի հանդերձ սրգոյն փոխի ի զարդ,
Սպասեալ այլոց պաճուճանաց։
Ողջոյն իսկ խումբըն Տարփանաց

Գայ յաղաւնոցն. խաղ, ծիծաղ, պար
Գըլտանեն մուտ ի վախճանի.
Սուզի նա զցայգ եւ ըզցերեկ
Ի Սանկուլթեան աղբիւր անդր։
Հայրն երկնչի ոչ եւս յախտէն սիրեցելոյ.
Այլ զի ոչ եւս խօսէր նա ինչ առ գեղեցիկն,
«Ո՞ւր է մանուկ այրն», ասէ դուստրն,
«Զոր երբեմն ինձ խոստանայիր։»

## Վերջաբան

Ամփոփեմ աստ զայս ասպարէզ.
Երկայն մատեանք տան ինձ երկիւղ.
Չէ արդարեւ արժան ըզնիւթ իւր ըսպառել,
Այլ լոկ պարտ է զծաղիկն առնուլ.
Գայ ժամանակ զի բուռն հարից ես միւսանգամ,
Առեալ դոյզն ինչ ոգի եւ շունչ,
Առ ի տալ նիւթ այլ խորհրդոց։
Սէր, բռնաւորն իմոց կենաց,
Կամի տալ ինձ փոխել ըզնիւթ.
Պարտ է հաճել զկեղծս նորա։
Ո՛ն, առ փսիքէ դարձցուք։ Գամոն, զիս յորդորես
Նըկարագրել զեղեռն նորա եւ զյաջողուած։
Յանձն առնում ես, թերեւս երակ
Իմ ի շընորհս նորա ջեռնու։
Երանի՜ թէ աշխատութիւնս է վերջին ջան
Զոր ամուսին նորա տայ ինձ։



# ԳԻՐՔ ԵՕԹՆԵՐՈՐԴ



*Առ տիկին Մոնդեսպան*

Առակն է ձիր որ յանմահից
 անտի գայ մեզ.
Կամ, եթէ է պարգեւ մարդոյ,
Որ ետըն զայն է արժանի
 զի պաշտեսցուք.
Ամենեքին պարտիմք ցորչափ
 եմք կենդանի,
Ըռնել աստուած
Զայն իմաստուն որ եգիւտ զայս չքնաղ արուեստ։
Է արդարեւ հըմայութիւն
 որ մըտադիր գործէ զոգին,
Նա մանաւանդ առնէ գերի,
Կապեալ ըզմեզ ի պատմութիւնս
Որ ըստ հաճոյս նորա տանին զոգին եւ զսիրտ։
Դու որ նմանես նըմա, Ողիմպ, թէ Մուսայն իմ
Նըղեւ երբեմըն սեղանոյ դիցըն կըցորդ,
Յայսց պարգեւաց վերայ այսօր դարձուսջիր զակն.

Ապաստամատոյց լեջիր խաղուց
ընդ որըս միտք իմ ըղձօմնուն:
Ժամանակն այն ամենասպառ
թէ մեծարէ զօգնութիւն քո.
Ինձ անցանել թողցէ ընդ ամս գործովս այսուիկ:
Մատենագիր որ ըզկընի իւր կամի կեալ,
Զհաճութիւն քո պարտի ստանալ:
Ի քէն միայն ակն ունին վէպք իմ զիւրեանց գին.
Չիք գեղեցիկ ինչ ի մեր գիրս
Որոց դոյզն իսկ հետոց չիցես դու քաջ հըմուտ:
Բա՛րէ, ո՞ այլ ոք թէ ոչ դու
իցէ գիտակ գեղոյ, շնորհաց:
Խօսք, հայեցուած, ամենայն է հրապոյր ի քեզ:
Մուսայն իմ յայս ի քաղցըր նիւթ
Լայնագոյն եւս կամէր ձըգել.
Այլ այլոց պարտ է թողուլ զայս.
Եւ այլ ճարտար ոք մեծ քան զիս
Գովեստին քում արժանացի:
Ողիմպ, շատ է զի մատենին իմում վերջնոյ
Յաւուր միում լիցի անուն քո շուք, պատուար:
Յայսմ հետէ լեր պաշտպան՝ գըրոյս զոր սիրեմ ես,
Եւ յորմէ կեանս երկրորդ յուսալ համարձակիմ.
Ընդ հովանեաւ քով այս վէպք իմ
Համարեսցին ընդ հակառակըն նախանձուն,
Արժանիք յաչս համաշխարհի
Ես այսպիսում մեծի շնորհաց չեմ արժանի.
Առակն յանուն իւր զայս խնդրէ:
Գիտես թէ զինչ ազդեցութիւն
ի մեր վերայ ունի այս սուտ:

Եթէ տացէ ինձ քեզ հաճոյ լինելոյ բախտ,
Համարեցայց զիս պարտական
կանգնել Նըմա տաճար ի վարձ.
Այլ չըկամիմ շինել տաճար բայց վասըն քո։

---

## ԱՌԱԿ Ա.

*Անասունք հիւանդք ժանտախտիւ.* 4—4

Ախտ որ սըփռէ ահ եւ երկիւղ,
Ախտ զոր երկինք առ բարկութեան
Գըտին ի վըրէժ մեղաց մարդկան,
Ժանտն ախտ (զի պարտ է յանուանէ յիշել ըզնա)
Ի միում իսկ աւուր կարող
առնելոյ չէն զԱքերոն գետ,
Տայր պատերազմ ընդ անասնոց։
Ամենեքին ոչ մեռան, այլ
ամենեքին հարան յախտէն.
Չէր ուրուք փոյթ
Խնդրել իւրոց օրհասական կենաց դարման.
Ի կերակրոց ոչ մին գըրգռէր զանձուկ նոցա.
Ոչ գայլ եւ ոչ աղուէս ուրեք կայր լըտեսել
Հեզ եւ հանդարտ եւ անմեղ որս.
Տատրակք տային խոյս ի միմեանց.
Ոչ գոյր տարփալ, ուստի եւ ոչ ուրախութիւն։
Առեւծ խորհուրդ առեալ ասէ. “Սիրելիք իմ.
Կարծեմ թէ թոյլ ետուն երկինք
Վասըն մեղաց մերոց զայս վիշտ.
Թող որ ի մէնջ աւելագոյն մեղապարտն է՝

Աղէցի զոհ նետից երկնիցըն բարկութեան.
Թէպէտեւ առցէ բժշկութիւն հասարակաց:
Ուսուցանէ պատմութիւն թէ յայսպիսի դէպս
Յաճախ եղեալ են այսպիսի ինքնակամ զոհք:
Մի խաբեսցուք ապա զանձինս.
հարցցէ առանց աչառութեան
Իւրաքանչիւր զիւր խիղճ մտաց:
Ես առ հաճել զանյագ տենչանս իմ ուտելոյ,
Կերեալ եմ ոչ սակաւ ոչխար:
Զի՞նչ արարեալ էր նոցա ինչ: Ոչինչ վնաս.
Նա մանաւանդ դէպ եղեւ ինձ երբեմն ուտել
Ըզհովիւն իսկ:
Ապա ես զանձն իմ նուիրեմ,
եթէ պարտ է, սակայն կարծեմ,
Թէ լաւ իցէ իւրաքանչիւր
առնել որպէս ես արարի.
Զի ըղձալին, ըստ ամենայն արդարութեան,
Այն իսկ է զի որ մեծամեղն է՝ կորիցէ:»
«Արքայ», ասէ աղուէսըն, «դու բարի ես յոյժ.
Մեղադրել քո զանձնըդ հանդէս
է կարի մեծ ազնուութեան:
Բա՛բէ, ուտել ոչխար, խուժան, անմիտ ջոլիր,
Իցէ՞ն ինչ մեղք: Ո՛չ, ո՛չ դու, տէր, արարեր իսկ
Նոցա պատիւ գիշատելովդ.
Իսկ վասն հովուին, մարթ է ասել
Թէ ամենայն չարեաց էր այրն այն պարտական.
Զի յայնպիսեաց անտի է նա,
որ ի վերայ մեր, անասնոց,
Կարծեն ունել իշխանութիւն ցընորական:»

Այսպէս աղուէսն,
եւ փաղաքուշ ծափս հարկանէն։
Ու ոք իշխեաց որոնել մանր
Ու ըղվագեր, եւ ոչ զարջոյ, եւ կամ զայլոց ի գազանաց
Զօծիլսըն որ չեն ներելոյ։
Որ միանգամ են կազեցողք, մինչեւ ի շունըն պահապան,
Ըստ ասելոյ իւրաքանչիւր էին փոքունց սրբոց սակի։
Էշ ըրկ եկեալ ասէ, "Յիշեմ,
Յանցանել իմ մօտ առ մարգաւ աբեղայից,
Քաղց, առիթ, խոտ փափուկ, կարծեմ
Ես դեւ Թերեւըս դրդեաց զիս.
Արածեցայ յայնըմ մարգի
լեզուի իմոյ լայնութեամբ չափ։
Ու ունէի իրաւունս ինչ,
քանզի խօսել պարտ է արդար։„
Յայս բան բողոք բարձաւ ընդդէմ յաւանակին։
Գայլ մի սակաւ ինչ բանիբուն
հաւանեցոյց ճառիւք իւրովք,
Թէ զոհել պարտ էր զանիծեալ զայն անասուն,
փետեալ, քոսոտ, յորմէ ասէր Թէ գայր այն ախտ։
Մեղք նորա դոյզն դատին յանցուած կախաղանի։
Ուտել զայլոց խոտ. որպիսի՜ գործ գարշանաց.
Ու այլ ինչ բայց մահ է ձեռնհաս
Քաւել զոճիրն։ Ես զայս նըմա յայտ արարին։
Ըստ այնըմ Թէ իցես հարուստ կամ անաւագ,
Ատեան վճռոյն առնէ ըզքեզ սպիտակ կամ սեաւ։

---

# ԱՌԱԿ Բ.

*Չարաչար ամուսնացեալ. 4—4*

*Թող եղեցի բարին ընկեր միշտ գեղեցկին,*
*Ու վաղուց իսկ խնդրեցից կին.*
*Այլ զի չէ նոր ի մէջ նոցա ապահարզան,*
*Եւ գեղեցիկ մարմնոյ սակաւք,*
*ապընջական հոգւոյ լաւի,*
*Զերկոսին եւս բովանդակեն,*
*Մի մեղադրէք ինչ զիս եթէ ոչ խնդրեցից:*
*Հարսանիս շատ է իմ տեսեալ,*
*ի նոցունց ոչ մին փորձէ զիս.*
*Այլ չորեքին մասունք գրեթէ ի մարդկանէ*
*Յանդգնութեամբ առնեն զանձի-*
*նրս նշաւակ մեծ վտանգի,*
*Զորք մասունք եւս մարդոյ զղջան:*
*Յիշեցից զոմն որ զղջացեալ*
*Գտանել ոչ կարաց այլ հնարս*
*Թէ ոչ ընկլին իւր արձակել.*
*Կին կագեցող, անհընարին ուիշտ, յաջաղկոտ:*
*Ոչ լինէր նա գոհ զինքէ,*
*ոչինչ թուէր նըմա բարւոք.*
*Այգուն յառնէր նա անագան,*
*յերեկոյին ննջէր կանուխ.*
*Յետոյ սպիտակ, եւ յետոյ սեաւ, յետոյ այլ ինչ.*
*Ըսպասաւորք զայրանային, ցընորէր այրն.*
*"Տէրն անփոյթ է, տէրըն վատնէ զամենայն ինչ,*
*Տէրն ընթանայ, եւ, տէրն հանգչի:"*

Ասէ այնչափ ինչ մինչեւ տէրն ի վախճանի
Տաղտկացեալ յոյժ ի լսելոյ ըզշաղակրատն,
Յըղէ ըզնա յագարակ իւր,
Ոռնողաց նորա։ Ահաւասիկ է նա ընկեր
Գերեաց ոմանց որ արածեն ըզհնչիկ հաւս
Ընդ դարմանիչըս խոճկորաց։
Յետ աւուրց ինչ համարելով թէ զգաստացաւ,
Այրն առ ըզնա դարձեալ առ իւր։
«Աղէ», ասէ, «զի՞նչ արարեր.
Զիա՞րդ ըզկեանս քո անցուցեր։
Անմեղութիւն դաշտաց իցէ քեզ սիրելի։»
«Այո», ասէ, «սակայն ինձ վիշտ
Էր տեսանել արըս պըղերգըս քան աստէն.
Չունին նոքա փոյթ ըզհօտից։
Տայի նոցա խըրատ, սակայն
զատելութիւն ձըգէի յիս
Անհոգ մանկանն ամենեցուն։»
Բամբէ, տիկին, ասէ ցընա այր իւր յայնժամ.
«Եթէ քո բարք են այնպէս խիստ,
Մինչեւ որոց բնակին միայն
Ժամն ինչ ընդ քեզ, յերեկոյին դառնան այսրէն,
Ի տեսանել ըզքեզ տաղտկան,
Զի՞նչ առնիցեն ըսպասաւորք որ զօրն ի բուն
Տեսանիցեն ըզքեզ գրգռեալ ընդդէմ իւրեանց.
Եւ զի՞նչ առնել կարիցէ այր
Զոր ցանկանաս թէ եղիցի
ընդ քեզ ըզցայգ եւ ըզցերեկ։
Դարձ ի շէն անդր, գընա ողջամբ։ Թէ ի կեանս իմ,
Յիշեմ ըզքեզ, եւ թէ երբեք գայ յիս անձուկ,

Երանի՜ էր ինձ ի մեռանելս
ունել յիմոց մեղաց աղագս
Կանայս երկուս իբրեւ ըղձքեղ առ իս անդուլ։

---

## ԱՌԱԿ Գ.

*Մոնկն որ հրաժարի յաշխարհէ. 4—4*

Երբեւելեայք ի վէպս իւրեանց
Ասեն եթէ ոմն ի մրկանց
տաղտկացեալ իմն յաստի հոգոց,
Ի պանիր անդր հոլանտական
Առանձնացաւ զերծ յաղմկաց։
Միայնանոցն այն էր խորին,
Լայնատարած շուրջանակի։
Նոր մենակեացըս մեր անդէն կեայր ի ներքոյ։
Արար այնչափ ոտիւք իւրովք եւ ատամամբք,
Զի ի սակաւ աւուրս եղեն
Նորա ի խորս վանորային
Պաշար եւ տուն. է՞ր պիտոյ քան զայս աւելի։
Եղեւ նա յոյր եւ գէր։ Աստուած
առատութեամբ տայ զիւր բարիս
Որոց ուխտեն լինել Նորա։
Յաւուր միում առ բարեպաշտն
Յազգէն մրկանց պատգամաւորք
Եկին խնդրել ողորմութիւն ինչ դուզնաքեայ.
"Երթամբք" ասեն, "ի տար աշխարհ
Խնդրել Թիկունս ընդդէմ կզոց։"
Մկնաքաղաքն էր պաշարեալ,

Պատգամաւորքն սպիպեալ էին
մեկնել առանց առնլոյ արծաթ,
Զի ի յետին կարօտութիւն
Ի՞հաս քաղաքըն պաշարեալ։
Սակաւ ինչ էր զոր խնդրէին,
գիտէին քաջ զի օգնութիւն
Հասանելոց էր ի չորս կամ ի հինգ աւուրս։
«Ո՛վ բարեկամք,» ասէ միանձն,
«Զաստի իւրաց ինձ չէ ինչ փոյթ.
Իցէ՞ հընար հիքի ուրուք մենակեցի
Նըպաստել ձեզ. զի՞նչ կարէ նա
Թէ ոչ յերկինըս պաղատել
զի ձեռընտու լիցի նա ձեզ.
Յուսամ երկինք ունիցին ինչ խընամ ըզձէնջ։»
Խօսեցեալ պէս զայս օրինակ՝
Սուրբըն մեր նոր փակէ ըզդուռն։
Զի՞նչ կամեցայ ցուցանել ձեզ
Ընկարեկիր մըկամբս այսուիկ.
Միա՞նձըն զոք։ Ոչ, այլ հնդիկ միայնակեաց։
Զի միանձունք մեր են կարծեմ միշտ ողորմած։

---

## ԱՌԱԿ Դ.

*Արագիլ. 4—4*

Յաւուր միում երկայն ոտիւք
իւրովք երթայր ոչ գիտեմ ուր,
Երագիլ մի երկայն կտցովն
ագուցելով յերկայն վզին.

Զափամբ գետոյ միոյ քերէր։
Ջուրն էր վճիտ, որպէս է ի ջեր աւուրս։
Ծածանն առնէր շրջանս հազար
Խնամով իւրով գայլածրկամբ։
Արագլին էր դիւրին իմըն նոքօք օգտել.
Մերձենային նոքա յափունս.
ունել միայն մընայր Թռչնոյն։
Այլ սպասել լաւ համարեցաւ.
Մընայր սակաւ մի առաւել ունել անձուկ.
Ժուժկալութեամբ կեայր եւ զիւր ճաշ
առնէր յիւր ժամս։
Յետ սակաւուց ինչ եկն անձուկ, եւ Թռչունն մեր
Ի ծովեզր անդր մերձեցեալ ետես ի ջուրն
Տառեխս ձըկունս որ ի խորոց
բընոյն իւրեանց ելանէին։
Չեղեւ նըմա հաճոյ այս որս.
լաւագունի ունէր նա ակն,
Եւ թըւէր իմն ունել ճաշակ արհամարհոտ,
Մըկան բարւոյն Ովրատեայ պէս։
"Ես, տառեխս ձո՞ւկն," ասէ նա, ես,
արագիլս յանձն առնո՞ւմ, աղէ,
Այսպիսի ինչ անարգ խորտիկ։ Զո՞ կարծեն զիս։"
Թողու զտառեխս, եւ գըտանէ խարակաձուկն։
"Խարակաձո՞ւկն. իցէ՞ խորտիկս
այս արժանի ինձ արագլիս։
Վասն այսպիսի չնչենոյ ես
բանա՞մ կըտուց. ո՛ն անդր, փարգաստ։"
Այլ քան ըզնա չնչենոյն նա
եբաց բերան։ Եղեւ այնպէս,

Զի ոչ այլ եւս ետես նա ձուկն։
Այլ նքթեցաւ. եղեւ ուրախ եւ բախտաւոր
Զի խըղնջնոյ հանդիպեցաւ։
Մի եղիցուք դժկամակողք.
Ըղուագոյնք են յաջողագոյնք.
Այնք մանաւանդ կորուսանեն
որ կարի իմն շահել կամին.
Զգոյշ լեր ոչինչ անհամարհել.
Եթէ գըտեր մանաւանդ ում փափաքէիր։
Բազումք սովին ըմբռնեցան։
Առ արագիլըն միայն չեն
Ուղղեալ իմ բանք։
Լուարուք մարդիկ այլ պատմութիւն։
Տեսանելոց էք զի առ ձեզ ես ըզխըրատըս քաղեցի։

---

## ԱՌԱԿ Ե.

*Աղջիկ. 4—4*

Ոմն յաղջըկանց, մեծամիտ յոյժ,
Կարծէր գտանել իւր ամուսին
Մանուկ, առոյգ եւ գեղեցիկ, հեզ եւ համբոյր,
Ոչ ցուրտ ինչ եւ ոչ նախանձոտ։
Լեր մըտադիր երկուց սոցա։
Նա կամէր եւս թէ ունիցի
Այլն ըստացուած, ծընունդ հանճար,
Եւ ըղձնաւ իսկ՝ համառօտիւ։
Այլ ո՞ կարէ ունել ըղձնաւ։
Բախտն ի հոգալ ըզնա եցոյց զանձըն խնամոտ.

Նու կարեւոր առիթք եկին.
Այլ գեղեցիկն համարեցաւ զնոսա գըծուծ:
«Զի՞նչ, ես. զի՞նչ, այս որեար. կարծեմ
բանդագուշին.
Ինձ ի սոցա սակըս լինել
միջնո՞րդ. բա՞րէ, եղկելի՛ք են.
Տես, աղէ, գամ մի, որպիսի՛ բաժին ընտիր:
Մի՛ն ազնիւ ինչ ըրնաւ իսկ ոչ ունի յանձին.
Մի՛ւսոյն քիթն է զայս օրինակ:»
Այս ինչ, այն ինչ,
Ամենայն ինչ, զի կին պչրող
Ի մանաւանդ արհամարհոտ:
Յետ լաւագոյն առթից միջինքըն գան ի կարգ.
Նա ծաղր առնէ: «Արդարեւ եմ ես միամիտ,
Զի այդպիսեաց բանամ ըզդուռն: Կարծեն թէ եմ
Գոժգոհ զանձնէ,
փառք, ըզգիշերս անցուցանեմ
Անվիշտ, թէպէտ ի մենութեան:»
Աղջիկն ուրախ էր ընդ լինելն յայսպիսի միտս:
Հասակն ըզնա վատթարացոյց,
եւ հոմանիք կացին ի բաց:
Անց մի ամ, եւ միւս այլ եւս անձկութեամբ իմն.
Գայ տխրութիւն յետ այնորիկ. ըզգայ յանձին
Զի ծիծաղել, խաղալ, տռփել խուսեն տակաւ.
Ապա դիմացըն գեղ լինէր տըխեղծ, զազիր.
Ապա սնգոյր, շըպար պէսպէս:
Այլ ոչ մի ջան չեղեւ կարող
Ըզնա ի բռանց ժամանակին,
գողոյն մեծի, կորզել ի բաց:

Զաւերըս տան
Հընարաւոր է նորոգել.
այլ այսպիսի ինչ հընար չիք
Վասն աւերոյ դիմաց մարդկան։
Նազանք նորա յանժամ փոխին ի լեզու յայլ.
Հայելին իւր ասէր ցընա. “Աճապարեա դու լինել առն։„
Չըգիտեմ եւս թէ որ տենչանք ասեն նոյնպէս
Տենչանք կարեն բնակել յանձին կնոջ նազելւոյ։
Սա ընտրութիւն արար որ չէր հաւատալի։
Ի վախճանի զանձն համարի գոհ, բախտաւոր,
Գրիպեալ ուսեմըն չըմարթնոյ։

---

## ԱՌԱԿ Է.

*Ոտնք. 4—4*

Էն առ Մոնկոլս[98] ոգիք ճիւաղք
Որք ծառայի կատարեն գործ.
Մաքրեն ըզտունն, եւ անասնոց տանին խընամ.
Նա եւ երբեմըն պարտիզին։
Թէ մերձենաս ի գործ նոցա,
Ապականես զամենայն։ Մին
ի նոցունց մօտ ի Գանգէս[99] գետ
Գործէր զուրումն քաղաքացւոյ բարւոյ պարտէս։
Աշխատէր նա արդ անմռունչ,
Նա եւ բազում ճարտարութեամբ.
Սիրէր ըզտէրն եւ ըզտիկին,
Եւ ըզպարտէզըն մանաւանդ։
Աստուած գիտէ թէ եւ Զեփիւռք,

Ազգ բարեկամ դիւաց, էին նմա ձեռընտու։
Ոգին, որչափ էր ուրովսանն, ջանայր անդուլ
Լընուլ ըզտեարս իւր հաճոյիւք։
Առ առաւել եւըս զիւր փոյթ յայտ առնելոյ,
Ի տան մարդկանն այնոցիկ կայր եւ մընայր միշտ,
Զակառակ իմն թեթեւութեան
Բարուց իւրոցըն նըմանեաց.
Այլ համազգիք նորա ոգիք
Առնեն այնպէս մինչեւ գըլուխ այնըր խմբի,
Ըստ քըմա՞ց ինչ թէ խորհրդով,
Տայ փոփոխել նըմա զկայան։
Եկըն նըմա հրաման երթալ
ի խոր երկրին ՙՆորուեկիացւոց[100]
Առնուլ ըզհոգ ըզտան միոյ,
Զանապազորդ ձեռամբ ծածկելոյ։
Որ Զնդիկն[101] էր՝ եղեւ Լապոն։[102]
Յառաջագոյն քան ըզմեկնելն
ոգին ասէ ցասպնջականն.
“Ըստիպեն զիս թողուլ ըզձեզ,
Չգիտեմ որոյ յանցուածոյ վասն.
Սակայն հարկ է. չէ ինձ մարթ կալ
Բայց ժամանակ ինչ կարճառօտ,
ամիս մի կամ մի եւթներորդ.
Արկէք ի կիր զայս. երիս իղձս
յօրինեցէք, զի կարող եմ,
Տալ երիս իղձըս կատարել.
Երիս միայն, ոչ աւելի։
Բղձալ չէ ինչ տըխաստութիւն
Օտար եւ նոր վասըն մարդկան։

Յառաջին խղճ իւրեանց խնդրեն Ազատութիւն.
Եւ լի ձեռօք Ազատութիւն
Հեղու յարկեղ նոցա արծաթ,
Ի շտեմարանս նոցա ցորեան
Եւ ի մառանս նոցա գինի
Մինչեւ պայթել: Զիա՛րդ պահել անչափ պախրէ.
Ո՛րչափ փութոյ, ժամանակի,
արձանագրաց լինէին պէտք:
Այլ երկոքին եւս արգելան,
եթէ այնպէս ինչ եղեւ ոք:
Գողք գործեցին նոցա դարան.
Եւ թագաւորն հարկանէր հարկ: Այսպէս մարդիկն
Եղեն թշուառք առ կարի իմն յաջողուածոյն:
"Օ՛ն, բարձ ի մէնջ ըզտաղտկալի
զայս լիութիւն այսչափ ընչից,"
Ասեն նոքա, "ով երանի չըքաւորաց.
Աշխատութիւն լաւ իցէ քան այս մեծութիւն.
Իբաց կացէք, գա՛նձք, փախերուք եւ դուք, ո՛վ դիք,
Միջին պայման, փութասջիր գալ:"
Ի սոյն յայս բան
Միջին պայման գայ, եւ առնեն նըմա տեղի.
Նովաւ ի շնորհս մըտին անդրէն:
Ի վախճանի երկուց ըղձից,
լեալ ցանկացողք բախտի այնպէս,
Որպէս էին, եւ որպէս են ամենեքին,
Որ ըղձան միշտ, եւ զհետ ցնորից կորուսանեն
Եւ զժամանակն, ուր լաւ եւս էր
յիւրեանց ի գործըս ծախել զայն:
Ոգին ուրախ լինի 'նդ նոսա:

Եւ օգտելոյ վասն ի նորա առատ շնորհաց,
Իբրեւ կամէր մեկնել, եւ մերձ էր յայն վայրկեան,
Խնդրեն նոքա իմաստութիւն,
Արդարեւ գանձ որ ոչ բռնաւ տայ վրդովել:

---

## ԱՌԱԿ Է.

*Արքունիք առիւծու. 4—4*

Այսքան առիւծ յաւուր միում կամի գիտել
Թէ որ ազգաց ընդ նա երկինք տէր արարին:
Կոչէ ի ձեռըն հրեշտակաց
Զիւր հըպատակս յազգաց ազգաց,
Ընդ ամենայն կողմանս յըղեալ
Հրովարտակ մի
Իւրով կնքով: Հրովարտակին պատճէն էր այս.
"Ամիս մի ողջ կալցի արքայ
Աշխարհախումբ ժողով յորոյ նաւակատիս
Եղիցի մեծ խըրախութիւն,
Զորոյ ընդհետ գան կապկին խաղք:"
Այսու գործով շքեղութեան
Յայտնէր իշխանն հըպատակաց զիւր զօրութիւն:
Յարքունիս իւր կոչէ զնոսա.
Զի՞նչ արքունիք. շարաւահոտ
տուն ոսկերաց որոց բուրումն
Հաս ի քիթ անդր հիւրոցն իսկոյն:
Ըզռնգունս իւր խընու նախ արջ.
Այլ լուծանէ ըզզգուանաց իւրոց ըզվրէժ:

Խեղաթիւրել նորա ըզդէմն
չեղեւ հաճոյ. ցասեաւ արքայն.
Յղեաց ըզնա առ Պըղուտոն փափկանալ անդ.
Ընդ խստութիւն նորա կապիկն հաճեցաւ յոյժ,
Եւ առ կարծիս փաղաքշանաց գովէ զցասումն,
Ըզճիրանունս թագաւորին,
զմորթն նորա եւ զհոտըն ժանտ.
Ոչ էր յամպար, ոչ էր ծաղիկ
Որ ոչ խստոր էր առ նովաւ.
Այս ողոքանք նորա անմիտ
Ձաղողեցան, պատժեցաւ իսկ.
Միահեծան մեր տէր առիւծ
Եւր ազգակից Կալիգուղայ.[103]
Մօտ կայր աղուէսն. “Հապա,„ ասէ ցընա արքայն.
“Զի՞նչ հոտ առնուս, ասէ սաս. խօսեաց յայտնի.„
Ընդէն լինի միւսն ի չքմեղս,
Պատճառեալ տապ ի ռընգունս իւր.
“Ասել ինչ չեմ,„ ասէ “կարող,
Զի չառնում հոտ.„
Այսպէս հնարիւք զերծոյց նա զանձն.
Ուղեցի այս ձեռ ի խըրատ.
Յարքունիս մի՛ լինիք, եթէ հաճել կամիք,
Ոչ կարի ցուրտ սուտակասպաս,
եւ ոչ կարի ճշմարտախօս.
Նա՛ ջանացէք երբեմըն տալ
պատասխանի Նորմանէրէն.[104]

---

## ԱՌԱԿ Ը.

*Անգեղք եւ Աղաւնիք. 4—4*

Արէս երբեմն խռովեցոյց զօդ համօրէն։
Վէճ ի պատճառս իրիք ծընաւ
Ի մէջ Թռչնոց, ոչ այնոցիկ զորըս գարուն
Յարքունիս իւր ածէ, եւ որ ընդ տերեւովք
Օրինակաւ իւրեանց եւ սուրըն նըւագօք
Տան Աստղըկան[105] ի մեզ զարթնուլ.
Եւ ոչ դարձեալ այնոցիկ զորս մայրըն Միրոյ[106]
Լըծէ ի կառս իւր, այլ՝ անգեղց
Կորակտցաց, սըրամագլաց.
Վասն միոյ շան մեռելոյ
ասեն եթէ յարեաւ կըռիւն։
Տեղաց արիւն. ոչ աւելի ինչ ասացի։
Թէ ի համար արկանել զիրսըն կամէի
Կարգ ըստ կարգէ, պակասէր շունչ։
Ոչ սակաւ պետք զօրաց կորեան,
ի դիւցազանց մեռան բազումք.
Եւ ի վիմին իւրում յուսայր Պրոմեթէոս[107]
Տեսանել վազ զիւրոյ պատժոյն ըզկատարած։
Ըզջան նոցա տեսանել էր հաճոյական,
Վիշտ՝ ի ղընին կալ անկելոց վիրաւորաց։
Քաջութիւն, նենգ, հընարք, պատրանք,
Ամենայն ինչ արկաւ ի կիր։
Երկոքին գունդքըն բորբոքեալ
Անհընարին ցասմամբ իմիք ոչ խընայեն.
Առնել չէին զօդըն զոր շնչէին ուրուականք մեր.

Համատարած տարրըն լըցոյց քաղաքացեօք
Զընդարձակ վայրըն զոր ունի մըթին աշխարհն։
Կատարութիւնս այս էարկ գութ
Յոգիս այլոյ իրիք ազգի
Ոյր պարանոցն է ճամկաւոր,
սիրտըն փափուկ, հաւատարիմ,
Արկ ի կիր զիւր միջնորդութիւն
Ի խաղաղել զայնպիսի մարտ։
Յազգէ անտի աղաւնեաց գնան պատգամաւորք
Ընտրեալք որք եւ ջանան այնպէս,
Մինչեւ անգեղց ոչ եւս կռուել։
Թողուն ըղջէնս, եւ գայ ըղհետ խաղաղութիւն։
Սակայն, եղո՜ւկ, զի եղեւ այս չարոյ նոցա՝
Առ որս պարտ էր անգեղց լինել շընորհակալ։
Անիծեալս այս ազգ իսկ եւ իսկ պնդի ըղհետ
Աղաւնեաց եւ գործէ նախճիրս.
Առնէ թափուր ի նոցանէ զամենայն շէն եւ զագարակ։
Ոչինչ կարի իմաստութեամբ
գործեաց երամն այն հէք թռչնոց,
Զայնպիսի խուժ ցեղ համոզել ի հաշտութիւն։
Ըզչարագործըս բաժանեալ կալարուք միշտ.
Մընացելոյ մասին երկրի անդորրութիւն
Կախի անտի։ Սերմանեսջիք
ի մէջ նոցա կագ եւ կռիւ,
Ապա թէ ոչ չիք հընար ձեզ
կեալ ընդ նոսա խաղաղութեամբ։
Հարեւանցի ասացեալ զայս լըռեմ ահա։

---

## ԱՌԱԿ Թ.

*Կառք եւ ճանճ 6—6*

*Ընդ զառ ի վեր ուրեմն, աւազուտ, դժուարին,*
*Եւ համակ արեւկայ,*
*Երիվարք վեց ուժեղք ելանէին կառօք:*
*Կանայք, միանձըն, ծերք, ամենեքին իջին.*
*Ընդլուարն էր քրտնեալ,*
*Թասէր, էր պարտասեալ:*
*Ճանճ մի յանկարծ եկեալ մերձենայ ի ձիանն,*
*Համարի տալ նոցա ոգի բզզելովն իւր.*
*Մերթ ըզմին խայթէ նա,*
*մերթ ըզմիւսն, եւ կարծէ*
*Միշտ թէ ինքն է որ տայ խաղալ մեքենային.*
*Նստ՛ ի քեղւոյն վերայ, ի քիթ կառավարին:*
*Այն ինչ տեսանէ նա ըզկառսըն զի խաղան,*
*Եւ զորեարն ի գընալ,*
*Անձին իւրում միայն ընծայէ նա ըզփառսն.*
*Գընայ, գայ, շուլթափէ, թու՛ իմըն թէ լիցէ*
*Ճակատայարդար ոք որ այսր անդր արշաւեալ*
*Մըղէ ըզգօրսն յառաջ, ճեպէ ըզյաղթութիւնն:*
*Ճանճն ի ժամուն յայնմիկ հասարակաց կարեաց*
*Քանքատի թ՛է միայն, նըմա եւեթ է փոյթ.*
*Ընդլուարին օգնող չիք այլ ոք բընաւին:*
*Միանձն ասէ զիւր ժամն*
*Օգտեալ ի պարապոյն, եւ կին մի կայ երգէ.*
*Արդարեւ ժամանակ էր մըմնջելոյ երգս:*
*Տիկին մեր ճանճ երթայ երգել յունկըն նոցա,*

Եւ այլ եւս նոյնգունակ առնէ բիւր խաղալիս։
Յետ բազում ճգնութեանց
կառքն հասանեն ի դարն.
“Օ՛ն, ոգի առցուք արդ,„
ասէ ճանճ մեր յայնժամ.
“Այնչափ ինչ արարի, զի ել որեարն ի դիւր.
Աղէ, տեարք երիվարք, հատուսջիք ինձ զիմ վարձ։„
Այսպէս եւ ոչ սակաւ մարդիկ փութան ճեպին,
Խառնեն զանձինս ի գործ,
Կարծեն թէ ամենայն ուրեք են կարեւոր.
Այլ ամենայն ուրեք են տաղտուկք, արժանիք
Արտաքսելոյ ի դուրս։

---

# ԱՌԱԿ Ժ.

## Կին կաթնավաճառ եւ Ամանն կաթին. 4—4

Պերեթ ի գլուխ իւր ունելով զաման կաթին
Զետեղեալ քաջ իմն ի վերայ բարձկան փոքու,
Կարծէր այնպէս մինչ ի քաղաք երթալ յաջող։
Թեթեւ իմն եւ կարճահանդերձ
Նա մեծաքայլ երթայր յառաջ.
Առ աւելի իմն լինել շոյտ ըզգեցեալ էր նա զայն օր
Լոկ պարեգօտ, եւ օդ ոտիցն էր շղուական։
Կաթնավաճառն այսպէս հանդուշըն բարեքին,
Հաշուէր մըտօք զիւրոյ կաթին
Ըզգին. “Զարծաթն,„
ասէր, “այսպէս արկից ի կիր.

Զուս հարիւր առից գընոց,
երիցըս հաւք նստցին ի թուխս.
Եթէ տարայց հանապազորդ
խընամ, անշուշտ յաջողեցայց։
Ո՞չ ապաքէն դիւրին է ինձ
Ըզձագս հաւուցըն բուծանել
անդ զիմով տամբ շուրջանակի.
Ըղուխուն ես ասեմ, Ըգնիւ,
Թէ ի նոցունց ոչ թողցէ ինձ
ի գնել խոճկոր մի բաւական։
Ի պարարել ըզխոզ ոչ այլ
ինչ է պիտոյ բայց դոյզըն թեփ.
Եր նա յորժամ ստացայ զնա խուն մեծութեամբ.
Ի վաճառել ըզնա առից արծաթ բազում։
Եւ ո՞ ոք զիս արգելուցու դընել ի գոմս իմ ընդ նորա,
Ընդ արծաթոյն զոր առնուցում՝
երինջ մատաղ որթուն հանդերձ.
Զոր եւ տեսից խայտալ ոստնուլ ի մէջ նախրոյն։„
Յասել իւրում զայս բան ոստնու
եւ Ըներեդ ինքըն առ խնդութեան.
Կաթնըն հեղու, եւ ցնդին յոդ
երինջ եւ որթ, խոճկոր եւ թուխս։
Տիկինըն տէր այնչափ ընչից ակնկոր իմըն սրտառուչ
Թողեալ զիւր գոյն անդ ցիր եւ ցան,
Երթայ առ այր իւր անբասիր զանձն իւր առնել,
Ի տագնապի ըմպելոյ գան։
Հտպտանօք պատմէ նա զիւրն.
Սակայն յորէ անտի նըմա եդաւ անուն, "Ըման կաթին։„
Ո՞ խիզախէ ոչ ի ճակատ.

Ս ոչ չինէ յօղըս բերդեան.
Պինկրոքողըս, Պիւռոս եւ այս
կաթնավաճառ, ամենեքին,
Ըզգօն, յիմար միանգամայն։
Իւրաքանչիւր ոք երազէ
ի լըջեաց իսկ. չիք քան զայս հեշտ.
Սուտակասպաս մոլորութիւն ըզմիտըս մեր առեալ տանի.
Են ամենայն ինչք աշխարհիս այսորիկ մեր.
Իրընաւ պատիւ, ամենայն կին։
Յորժամ միայն եմ, ասպարէզ կարդամ քաջաց,
Նա, ընկենուլ ի բաց ժըտիմ
զարքայն Արեաց իսկ յաթոռոյն.
Թագաւոր զիս ընտրեն, եւ ազգն իմ սիրէ զիս.
Պըսակք ի գլուխ իմ գոգ տեղան.
Սակայն թէ տան պատահարք ինչ զգալ անձին,
Դարձեալ այն ոք եմ զոր էիս յառաջագոյն։

---

## ԱՌԱԿ ԺԱ.

*Աւագերէց եւ Մահ. 4—4*

Դընայր մեռեալ մի տխրութեամբ
Զիւր ըզվերջին կայան ունել.
Ուրախութեամբ ելեալ երթայ աւագերէցն
Զմեռեալն արագ արագ թաղել։
Կառօք տարեալ լինէր մեռեալն,
Պատատեալ քաջ ըստ պատշաճի.
Արկեալ զանձամբ ձորձ, այլ, եղուկ, ի ղագաղէ.

Ջրմերան ձորձ, ամարան ձորձ,
Զորըս մեռեալք ոչ մերկանան.
Հովիւն երթայր առ դագաղըն,
Ըստ օրինի մատուցանէր
Աղօթըս ջերմ,
Սաղմոս եւ խրատ,
Փոխ եւ կցորդ։
Ո՛վ տէր մեռեալ, թող մեզ գործել.
Պատշաճ պատիւըն տացի քեզ.
Խնդիր միայն է զթոշակէն։
Աւագերէցն Յովհան Շուար
հայէր ի դին իւր գրգալով,
Իբր այն թէ ոք յափշտակել ունէր զայն զանձն.
Եւ թըւէր իմն հայեցուածովն ասել ցընա.
“Տէրդ իմ մեռեալ, խնդրեմ ի քէն
Այսչափ արծաթ եւ այսչափ մոմ.
Եւ այսչափ եւս այլ մանըր ծախս։”
Յուսայր այնու գըտնել շիշ մի
Ազնիւ գինւոյ արուարձանաց.
Գուսանըր մի քեռ նորա պճնող,
Միւս եւս աղջիկ նաժիշտ նորա,
Մէն մի ունել պարտէր նըրքնակ։
Մինչ խնդութեամբ խորհէր այսպէս,
Խոչընդոտ իմն դիպեալ կառացըն խորտակին։
Ահա երէցն Յովհան Շուար,
Որ ընդհարեալ ընդ մեռեալ իւր՝
ունի ըզգլուխըն ջախջախեալ.
Գլորեալ ոչխարն ձըգէ ըզհետ իւր զիւր հովիւ.
Աւագերէցն երթայ ըզհետ գաւառատեառն.

Զրուեն երկուքն ընկերութեամբ։
Արդարեւ կեանք մեր բովանդակ
Են որպէս Հուային աւազերէց
ի ննջեցեալ իւր յուսացեալ,
Կամ ամանոյ կաթին առակն։

---

## ԱՌԱԿ ԺԲ.

*Այր որ ընթանայ զհետ բախտին, եւ Այր որ մնայ նմա յանկողնի. 4—4*

Ո՞ չ դիմէ ընդհետ բախտին,
Ըղձանայի լինել ուստի հընարաւոր էր ինձ դիւրաւ
Հայել ի խուռն այն ամբոխ ժխտ
Որոց ի զուր են ի խնդիր
Երկրէ յերկիր դատերն այնմիկ ճակատագրին.
Հաւատարիմ սուտակապապք
յեղյեղուկ այնըր ցընորից։
Յորժամ են մօտ ի յաջողել,
Յողդողդն իսկոյն ի ցանկութեանց նոցա տայ խոյս։
Թշուառք, գըթամ ես ի նոսա, զի ընդ յիմարս
Գըթալ արժան է մանաւանդ քան զայրանալ։
“Այս անուն ոք երբեմն,” ասեն, “տնկէր կաղամբ.
Եւ աւասիկ եղեւ նա պապ։
Միթէ չարժե՞մք ինչ մեք ընդնա։”
Արժէք թերեւս բիւրապատիկ,
Այլ զի՞նչ օգուտ է ձեր վաստակ։
Միթէ իցեն բախտին աչկունք։

Միթէ արժէ՞ ինչ պապութիւն զայն զոր թողուս.
Օ՜ հանգիստ, ասեմ, հանգիստ որ է
գանձ պատուական,
Օ՜ որ կարծէին մարդիկ երբեմըն բաժին դից.
Եւ դուն ուրեք բախտ վանատուաց իւրոց թողու։
Մի խնդրեր ընաւ դու զայն աստուած,
Նա խնդրեսցէ ըզքեզ. այսպէս սովոր է նա։
Բարեկամաց զոյգ մի բնակէր,
ասեն, երբեմն ի գեղջ ուրեք։
Չէին նոցա ինչք, սակայն մին հաշէր մաշէր
հանապազորդ
Ըզհետ բախտին. յաւուր միում ասէ ցմիւսն.
"Ըզբնակութիւն մեր եկ թողցուք.
Գիտես թէ չէ ոք մարգարէ
Ի գաւառի իւրում. ո՛ն առ,
այլուր ըզբախտ մեր խնդրեսցուք։"
"Խնդրեա," ասէ միւս բարեկամն, "ես ոչ ցանկամ
Լաւագունի քան զայս երկրի եւ ոչ բախտի։
Հաճեա ըզմիտըս քո եւ երթ
ըզհետ յողդողդ բուսոյ բարուցդ.
Դարձցիս այսրէն ընդ հուպ, սակայն
իմ իղձք այս են,
Ի քուն եղեալ ըսպասել քեզ։"
Ըմբարտաւանն, եւ կամ, լաւ եւս ասել, ագահն
Մեկնի երթալ ընդ ճանապարհ, ընդ արահետ.
Հասանէ նա ի վաղիւ անդր
Ի տեղի մի ուր այլանդակն
աստուած, իմա՝ բախտն, էր սովոր
Յաճախել քան այլուր, եւ վայրն էր արքունիք։

Ընդ ժամանակ մի հաստատէ զիւր բնակութիւն.
Գըտանի անդ յելս եւ ի մուտս
արեգական, յայլ՝ եւըս ժամս
Որ համարին լինել պատեհ.
Մի բան, գտանի անդ հանապազ,
այլ հասանէ եւ ոչ իմիք:
«Զի՞նչ այս,» ասէ, «ո՛ն այլուրեք
երթայց խնդրել յաջողութիւն:
Այլ բախտն ի սոյն տեղիս բնակէ.
Զօր ամենայն տեսանեմ զի
մըտանէ մերթ առ այս անուն,
Եւ մերթ առ այն. ընդէ՞ր ուրեմն
Չըկարիցեմ եւ ես լինել ասպնջական կամազնացիս.
Կարի բարւոք ասացաւ ինձ եթէ մարդոց այսըր տեղւոյ
Ամբարտաւան բալք ոչ են միշտ հաճոյական.
Հրաժեշտ տամ ձեզ, տեարք արքունեաց
տեարք արքունեաց, հրաժեշտ տամ ձեզ.
Երթայք ըզհետ մինչ ի վախճան
ըստուերի որ ողոքէ զձեզ:
Բախտըն մեհեանս ունի, ասեն, եւ ի Սուրաթ[108]
Երթիցուք անդր: Ասաց եւ մուտ անդէն ի նաւ:»
Ոգիք մարդկան են պղնձիք,
այլ նա, առանց երկմտութեան,
Ադամանդեայ էր որ փորձեաց զայն ճանապարհ,
Եւ զառաջինըն խիզախել
իշխեաց ընդդէմ խորոց ծովուն:
Զճանապարհայն այրս այս յաճախ
Դարձուցանէր զաչս անդր ի կողմըն գեղջ իւրոյ,
Իզվըտանգաց առեալ ըղփորձ,

Հինից, ասեմ, եւ մրրկաց,
հանդարտութեան եւ խարակաց,
Պաշտօնէից մահուան. բազում դժուարութեամբ
Երթայր յափունըս հեռաւորս խնդրել ըզմահ,
Զոր առանց իսկ թողլոյ ըզտուն գըտանէր նա։
Ի Մողըս անդր հասեալ նորա,
ասեն ցընա թէ ի Ճաբոն
Բախտըն բաշխէր յայնժամ զիւր շնորհս։
Ընթանայ անդր։ Արդէն ծովուց էր վաստակեալ
Ի կըրելոյ ըզնա, եւ պտուղըն բովանդակ
Զոր եհան նա յայնչափ աշխարհս հատանելոյ՝
Եղեւ խըրատն այն զոր եւ խուժք
անգամ տան մեզ
Ի բնութենէ անտի ուսեալ,
թէ բընակեաց ի քում երկրին։
Ճաբոնըն[109] չէր երջանկագոյն յաչըս նորա
Քան որչափ ինչ էր լեալ Մողըն.
Եւ արդարեւ այս ետ նըմա զմըտաւ ածել
Թէ ըզգիւղ իւր թողեալ էր նա յանիրաւի։
Հրաժարեցաւ նա յանօգուտըս շըջելոյ.
Գայ յիւր գաւառ, եւ ի հեռուստ
տեսանէ զիւր առտընին դիս,
Առ խնդութեան լայ եւ ասէ.
“Երանի՛ որ կեայ յիւրում տան.
Եւ դըրնել եւս չափ տենչանաց իւրոց ջանայ.
Ոչ գիտէ նա բայց ի լըրոյ
Զինչ արքունիք են, ծով եւ քո իշխանութիւն,
Բախտ, որ ածեալ կացուցանես առաջի մեր
Պատիւս եւ ինչըս զոր մինչեւ ի ծագ երկրի

Պնդլին ունել մարդիկ, թէպէտ
չեն համեմատ խոստմանն արդիւնք։
Այսուհետեւ ոչ խաբտիմ ես,
եւ հարիւրիցս առնեմ բարւոք։»
Զայս օրինակ լեալ մտախոհ,
Եւ հակառակ բախտին կալեալ խորհուրդ այսպէս,
Գտանէ զնա նստեալ առ դուրս
Բարեկամին որ ընկղմեալ էր ի խոր քուն։

---

## ԱՌԱԿ ԺԳ.

*Աքաղաղք երկու. 4—4*

Կէին երկու աքաղաղք հաշտ. եհաս մարի մի ի վերայ.
Բորբոքեցաւ իսկոյն կռիւն։
Դու կորուսեր զՏրովա, Սէր,
եւ ի քումմէ կուսէ եղեւ
Անագորոյնն այն պատերազմ,
Ուր յարենէ անտի դից իսկ
տեսաւ ներկեալ Սկամանդրոս։
Ի մէջ երկուց հաւուց տեւեաց մարտն ընդ երկար։
Ընդ ամենայն երկիրն ընդ այն հարաւ հռչակ.
Որք միանգամ կրեն կատար
ի տեսիլ անդր ընթանային.
Առաւել քան մի Հեղինէ չքնաղ փետրովք
Լինէին վարձք յաղթողին։ Խոյս
ետ մատնեալն այն ի պարտութիւն.
Չոքաւ թաքչել ընդ ալուց կողմն հաւնոցին

Լալ ըզփառս իւր եւ ըզտարփանս.
Ըզտարփանս իւր զոր ոսոխն այն
ընդ յաղթութիւն իւր պանծալով,
Յիւր վըտարեաց հանդէպ նորա։
Զօր ամենայն տեսանէր նա
Զայն որ գրգռէր ըզհեռ նորա եւ զարութիւն։
Ոլորէր ըզկտուց իւր եւ ծեծէր զօդ եւ ըզկուշտ,
Եւ մորզեալ զանձն ընդդէմ հողմոց
Վառէր զանձն իւր կատաղութեամբ
եւ նախանձու։
Այլ չեղեն պէտք նորոյ կռուոյ։
Հակառակորդ իւր ի տանիս
Չոքաւ կալ եւ երգել, ձայնել,
Ըզձայն նորա լըսէ բազէն.
Հրաժեշտ առնուն տարփանք եւ փառք.
Գոռոզութիւնն այն բովանդակ
ընդ բազէին մագլօք կորեաւ։
Ի վախճանի փոփոխութեամբ ճակատագրին,
Ոսոխ նորա շուրջ ըզմարեօք
Դառնայ նազել,
Նազել՝ որպէս, թողում ասել,
Զի բազմութիւն խուռըն կանանց եղեւ նորա։
Զայս օրինակ հալուածըս տալ բախտն ախորժէ.
Հըպարտ յաղթողն ի կորուստ իւր լինի աշխատ։
Մի կապեսցուք յոյս ընդ բախտին,
եւ եղիցուք ըզգոյշ անձանց,
Եթէ տարցուք ըզյաղթութիւնն։

---

## ԱՌԱԿ ԺԴ.

*Թէ ապաշնորհք եւ անիրաւ են մարդիկ առ բախտն. 4—4*

Վաճառական մի ծովագնաց
ըստ դիպաց իմն եղեւ ընչեղ.
Բազում անգամ ի նաւարկելն
ընդդէմ հողմոց եղեւ յաղթող.
Միհ, ծանծաղուտ տեղի եւ խութք
ոչ խնդրեցին բաժ ինչ կամ մաքս
ի վաճառաց անտի նորա. բախտըն զերծոյց յամենայնէ.
Յարուեստակցաց նորա յայլոց
պարկայն Ատլոպ[110] եւ Պոսիդոն[111]
Ընկալան տուրըս, մինչդեռ բախտ
Կալաւ խընամ ածել զթանգար
իւր զայս յանքոյթ նաւահանգիստ։
Ընկերքն, զովոյք, ամենեքին եղեն նըմա հաւատարիմք.
Վաճառեաց նա զիւր ծըխախոտ, շաքար, կասի,
Զոր կամեցաւ, նոյնպէս եւ զիւր յախճապակին.
Յիմարութիւն եւ զեղխութիւն
փըքացուցին ըզգանձ նորա.
Տեղայր ի քսակ անդըր նորա՝ համառօտիւ։
Բանք իւր էին համակ ըոսկւոյ դահեկանաց.
Շունք, երիվարք եւ կառք էին նորա բազում.
Աւուրք պահոց իբր հարսանեաց աւուրք էին։
Այր ոմն յիւրոց բարեկամաց
տեսեալ այնչափ ճաշ մեծապաս,
Ասէ ցընա, “Ուստի՞, աղէ, այսքանի ծախս հանապազօր։„

Պատասխանի տայ միւսն, “Աստի՞,
թէ ոչ յիմմէ քաջութենէ։
Ինձ լոկ մարթ է, իմոյ փութոյն եւ քանքարոյ
Ի վըտանգի դընել զարծաթ իմ եւ յարգել։”
Շահել նըմա երեւեալ քաղցր,
Զոր շահեալն էր՝ եդ միւսանգամ ի վըտանգի.
Այլ ոչ որպէս ըղձայր նա զայս նուագ՝ դիպեցաւ։
Եւ պատճառ այնր անմըտութիւն նորա եղեւ.
Նաւ մի որ չէր բարւոք կազմեալ՝
ի մըրրկէն կորեաւ անդէն.
Այլ նաւ որ չէր որպէս պարտն է վառեալ զէնու՝
Ընկաւ ի ձեռս հինաւանդին.
Երրորդն հասեալ ողջ ի ցամաք
Ոչ գըտանէր գին եւ վաճառ,
զի զեղխութեանն յիմարութիւն
Չէր ինչ այնպէս որպէս յառաջն։
Նա եւ ընկերքըն խաբեցին,
Եւ ինքն արար շըշուկ, հատաւ ի շռայլութիւն,
Ծախեաց բազում ինչ ի զբօսանս,
կանգնեաց շինուածըս մեծամեծս.
Եւ յանկարծ իմն աղքատացաւ։
Բարեկամին տեսեալ ըզնա ի ցնցոտիս՝
Ասէ, “Աստի՞ այդ քեզ, աղէ։”
“Բա՛բէ,” ասէ այլն, “ի բախտէն։”
“Մխիթարեաց,” ասէ ցնա միւսն,
“եւ եթէ ոչ եւս հաճեսցի
Առնել ըզքեզ բախտաւոր, եկ գոնեա ի միտս։”
Թէ խորհըրդոյս այսմիկ անսա՞ց նա, ոչ գիտեմ.

Սակայն գիտեմ, իւրաքանչիւր
որ ընծայէ յայսպիսի դէպս
Զաջողութիւն իւրոյ անձին ճարտարութեան,
Իսկ եթէ վնաս ինչ եկեսցէ ըզհետ մերոց վըրիպանաց,
Բախտին լինիմք մեք մեղադիր.
Սովորութիւն է այս մարդկան։
Ըզյաջողուածըն գըրեմք մեզ,
ըզչաջողուածըն միշտ բախտին։
Միշտ արդար մեք եմք, անիրաւ է բախտըն միշտ։

---

## ԱՌԱԿ ԺԵ.

*Վճռոկ կամայք. 4—4*

Կարծիք սովոր են ծընանել ըստ դիպաց իմն.
Եւ կարծիք են որ տան հուշակ հարկանել միշտ։
Ցուցանել մարթ է ինձ զայս բան
Յամենայն իսկ կարգի մարդկան։
Է կանխակալ կարծիք բընաւն.
Ոխութիւն, դաւ, ոչ կամ սակաւ արդարութիւն։
Հեղեղ է այս, սակայն զի՞նչ շահ.
Հարկ է թողուլ նըմա հոսել։
Այսպէս եղեւ եւ լիցի միշտ։
Կին մ'ի Պարիս առնէր, ասեն, գուշակութիւնս.
Ի հարցանել ըզնա երթայր ամբոխ մարդկան զամենայնէ.
Թէ կորուսեալ էր ուրուք ինչ,
կամ թէ ունէր ոք հոմանի.
Այլ որ ըզկին իւր փափաքէր ածել զիւրեւ,

Մայր ցասուցեալ, կին նախանձոտ,
Դիմէր ի տուն անդրը վըհկին ամենայն ոք,
Տալ գուշակել զոր ինչ ցանկայրն։
Գործ վըհկին էր ճարտարութիւն.
Բանք ասացեալք վարկպարազի,
եւ ձեռներէց յանդգնութեամբ.
Նա եւ երբեմըն դիպուած իսկ,
այս ամենայն եղեալ նըպաստ՝
Տայր համարել զնրան արդարեւ ըսքանչելիս։
Համառօտիւ, թէպէտ տըգէտ երից դանգաց,
Իբրեւ պատգամ մեծարէր կինն.
Բնակութիւնն էր յանշուք տնկան.
Ընդ ելից կինն ըզքսակ իւր
Եւ որ չունէրն այլ ինչ հընարս՝
Շահեցաւ ինչս այնչափ մինչեւ
հայթայթել առն իւրում պաշտօն.
Արուեստանոց գընեաց եւ տուն։
Բզզուն տընիկըն գայ ունել
Այլ կին վըհուկ առ որ քաղաքըն համօրէն,
Կանայք, աղջկունք, ըսպասաւորք,
տեարք, ի մի բան՝ ամենայն ոք
Երթայր, որպէս կանխաւ, խնդրել
զիւր բաշխ բախտի։
Տնիկն եղեւ Սիբիլեան[112] այր։
Միւսոյ կնոջն էր ձգեալ յայն տուն
ըզյաճախորդն։
Ի զուր վերջինս այս կին ասէր,
"Այս եմ հարցուկ." ծաղր առնէին.
"Տեարք իմ," գոչէր, "գիտեմ ես գիրս.



Չիք իմ ուսեալ եթէ ոչ զիմ խաչ օգնեա ինձ։"
Այլ ի զուր. հարկ եղեւ հմայել եւ գուշակել,
Առ ի կուտել ոսկի բազում,
Եւ յակամայ իսկ իւր շահել
աւելի քան երկու խօսնակք.
Բայց եւ կազմածք եւ կահք եղեն նըպաստ գործոյն.
Գահոյք չորք կաղք, բուն աւելոյ.
Այս ամենայն էր շաբաթուն[113]
եւ փոխման յայլ մարմին նշան։
Եթէ կինս այս էր ասացեալ ըզճշմարիտն
Ի սենեկի յարդարելոյ,
Լինէր նա ծաղր. համբաւն անցեալ էր ապաքէն
Ի տընիկ անդր ոյր էր պատիւն։
Մընաց միւս կինն անյաճախորդ։
Նշանն է որ ձըգէ զգընողս.
Յարքունիս իսկ տեսի զայր մի զգեցեալ զըծուծ,
Որ շահէր յոյժ. համարէին ըզնա մարդիկն
Իբրեւ ճարտար ոք որ ձըգէր ըզկընի իւր
Բազում լըսողս։ Հարց ցիս, Ընդէ՞ր։

---

## ԱՌԱԿ ԺԶ.

*Կուզ, Աքիս եւ Ճագար. 6—6*

Զապարանս ճագարի միոյ որ մանուկ էր՝
Տիկինն աքիս յաւուր միում յառաւօտուն
Կալաւ. դաւ իմն էր այս։
Տանուտէրըն չէր անդ. դաւն ել ի գլուխ դիւրաւ.

Տարաւ աքիսն յիւր տուն զառատընկին դիս Նորա
Որ մի մինչ ճագարն էր գընացեալ յայգորել
Արշալուսոյ ի մէջ ուրց տըմնկոյ եւ ցօղոյ։
Ճարակեալ, ոստոստեալ, արարեալ պէտղէս խաղս,
Իբրեւ դառնայ ճագարն ի տուն իւր գետնափոր,
Զաքսին ցռուկ կարկառեալ
տեսանէ ՚նդ պատուհանն։
"Զի՞նչ այս զոր տեսանեմ, վանատո՛ւր դիք,„ ասէ
Ի հայրենի որջոյն վըտարեալն անասուն։
"Ելէ, աքիս տիկին,
Ել ի բաց ի տանէ .աստի առանց փողոյ,
Ապա թէ ոչ առնեմ ազդ մըկանց գաւառիս։„
Երկայնացռուկ տիկինն ասէր թէ երկիրս այս
Է նորա որ կալեալ ունի զնա զառաջինն։
"Արդարեւ գեղեցիկ պատճառ պատերազմի,
Որջ. մի յոր մըտանէր նա հազիւ սողալով.
"Նա՛ թէպէտեւ էր այն պետութիւն մի ողջոյն,
Կամէի քաջ գիտել,„ ասէ, "թէ ո՞ր օրէնք
Արար զայս իրաւունս,
Յովհաննու որդւոյ կամ եղբօր որդւոյ Պետրոյ,
Եւ կամ Գուլիէլմա, քան Պաւղոյ եւ քան ինձ։„
Ճագարն ածէր ի մէջ զօրէնս հասարակաց։
"Այս օրէնք են,„ ասէր, "որ զիս որջոյս այսմիկ
Արարին տէր եւ պետ. զոր ի հարց առ որդիս,
Ի Պետրա առ Սիմոն, ապ՛ առ իս փոխեցին։
Որ ունի զառաջինն. գո՞ն մեծ քան զայս օրէնք։„
"Ո՛ն,„ կրկնէ, "առանց ինչ աղմըկելոյ այլ եւս՝
Երթիցուք հարցանել առ Ռամինագրոբիս։„[114]
Էր սա կուզ մի որ կեայր իբրեւ մենակեաց ղք.

Կուզ որ կեղծաւորէր լինել հեզ եւ ցածուն.
Կզամարդ սրբասէր, թաւարծի, յոյր եւ գէր,
Խռովարար հըմուտ յամենայն ազգ կռուոյ:
Ընդ հաճեալ կացոյց ճագար մեր դատաւոր.
Երկոքին եւս ահա հասեալ կան առաջի
Մեծափառըն կըզոյ:
Արքայակերպն ասէ, "Մերձեցարուք, որդեակք.
Մերձեցարուք, խուլ եմ. տիք են այսըմ պատճառ:"
Մերձեցան երկոքին, անկասկած յիմէքէ:
Զուպ եկեալ ըզնոսա այն ինչ տեսանէր նա,
Ռաւուղքն այն առաքեալ, Կըրիբմինոյ[116] անուն,
Յանկարծ ըզճիրանունս իւր երկուստեք ձըգեալ,
Ըզկռուողսն համոզէր՝ ուտելով զերկոսին:
Այս այն կռուոց նըման է զոր երբեմն առնեն
Իշխանք կրտսերք զիմեալք առ աւագ թագաւորս:

---

## ԱՌԱԿ ԺԷ.

*Գլուխ եւ Տուտն օձի. 4—4*

Օձըն մասունս երկուս ունի.
Զակառակորդս ազգի մարդկան.
Գըլուխ եւ տըտուն, եւ երկոքին
Մեծ իմն համբաւ են ժառանգեալ
Առ անուանեալ անգութ Պարկայն,
Մինչեւ ի մէջ նոցա, ասեն, ժամանակաւ
Յարեաւ կըռիւ անհընարին
Վասն գընալոյ:

Գնէպ ուղիղ՝ նա ի Ստիւքեան ջուրս
անդըր տարեալ հասոյց զիւր քոյր։
Վա՜յ տէրութեանց որ անկանին
ի սըխալանս տըտան օձին։

---

## ԱՌԱԿ ԺԸ.

*Անասուն ի լուսնի. 4—4*

Մինչ յիմաստնոց ոմըն[117] պնդէ
Թէ ազգ մարդկան միշտ ի զգայնոց իւրոց խաբի,
Այլ իմաստուն[118] ոմըն երդնու
Թէ ըզգայնոց ոչ է երբեք ըզմեզ խաբեալ։
Երկոքին եւս են ճշմարիտ. եւ գիտութիւն
Խօսէր ըստոյգ, եթէ ասէր թէ ըզգայունք տան մոլորել,
Ցորչափ մարդիկ ըստ տըւչութեան նոցա դատին։
Բայց եւ այնպէս եթէ ուղղեմք
Զպատկեր իրին ըստ լինելոյ նորա հեռի,
Ըստ միջոցին յորմէ պատի,
Ըստ կազմածոյն եւ ըստ գործւոյն,
Ըզգայունք ոչ զոք խաբեսցեն։
Բնութիւն կարգեաց
զայս ամենայն իմաստութեամբ.
Ասեմ յայլում ժամու զպատճառսըն լայնագոյն։
Արդ տեսանեմ ես զարեգակն. որպիսի՞ ինչ է ձեւ նորա։
Այս յաղթ մարմին աստ երիս ոտս
ունի միայն շուրջանակի.

Այլ թէ տեսից ըղձա ի վեր
անդըր յիւրումըն կայանի,
Զի՞նչ լինէր այն յաչս իմ թէ ոչ
ակըն բնութեան:
Ի լինելոյ նորա հեռի ըզմեծութիւն նորա դատիմ.
Չափով անկեան եւ կողմանց զայն ճշգրտեն ձեռք:
Այր տըգէտ հարթ կարծէ ըզնա.
առնեմ ըստուար ես ըզգոլորն.
Առնեմ ըզնա անշարժ, զերկիր գնացուցանեմ.
Համառօտիւ, սուտ առնեմ զաչս իմ բովանդակ.
Ըզգայունս այս ոչ վընասէ ինձ պատրելովն.
Միտք իմ միշտ եւ յամենայնի
Ըզճշմարիտըն թաքուցեալ քողով պարզէ.
Ոչ եմ հաւան
Հայեցուածոյս որ թերեւս է կարի փութկոտ,
Ոչ ականջացս որ են դանդաղ բերել ինձ ձայն:
Յորժամ ծըռի ցուպ ի ջըրի,
կորով մըտաց ուղղէ ըզնա:
Բանըն վճռէ իբրեւ տիկին:
Աչք իմ այսու օգնականաւ
Ոչ խաբեն զիս ամենեւին սըտելով միշտ:
Եթէ անսամ լըրոյ նոցա,
որ է պատրանք հասարակաց,
Մարմին լուսնի է գլուխ կընոջ
Միթէ այնպէ՞ս ինչ իցէ: Ոչ:
Ուստի՞ ուրեմն է այն տեսիլ:
Տեղիք ինչ խորք ի հեռուստ տան մեզ զայն ազդումն:
Լուսին չունի ուրեք երես հարթ հաւասար.
Ուրեք ուրեք է լեռնային. այլ ուրեք եւըս, տափարակ.

Ըստուերն հանդերձ լուսով կարէ
Նըկարել անդ բազում անգամ
Մարդ, փիղ կամ եզն։
Յառաջ քան զայս Ընգղիացի
ոմն այսպիսի ինչ ետես անդ.
Դիտակաւ նոր ինչ անասուն
Երեւեցաւ ի գեղեցիկ աստեղն յայնմիկ.
Ըսքանչելիք, աղաղակէր իւրաքանչիւր։
Փոփոխութիւն եղեւ, ասեն, ի բարձունս անդ,
Որ գուշակէ ապաքէն մեծ ինչ պատահար։
Ո՞ գիտէ թէ մարախն որ լինէր
յայնժամ ի մէջ այնչափ ազգաց՝
Չէր այնր արդիւնք։
Թագաւորն անդըր գայ անձամբ,
Եւ նըպաստէ մեծասքանչ այ-
նըմ գիտութեան իբրեւ արքայ.
Զի նըմա եւս երեւեցաւ ճիւաղն որ էր ի լուսնի անդ։
Սակայն էր այն մուկն յապակեաց միջի պահեալ.
Պատճառ մարախն ի դիտակի անդ էր ուրեմն։
Ծիծաղեցան։ Երջանիկ ազգ, ե՞րբ կարիցեն Գաղիացիք
Զանձինըս տալ իբրեւ ըզձեզ,
ողջ բովանդակ այնմ արուեստի։
Արէս տայ մեզ քաղել առատ հունձըս փառաց,
Թշնամեաց էր երկնչել տալ ընդ մեզ ճակատ.
Մեզ՝ խիզախել, գիտացեալ
քաջ թէ Յաղթութիւն,
Լուդովիկեայ սիրողն, ըզհետ նորա երթէ։
Դափնիք նորա զմեզ առնիցեն
Նըշանաւորս ի պատմութեան։

Աղջկունք[119] անգամ յիշատակի
Չթողլին զմեզ, եմք ի հեշտանս.
Խաղաղութեան ըղձամք եւ ոչ թէ հառաչեմք:
Կարոլոս[120] եւս գիտէ այնու
վայելել քաջ. կարէ կռուով
Զիւր քաջութիւն յայտնել, եւ զազգն
Անգղիացւոց վարեալ տանել
Ի խաղըն զօրս ի հանգստեան
տեսանէ ազգն այն այսօր:
Այլ թէ կարէ ցածուցանել ըզպատերազմն,
Ո՞չ արժանի լիցի խնկոց: Իցէ՞ քան զայն վայելուչ ինչ:
Իշխանութիւն Օգոստոսի միթէ չեղե՞ւ այնչափ շքեղ
Որչափ Կայսերն[121] առաջնոյ գործք արութեան են:
Ո՜վ երանիկ երջանիկ ազգ,
Երբ եկեսցէ խաղաղութիւն,
Առ ըզմեզ եւս, իբրեւ ըղձեզ,
ողջ գեղեցիկ արուեստից տալ:



# ԳԻՐՔ ՈՒԹԵՐՈՐԴ

## ԱՌԱԿ Ա.



*Մահն եւ Որ մեռանին.*
*4—4*

Մահ ոչ յանկարծ գայ ի վերայ
առն իմաստնոյ,
Որ միշտ պատրաստ է ի մեկնել,
Քանզի գիտէ նա առնել ազդ
անձամբ անձին,
Եթէ յորում ժամանակի
պարտի ընդ այն չու հաւանել:
Ժամանակն այն, եղուկ, փակէ
յինքեան ըզբնաւ իսկ ժամանակ.
Բաժանեա զայն յաւուրս, ի ժամս եւ ի րոպէս,
Զամենեսին ամփոփէ այն միահամուռ:
Ի տալ զայն հարկ օրհասական
ամենեքին եմք հըպատակ:
Առաջին պահն յորում որդիք Թագաւորաց
Բանան զեւրեանց աչըս լուսոյ՝
Է վերջին պահն որ գայ երբեմն
Ի յաւիտեան զարտեւանունս նոցա փակել:

Ըզմեծութիւնդ արա բարուրս,
Ասա թէ եմ չքնաղագեղ, առաքինի, տիօք մանուկ.
Յափշտակէ մահ զամենայն զայն լրբաբար.
Յաւուր միում ողջոյն աշխարհ
աճեցուցէ զաւար նորա:
Չիք ինչ որում չիցեն մարդիկ տըգէտ քան այսմ.
Նա զի հարկ է ինձ ասել յայտ,
Չիք ինչ առ որ իցէ սակաւ
պատրաստական մարդ քան առ այս:
Այլ ոմըն մերձ ի մահ ի տիս
հարիւրամեան, աւելի իսկ,
Տրտունջ լինէր ըզմահուանէն թէ տագնապաւ
Ստիպէր ըզնա մեկնել աստի յեղակարծումն,
Մինչչեւ ըզկտակ իւր արարեալ,
Առանց գոնեա ազդ առնելոյ: “Իցէ՞ արդար զի մեռցի ոք
Չեւ պատրաստեալ,„ ասէ, “համբեր սակաւիկ մի.
Ոչ կամի կին իմ զի երթայց առանց նորա.
Թոռըն մի է իմ, եւ պարտիմ հոգալ ըզնա.
Թող ինձ թեւ մի եւս յաւելուլ յապարանս իմ:
Օ՜ ըշտապես այսչափ, ո՛վ դիք անագորոյն:„
“Ո՛վ ծեր,„ ասէ մահըն, “չեկի ես յանկարծուստ.
Ի զուր լինիս տրտունջ եթէ իցեմ անժոյժ,
Չե՞ս դու, աղէ՛ հարիւրամեան:
Ցոյց ինձ հա՛պա ի քաղաքիս
Արըս երկուս իբրեւ ըզքեզ
ծեր. ցոյց ինձ տասն ի գաւառիդ:
Պարտ էր, ասես, ինձ կանխագոյն առնել քեզ ազդ,
Պատրաստել զանձըն քո ի մահ.
Պարտէի թոյլ տալ քեզ առնել ըզկըտակ քո,

Հոգալ ըղպէտըս թոռին քո,
ըղչինուած տանդ հանել ի գլուխ.
Ո՞չ ապաքէն տըւաւ քեզ ազդ, յորժամ կորով
Ի գնացըս քո եւ ի շարժման,
Նաեւ յորժամ միտք եւ ըղձայունք
Նուազեցին: Չեն քո ահա ճաշակելիք, չեն լսելիք.
Ամենայն ինչ վասըն քո թուի ունայնացեալ.
Խընամք աստեղըն տըւընջեան
աւելորդ ինձ են վասըն քո.
Դու վասն ընչից հոգաս որ չեն քեզ այլ եւս անկ:
Միթէ չետո՞ւ քեզ տեսանել զընկերըս քո
Մեռեալ կամ մերձ ի մահ եւ կամ հիւանդացեալ.
Զի՞նչ այլ ինչ էր այս ամենայն եթէ ոչ ազդ:
Ո՛ն, երթիցուք, ո՛վ ծերունի, մի դանդաղիր:
Ոչ է կարծեմ փոյթ քաղաքին
Թէ առնիցես դու քեզ կըտակ:»
Յիրաւի իսկ ասէր զայս մահ, կամէի իմըն թէ յայն տես
Նըմանէր մարդ յաստի կենաց իբր ի կոչնոյ,
Շընորհակալ լեալ կոչնատեառն,
եւ գնայր այնպէս,
Զի յապաղել ո՞րչափ մարթ է զայն ճանապարհ:
Կըրթմնջես, ո՛վ ծերունի, տես,
մեռանի քան ըզքեզ մանուկն.
Զիա՛րդ գընան, զան, ընթանան
Ի մահ, այո՛, փառաւոր ինձ եւ գեղեցիկ,
Սակայն ըստոյգ, թէպէտ երբեմն անագորոյն:
Ի զուր գոչեմ քեզ. եռանդն իմ է անհանճար.
Նըմանագոյնըն մեռելոյ մեռանի քան զայլս ակամայ:

———

# ԱՌԱԿ Բ.

## *Կարուակ եւ Սեղանաւոր. 4—4*

*Ամըն կարուակ երգէր, առեն, զօր ամենայն.*
*Զարմանք էր զայրըն տեսանել,*
*Զարմանք լսել. գեղգեղէր նա*
*Աւելի գոհ քան զանուանեալ եւթն իմաստունս:*[122]
*Դրացի նորա, ընդ հակառակն,*
*որ կուռ յոսկի էր համակեալ,*
*Երգէր սակաւ, եւըս սակաւ լնէր ի քուն.*
*Էր այր գանձու:*
*Եթէ այգուն նիրհէր երբեմն,*
*Կարուակն յայնժամ երգովն ըզնա զարթուցանէր:*
*Սեղանաւորըն քանքատէր*
*Թէ հեմ խնամողըն Տեսչութիւն*
*Ի հրապարակս ի վաճառել ոչ եդ ննջել,*
*Որպէս զուտելն եւ ըմպել եդ:*
*Յապարանս իւր տայ նա կոչել*
*Զերգողն. ասէ ցընա, "Ո՛վ դու,*
*Ո՛րչափ շահիս յամի՞" "Յամի՛, բա՛րէ, տէր իմ,"*
*Պատասխանի տայ ժպտելով*
*Կարուակն հտպիտ. "Չեմ ինչ սովոր*
*Հաշուել այդպէս. չիք իմ դիզեալ*
*Որ ի վերայ աւուր. շատ է ինձ հուսկ ուրեմն*
*Ի կատարած անդըր տարւոյն գալ հասանել.*
*Իւրաքանչիւր օր սովոր է բերել զիւր հաց:"*
*"Ասա զոնեա զինչ շահիս դու*
*աւուր աւուր, ասէ ընչեղն:"*

“Մերթ աւելի եւ մերթ սակաւ,„
ասէ կարուակն. “այն իմն է չար,
Եւ առանց այնր բաւական լինէր շահ մեր,
Այն իմն է չար զի ի տարւոջ խառնին աւուրք,
Յորս մեզ պարտ է դադարել.
որ աւելեանն ըզմեզ են տօնք.
Մին միւսումն է ի վնաս. եւ տէրըն մեր Երէց
Զիւր ճառսն միշտ նորովք սրբովք ծանրաբեռնէ:„
Ընդ պարզութիւն նորա ընչեղն ծիծաղեալ
Ասէ. “Կամիմ հանել ըզքեզ այսօր ի գահ.
Ա՛ռ զայս հարիւր դահեկան, դիր ի պահեստի,
Պաշտել նովաւ ի կարիս քո:„
Կարուակն մեր կարծէ ունել
զողջոյն արծաթըն զոր երկիր
Ի մարդկան պէտս էր բուսուցեալ
Առաւել քան ի հարիւրոց ամաց հետէ:
Դառնայ յիւր տուն. ի մառանի իւրում ծածկէ
Զարծաթն եւ զիւր ուրախութիւն միանգամայն:
Դադարեն երգք եւ ըզձայն եւս կորուսանէ
Ի ժամէն իսկ զի շահեցաւ
զայն որ պատճառ է մեզ վշտաց:
Քուն լքք եթող ըզտուն նորա.
Յայնմ հետէ հիւրք նորա են հոգք,
Կասկած, ունայն տատամսութիւն:
Ըզցերեկ էր ի զգուշութեան եւ ըզգիշեր.
Եթէ առնէր կուզ մի աղմուկ,
Կարծէր թէ կուզն առնու զարծաթն:
Ի վախճանի ողորմելին

Որթայ առ այրըն զոր ոչ եւս զարթուցանէր.
"Տուր ինձ," ասէ, "զերգս իմ եւ զքուն,
Եւ առ զհարիւր դահեկան քո:"

---

## ԱՌԱԿ Գ.

*Առիւծ, Գայլ եւ Աղուէս. 4—4*

Առեւծ մի ծեր յոյժ, եւ ոտիւք կացեալ, անզօր,
Կամէր թէ ոք գտանէր դարման ինչ ծերութեան:
Թագաւորաց ասել թէ չիք հընար, ոչ է իմաստութիւն.
Առ ամենայն ազգ անասնոց առեւծըն մեր
Եհան հրաման յըղել բժիշկ.
յայնմ արուեստէ յամենեսին գըտանի ոք.
Եւ ի կողմանց կողմանց բժիշկք գան առ առեւծն.
Աստի անտի եկին որ տան պատճէն դեղոց:
Յայցելութեանց զոր առնեն այլք՝
Հըրաժարի աղուէս, ունի մեկուսի զանձն:
Գայլըն գայ մօտ, կայ չարախօս
առ անկողնոյ թագաւորին,
Զընկերէն թէ չեկն առ արքայ, արքայն իսկոյն
Պատուիրէ գնալ հանել զաղուէսն յիւրմէ բընոյն,
Եւ զառաջեաւ ածել: Գայ նա, կայ յանդիման,
Եւ իմացեալ թէ քըսութիւնն էր ի գայլոյն,
"Երկնչիմ, տէր," ասէ, "գուցէ
համբաւ ինչ որ ոչ է արդար՝
Յանիրաւի կարծեցոյց քեզ
Թէ յամեցի ի կատարել զիմ մեծարանս.

Այլ իմ երթեալ էր յուխտ, արքայ,
Մատուցանել աղերս ի քո առողջութիւն.
Եւ դիպեցայ զճանապարհայն
Մարդոց որ փորձ են եւ հրմուտ.
եւ պատմեցի նոցա զախտէն
Յորոյ ելեալ յիրաւի տէրդ իմ երկնչի։
Ոչ այլ ինչ քեզ պակասէ, տէր, բայց ջերմութիւն.
Երկարութիւն տիոց ի քեզ խանգարեաց զայն.
Տուր մորթել գայլ մի կենդանւոյն,
եւ զմորթ նորա արկ ըզմարմնով
Մինչդեռ ջերմն է, եւ գոլորշին իւր ծխեալ
Շոգին արդարեւ է դարման
Մարմնոյ յուժոյ պակասելոյ։
Այսպէս լիցի քեզ տէրըն գայլ,
Եթէ կամիս, ձորձ գիշերոյ։»
Հաճոյ թըւի բանն արքայի.
Ընդէն, մորթեն, կտրեն, յօշեն անդամ անդամ
Բզտէրըն գայլ։ Կերաւ արքայն ի մսոյ անտի,
Եւ ըսփածաւ մորթով նորա։
Ա՛րք արքունեաց, առ ի զերեարս
կործանելոյ դադարեցէք.
Ողջքեցէք, թէ կարող էք, առանց միմեանց վընասելոյ.
Բզփոխարէն չարին գոջեք չորեքպատիկ քան ըզբարւոյն.
Զարախօսաց եւս ապաքէն ցապաք գայ կարգ։
Ընդ այնպիսի մարդկան էք դուք
Որ ոչ մի ինչ ներեն միմեանց։

---

# ԱՌԱԿ Դ.

*Զօրութիւն առակաց. 4—4*

*Առ Տէր Պարիյիոն:*

Ո՛ր դեսպանն է
Կարէ՞ անսալ դռեհիկ վիպաց.
Ընծայել քեզ իշխեմ զերգս իմ
եւ ըզթեթեւ շնորհ նոցա։
Եթէ երբեք առնուն սոքա ըզկերպարանըս մեծութեան,
Համարիցի՞ն յանդգնութեան գործ յաչըս քո։
Եւ քո այլ գործք ի յարդարել,
Կարեւորք յոյժ քան ըզկըռիւս
Արքիս մըկան եւ ճագարի։
Ընթերցիր զայն, մի՛ ընթեռնուր,
Սակայն արգել զի մի դիցեն
Ի մեր բազկաց վերայ զԵւրոպըն բովանդակ։
Թող ի բիւրուց կողմանց երկրի
Թշնամիք գան ի վերայ մեր,
Համբիմ ընդ այն, այլ Անգղիա
Թէ կամիցի զի թագաւորք մեր երկոքին թողցեն ըզսէր,
Այժմ հանդուրժել դժուարանամ։
Չիցէ՞ հասանել ժամ զի Լուին մեր հանգիցէ.
Ո՞ր Հերակղէս է որ խոնջեալ ոչ գտցէ զանձն
Ի մաքառել ընդ Հիդրայիս։[123]
եւ հանգէ՞ ինչ հակառակորդ
Նոր գըլուխ մի բուռըն ծըգանց բազկի իւրոյ։
Եթէ հանճար քո հնարագէտ
Խօսողութեամբ եւ պատուաստիւ

Կարէ մեղմել զոգիս, վանել յետս ըղձարուածն,
Ոչխարս հարիւր զոհեցից քեզ. մեծ իմն է այս
Որում բնակէն ի Պառնասոս։
Սակայն արա ինձ զայս շնորհ
Առնուլ ի նուէր զայս դոյզն խունկ.
Ընկալջիր զեղձ իմ եռանդուն,
Եւ զվիպասան երգ իմ զոր քեզ ընծայեմ աստ։
Նիւթն է քեզ անկ. չասեմ այլ ինչ.
Ի դրուատիս որ նախանձ իսկ
Խոստովանել պարտի թէ են քեզ արժանի՝
Ոչ են քեզ կամք զի յենուցումք։
Երբեմն յԱթէնս, ազգ ընդունայն, թեթեւամիտ,
Ճարտարախօս ոմն տեսեալ ըզհայրենիսն ի վըտանգի,
Դիմեաց յատեան եւ անդ իւրով
բուռն արուեստիւ
Ըզմիտս հաճել ժողովրդեանըն կամեցեալ,
Խօսեցաւ ջերմ զհասարակաց փրկութենէ։
Ոչ ոք անսայր. Ճարտարախօսն առնու ի ձեռն
Ըզհռետորաց արուեստին հնարս,
Որ սովոր են ըզկարի թոյլ ոգիս անգամ զարթուցանել։
Մեռելոց եւ նա բարբառել,
գոռաց, արար զոր ինչ մարթէր.
Հողմն առ տարաւ զամենայն, ոչ ոք շարժեցաւ։
Ըն[illegible] այն [illegible] Գելով[124]
Ի բնէ անտի է այնպիսի. բանից նորա լսէր ոչ ոք.
Ամենեքին հայէին այլուր. նա, ըզբաղեալ եւս զոմանս
Ըզմանկաւոյ խաղովք, զճառիւք նորա բընաւ։
Իսկ զինչ ապա Ճարտարախօսն։
Առնու նա այլ իմն դարձուած։

"Դեմետր,"[125] ասէ, "չոգաւ
երբեմն ի տարաշխարհ
Օձաձրկամբ, ծիծռամբ հանդերձ։
Հանդիպեցան նոքա գետոյ, եւ օձաձուկն էանց ի լեւղ,
Որպէս ծիծառնըն թռչելով
Էանց յայնկոյս։" Քողոմն իսկոյն
Աղաղակեաց միաբերան,
"իսկ զի՞նչ ուրեմն արար Դեմետր։"
"Զի՞նչ արար նա. ցասումըն մեծ
Վառեաց ըզնա նախ ընդդէմ ձեր,
Զի ժողովուրդ[126] նորա յուզի ի մանկտւոյ առասպելաց,
Իսկ զաղետից որ մօտալուտ
Կան ի վերայ՝ թողու ըզհոգըն նա միայն ի մէջ Յունաց։
Եւ ընդէ՞ր ոչ հարցանէք զի՞նչ Փիլիպն[127] առնէ։"
Քողոմն ընդ այս մեղադրութիւն,
Եւ առական եւս ըսթափեալ
Մըտադիւր իմն ունկըն դընէ հըռետորին։
Առակին այնմ էր այս պատիւ։
Ամենեքին եմք յԱթենայ յիրիդ յայդմիկ. եւ ես ինքնին,
Մինչ ըզխըրատըս զայս գըրեմ,
Եթէ զառակ Մորթոյն իշոյ պատմէր ինձ ոք,
Զուարճանայի թերեւըս յոյժ։
Աշխարհս է ծեր, ասեն, եւ ես հաւատամ, բայց
Իբր ըզտըղայ զբօսուցանել ըզնա պարտ է։

---

# ԱՌԱԿ Ե.

*Մարդ եւ Լու. 4—4*

Պաղատանօք ըստէպ աշխատ առնեմք զԴիս,
Բազում անգամ վասն այնպիսի
իրաց իսկ որ չեն մեզ վայել։
Թուի եթէ երկինք ի մեր ամենեցուն վերայ որ եմք,
Զաչս իւր ունել պարտիցի միշտ,
Եւ թէ փոքրիկն անգամ
յորդւոց մարդկան պարտի,
Յամենայն քայլս զոր առնէ,
յամենայն գործ իւր դուզնաքեայ,
Զիւրեւ ածել զՈղիմպ եւ զորս բնակեն անդ,
Որպէս եղեւն առ Տրովացւովք եւ առ Յունօք։
Լու մի խածեալ ըզյիմարի ուրումն զուս,
Գընաց ի խորշըս հանդերձի նորա թաքչել։
"Ո՛վ Հերակղէս դու," ասէ այրն,
"ապաքէն պարտ էր քեզ սրբել
Զերկիրըս մեր ի Հիդրայէ
աստի որ գայ մեզ գարնայնի.
Եւ դու, ո՛վ Զեւս, ընդէ՞ր արդեօք
յամպոց անտի քոց ի վերուստ
Ոչ ջնջես զայս ցեղ, զի ըզվրէժ իմ խնդրեսցես։"
Ի սատակել լու մի կամէր այրն ըստիպել
Ըզդիս տալ փոխ նըմա ըզշանթ իւրեանց եւ զուռն։

---

## ԱՌԱԿ Զ.

*Կանայք եւ Գաղտնիք. 4—4*

Չիք այնպէս ծանր որպէս գաղտնիք.
Տանել հեռի ընդ կանանց է դժուարին.
Նա՛, գիտեմ իսկ յիրիդ յայդմիկ
Ըզբազում արս զի են կանայք։
Եւ ի փորձել զիւր կին այր ոմն յանկարծ գոչէ
Ըզգիշերային մինչ առ նըմա
էր կին նորա, "Բա՛բէ, զի՞նչ այս.
Չունիմ ժոյժ, խիթք պատառեն զիս.
Ո՜հ, ծընայ ձու։" "Զո՞ւ," ասէ կինն։ "Այո, ահա,
Դալար եւ նոր," ասէ ցնա այրն,
"այլ ըզգոյշ լեր չասել ումեք,
Ապա թէ ոչ կոչեն զիս հաւ.
ի վեր հանել չէ պարտ զայս բան։"
Կինն ի սըմին դեռ նորընծայ,
Որպէս եւ յայլ բազում իմիք,
Հաւատացեալ՝ լռել յանուն դից խոստանայ.
Ունայնանայ սակայն երդումն,
Որպէս ըստուերըն գիշերոյ։
Կինն անհանճար, խորագէտ դոյզն,
Ընդ այգանալն յառնէ ի քնոյ,
Եւ ընթանայ առ դըրացին։
"Տիկին," ասէ, "նորանըշան ինչ դիպեցաւ.
Այլ մի՛ ումեք ասիցես ինչ,
գուցէ տացես ինձ ըմպել զան։
Այր իմ ածեաց ձու քան զայլ ձուս չորիցըս մեծ.

Երդուիր յԱստուած լինել ըզգոյշ
Պատմել այլում ըզգաղտնիս զայս:»
«Ծաղր առնես զիս,» ասէ դըրացին,
«ո՞չ գիտես դու
Որպիսի կին եմ ես, հայա, մի երկնչիր:»
Կին որոյ ածն ըզձուն՝ այսրէն դառնայ ի տուն.
Միւսըն տապէր պատմել ըզլուրն.
Բազում անգամ երթայ հուչակ հարկանել նա
Եւ փոխանակ միոյ ձուոյ ասէ երիս:
Եւ ոչ այսչափ միայն. զի այլ կին շաղակրատ
Եհան ըզթիւ ձուոցն ի չորս,
եւ յունկանէ պատմէր զեղեալն.
Ըզգուշութիւն որ չէր պիտոյ,
Զի չէր այլ եւըս գաղտնի ինչ:
Եւ զի թիւ ձուոցն, համբաւո՛յն փառք,
Ի բերանոյ բերան երթայր եւ յաւելոյր,
Նախ քան զաւուրըն կատարած՝
Ել առաւել քան ի հարիւր:

---

# ԱՌԱԿ Է.

*Ծոռն որ ունի ի պարանոցի զձագ ռետառն իւրոյ.*

4—4

Զփորձել աչաց մերոց չէ մարթ ի գեղեցկէն,
Եւ ոչ ձեռաց մերոց յոսկւոյ:
Սակաւուց է պահել ըզգանձ
Որպէս արժանն է հաւատեաւ:

Շուն մի որ կրէր պարէն ի տուն՝
Կախեալ տանէր զանրոյ վըզէն ճաշ առ տէր իւր։
Էր, առաւել քան զոր կամէր լինել, ժուժկալ,
Յորժամ ազնիւ ինչ կերակուր տեսանէր նա։
Զխարդ եւ է, էր նա ժուժկալ,
ուր մեք մարդիկ առ հասարակ
փորձիմք յորժամ մօտ եմք ընչից։
Զարմանք ի շանց է ուսանել ժուժկալութիւն
Ի մարդկանէ ուսանել զայն չէ հըմար մեզ
Մինչ շունս այս էր մարզեալ այնպէս,
Եկեալ այլ շուն մեծ կամեցաւ
հանել ըզճաշն ի նըմանէ.
Այլ ոչ եհաս ուրախութեանն
Որում ունէր ակն ի սկզբան,
զի շունըն զօրս իւր եդ ի վայր
Առ բարւոք եւս պաշտպանել զայն,
ի լինել իւր առանց բեռին։
Կըռիւն էր մեծ. եկին այլ շունք
Ի շանց անտի որ կեանք են
Ի հրապարակս, եւ չէ նոցա փոյթ ըզգանէ։
Շուն մեր տեսեալ զանձըն տըկար
ընդդէմ նոցա ամենեցուն,
Եւ զի վըտանգ մեծ էր խորտկին,
Կամի եւ ինքըն ունել բաժին.
ասէ ցնոսա ըզգօնութեամբ.
"Այդչափ ցասումն առ իմէ՞, տեարք,
ինձ պատառիկ մի լոկ բաւէ.
Ի մնացելոյն վայելեսջիք։"
Յայս բան նորա կորզէ կտոր մի առաջինն.

*Իւրաքանչիւր ապա շորթէ, շուն եւ շնիկ*
*Մրցելով՝ ինն, եւ հագածին.*
*Իւրաքանչիւր առնու զիւր մասն ի քաքարէն։*
*Ըզ.քաղաքի պատկեր թուի ինձ տեսանել աստ*
*Ուր ի գռեհիկ ձեռս է արծաթն հասարակաց.*
*Քաղաքապետ, համարակալ,*
*Իւրաքանչիւր լնու ըզձեռն. որ ճարտարն է*
*Տայ օրինակ այլոց. հեշտ ինն է ապաքէն*
*Արծաթոյ կոյտս անդ ի միջոյ*
*ի բաց սրբեալըս տեսանել։*
*Թէ երկիւղած ոք ի սնոտի ինչ պատճառաց*
*Կայ ջատագով զանձուն, ասէ բան դուզնաքեայ,*
*Յանդիմանի իբրեւ ըզխօլ։*
*Ապա եւ նա լինի հաւան,*
*Յետ սակաւուց է առաջին նա ի խորել։*

---

# ԱՌԱԿ Ը.

*Ծաղրածու եւ Զկոնաք. 4—4*

*Բազումք խնդրեն ըզծաղրածուս.*
*ես խուսափեմ ի նոցանէ։*
*Այս արուեստ, թող զայլն ամենայն, կամի ջան մեծ.*
*Վասն անմիտաց ըստեղծ Աստուած*
*Ըզխեղկատակըս չարակամս։*
*Ո՛ն, առակաւս այսուիկ թերեւըս կարացից*
*Կացուցանել ի նոցանէ զմին յանդիման. նա եւ թերեւս*
*Համարիցի ոք թէ բարւոք յաջողեցայ։*

Ծաղրածու ոմն էր ի ճաշու
Առ ընչեղի, եւ առաջի իւր ետես նա
Մանրը ձըկունս, եւ մեծամեծքն էին հեռի։
Առնու զմանունսըն զայնոսիկ, եւ յունկանէ նոցա խօսի.
Յետոյ ապա կերպարանի
Զպատասխանի նոցա լսել։ Զարմացան արքն,
Հարան յապուշ.
Եւ ծաղրածուն ծանրութեամբ իմն
Ասէ. “Երկիւղ էր ինձ թէ ոմն յիմոց անտի,
Ճանապարհորդ լեալ ի Հնդիկս
Յամէ միոյ հետէ եղեալ էր նաւաբեկ։
Ի ձկանց անտի մանունց ես զայս հարցանէի։
Ետուն նոքա պատասխանի, ‘Չեմք մեք ի տիս,,
Ասեն, ‘Ճշդիւ զոր դիպեցաւ նըմա գիտել.
Երիցագոյնք քաջ գիտեն զայս։,
Միթէ չիցէ՞ մարթ, տեարք զերէց ոմն հարցանել։„
Ասել թէ որ անդըն գըտան՝
Հաճեցա՞ն ինչ ընդ այն կատակ,
Տարակուսիմ. այլ հուսկ ուրեմն հաւանեցոյց նա ըզնոսա
Տալ նըմա ձուկըն մի հըսկայ որ կարող էր ասել նըմա
Զանուն նոցա որ յանծանօթ աշխարհ երթեալ՝
Չէին դարձեալ,
Եւ զորս յանդունդս անդ ծանուցեալ
էր ի հարիւր ամաց հետէ
Ծերացելոց յընդարձակ յայնըմ պետութեան։

---

# ԱՌԱԿ Թ.

*Մուկն եւ Ոստրէ. 4—4*

Մուկըն մի հիւր յագարակի,
եւ որ սակաւ մի էր բախած.
Ի հայրենի տանէն յաւուր
միում գլտաւ տաղտկացեալ յոյժ.
Եթող ըզգաշտն, ըզհասկ, զորայ,
Զոքաւ ի տար աշխարհ թողեալ լքեալ զիւր բոյն:
Այն ինչ ելեալ յորջոյն իւրմէ,
«Օ՜հ ընդարձակ եւ մեծ,» ասէ, «է աշխարհս այս:
Ահա լերինք Ապենինեանք,[128] ահա Կովկաս:»
Գոյզն հողակոյտ խըլրդոյ էր
լեառն մի մեծ յաչըս նորա:
Յետ աւուրց ինչ ճանապարհորդ մեր հասանէ
Յերկիր ուրեք յորոյ ափանց վերայ Թետիս
Բերեալ կուտէր բազում ոստրէ,
եւ մուկըն մեր ի սկզբան անդ,
Ի տեսանել իւրում կարծէ
զնոսա լինել նաւըս բարձունս:
«Արդարեւ հայր իմ,» ասէ, «էր դոյզըն ոք տէր.
Չիշխէր գաղթել, եւ էր երկչոտ անհընարին.
Ուր ես ահա տեսի ըզծով համատարած.
Ընդ անապատս անցի, այլ դեռ չարբի անտի:»
Ի բանիբուն վարդապետէ
զայս ամենայն մուկն էր ուսեալ,
Եւ ի շրջէն յագարակին յեղյեղէր զայն.
Չէր ի մըկանց անտի որոց կրծեալ մատեանս՝

Մինչ յատամունս են իմաստունք։
Ի մէջ այնչափ ոստրէից որ էին փակեալ,
Մին էր բացեալ, եւ յօրանջէր յարեւու անդ.
Կազդուրեալ եւս ի քաղցր հողմոյ՝
Ծըծէր նա զօդ, շնչէր փթթեալ իբրեւ ծաղիկ,
Սպիտակ, պարարտ,
եւ յերեսացն իսկ երեւէր անզոյգ համով։
Ի տեսանել մրկան զոստրէն
բացուստ ի բաց զի յօրանջէր,
“Զի՞նչ տեսանեմ,„ ասէ, “պաշար իմն է ինձ այդ.
Եւ եթէ ոչ խաբիմ ի գոյն կերակրոյն ես,
Արարից ճաշ ընտիր այսօր, կամ ոչ երբեք։„
Այսպէս յուսով մեծաւ լցեալ մուկն հանճարեղ,
Մօտ ի պատեան ոստրէին գայ,
ըզպարանոց իւր երկայնէ,
Եւ ըմբռնի իբր ի հաղբի.
քանզի ոստրէն յանկարծակի
Խընու զբերան։ Տըգիտութեան այս են արդիւնք։
Ահա առակս այս ընծայէ խըրատ բազում.
Նախ տեսանեմք ի նըմա զայս,
Զի որոց չենըն զաշխարհի ըզփորձ առեալ,
Ընդ դոյզն ինչ իրըս զարմանան։
Երկրորդ անգամ՝ ուսանիմք զայս,
Զի որ կարծէրն ըմբռնել՝ նա ինքն ըմբռնի։

## ԱՌԱԿ Ժ.

*Արջ եւ Սիրող պարտիզաց. 4—4*

Արջ մի յարջոց լեռնակեցաց, արջ կէս լիզեալ,
Որ յանտառի ուրեք փակեալ էր միայնակ,
Բեղերոփոն[129] նոր, առանձին կեայր եւ թաքուն։
Յընտրեցաւ. ըզգօնութիւն, որպէս յայտ է,
Ոչ բընակէ յերկար առ արս ամայացեալս.
Լաւ է խօսել, այլ լաւագոյն եւս լռել.[130]
Երկոքին եւս եթէ անչափ են, չեն բարւոք։
Յանասնոց ոչ մին կամէր կալ
Ի տեղիս ուր արջըն բնակէր։
Այնպէս՝ մինչեւ, թէեւ էր արջ,
Ձկըսաւ տաղտկալ ընդ մենութիւն կենաց իւրոց։
Մինչ տայր նա զանձըն տխրութեան,
Ոչինչ հեռի անտի ծեր ոմն
Տաղտկայր նոյնպէս։
Նա ըզպարտէզըս սիրէր, եւ էր քուրմ Փլորայ.[131]
Պոմանայ[132] եւս էր այրըն քուրմ։
Այս պաշտամունք են գեղեցիկ,
սակայն ընտրեմ ես մանաւանդ
Ըզբարեկամ լաւ եւ ըզգօն
Պարտէզ խօսին, սակայն յիմուն մատենի աստ։
Ի լինելոյ կենակից այրըն ձանձրացեալ
Ընդ համերից, օր մի ընդ այգուն
Ցանկայր խնդրել ընկերութիւն. անկաւ յուղի։
Ի նոյն միտըս լեալ եւ արջոյն
Եթող զիւր լեառն։

Երկոքին եւս ըստ դիպաց իմն
Հանդիպեցան յանձկի ուրեք։
Զարհուրի այրն, այլ ճողոպրել
զէմրդ, որով հնարիւք մարթէր.
Զանձն աներկիւղ կերպարանել
Էր լաւագոյն, ուստի զերկիւղ իւր թագոյց նա.
Արջըն թէպէտ չէ մեծարող,
Ասէ ցնա, “Եկ, այց առնել ինձ։” Միւսն ասէ, “Տէր,
Գիտես զիմ տուն. եթէ կամիս դընել ինձ շուք,
Առնել առ իս թեթեւ ինչ ճաշ,
Ունիմ ես միրգս, ունիմ եւ կաթն։ Այլ այն իցէ
Տերանց մերոց արջուց թերեւըս կերակուր սովորական.
Այլ ընծայեմ ես զոր ունիմն։”
Եւ յանձն առեալ արջոյն երթայ։
Են բարեկամք չեւ առ միմեանըս մօտ հասեալք,
Եւ հասեալք են այնուհետեւ բարեմարդիկք.
Թէպէտ է լաւ, որպէս թըւի,
Լինել միայն քան ընդ յիմարս.
Եւ քանզի արջ չասէր յաւուրըն երկու բան,
Այրըն կարէր պարապել յիւր գործ անբարբառ։
Արջն երթայր յորս, բերէր ամիճ,
Եւ կատարէր զիւր բուն արուեստ
Քըշելոյ ճանճ. նա եւ քըշէր իսկ յերեսաց
Բարեկամին մինչ ննջէր նա,
ըզթեւաւոր զայն հացկատակ,
Զոր սովոր եմք կոչել ճանճիռն։
Յաւուր միում մինչ ծերըն խոր ի քուն ննջէր,
Ի ծայր անդըր քըթին երթայ ճանճ մի նստել.
Զայրանայ արջն. զուր ըզմիջատըն քըշէ նա.

"Կալայց ըզնա," ասէ, սակայն թէ զիմըդ՝ տես։
Զոր ասացն իսկ եւ իսկ առնէ.
Ճանճից քըշողն հաւատարիմ
Առնու ի բուռըն վէմ մի մեծ,
եւ ընկենու զայն սաստկութեամբ.
Ճանճըն ճմլի, բայց գըլուխ առնըն ջախջախի։
Աղեղնաւորըն կորովի, այլ անհանճար վըրէժխնդիր,
Զայրն առ ետեղ թողու մեռեալ։
Չիք ինչ այնպէս վընասակար
որպէս տըգէտ ոք բարեկամ.
Այր թշնամի հանճարեղ՝ է ազնըւագոյն։

---

# ԱՌԱԿ ԺԱ.

*Բարեկամք նրկոռ. 4—4*

Զոյգ ճշմարիտ բարեկամաց
կեայր յաշխարհին Ափրիկեցւոց.
Զոր մին ունէր՝ այն եւ միւսումն էր սեպհական։
Բարեկամք այնր աշխարհի չեն,
Ասեն, ընդհատ ի մերայոց։
Ի գիշերի միում յորժամ
անցնիւր ըզ քնով էր ըզբաղեալ,
Եւ վայելէր, մինչ ի միջի չէր արեգակն,
Յերկուց անտի բարեկամաց
մին յարուցեալ ընդոստ ի քնոյն,
Առ բարեկամն իւր ընթանայ,
զարթուցանէ զըսպասաւորսն.
Մորփեւս[133] ի սեամս ապարանիցն էր մերձեցեալ։

Միւս բարեկամն որ էր ի քուն,
առնու զքըսակ եւ ըզզէն իւր.
Գնայ զըտանել զընկերն, ասէ. “Դու չես սովոր
Շուրջ գալ յածել մինչ այլք ննջեն.
առ այնպիսիս ունիմ ըզքեզ
Որ ըզքընոյն ժամանակ քաջ գիտեն յարգել:
Եթէ զարծաթ քո կորուսեր դու ի խաղու,
Ահա արծաթ. ապա եթէ
մարտ ինչ յարեաւ հակառակ քո,
Ահա սուսեր. ճն երթիցուք: Եթէ տաղտկաս
Ի ննջելոյ միշտ առանձին, ահա նաժիշտ մի գեղեցիկ
Որ էր առ իս. կամի՞ս զի տաց կոչել ըզնա:”
“Չէ մին եւ ոչ միւսն յայդցանէ,” ասէ ընկերն.
“Շընորհս ունիմ ըզնախանձուէդ:
Թուեցաւ ինձ յանուրջըս թէ իցես տըխուր.
Երկեայ զուցէ էր ճշմարիտ.
եւ ընդ զարթնուլս եկի առ քեզ.
Պատճառ երազն է անիծեալ:”
Ո՞ առաւել սիրէր յերկուց.
զիա՛րդ թըւի քեզ, ընթերցող,
Դժուարութիւնս այս յիրաւի տայ ինձ գոչել.
Քանի՜ չքնաղ է բարեկամ հաւատարիմ.
Ըզպէտըս քո խնդրէ ի խորըս սրտի քո.
Խընայէ տալ քեզ ամաչել
Յայտնելոյ զայն անձամբ անձին:
Երազ եւ այլ ինչ դուզնաքեայ,
ամենայն տայ նըմա երկիւղ.
Յորժամ են բանք ըզսիրելոյն:

---

## ԱՌԱԿ ԺԲ.

*Խոզ, Այծ եւ Ոչխար. 4—4*

Այծ եւ ոչխար հանդերձ խոզիւ սոնքացելով
Եղեալ ի կառս երթան ուր էր տօնավաճառ։
Ոչ զուարճութիւն էր որ տանէր անդր զնոսա։
Ի վաճառել տարան նոքա, որպէս պատմեն։
Այլորդն, ասեն, ոչ ունէր միտս
Տալ նոցա կալ ի գնին խաղուց։
Զճանապարհայն գոչէր խոճկորն
Իբր ու այն թէ մրսավաճառք
հարիւր գայլին ըզհետ նորա.
Աղաղակն էր խլացուցիչ։
Մինս անասունքն, արարածք հեզք,
Լաւաբարոյք, զարմանային
թէ հիմ կարդայր նա յօգնութիւն.
Տեսանէին նոքա ոչինչ ի զանգիտել։
Այլորդն ասէ ցխոզն, “Ընդէ՞ր բառնաս բողոք.
Խռովես ըզմեզ զամենեսին. չըկա՞ս հանդարտ.
Երկու սոքա որ քան ըզքեզ են հլուագոյն,
Ուսուցանեն քեզ կեալ եւ կամ գոնեա լռել.
Հայեաց յոչխարդ, միթէ բան մի լոկ ասա՞ց նա.
Է մտավարժ։„ “Յիմար է նա,„
Ասէ խոճկորն. “եթէ գիտէր նա ըզգալոցն,
Աղաղակէր ուժգին քան զիս ի կոկորդէն.
Եւ միւսն այն անձն որ թըւի հեզ,
Քան ըզգըլուխն ի վեր ըզձայն իւր ամբառնայր։
Կարծեն նոքա եթէ ըզբեռն նոցա միայն կամին թափել.

Այծին՝ ըզկաթն, ոչխարին՝ զասր.
Ոչ գիտեմ թէ իցէ՞ այնպէս.
Այլ ինձ որ չեմ իմիք յօգուտ
Բայց ի լինել ի կերակուր՝ կայ մընայ մահ։
Ողջո՜յն ուրեմն յարկիս եւ տանս։»
Խոզն ըզմըտաւ ածէր իբրեւ այր խորագէտ.
Այլ զի՞նչ օգուտ էր այն նըմա,
մինչդեռ վըտանգն էր մօտալուտ։
Ոչ բողոք ինչ եւ ոչ երկիւղ
կարեն փոխել հրաման կապեալ.
Իսկ որ սակաւ յառաջատեսն
է՝ իմաստուն է միշտ քան զայլս։

---

## ԱՌԱԿ ԺԳ.

*Տիրկիս եւ Ամարանդ. 4—4*

*Առ օրիորդ Սիլլերի։*

Զէսովպոսն իմ էր իմ թողեալ
Առ ի լինել ընդ Պոգաչեայ.[134]
Այլ մին ի դից
Ընտրի կամի առնել հանդէս անդ ի Պառնաս
Առասպելաց յիմոց սակի։
Այդ երթալ, Ոչ, ասել ցընա,
Առանց զօրեղ պատճառանաց,
Չէ այս պայման որով մարթ է
Վարել ընդ դիս.
Մանաւանդ մինչ են յայնցանէ

Որ արգասեօք գեղեցկութեան
Գոգցես դշխոյ լեալ են կամաց։
Զի, թող մարդիկ գիտասցեն զայս,
Սիլւերի է որ յօժարի
Ի փափաքել զի միւսանգամ
Տեառըն գայլոյ, տեառն ագռաւու
Տաց ես խօսել չափով բանիւք։
Որ Սիլւերին ասէ՝ ասէ զամենայն ինչ.
Սակաւք յորոց յարգեն ըզնա՝
Զլանան նըմա զառաջին բարձ.
Եւ զի՞րդ մարթ էր առնել զայս։
Իսկ եկեալ յայն որ վասն իմ է,
Վէպք իմ որպէս ինչ կարծէ նա,
Մըլթին իմն են. ի գեղեցիկ ուսմունըս վարժք
Ոչ իմանան զամենայն ինչ։
Յօրինեցից արդ առակս ինչ
Զորս առնուցուն ի միտ առանց յաւելուածոյ։
Ածցուք ի մէջ հովիւս, ապա առցուք վիպել
Զոր գայլ եւ խաշն ասել սովոր են այր ցընկեր։
Տիրկիս[135] ասէր յաւուր միում
ցըմանկամարդն իւր Ամարանդ.[135]
"Ո՜հ, թէ էիր, որչափ եմ ես, գիտակ ախտին
Որ հաճոյ է մեզ, եւ որ զօդ թովէ ըզմեզ,
Չիք ընդ երկնաւ ինչ որ թուէր քեզ
այնմ հաւասար։
Թող ըզքեզ այնմ առնել հալորդ.
Հաւատա ինձ, մի երկնչիր.
Միթէ խաբե՞մ ինչ ես ըզքեզ,
ըզքեզ առ որ պարծիմ անգամ

Ունել անձուկ սիրոյ զոր սիրտ ունել մարթի։„
Ըմարանդ տայ պատասխանի.
“Զիա՞րդ կոչես զախտըն, զի՞նչ է անուն նորա։„
“Սէր,„ ասէ միւսն։ “գեղեցիկ է
անունդ, աղէ, տուր ինձ նըշան
Որով ծանեայց ըզնա,„ ասէ
Ըմարանդ, “զի՞նչ իմանայ մարդ։„
“Վիշտս առ որով,„ ասէ, “հեշտանք թագաւորաց
Ջանձիր եւ ցուրտ են. մոռանայ մարդ զանձն, հաճի
Կալ յանտառի յառանձնութեան.
Հայի՞ յափունս ուրեք աղբեր.
Ոչ իւր անձն է զոր տեսանէ, այլ պատկեր ինչ
Որ միշտ գայ յայտ, եւ հանապազ պնդի ըզհետ.
Մընացելոցն ամենեցուն են որ սիրենըն զաչացու։
Հովիւ մի է աստ ի շինիս
Որոյ տեսիլ, որոյ բարբառ, որոյ անունըն տայ շիկնել.
Ըյլ որ սիրեն՝ տեսեալ ըզնա յոգւոց հանէ.
Ոչ գիտէ թէ ընդէ՞ր սակայն հանէ յոգւոց.
Ի տեսանելն ըզնա դողայ, թէպէտ ցանկայ։„
Եւ Ըմարանդ ասէ իսկոյն.
“Ո՛հ, ո՛հ, այս այն ախտ է զոր դու
քարոզես ինձ այնպէս յաճախ.
Չէ ինձ այս նոր, կարծեմ թէ եմ ծանօթ նըմա։„
Տիրկիս կարծէր հասեալ յիւր կէտ,
Մինչ գեղեցիկն յաւել ասել. “Ըհա ճշդիւ
Զոր ես ըզգամ յաղագս իմոյն Կղիդամանտայ։„
Միւսն եղեւ մերձ ի մեռանել
առ զայրացման եւ ամօթոյ։

Իբրեւ ըղձա են ոչ սակաւք,
Որ համարին յօգուտ իւրեանց անձանց գործել,
Մինչ յայլոց շահ լինին նըպաստ։

---

## ԱՌԱԿ ԺԴ.

*Յուղարկաւորութիւն մատակ առիւծու. 4—4*

Կին առիւծու միոյ մեռաւ.
Իւրաքանչիւր փութացաւ գալ
Ի կատարել առ իշխանին
Վշտակցութեան իւրոյ պարտս,
Որ յաւելուն մանաւանդ ցաւս։
Յիշխանութեան իւրում արքայն հան հրովարտակ,
Թէ շուք թաղմանն էր լինելոց
Յայս ինչ աւուր, յայս նիշ տեղւոջ.
Եւ կարգելոց էր պաշտօնեայս
Ի յարդարել զըստ պատշաճին,
Եւ ընդունել ըզբազմութիւնն։
Թէ զըտան անդ ամենեքին ըզմըտաւ ած։
Իշխանըն կոծ եղեալ ողբայր,
Եւ հնչէր այրն.
Առիւծուց ոչ են այլ տաճարք։
Ընդ էր լսել, հանգոյն նըմա,
Յիւրեանց բարբառ ըզմռընչել աւագանւոյն։
Արքունիք են, ըստ իս, երկիր յորում մարդիկ,
Տըխուրք, զըւարթք, առ ամենայն
ինչ կազմք, անփոյթք առ ամենայն,

Սակայն համօյ են իշխանին. եւ եթէ չեն այնպիսի ինչ,
Գուէթ այնպիսի ջանան լինել:
Գետնառիւծք[136] են, կապիկք հտպիտք
տեառըն իւրեանց.
Մարթ է ասել թէ մի ոգի շնչաւորէ հազար մարմին.
Արդարեւ անդ է ուր մարդիկ են գործի լոկ:
Այլ եկեսցուք մեք ի ճառ մեր:
Եղջերուն ոչ ելաց. միթէ կարօ՞ղ ինչ էր առնել այլազգ.
Մահն այն առնոյր ըզվրէժ նորա.
դշխոյն մեռեալ յառաջագոյն
Էր արարեալ ըզկին նորա եւ ըզմանկունսըն խեղդամահ:
Համառօտիւ, ոչ ելաց նա.
ոմըն փասքուս երթեալ պատմէ.
‘Նա՛, պնդէ եւս եթէ տեսի զի ծիծաղէր:
Արտմըտութիւն թագաւորի, որպէս ասէ մեզ Սողոմոն,
Է ահագին, եւ առիւծուն եւս առաւել.
Այլ եղջերուիս այսորիկ չէր ընթերցեալ գիրս:
Արքայն ասէ. “Ո՛վ անպիտան հիւրդ անտառաց,
Ծիծաղե՞ս դու. չանսամ այնչափ ձայնից ողբոց:
Ոչ արկցուք մեք ի պղծագործ անդամըս քո
Զնուիրական մեր ճիրանունս:
Մատիք դուք, գայլք.
Ըզդշխոյին վըրէժ խնդրել. մատուցէք զոհ
Զայս ժանտ նորա աւգուստական ուրուականին:„
Եղջերուն առ խօսել այսպէս.
“Տէր, ժամանակն արտասուելոյ
Էանց. աստ ողբք աւելորդ են:
Արժանաւոր քո կողակից որ անկեալ դնի ի մէջ ծաղկաց՝
Երեւեցաւ ի տեսլեան ինձ,

Եւ նոյնհետայն ծանեայ ըզնա։"
"Ո՛վ բարեկամ," ասէ, "զգոյշ լեր, այս դիահանք,
Մինչ ես երթամ առ դիս, ըզքեզ
մի դրդեսցեն հեղուլ արտօսր։
Յելիւսեան[137] դաշտս հազար հեշտանս վայելեմ ես,
Խօսակից լեալ ընդ այնոսիկ որ սուրբ են ինձ նըմանագոյն։
Թող ժամանակ մի վասն իմ սուգ առցէ արքայ,
Հաճիմ ընդ այն։" Իբրեւ լըւան զայս պատմութիւն
Սկսան գոչել. "Սքանչելիք. աստուածացի։"
Եղջերուն առ պարգեւ եւ ոչ թէ պատուհաս։
Զբօսուսջիր դու երազովք ըզթագաւորս.
Արա պաշտօն, ասասջիր բանս հաճոյականս.
Որչափ եւ լի իցեն ոգիք նոցա ցասմամբ,
Առնուն ըզխայծն, եւ եղանիս դու բարեկամ։

---

# ԱՌԱԿ ԺԵ.

## *Մոռկն եւ Փիղ. 4—4*

Զանձն առ աւագս ունել է յոյժ հասարակաց ի Գաղիա.
Համարին մեծ ինչ ոք զանձինս,
Ոչ այլ ինչ են յաճախ թէ ոչ քաղաքացի։
Այս է բուն ախտ դաղիական։
Մեզ առանձինն է տարապարտ հըպարտութիւն.
Սպանիացիք եւս են հըպարտ, սակայն այլազգ.
Հըպարտութիւն նոցա թուի ինձ, միով բանիւ,
Անմըտագոյն, այլ ոչ այնչափ ինչ տարապարտ։
Տացուք պատկերս ինչ ըզմերոյն,

Որ քան զայլոցըն չէ պակաս։
Մուկըն մի փոքըր տեսանէ, ասեն, ըզփիղ
Յաղթամարմին, եւ ծաղր առնէ ըզյամրըն գնալ
Բարձրահասակըն գազանին,
Որ մեծաշուք խաղայր գընայր։
Յերեքյարկեան այնր անասնոյն վերայ, ասեն,
Մեծանուն ոք տիկին Հնդկաց,
Շուն նորա, կուզ եւ կապիկ մի,
Պապկայ եւ կին պառաւ, եւ տուն իւր համօրէն
Երթային յուխտ։
Զարմանայր մուկնըն զի մարդիկ
Ապշեալ կային ի զընին այնր յաղթ զանգուածոյ։
"Իբրեւ այն թէ գրաւեալ ունել
առաւել կամ սակաւ տեղի
Առնէ ըզմեզ," ասէր, "կարի
իմըն կամ դոյզըն կարեւոր։
Այլ զի՞նչ այն ինչ իցէ ընդ որ
յապուշ հարեալ կայք, ով մարդիկ.
Իցէ՞ մարմինն այն յաղթ որ տայ երկիւղ մանկանց։
Ոչ համարիմք զանձինս, որչափ փոքունք եւ եմք,
Յորենահատ մի քան ըզփիղ նըւազագոյն։"
Առաւել քան զայս ասէր նա.
Այլ կուզն ելեալ ի վանդակէն՝
Եցոյց նըմա յական քթթել
Թէ մուկըն չէ մեծ քան ըզփիղ։

---

# ԱՌԱԿ ԺԶ.

*Քաղդեայ աստեղաճշմար. 4—4*

*Պատահի մարդ ճակատագրին*
*Բազում անգամ ճանապարհաւ*
*ընդ որ կարծէր թէ խուսափէ։*
*Հայր մի որոյ չեղեն որդիք,*
*Բայց մանուկ մի զոր սիրէր յոյժ, եհարց, ասեն,*
*Զպատահարաց կենաց նորա*
*Որոց առնեն գուշակութիւնս։*
*Մին ի սոցունց ասէ ցընա*
*Թէ յառիւծուց քան զամենայն*
*Կալցիս հեռի ըզպատանին մինչ ցայն ինչ տիս.*
*Մինչեւ ի քսան ամ եւ ոչ քան զայն աւելի։*
*Հայրն հանել յանգ*
*Զըզգուշութեանն հրաման զորմէ*
*կախեալ էր կեանք*
*Սիրեցելոյն, արգել երբեք*
*Չթողուլ նըմա ըստ սեամբս տանն անդր անցանել։*
*Մարթ էր նըմա առանց արտաքս*
*ելանելոյ հաճել զեւր կամս.*
*Ընդ ընկերացըն զօրն ի բուն գալ ըզխաղու,*
*Ոստնուլ, ճեմել եւ ընթանալ։*
*Հասեալ ի տիս նա յորում որս*
*Առաւել իմն հաճոյական է մանկտւոյ,*
*Կրթութիւնն այն անարգանօք*
*Ներկարեցաւ նըմա, սակայն որչափ ինչ եւ առնիցէ ոք,*
*Բան, խրատ, հրահանգ,*

Ոչինչ փոխել կարէ զխառնուած։
Պատանին ջերմ, կայտառ եւ սէգ
Այն ինչ ըզփորձ առ զեռանդան այնր հասակին,
Ըզհետ որմոյն ըզքօսանաց հաշէր մաշէր։
Որչափ արգելքըն մեծ էին,
այնչափ սաստիկ ցանկութիւնն էր։
Ըզպատճառ դառըն հրամանին գիտէր մանուկն.
Եւ քանզի տունն այն մեծաշուք
Առհասարակ էր նըկարէն,
Եւ դարձեալ ասր եւ գրիչ ճարտար
Ի բնաւ տեղիս նկարեալ էին
պէսպէս պատկերս որսոց, դաշտաց,
Աստի երէս,
Անտի մարդիկ,
Յուզի մանուկն տեսեալ առեւծ մի նըկարեալ,
"Բա՛բէ, ճիւա՛ղ," գոչէ, "դու ես որ տաս ինձ կեալ
Ի ստուերի աստ եւ ի շղթայս."
եւ ասացեալ զայս բորբոքի
Ի մեծ ցասումըն բարկութեան,
Մինչեւ ահեղ գազանին տալ հարուած բըռին.
Ընդ օթոցիւն դիպի բեւեռ,
Բեւեռն ըզնա խոցէ, նա եւ անցանէ իսկ
Ի սիրտ հոգւոյն. եղո՜ւկ, գըլուխն այն սիրելի,
Որ վասն արուեստն Ասկղեպիադայ[138]
ի զուր արար զոր կարողն էր,
Ի խընամոցն իսկ որ եղեն ի փրկութիւն նորա՝ կորեաւ։
Եսքիղայ[139] եւս պւետի եղեւ
ըզգուշութիւնն այն ի վընաս։
Իղձ ումն հարցուկ ըսպառնացաւ, ասեն, նըմա

Եթէ տունն էր կործանելոց.
Անդէն թողեալ նա ըզքաղաքն,
Արկ զանկողին իւր ի յարկաց հեռի յանդի.
Արծուի մի որ տանէր ընդ օդըս կրիայ մի,
Անցեալ ընդ այն տեսանէ զայրն,
եւ ի գըլուխըն նորա մերկ,
Որ թըւեցաւ յաչըս նորա լինել վէմ մի,
Զի ճարտարին գըլուխն էր կունտ,
Ի խորտակել զօրս իւր ընկէց:
Թշուառն Եսքիղ այսպէս զաւուրս իւր վըճարեաց.
Յօրինակաց աստի յայտ է
Թէ այս արուեստ, եթէ իցէ
այն ճշմարիտ, ածէ զեղեռն
Յորմէ երկիւղ ինչ ունի նա որ հարցանէ:
Այլ ճշգրտեմ ես եւ պնդեմ եթէ է սուտ:
Ոչ հաւատամ եթէ բնութիւն
Իցէ կապեալ անձամբ զիւր ձեռս,
Նա եւ ըզմերն իցէ կապեալ,
Մինչեւ յերկինս նըշանակել ըզվըճակ մեր.
Կախեալ կայ այս ի պայմանաց
Տեղեաց, անձանց, ժամանակի,
Ոչ յընդունայն բանից արանց դանդաչելոց:
Են ընդ նովին աստեղբ հովիւ եւ թագաւոր.
Մին գաւազան արքունի կրէ, եւ միւսըն ցուպ.
Այս եղեն կամք Արամազդայ:
Զի՞նչ Արամազդն իցէ: Մարմին ինչ անըզգայ:
Զխո̃րդ ուրեմն է զի նորա ազդեցութիւն
Գործէ այլազգ ի վերայ այնց երկուց արանց:
Դարձեալ զիա̃րդ մտանէ մինչեւ ի մեր աշխարհ.

Զխմբիդ ընդ խոր տարած օդոյն անցանէ թափ.
Ծակէ զԱրէս եւ զԱրեգակն,
եւ զայն անհուն դատարկութիւն։
Խուղէ մի տալ ազդեցութեանն
այնմիկ օձտել կալող է քաջ.
Յո՞ երթայցեն ըղձապատումք գըտանել զայն։
Յաջողութիւնն յորում զԵւրոպըն տեսանեմք,
Արժանի է զի գոնէ ի նոցո՛ւնց զայն էր գուշակեալ.
Ընդէ՞ր չասաց ինչ ոք, եւ ոչ ոք գիտաց ինչ։
Լինելն յամրաւս հեռի, կէտ մի, արագութիւնն
Որպէս նաեւ մերոց կարեաց,
Տա՞ն թոյլ նոցա տըկարութեան
Ըզհետ պնդել, եւ ոտն առ ոտն, մերոց գործոց։
Բախտ մեր կախեալ է յայնց
գործոց. ընթացք Բախտին
Ոչ գնայ, որպէս եւ ոչ մեք իսկ, նովին ոտամբ.
Եւ այս մարդիկ կամի՞ն կարկնաւ
Նըշանակել զաւուրց կենաց մերոց ըզչափ։
Ոչ է արժան առնուլ ըզկայ
Յայն երկդիմի դէպըս կրկին զոր յիշեցի.
Այն է որդեակըն սիրեցեալ, եւ ոչ Եպքիղըն միամիտ
Են ինչ առ այս։ Որչափ եւ կոյր
եւ սափասուտ է այն արուեստ,
Մի անգամ գէթ ի հազարաց
ի նըպատակ իւր հարկանէ.
Այլ դիպուածոյ են այս արդիւնք։

---

# ԱՌԱԿ ԺԷ.

*Էշ եւ Շուն. 4—4*

*Պարտ է օգնել միմեանց այս են օրէնք բնութեան։*
*Սակայն զայսու ծաղը արար էշ յաւուր միում.*
*Եւ չըգիտեմ զինչ նա յայսըմ թերացաւ,*
*Զի արարած բարւոք է նա։*
*Եւ հատանել նա տարաշխարհ,*
*ըղձուն ունէր ընդ իւր ընկեր,*
*Խըրոխտալով, առանց ընդ միտ ածելոյ ինչ։*
*Երկոցունց եւս երթայր ըզկնի տէրըն նոցա։*
*Սա էջ ննջել, եւ ըսկսաւ արածել էշն։*
*Անցանէին նոքա ընդ մարգ*
*Ընդ որոյ խոտն ախորժէ էշն.*
*Այլ ոչ գոյր փուշ. ընդ այս եղեւ գոհ ի ժամուն.*
*Չէ պարտ քնքշել հանապազորդ.*
*Մընան հազիւ ուրեմն ընթրիք։*
*Էշ մեր դիտաց, համառօտիւ,*
*Փուժկալել զայս նըւագ, այլ շունըն սովամահ,*
*Ասէ ցընա. “Ազնիւ եղբայր, զիջիր, խնդրեմ,*
*Առից զիմ ճաշ ի կողովէն նըկանակաց։„*
*Պատասխանի չիք, ոչ մի բան. էշն արկաղեան*
*Երկեաւ, գուցէ դոյզըն վայրկեան մի կորուսեալ,*
*Կորուսցէ ինքըն պատառ մի։*
*Չըլուելոյն արարեալ էշն հարուստ մի ժամ,*
*Յետուստ ուրեմն պատասխանի*
*տայ. „Բարեկամ, այս է իմ խրատ.*
*Կաց մընա դու մինչեւ քո տէրըն զարթնուցու.*

Զի ի զարթնուլն անշուշտ տացէ
Ըզքո բաժին սովորական.
Ոչինչ կարի յամեսցէ նա:„
Մինչդեռ էին նոքա զայնու, ահա գայլ մի
Ել յանտառէն ի դուրս, եւ գայ սովալլուկ:
Էշըն կոչէ զշունն յօգնութիւն:
Շունն անշարժ կայ. ասէ,
“Խրատ տամ քեզ, բարեկամ,
Փախիր մինչեւ զարթնու տէր քո.
Ոչ յամեսցի. աճապարեա դու եւ խոյս տուր.
Ապա թէ գայլն հասանէ քեզ,
Ըզծամելիս նորա մանրեա.
Երկաթ ոտին քո է նոր, եւ եթէ կամիս հաւատալ ինձ,
Արկցես ըզնա տապաստ յերկիր:„
Մինչ ճառ արկեալ խօսէր զայս շունն,
Սեպուհըն գայլ գիշատէ զէշ մեր անյապաղ:
Ասեմ թէ պարտ է եւ պատշաճ օգնել միմեանց:

---

## ԱՌԱԿ ԺԸ.

### Կուսակալն եւ Վաճառականն. 4—4

Վաճառական ոմն ազգաւ յոյն յերկրի ուրեք
Առնէր, ասեն, տուրեւառ. էր
Նեցուկ նորա շահապ մի Թուրք,
Որում տայր Յոյնըն փոխարէնս իբրեւ շահապ,
Եւ ոչ իբրեւ վաճառական. Էր արդարեւ մեծի ծախուց
Ունել պաշտպան: Էր սա նորա ծանրագնի յոյժ,

Մինչ ամենայն ուրեք Յունին
լինել տրտունջ ըզնըմանէ։
Այլ երեք Թուրք, իշխանութեամբ
խոնարհագոյնք քան ըզշահապն,
Երթան Յունին խոստանալ մէն մի զիւր օճան։
Երեքինս այս խնդրէին վարձ նըւազագոյն
Քան զոր տայր նա միւսում այնմիկ։
Հաւանեալ Յոյնըն մըտանէ ընդ նոսա յուխտ։
Այս ամենայն հասանէ յունկըն շահապին.
Նա, ասեն իսկ նըմա խաղալ, եթէ իցէ այլ խորագէտ,
Նախանձորդացն այնոցիկ խաղ անագորոյն։
"Կանխեա," ասեն, "առնել նոցա յանձըն պատգամ
Առ մարգարէն տանել ուղիղ ի դրախտ նորա,
Եւ անյապաղ. ապա թէ ոչ,"
ասեն, "որեարն այն միացեալք
Կանխեն ըզքեզ, գիտացեալ թէ ի դարանի
Ունիս դու արս, խնդրել
ըզվրէժ քո պատրաստեալս,
Գեղով մահու յըղեն ըզքեզ ի պաշտպանել
Ըզվաճառողս որ ի միւսում աշխարհի են։"
Լըւեալ զայս այրըն վարեցաւ
Որպէս երբեմն Աղեքսանդրոս, եւ աներկիւղ
Զօքաւ առ Յոյն վաճառականն։
Բազմի ի ճաշ։ Տեսեալ այնչափ վստահութիւն
Որով խօսէր եւ շարժէր այրն՝
Ոչ եղեւ միւսն այն ի կարծիս,
եթէ կասկած ինչ էր նորա։
"Ո՛վ բարեկամ," ասէ շահապն,
"գիտեմ այո՛ ղէ թողեր զես.

Ասեն իսկ թէ երկնչել պարտ է ինձ յարդեանցն։
Այլ համարիմ այր լաւ ըզքեզ․
Ոչ ունիս դու ըզկերպարանըս դեղատուի․
Աւելի ինչ խօսել չունիմ ես զայսմանէ։
Իսկ զարանց որ ընկերշակելըն կամին քեզ,
Լուր ինձ առանց երկայն խօսից
Եւ պատճառաց որ տան ձանձրոյթ,
Առակ մի կարճ բերից ի մէջ։
Հովիւ մի էր եւ շուն նորա եւ հօտ նորա։
Ասէ ցընա ոմըն, ‘Զի՞նչ պէտս ունիս, աղէ,
Շանըդ որոյ օրըստօրէն
Ենըկան մի։ Պարտ էր քաջ քաջ
Զայդ անասուն գաւառատեառն առնել ընծայ․
Քեզ որ հովիւդ ես յառաւել խընայութիւն
Շատ է ունել երկուս ըսկունդըս կամ երիս,
Որոց ծախեալ սակաւ, մարթեն հսկել հօտին
Լաւ քան ըզմի զայդ շուն միայն։
Առաւել քան զերիս ուտէ նա․ այլ միթէ ասիցէ՞ ոք,
Եթէ ունի երիս որկորս,
Յորժամ վոհմակ գայլոցըն գայ տալ պատերազմ։,
Հովիւն ըզշունն արձակեալ, առ
այլ երիս շունս փոքունս մարմնով,
Սակաւակերս, այլ վեհերոտս ի տալ ճակատ։
Ըզմընասուն առ հօտն ըզփորձ,
ըզփորձ առցես եւ դու նոյնպէս
Յընտրել անդ քո զայն խաժամուժ։
Չիցէ՞ բարւոք քեզ միւսանգամ դառնալ առ իս։„
Յոյնն հաւատաց։ Յայտ իմն առնէ այս գաւառաց,

Խէ՛ հաշուեալ մանրը զամենայն,
Է լաւագոյն միամտութեամբ
Յանձնել զանձինըս մեծազօր Թագաւորի,
Քան ըղձազում իշխանս փոքունս ունել նեցուկ։

---

## ԱՌԱԿ ԺԹ.

*Առանձնութիւն գիտութեան. 4—4*

Ի մէջ երկուց քաղաքացւոց
Յարեաւ երբեմըն դժտութիւն.
Մին չըքաւոր էր այլ գիտուն,
Միւսն էր ընչեղ, սակայն տըգէտ։
Վերջինս իւրում ախոյենին
Յանկայր լինել գեր ի վերոյ.
Պնդեալ էր նա թէ ամենայն այր իմաստուն
Պարտէր դընել նըմա պատիւ.
Լաւ եւս ասել, ամենայն այր
Յիմար, զի հի՞մ մեծարեսցուք
Զընչեղ անմասն ի վաստակոց.
Չիք բաւական պատճառ, կարծեմ։
«Ո՛վ բարեկամ,» ասէր յաճախ
Նա ցըգիտունն.
«Մեծ ինչ ոք զանձն համարիս դու.
Այլ ասա ցիս, ունի՞ս սեղան դու մեծասպաս։
Զի՞նչ օգուտ է քոյ նըմանեաց ընթեռնուլ ցանգ.
Բընակեն միշտ յերրորդ յարկի.

Որպէս յամնեանըն մարերի,
զգենուն նոյնպէս ի տրէ ամնեան.
Եւ սպասաւոր ունին ոչ զայլ
որ եթէ ոչ զըստուեր իւրեանց։
Զի՞նչ շահ օգտի ունի քաղաքն
Յայնպիսեաց որ ծախեն ոչինչ։
Ես համարիմ այր պիտանի
Զայն որ ցրուէ ինչըս բազում։
Մեք վայելեմք ընչիւք, այո՛, եւ ըզբաղին մեր աղագաւ
Այր ձեռադէտ, վաճառական,
որ յօրինէն հանդերձ կանանց,
Եւ որ կըրէն զայն, եւ դուք իսկ որ նուիրէք
Աւագ մարդկան
Մատեանս յուխս բազում գընոց։„
Այս բանք որ լի են լըբութեամբ՝
Հասին բախտին որում էին իսկ արժանի։
Մատենագէտ այրըն լռեաց,
Թէպէտ ունէր պատասխանիս։
Պատերազմաւ առաւ վըրէժն առաւել քան եպերանօք։
Արէս քանդեաց ըզտեղին ուր բընակէին ալքն երկոքին.
Երկոքին եւս թողին զերկիրն։
Մընաց տըգէտն անպատըսպար.
Յամենեցունց լըսէր լուտանս.
Միւսն ամենայն ուրեք պատիւ մեծ վայելէր։
Այսպէս բարձաւ կըռիւ նոցա։
Թող յիմարաց բանդագուշել.
ունի ըզգին իւր գիտութիւն։

---

# ԱՌԱԿ Ի.

*Արամազդ եւ Կայծակունք. 4—4*

*Արամազդայ, ասեն, տեսեալ ըզմեր յանցանս,*
*Ասէ յաւուր միում յերկնից անտի բարձանց.*
*"Լցցուք, ասէ, Նորոմք Հիւրոմք*
*Զամենայն խորշ տիեզերաց*
*Ուր բնակեալ է այս ցեղ որ զես*
*Աշխատ առնէ թախանձանօք:"*
*"Օ՛ն, երթիջեր," ասէ, "Հերմէս, ի դըժոխս անդր,*
*Ածել ինձ այսր ըզկատաղէն,*
*Զանագորոյնն յերից անտի:*
*Ցեղ, զոր այնչափ սիրեցի ես,*
*Սատակեսցիս դու զայս Նըւագ:"*
*Այլ Արամազդ յետ սակաւուց*
*Յածուցանէ զիւր բարկութիւն:*
*Դուք, թագաւորք, զորս արար Նա*
*Իրաւարարս իւրաց մերոց,*
*Թողէք ի մէջ սրտմըտութեան*
*Եւ փոթորկին որ գայ ըզՀետ՝*
*Գոնեա գիշեր մի անցանել:*
*Հերմէս որոյ թեւք են թեթեւք,*
*Եւ լեզուն եւս լի քաղցրութեամբ,*
*Քերցըն սեւոց[140] չոքաւ ի տես.*
*Քան զՏիսիփոն եւ զՄեգարա*
*Նախամեծար արար, ասեն*
*Զանագորոյնըն զԱղեկտոն:*
*Ընդ ընտրութիւնս այս սա այնպէս զոռոզացաւ,*

Մինչեւ երդնուլ ի Պըղուտոն
Թէ համօրէն սերունդ մարդկան
Լիցի ընդ հուպ յիշխանութեան
Դից բնակելոց ի տարտարոսն։
Այլ Արամազդ ոչ հաճեցաւ
Ընդ այն երդումն Եւմենիդայ։[141]
Մերժեաց ըզնա, բայց եւ այնպէս
Արձակեաց շանթ մի նոյնժամայն
Յոմանս ազգաց նենգաւորաց։
Շանթն այն որոյ էր առաջնորդ
Նա իսկ որ հայրն է այնոցիկ
Որոց հըրովքն ըսպառնացաւ,
Զերկիւղ նոցա համարեալ շատ՝
Այրեաց միայն շուրջանակի
Զսահման անշէն անապատին։

Ամենայն հայր տայ ըզհարուած իւր կողմնակի։
Այլ զի՞նչ արդեւք եղեն արդիւնքն։ Ազգատոհմ մեր
Ընդ այս ներումըն թողութեան ըմբոստացաւ,
Մինչեւ ողջոյն Ողիմպոսի լինել տրտունջ։
Նա որ զամպրոպըս գումարէ՝
Երդուաւ ի Ստիւքս եւ խոստացաւ
Յարուցանել այլ փոթորիկս։
Լինէր անշուշտ. այլ ժպտեցան
Դիք, եւ նըմա արարին յուշ եթէ հայր է։
"Լաւ է," ասեն, "եթէ թողուս
Այլում ումեք ի դից անտի
Առնել կոփել այլ կայծակունս։"
Հեփեստոս[142] առ յանձըն զայս գործ։
Դիքս այս ելից ըզհըրնոց իւր

Երկուք ազգօք փայլատականց.
Մին ոչ երբեք աղամողէ.
Եւ սա այն է զոր համապազ
Ողիմպն յըղէ ի մեր վերայ:
Միւսն յընթանալ իւրում օձաէ.
Զանդիկուլի նա լերանց եւեթ.
Նա եւ երբեմըն ցնդի իսկ.
Եւ այս վերջինս է մի միայն
Որ դայ առ մեզ յԱրամազդայ:

---

# ԱՌԱԿ ԻԱ.

*Բազէ եւ Աքաղաղ կռուող. 4—4*

Ձայն դաւաճան կոչէ ըզքեզ բազում անգամ.
Դու մի փութար ամենեւին:
Չէր անմիտ ոք, ո՛չ, ո՛չ, ասեմ, հաւատա ինձ,
Շուն յորջորջեալն Յովհան Նիվէլ:[143]
Քաղաքացի ոմըն Մանսայ,[144]
լեալ արուեստիւ աքաղաղ կուրտ,
Էառ հրաման գալ զառաջեաւ
Ուրուականաց տեառըն իւրոյ,
Ուր էր առեան զոր կրակարան
կոչել է մեր սովորութիւն:
Ամենայն ոք գոչէր առ նա պատրուակաւ,
Մանրիկ, մանրիկ, մանրիկ, այլ նա որ չէր վստահ,
Նորմանն եւ կէս,[145] թողոյր մարդկանն աղաղակել:
«Ոստայ,» ասէր, «կերըդ ձեր այդ է խոշոր յոյժ.

Ոչ ըմբռնիմ ես յայն երբեք, եւ յիրաւի։
Այլ բազէ մի ի տեղւոջէն ուր դադարեալ էր՝ տեսանէր
Զքածաւարոտ մեր զի տայր խոյս։
Աքաղաղք կուրտք ունին սակաւ հաւատս ի մեզ,
Ի բընական ինչ ազդմանէ կամ ի փորձոյ։
Սա որ մեծաւ դժուարութեամբ անկաւ ի բուռն՝
Պարտէր վաղիւն յընթրիս լինել
Յախորժական համադամոց. պատիւ զոր հաւք
Բընաւ չունել ցանկանային։
Որսորդ թռչունն ասէ ցընա, “Քո դոյզն հանճարոյ
Ի զարմացումըն զիս ածէ։ Դուք էք խուժան,
Ազգ չըմարթուն, պակասամիտ,
Որ ոչ բընաւ ուսանիք ինչ.
Ուր ես գիտեմ որսալ, եւ դալ
այարէն առ տէրն իմ միւսանգամ։
Ո՞չ տեսանես զի կայ յետոյ պատուհանին.
Այն ունի քեզ. միթէ խո՞ւլ ես։„ “Լըսեմ բարւոք,„
Ասէ մալեալն. “Այլ զի՞նչ ասել կամիցի նա,
Եւ խոհակերին առոյգ՝ դանակ մեծ ի ձեռին.
Դարձի՞ր արդեւք թէ վասըն քո
էր այսպիսի ինչ որոգայթ։
Թող ինձ խօսել. մի առնէր ծաղր
Զիս իբրեւ հեստ, զի թըռանիմ ի բաց աստի,
Մինչդեռ ի ձայն քաղցըր կոչիմ։
Եթէ արկեալ տեսանէիր դու ի շամփուր
Զօր ամենայն այնչափ բազէս
Որչափ ինչ ես կուրտ աքաղաղըս տեսանեմ,
Ոչ մեղադիր ինչ լինէիր դու ինձ այդպէս։„

---

# ԱՌԱԿ ԻԲ.

*Կուզ եւ Մուկն. 4—4*

Ընտանիք չորք այլաբարոյք. Կուզ գող պանրոյ,
Տրխուր թռչունըն բու, կրծող կարասեաց մուկն,
Աքիս տիկին, երկայնիրան.
Զարամըճիք ամենեքին,
Յածախեէին ի փըտեալ բուն
Հին եւ վայրի կաղամախւոյ:
Գտնային այնչափ մինչեւ օր մի
յերեկոյին շուրջ ըզծառոյն
Այրըն ձգեաց ուռկան, եւ կուզն ընդ այգս այգոյն
Ել ի խնդիր որսոյն իւրոյ:
Երեկոյեան շողք ըստուերին եղեալ արգել տեսանելոյ
Ըզվարմն, անկաւ ի նա, եւ էր մազկռինչ ի մահ:
Յայնժամ առնու աղաղակել,
եւ մուկն անդէն գայ հասանէ.
Մին յուսաբեկ, եւ միւսըն լի ուրախութեամբ:
Տեսանէ սա շաղեալ պատեալ
յուռկանի անդ զհուր թշնամին:
Տառապեալ կուզն ասէ, "Ընկեր,
Մտերմութեան քո նըշանակք
Բազում են յիս.
Եկ օգնել ինձ ի ծուղակես
Ճողոպրել ուր տըղխտութիւն
Ես անկանել: Յիրաւի իսկ եւ յարժանի
Ի քոց անտի ուրոյն սիրով
Ըզքեզ առեալ յակն իբրեւ զաչս իմ սիրեցի:

Ոչ զղջանամ, նա գոհանամ իսկ զաստուածոց։
Երթայի կալ նոցա յաղօթս,
Որպէս առնէ ամենայն կուղ
բարեպաշտօն այգուն այգուն։
Այս վարմ է որ արգելու զիս.
արդ ի քո ձեռն եմ ապաստան։
Եկ լուծանել զայս հանգոյց։” “Այլ
զի՞նչ հատուցումն
Եղիցի ինձ,” հարցանէ մուկն։
“Երդնում ես ուխտ յաւիտենից,”
Պատասխանի նա կուզն, “ընդ քեզ.
Ճիրանունք իմ ի պէտըս քո կան. լեր անփոյթ.
Յամենեցուն դէպ եւ ընդդէմ եղեց պաշտպան.
Կերայց զաքիսն,
Եւ ըզբուն որձ.
Ո՞չ թշնամիք քո են սոքա։”
“Ո՛վ աղաջուր դու,” ասէ մուկն։
“Ե՞ս լինիցիմ քո ազատիչ. չեմ ես անմիտ։”
Զայս ասացեալ երթայ յորջ իւր։
Աքիսն ի ծակ անդըր մօտ կայր.
Մըկան ի վեր կոյս խուսափեալ՝ տեսանէ զբուն։
Եւ յամենայն կողմանց տագնապ.
որ բռնագոյնն էր այն յաղթեաց։
Որ կրծողն է՝ դարձաւ առ կուզն. արար այնպէս
Մինչեւ քակեաց զօղ մի, ապա
միւս եւս, ապա այլ եւս այնչափ,
Մինչեւ զերծոյց ըղկեղծաւորն։
Տէր ուռկանին երեւեցաւ յայնըմ ժամու.
Նոր դաշնաւորք երկոքին եւս փախեան անտի։

*Յետ աւուրց ինչ տեսանէ կուզ մեր ի բացուստ*
*Զխուր մուկն արթուն եւ ի զգուշի։*
*«Ո՜հ, բարեկամ, եկ գիրկս արկցուք*
*միմեանց, քո այդ կասկած զինէն*
*Թշնամանք մեծ են ինձ,» ասէ. «համարի՞ս դու*
*Ըզդաշնակից քո թշնամի։*
*Կարծես ուրեմն թէ մոռացայ*
*Զի քեզ պարտիմ ես ըզկեանս իմ յետ Աստուծոյ։*
*«Եւ ես,» ասէ մուկն, «համարիս թէ մոռանամ*
*Ըզբարըս քո։ Ո՞ր ուխտ երբեք*
*Ստիպէ ըզկուզ յերախտաւոր իւր խընայել.»*
*Կարե՞մք վստահ լինել ի դաշն*
*Որոյ պատճառք են հարկ միայն։*

---

## ԱՌԱԿ ԻԳ.

*Հեղեղ եւ Գետ. 4—4*

*Ի շաչիւն մեծ եւ ի դղրդիւն*
*Իջանէր ուղխ մի ի լերանց.*
*Ամենայն ինչ խոյս տայր անտի.*
*ահ գայր ըզկնի հետոց նորա.*
*Եւ դաշտաց տայր նա սասանել։*
*Յուղեւորաց ոք անցանել ոչ յանդգնէր*
*Ընդ այնպիսի հըզօր պատուար.*
*Այլ մի միայն զինեալ գողոց,*
*եւ տեսեալ զանձն ի վըտանգի,*

Եղ անջրպետ զահագին զայն
հեղեղ ի մէջ իւր եւ նոցա։
Աղմուկ միայն էր այն, չունէր ինչ խորութիւն.
Ոչ կասեցոյց զայր մեր երկիւղն. անց նա յայնկոյս։
Քաջալերեալ ընդ յաջող ելն,
Եւ ի գողոցն հալածեալ միշտ,
Հանդիպեցաւ զճանապարհայն
Գետոյ որոյ ջըրոյն խաղաց,
Քաղցըր, խաղաղ եւ հանդարտիկ քընոյ պատկեր,
Զառաջինն ես նըմա կարծել զանցըն դիւրին.
Զըգոյր յափունըն դարաւանդ,
եւ ջինջ աւազն էր եւ վըճիտ։
Մըտանէ այլն ի գետըն, ձին առնէ ըզնա
Զերծ ի գողոցն, այլ ոչ նոյնպէս
ի կապուտակ ալեաց անտի.
Երկոքին եւս երթան է Մոբէ-տօ անդէր ըմպէլ Ջուր.[146]
Երկոքին եւս ի լողալ հէքք,
Ի բնակութեան անդ լաւարի գնան անցանել
Ընդ այլ բազում գետըս քան զորըս կան առ մեզ։
Վըտանգաւոր են մարդիկ որ չառնեն աղմուկ.
Մինչ այլքըն չեն ինչ այնպիսի։

## ԱՌԱԿ ԻԴ.

*Դաստիարակութիւն. 6—6*

*Լարիդոն եւ Կեսար, եղբարք որոց նախնիք*
*Էին շունք անուանիք, առոյգք, կայ-*
*տառք եւ քաջք,*
*Այլակերպ տեարց երկուց պատահեալք ի վաղուց՝*
*Մին է յանտառս, եւ միւսն ի խոհակերոցի:*
*Ունէին երկոքին ի սկզբան մի անուն,*
*Այլ այլակերպ սնունդ*
*Ի միումն պնդեալ զազնիւն բնոյս բարուց,*
*Ի միւսում էր մեղկեալ զայն, ոմըն խոհակեր*
*Վերջնոյս այսմիկ դնէր ըզԼարիդոնն անուն:*
*Եղբայր նորա գործեալ բազում գործս արութեան,*
*Եղջերուս հալածեալ, եւ ըզգետնեալ վարազս՝*
*Եղեւ առաջին կայսր որ երբեք եղեւ շանց:*
*Կալան փոյթ արգելուլ զի մի էգ անարժան*
*Ի զաւակի նորա զարիւնն աղարտիցէ:*
*Իսկ Լարիդոն, թողեալ, ըզգութ իւր առնէր յայտ*
*Ո՛ւմ շան եւ հանդիպէր,*
*Եւ ելից ծընընդովք իւրովք նա զամենայն:*
*Նա անձեցոյց ըզջոկն որ շամփուրըս շրջէ,*
*Եւ է այժմիկ առ մեզ ուրոյն ցեղ վատասիրտ,*
*Համարեալ ընդդիմոտն անուանեալց Կեսար:*
*Մարդիկ ոչ են միշտ հարց եւ հաւուց նըմանողք.*
*Սակաւ փոյթ, ժամանակ, եւ այլք տան վատթարել:*
*Ի թողուլ մեր անգործ ըզբնոյս բարուց, ըզձիրս,*
*Բա՜բէ, ո՜րչափ Կեսարք փոխին ի Լարիդոն:*

---

## ԱՌԱԿ ԻԵ.

*Շունք երկու եւ էշ մեռեալ. 4—4*

*Լաւութեանց պարտ էր լինել քորս,*
*Որպէս եղբարք են յոռութիւնք։*
*Յորժամ տիրէ մին ի սոցունց յանձին ուրուք,*
*Ամենքին գան մի առ մի, եւ մին անգամ ոչ պակասէ.*
*Ըզյոռութեանց ասեմ որ ոչ լեալ հակառակ,*
*Կալ ընդ նովին յարկաւ կարեն։*
*Այլ լաւութիւնըս դուն ուրեք է տեսանել*
*Միանգամայն իսկ ի միում անձին բնակեալ,*
*Եւ տըւեալ ձեռն միմեանց առանց բաժանելոյ։*
*Այս ինչ որ է քաջ, այլ յանդուգն.*
*այլ որ ըզգօն է, սակայն ցուրտ։*
*Յանասնոց իսկ միջի պարծի շուն թէ իցէ*
*Հաւատարիմ եւ խնամածու տեառըն իւրում.*
*Սակայն է խօլ եւ շատակեր.*
*Վկայ են այսմ այն երկու շունք որք ի հեռուստ*
*Տեսին զեշոյ մեռելոյ դին որ ի վերայ ալեաց ծըփայր,*
*Եւ զոր տանէր հողմըն տակաւ*
*ի բաց ի շանց աստի մերոց։*
*“Ընկե՛ր,„ ասէ մին, “աչք քո են քան զիմըն սուր.*
*Ըզհայեցուածըս քո տար դու*
*գամ մի յայս դաշտ անդնդախոր.*
*Ինձ թըւի անդ տեսանել ինչ.*
*իցէ՞ այն եզըն մի կամ ձի։„*
*“Աղէ, զի՞ փոյթ թէ իցէ այս ինչ կամ այն ինչ,„*
*Ասէ ընկերն. “շատ է զի այն է մեր բաժին։*

Այլ գործ է զայն ածել ըղըռամբ.
զի սատի անդր է միջոց մեծ:
Եւ դարձեալ պարտ է մեզ լողալ ընդդէմ հողմոյն:
Ե՛կ, զամենայն զայդ ջուր արբցուք.
եւ զայս կոկորդ մեր դորսովեալ
Կարիցէ քաջ հանել ի գլուխ. եւ այն դիակըն մընացէ
Ի ցամաքի հուպ ընդ հուպ, նա եղիցի իսկ
Մեզ ի պաշար եօթնօրեայ մի:„
Ահա շան մեր կան յըմպել. ըսպառի՛ շունչ
Նոցա, ապա՝ կենդանութիւն: Ըմպեն այնչափ
Մինչեւ յանկարծ երգիծանին:
Այս են մարդոյ բանք զի յորժամ տենչայ իմիք,
Անհընարին լինել գործոյն ի մտաց նորա լինի անհետ:
Ո՛րչափ ըղձայ, ո՛րչափ ինչ վայրըս հատանէ.
Անցեալ ըստ չափ առ ըստանալ ինչըս կամ փառս:
“Իցի՛ւ,„ ասէ, “թէ լայնէի ըզկալուածս իմ,
Ոսկեով զարկեղս իմ լընուլի.
Ուսանէի եբրայերէն,
ըզգիտութիւնս, ըզպատմութիւն:„
Այս ամենայն է ծով յըմպել.
Սակայն մարդոյ բաւէ ոչինչ:
Ի յանդ հանել զայս ինչ խորհուրդ
զոր յօրինեն մի միայն միտք՝
Պիտոյ են չորք մարմինք, եւ այն չէ բաւական.
Ըզմիջոցաւ ճանապարհին
Թըւի ինձ թէ առցեն ըզկայ.
Մաթուսաղայք[147] չորք ծագ առ ծագ չիցեն ձեռնհաս
Ի կատարումն ածել զոր մի ոք ցանկանայ:

---

# ԱՌԱԿ ԻԶ.

*Դեմոկրիտոս եւ Աբդերացիք. 4—4*

Քանի՜ ատեամ ես ըզխորհուրդ խառնաղանձին:
Քանիո՜ն պիղծ եւ անիրաւ
այն, եւ յանդուգըն թըւի ինձ:
Դընէ ռամիկըն միջոց սուտ
ի մէջ իւրին եւ ի մէջ իւր.
Չափէ յանձնէ զոր ինչ յայլում տեսանէ նա.
Զայս վարդապետն Եպիկուրեայ ուսաւ, ասեն:
Յիմար կարծեաց ըզնա աշխարհն:
Գործունք մըտօք: Եւ զի՞նչ զարմանք:
Ի գաւառի իւրում ոչ ոք է մարգարէ:
Արքն այնոքիկ էին յիմարք,
Դեմոկրիտէս[148] էր իմաստուն:
Մոլորութիւնն եհաս ցայն վայր,
մինչեւ Աբդեր յղեաց պատգամ
Առ Հիպպոկրատ եւ հրաւիրեաց
Նամականաւ եւ դեսպանաւ
Գալ բժշկել ըզզառանցեալն:
“Քաղաքացին մեր,„ ասէին նոքա լալով,
“Զուշըն յապուշ դարձոյց. եղուկ,
ըզԴեմոկրիտ եղծ դպրութիւնն,
Եթէ անուս էր առաւել մեծարէաք:„
“Ոչ զոն,„ ասէ նա, “աշխարհաց թիւ եւ սահման.
Նա՛, են նոքա թերեւըս լի
Անթիւ, ամբաւ Դեմոկրիտօք:„

Երազովք նա ոչ շատացեալ,
ի նոյն կըցէ անհատ մարմինս.
Ոտնունդք ուղղոյ ընացելոյ, խուճապք անտեսք.
Զափէ զերկինս առանց յաստեացըս խախտելոյ.
Ըզախեզերըս ճանաչէ, զանձն իւր միայն ոչ ճանաչէ:
Եւր ժամանակ զի գիտէր նա ըզկազդեցողըս խաղաղել.
Այժմ ընդ անձին իւրում խօսի:
Մահկանացուդ աստուածեղէն,
եկ, ի ծայր անդր հաս մոլութիւնն:„
Փիլոկրատէս չունէր հաւատ մեծ ի մարդիկն.
Սակայն չոքաւ: Եւ աղաչեմ ըզձեզ, տեսէք,
Արդիւսի ինչ դիպաց ի կեանս
Լինի պատճառ բախտ: Փիլպոկրատ
եհաս յայնժամ,
Յորժամ նա զոր բամբասէին
թէ չունէր միտս եւ ոչ հանճար՝
Խնդրէր ի մարդ եւ յանասուն
Թէ ուր զիւր նիստ ունիցի բանն,
ի սրտի՞ անդ թէ ի գըլուխն:
Ընդ թանձրախիտ հովանեաւ մերձ յառուն նստեալ,
Զքաւզակաձեւ շաւիղ ուղղոյ
Փետաղօտէր. եւ առ ոտամբ
իւրով ունէր գրեան բազում.
Եւ ոչ եսես գրեթէ զի գայր մօտ բարեկամն.
Զի զբաղեալ յոյժ էր ըստ իւրում սովորութեան:
Համառօտիւ ետուն ողջոյն
միմեանց, որպէս էր իսկ արժան.
Ժամանակի եւ խօսից եւս
խընայել գործ է իմաստնոյ:

Ուստի թողեալ ի բաց զունայն ճառըս բանից,
Խօսեալ բազում ինչ ըզմարդոյ եւ ըզմըտաց,
Եկին խօսել ըզքարոյից։
Չէ հարկ առնել մանրապատում
Զոր տացին իւրաքանչիւր։
Որ ասացաւն յառաջագոյն է բաւական
Ի ցուցանել թէ խաժամուժն է պատուոր անձեռընհաս։
Յո՞ր միտս ուրեմն է ճշմարիտ
Զոր ընթերցեալ է իմ ուրեք,
Թէ՝ Ձայն բազմաց ձայն Աստուծոյ։

---

## ԱՌԱԿ ԻԵ.

*Գայլ եւ Որսորդ. 4—4*

Ո՜վ դիւցելոյ կատաղութիւն. Ճիւաղ որոյ ականողըք,
Իբրեւ ըզկէտ մի համայրին ըզհամօրէն երախտիս դից,
Մինթէ ի զո՞ւր մարտեայց ընդ քեզ
ի մատենիս աստ անդադար։
Ո՞ր այն ժամ է զի երթիցես ըզխըրատուց իմոց ըզհետ։
Մարդ բարբառոյ իմոյ, որպէս
եւ բարբառոյ իմաստնոյն խուլ՝
Ո՞չ ասիցէ երբեք, “Շատ է, վայելեսցուք։”
Փութա, այր դու, չունիս այլ եւըս նոյնչափ կեալ։
Յեղյեղում քեզ զայս բան, զի այն
արժէ մատեան մի բովանդակ,
“Վայելեսջիր։” “Վայելեցից,”
ասէ։ — “Այլ ե՞րբ։” — “Ի վաղուէ իսկ։”

Օ՛ն, բարեկամ, հասցէ թերեւս
մահ ի վերայ, մինչ եսդ յուղւոջ.
Սկըսիր այսօր իսկ վայելել.
երկիր, գուցէ դիպեսցի քեզ
Որ դիպեցաւն որսորդին եւ
գայլոյն յիմում առակի աստ:
Առաջինն էր սպանեալ այծեամն նետիւք իւրովք.
Որթ մի եղին անցեալ ընդ այն
լինի եւ նա վաղվաղակի
Ննջեցելոյն ընկեր. անկեալ
դնին երկոքին ի դալարւոջ:
Արդարեւ որսն էր բաւական.
այծեամըն մի եւ որթ եղին.
Որսորդ համեստ շատանալ պարտ էր այնոքիկ.
Այլ վարազ մի, գազան գոռող եւ ահագին,
փորձէ զորսորդն որ ցանկացող
էր այնպիսւոյ պատառի յոյժ:
Միւս եւս բնակիչ Ստիւքսի. Պարկայն
եւ մկրատք իւր
Ջաղիւ ի նա գըտանէին
զամս. աստուածն այն դըժոխական
Բազում անգամ ել ի դերեւ յորհասականըն գազանէ,
Ըստ հուսկ ուրեմն ի հարուածոյն
բռնութենէ տապալի խոզն:
Էր ըստացուածըն շատ եւ շատ:
Այլ զի՞նչ, միթէ լինուլ մարթի՞
Ըմբաւ անձուկ որոց աշխարհըս նըւաճեն:
Յուշաբերել անդ վարազին՝ աղեղնաւորն
Նաեւ կաքաւ մի զի գընայր մերձ յակօս մի.

Ի միւս գլխոյ վերայ էր սա հէք յաւելուած.
Սակայն ձգտէ նա զաղեղան իւրոյ ըզլար:
Կլինճն ամփոփեալ ըզմընացորդ կենդանութեանն՝
Գայ առ որսորդն, ի մահ խոցէ.
խնդրեալ ըզվրէժ իւր մեռանի:
Շընորհ ունի նըմա կաքաւն:
Պատմութեանս այս մասն է ուղղեալ
առ ցանկացողս:
Ըզահն առցէ վասն իւր ըզմիւս այլ օրինակ:
Գայլ մի անցեալ ընդ այն ետես
զաղխողորմըն զայն տեսիլ,
"Ո՛վ բախտ," ասէ, "մեհեան մի քեզ
խոստանամ ես,
Զորք մարմինք կան տապաստ անկեալ.
ո՜րչափ բարիք. բայց եւ այնպէս
Խնայել պարտ է զնոսա. այս դէպք անօսր յոյժ են:"
(Ժատապովեն զանձինս ագահք զայս օրինակ:)
"Լեցի," ասէ գայլն, "ինձ պաշար ամսոյ միոյ.
Ըւասիկ մի, երկու, երեք,
չորք դիակունք. են շաբաթք չորք,
Եթէ հըմուտ եմ հաշուելոյ, ողջ բովանդակ:
Ըսկսցուք յետ երկուց աւուրց.
սակայն առ այժըմ կերիցուք
Զաղեղան լար, արարեալ է, որպէս կարծեմ,
Ի բուն աղեաց. հոտն ինձ վըկայ է բաւական:
Ըսացեալ զայս բան յարձակի
Նա յաղեղան վերայ. աղեղըն թուլացեալ առնէ նետիւն
Նոր մեռեալ մի. գայլ իմ ահա կերաւ զաղխ:

Եկեց յիմ բան. վայելել պարտ է եւ պատշաճ.
Վըկայ երկու այս որկորեայք
պատուհասեալք նոյնօրինակ.
Ժըլատութիւն կորոյս ըզմին,
Միւսըն կորեաւ ագահութեամբ։



# ԳԻՐՔ ԻՆՆԵՐՈՐԴ

## ԱՌԱԿ Ա.

*Աւանդապահն անհաւատ.* 4—4



Շնորհ Դստերաց յիշատակի․
Նուագեցի ես զանասունս․
Ի դիւցազանց այլոց թերեւս
Ոչ լինէր ինձ այնչափ պատիւ։
Գայլ դից լեզուաւ
Խօսի առ շուն ի մատենիս․
Մի ըզմիով առնեն զազանք
աստ երեւել
Լինել անձինք նըշանաւորք․
Ոմանք յիմար, այլք իմաստուն․
Սակայն այնպէս,
Զի զիմաստնովք գըլեն յիմարք․
Չափ այսոցիկ է լիագոյն։
Նա՛, հանեմ եւս ես ի տեսիլ
Ըզխաբեբայս, ըզչարագործս,
Ըզքըռնաւորս եւ զապաշնորհս
Եւ ոչ սակաւ պաճար անմիտ․

Բազում տխմարս եւ ոչ սակաւ սուտակասպասս ·
Յաւելուլ մարթ էր ի նոսա
Գունդըս գունդըս սրտախօսաց ։
Ամենայն մարդ սրտէ, ասէ, ամենարուեստն
Թէ դընէր նա ի համարի սոցա միայն
Խոնարհագոյն կարգի մարդիկ,
Մարթ էր արդեւք
Ներել մարդկան զայս յոռութիւն ·
Սակայն ասէ, Ամենեքին, որչափ եւ եմք,
Սրտեմք փոքունք եւ մեծամեծք ։
Եթէ այլ ոք էր ասացեալ,
Ըզհակառակըն պնդէի ·
Թէ սրտէր ոք
Իբրեւ զԷսովպն եւ ըզՀոմեր,
Չէր սրտախօս նա ճշմարիտ ։
Քաղցըր ցնորիւք ինչ երազոց
Որոց եղեւ արուեստ նոցա հընարագիւտ,
Ընդ սրտութեանըն վերարկուաւ
Ընծայեն մեզ ճշմարտութիւն ։
Երկոքին եւս արարին գիրս
Զորս համարիմ ես արժանիս յաւերժ կենաց,
Աւելւոյ եւս, եթէ մարթ էր ։
Որ միանգամ կամի սրտել, ոչ պէս դունակ նոցա սրտէ ·
Սակայն սրտել, որպէս արար
Երբեմըն ոմն աւանդապահ,
Ում հաստուցաւ իւրով բանիւ,
Է սրտել առն անըզգամի եւ մոլելոյ ։
Ահաւասիկ այն պատմութիւն ·
Վաճառական ոմըն պարսիկ

Առ դըրացւոյն, յերթալ իւրում ի վաճառ իւր,
Եդ յաւանդի յաւուր միում,
ասեն, երկաթ կըշիռս հարիւր։
“Ո՞ւր է երկաթն իմ,„ ասէ ցնա այրն ի դարձին։
“Երկաթըն քո չէ ի միջի,„
ասէ դըրացին. “վիշտ մեծ է ինձ,
Զի մուկըն զայն կերաւ ողջոյն։
Աշտամբեցի ըզծառայս իմ.
այլ զի՞նչ օգուտ, ի շտեմարանս
Գըտանին ծակք։„ Վաճառականըն զարմանայ
Ընդ այս նըշան. բայց հաւատալ կեղծաւորի։
Յետ աւուրց ինչ կորզէ զմանուկ
Դըրացւոյն իւրոյ նենգաւորի. ապա յընթրիս հըրաւիրէ
Ըզհայր մանկանն, այլ հրաժարի սա արտասուօք.
“Թո՛ղ տուր,„ ասէ, “ինձ, աղաչեմ.
Ոչ գոյ վասն իմ ուրախութիւն այսուհետեւ.
Որդի մի է իմ սիրելի քան ըզկեանս իմ.
Ըզնա միայն ունիմ. այլ զի՞նչ,
բա՜բէ, ոչ եւս ունիմ ըզնա։
Հանին յինէն ըզպատանին.
լեր վշտակից թշուառութեանս։„
Վաճառականն ասէ. “Երեկ յերեկոյին ի մըթանալն
Եկըն բու մի, յափշտակեաց զորդեակըն քո.
Տեսի, տարաւ ըզնա ի հին աւերակ մի։„
“Մի՞թէ իցէ՞ հընար,„ ասէ հայրն, “հաւատալ,
Թէ կարիցէ բու մի տանել զայնպիսի որս.
Որդւոյ իմոյ ըզքուն կալեալ էր ապաքէն։„
Պատասխանի ետ միւսն, ասէ.
“Եթէ զի՞արդ, զայն ոչ գիտեմ,

Սակայն տեսի, ասեմ, տեսի աչօք իմովք.
Եւ չէք պատճառ, կարծեմ, յոյր սակս
Երկմըտիցես զորմէ այժմէն իսկ ասացի:
Միթէ իցէ՞ ինչ նորաքանչ
Ռուսոց երկրին,
Ուր մուկըն մի ուտէ հարիւր քանքար երկաթ,
Տանել մանուկ մի յիսուն լիտըր ծանրութեամբ:»
Միւսն առ ի միտ թէ յո հայէր
գիւտ կարկատուն առասպելին.
Տեառըն նորա ետ նա զերկաթն,
Եւ սա դարձոյց նըմա զորդին:
Նոյն վէճ յարեաւ ի մէջ երկուց ուղեւորաց:
Մին յայնպիսի պատմըչաց էր
Որ տեսանեն ոչինչ թէ ոչ մանրադետիւ.
Ամենայն ինչ է առ նոսա հսկայ. եթէ լըսես նոցա,
Եւրոպ եւ կողմն Ափրիկեցւոց
ունին ճիւաղս առատութեամբ:
Միւսըն կարծէր թէ աւելի բանք են ներեալ.
«Տեսի,» ասէր, «կաղամբ որ մեծ էր քան ըզտուն:»
«Եւ ես,» ասէ միւսըն, «տեսի
պոյտըն մեծ քան զեկեղեցի:»
Առաջինն այն ծաղր առնելով
ըզմիւսն՝ ասէ. «Եւ կարի քաջ.
Արարին զայն առ եփելոյ ըզքո կաղամբ:»
Այլըն պուտան էր ծաղրածու.
այլն երկաթոյ էր հանճարեղ:
Յորժամ բան ինչ է անհեդեդ,
առնել պատիւ մեծ է նըմա,

Կամել կռուել ճշմարտութեամբ
ընդ խօլութեանն.
Կատակել է աւելի կարճ՝ առանց ըզմաղձ բորբոքելոյ։

## ԱՌԱԿ Բ.

*Աղաւնիք երկու. 4—4*

Սիրէին զոյգ մի աղաւնեաց
խանդաղակաթ սիրով զիրեարս.
Մին ձանձրացեալ կալ ի բունին՝
Յիմարաբար եդ ի մտի
Թռչել երթալ ի տար աշխարհ,
Ասէ ցնա ընկերըն, "Զի՞նչ գործես, ով դու,
Կամիս զեղբայրըդ քո թողո՞ւլ.
Օտարութիւն քան զամենայն աղէտս է մեծ.
Այլ դու չզգաս, անագորոյն. գոնեա վտանգք,
Վըտանգք եւ հոգք ճանապարհին
Տացեն սակաւ մի ըզխորհուրդ քո զայդ փոխել,
Մինչեւ գոնեա ի մերձենալ աւուրց ջերոյ։
Մնասջիր գարնան։ փութալ այդպէս
հի՞մ։ Ագռաւ մի
Արդ իսկ եղեռըն գուշակէր թռչնոց ոմանց։
Ինձ ոչ այլ ինչ կայցէ խորհել բայց ձախողանս.
Ուրուր կամ վարմ։ Բա՜քէ, անձրեւ է, ասացից.
Միթէ եղբայր իմ ունիցի՞ որում ցանկայ.
Բարւոք ընթրիք, բարւոք դադար,
այլովքն հանդերձ։"

Խօսեցին այս բանք ընդ խորհուրդ
Մերոյ անմիտ ուղեւորին։
Այլ ցանկութիւն տեսանելոյ եւ յողդողդ բայք
Նշէն յաղթող։ Ասէ, “Մի լար.
Աւուրք երեք են բաւական հաճել զիմ միտս.
Դարձայց այսրէն ընդ հուպ պատմել մի 'ստ միոջէ
Զիմ պատահարս եղբօրդ իմում.
Փարատեցից ըզձանձրութիւն
Նորա։ Որ ոչ տեսանէ ինչ՝
Չունի պատմել։ Ճանապարհին իմոյ զըրոյցք
Լիցին հաճոյ քեզ ապաքէն։
Ասասցիս, Այս նիշ վայրի լեալ՝
դիպեցաւ ինձ այս ինչ, այն ինչ։
Թուիցի քեզ ականատես եղեալ անձամբ։”
Իբրեւ ասաց զայս, արտասուօք հրաժարեցան։
Ճանապարհորդըն մեկնեցաւ, եւ ահա ամպ
Ստիպէ ըզնա խնդրել ուրեք իւր ապաւէն։
Ծառ մի եւեթ գըտաւ անդէն. սակայն անձրեւն,
Յոտըս ծառոյն, թէպէտեւ թաւ,
զաղաւնին հէք տառապեցոյց։
Իբրեւ եղեւ ջեր, փութացաւ,
խոյս ետ անտի ցրտահարեալ.
Յամաքեցոյց, որչափ մարթէր,
ըզմարմին իւր համակ ի ջուր։
Յանդի ուրեք անդ ի բացեայ
ետես ցորեան ցանեալ ցրուեալ.
Անդ տեսանէ աղաւնի մի
մօտ, եւ այս տայ նըմա անձուկ։

Թըռուցեալ գայ անդր, ըմբռնի.
 ի վարմի այն ցորեան ծածկէր
 Ըզհրապուրիչ կեր պատրանաց։
 Եւ զի մաշեալ վարմն էր, թեւովք,
Ոտիւք, կտցաւ, թռչունն ի բաց կրծէր ըզնա.
Կորոյս փետուրս, այլ չարագոյն քան զայս այն էր,
 Զի ուրուր մի անգութ մագլօք,
Ետես ըզմեր ողորմելին որ զառասանըն ձըգելով,
Եւ ի վարմէն յոր ըմբռնեալ էր՝ կոտորս ինչ,
Թըւէր որպէս կալանաւոր մի փախուցեալ։
Ուրուրըն մերձ էր գալ ունել, մինչ ի բարձանց
Խոյացեալ գայ արծուի թեւովք տարածելովք։
Աղաւնին մեր գտեալ պարապ,
 մինչ գիշատիչքըն կռուէին,
 Թըռեաւ եւ էջ առ տամբ միով.
 Կարծէր այլ եւս յեղեռանէ
 Զերծեալ վերջին պատահարաւն.
Այլ մանուկ մի չարաճըճի (անագորոյն է այն հասակ)
Ըզպարսատիկ իւր առ, եհար գոգ կիսով չափ
 Ըզհէք թռչունն,
Որ անիծեալ զիւր տենչ զաշխարհ տեսանելոյ՝
Ըզթեւըս իւր քարշեալ, եւ զոտըն ձգձգեալ,
 Կէս մեռեալ եւ կէս կաղ ի կաղ
 Դէմ եդ դառնալ այսրէն յիւր տուն.
Թէպէտ առողջ, թէպէտ հիւանդ գայ հասանէ
 Առանց այլոյ պատահարի։
Ահա հաւք մեր են ի միում
 վայրի. զմըտաւ ածել թողում.

Թէ ընդ վշտաց իւրեանց ծրշափ
Հեշտանս յայնժամ վայելեցին։
Սիրողք, սիրողք երանելիք, ուղեւորե՞լ կամիք ուրեք,
Լիցի տեղին այն մօտաւոր։
Իւրաքանչիւր ոք ընկերին լիցի աշխարհ միշտ գեղեցիկ,
Միշտ զանազան, հանապազ նոր։
Լերուք միմեանց ամենայն ինչ.
լիցի ոչինչ այլն ամենայն։
Ես եւս երբեմըն սիրեցի.
եւ յայնժամ ոչ առնուի յանձն,
Ո՛չ ըզԼուվր, ո՛չ ըզգանձ նորա,
Զհաստատութիւն, ո՛չ ըզհամար իւր երկնաւոր,
փոխանակել ընդ անտառին եւ ընդ տեղւոյ
Զորս պատուէին ոտք, առնէին լուսաւոր աչք
Հովիւ կընոջըն սիրելւոյ, մանկամարդի,
Որոյ վասն ես, ընդ որդեկան Կիթերայ,
Նուռայեցի, ստիպեալ յիմոց նախնի երդմանց։
Բա՜բէ, երբ ինձ դայցեն նոցին նըման վայրկեանք։
Իցէ՞ արժան զի այնչափ քաղցր եւ չքնաղ իրք
Թողցեն զիս կեալ ըստ հաճոյից
անձին իմոյ տաղնապելոյ։
Ո՜հ, եթէ սիրտ իմ բորբոքել իշխէր դարձեալ,
Ո՞չ ըզգայի այլ եւս հրապոյրս որ արգելան։
Անցուցի՞ ինչ ըզժամանակըն սիրելոյ։

---

## ԱՌԱԿ Գ.

*Կապիկ եւ Ինձ. 4—4*

Կապիկ, ասեն, հանդերձ ընձու
Շահէր արծաթ ի վաճառի։
Երկոքին եւս գիր յայտարար կըցեն ուրոյն.
Մին ի նոցունց ասէր,
«Վաստակ իմ եւ փառք, տեարք,
Են ծանուցեալ ի լաւ տեղւոջ։
Արքայ խնդրեաց տեսանել զիս։
Եթէ յանկարծ մեռանիմ, նա կամի ունել
Բազկոց յիմոյ մորթոյն զի է խայտախարիւ,
Բծկան, պիսակ,
Ճարտուկ, ճանճկէն։»
Խայտախարիւն է հաճելի.
Ի տեսանել փութայ անձնիւր.
Սակայն խոկոյն վճարեցաւ,
Եւ խոկոյն ել անձնիւր արտաքս։
Ընկեր ընձուն, կապիկն, ասէր. «Եկայք, աղէ.
Եկայք, տեարք իմ, առնեմ բիւր խաղս։
Գունակ գունակըն զոր այնչափ յեղյեղուն ձեզ,
Գրացին իմ, ինձ, յիւրում մարմնի ունի միայն.
Ես ի միտս իմ ունիմ։ Ահա ծառայ ձեր, Ժիլ,
Եղբօրորդի եւ փեսայ եւըս Պերտրանդայ,
Կապիկ պապին առ կենդանեաւ
Նորոգապէս ի քաղաքս յայս
Եհաս մեծաւ սպասու, առ ձեզ կամի խօսել։
Քանզի խօսի, եւ իմանան. գիտէ կաքաւ եւ պարել եւս,

Առնել դարձուածս ազգի ազգիս․
Ընդ շրջանակս անցանել թափ։
Այս ամենայն վեց լուսնայից․
«Նա՛, տեարք, միոյ դանկի․ եթէ ոչ լինիք գոհ,
Տացուք զարծաթ իւրաքանչիւր ուրուք առ դրամ։»
Զայս յիրաւի ասէր կապիկն։
Ոչ ի վերայ հանդերձից ինչ
Գունակ դունակն է ինձ հաճոյ,
այլ ի մըտացըն հանդիսի։
Մին առնէ իրս միշտ հեշտականս․
Միւսն ի քթթելական ածէ
ի հայեցողս անդըր տաղտուկ։
Ո՜հ, որչափ արք աւագք ընձուն նըմանագոյնք,
Ի քանքարոյ տեղի չունին բայց ըզհանդերձ։

---

## ԱՌԱԿ Դ․

*Խոզկաղին եւ Դդում․ 4—4*

Աստուած առնէ բարւոք զոր ինչ
առնէ։ Առանց հաւանութիւն
Ի տիեզերըս խնդրելոյ, եւ երթալոյ յայսկոյս յայնկոյս,
Ի դդմի անդ գըտանեմ զայն։
Շինական ոմըն միտ եդեալ
Թէ որչափ յաղթ է այս պըտուղ,
եւ նուրբ ըստեղն,
«Յի՞նչ միտս,» ասէ,
«ըզսա այսպէս արար Հաստիչն։

Ոչ ի պատշաճ ինչ տեղւոջ եդ նա զայս դըդում։
Թէ յիմ ձեռս էր, կախէի զայն
Ըզմիոջէ ի կաղնեաց որ աւասիկ են։
Այս էր արդար.
Առ ի բարւոք առնել պըտուղ,
Ծառըն պարտի նմանել պտղոյն։„
Աղ՛ւկ, Կարոյ, զի ոչ գըտար
Ի խորհրդեան այնորիկ զոր քարոզէ քեզ երէցըն քո.
Ամենայն ինչ լինելոց էր ուրս բարւոք. զոր օրինակ,
Զի՞մ կաղինս այս որ չէ ինչ մեծ քան զիմ ծըկոյթ,
Իցէ կախեալ զայդըմ ծառոյ։
"Վըրիպեալ է Աստուած. որչափ հայիմ մըտօք
Ի պըտուղս յայս որ ի գետնի,„ ասէ Կարոյ,
"Թըւի ինձ գործն այլ ընդ այլոյ։„
Ըզմտաւ ածեալ զայս այրըն մեր տարակուսի.
"Ննջել չէ մարթ,„ ասէր, "այնմիկ
յորոյ դըլուխն են այսչափ խելք։„
Յայս բան երթայ անդ ընդ կաղնեաւ միով նիրհել։
Յանկարծ կաղին մի անկանի.
Քիթ նիրհելոյն կըրէ վընաս։
Զարթնու ընդոստ, եւ ըզձեռն իւր տանի յերեսս,
Եւ գըտանէ կռուեալ զմօրուօք իւրովք կաղին։
Քիթըն ճմլեալ ստիպէ ըզնա փոխել զիւր բան.
"Ո՜հ, ո՜հ,„ ասէր, "հոսեմ արիւն, եւ զի՞նչ լինէր,
Եթէ մարմին առաւել ծանր
էր ի ծառոյն անկեալ ի վայր,
Կամ թէ կաղինս այս էր դըդում։
Չարար Աստուած այնպէս, անշուշտ ունէր պատճառս.
Ըզպատճառսն արդ տեսանեմ ես։„

Գովեալ զԱստուած զամենայնի՝
Կարող դառնայ այսրէն յիւր տուն։

---

## ԱՌԱԿ Ե.

*Աշակերտ, Վարդապետ եւ Տէր պարտիզի. 4—4*

Պատանեակ մի որ աշակերտ էր դպրոցի.
Տխմարագոյն, ըստահակ յոյժ
Եւ խակութեան տիոցն եւ ցոփն ազատութեան,
Որով զմանկտին զեղծուցանել սովորութիւն է դայեկաց,
Ի տան ուրումն դըրացւոյ խորէր, առեն,
Ծաղիկ եւ պտուղ։ Դըրացին այս յաւուրս աշնան
Ընտիր ընտիր երախայրեաց զորս ընծայէ մեզ Պոմոնա՝
Ունէր զծաղիկն, այլք՝ ըզլոռւթն։
Ի փոփոխմանց տարւոյն մէն մի ըզհարկ իւր տայր։
Զի ի գարնան աւուրս նոյնպէս փայլէր այլն
Ի գեղեցիկ պարգեւաց զոր Փլորայն մեզ մատուցանէ։
Յաւուր միում ի պարտիզին
Իւրում ետես զաշակերտ մեր,
Որոյ յանհոգս ելեալ ի ծառ մի պտղատու,
Ապականէր ըզխաւարծիս
անգամ, ըզքաղցր եւ տըկար յոյս,
Յառաջընթացըս պարգեւաց
զորս լիութիւնըն խոստանայ։
Նա՛, քշտէր իսկ ըզծառն, եւ այնչափ ինչ ասար,
Մինչեւ իսկ տեառնըն պարտիզին
Առաքել սպա ի բողոքել առ ուսուցիչն։

Սա եկն իսկոյն, ըղձեալ նորա մանկութեան երամ.
Ահա պարտէզըն լի մարդկամբ
Յոռեգունիւք քան զառաջինն:
Դաստիարակ մեր անխորհուրդ
Յաւել ի չարն՝ տալով խուժել
Ընդհըրահանգ, անկիրթ մանկանց:
Եւ զայս առնէր, որպէս ասաց, ի պատուհաս
Որ լինիցի իբր օրինակ, եւ զոր ողջոյն այն խառնաղանճն
Յիշեսցէ միշտ որպէս խրատ:
Ապա եկին ի մէջ Վիրգիլ եւ Կիկերոն,
Եւ բազում ինչ ի գիտութեանց:
Նա ըղձառ իւր ձգեաց այնչափ,
մինչեւ ծընունդն այն անիծեալ
Եգիտ պարապ ապականել
տեղիս բազումս ի պարտիզէն:
Ատելի են ինձ ճոռոմ բանք
Որ չեն ի ճահ, չունին վախճան.
Եւ չէք, կարծեմ, յաշխարհի աստ չարաճըճի
Որպէս մանուկ դպրոցի, նա
մանաւանդ թոյլ դաստիարակ,
Զանգըւածոյնն իսկ յերկոցունց,
զըստոյգն ասել, ունել գրացի,
Մի լեցի ինձ հաճոյ երբեք:

---

## ԱՌԱԿ Զ.

*Անդրիագործ եւ Անդրին Արամազդայ. 4—4*

Հատոր մի մեծ կճեայ այնպէս էր գեղեցիկ,
Մինչեւ, ասեն, գնեաց զայն ոմն անդրիագործ:
«Զի՞նչ առնիցէ ի սմանէ,» ասէ, «գրիչ իմ.
Դրօշեա՞լ թէ կուռք, կամ թէ սեղան:
Լիցի դրօշեալ. նա եւ կամիմ
Զի ունիցի նա ի ձեռին իւրում կայծակն:
Դողացէք, ով մարդիկ, արկէք նըմա աղերս.
Ահաւասիկ տէր աշխարհի:»
Արուեստագէտն այնպէս բարւոք էած ի յայտ
Ըզդէմս բարուց դըրօշելոյն,
Մինչեւ կարծել մարդկան եթէ չէր ինչ թերի
Արամազդայ, թէ ոչ բարբառ:
Նա ասեն եւս թէ ձեռագէտն,
Այն ինչ ի գլուխ հանեալ զարձանն,
Նախ ինքն հարաւ ըզդողանի,
Եւ սարսեցաւ յիւրմէ գործոյն:
Տըկարութեան դրօշագործին
Նախնի պըւէտք էին հաղորդ.
Ի դից որոց եղեն հնարողք՝
Ի ցասմանէն եւ ի վըիժուց երկնչէին:
Էին տըղայք.
Տըղայք ոչ այլ իւիք զբաղին,
Բայց հանապազըն խընամով զի մի գուցէ
Ցասուսցէ ոք ըզմարդակերպ
զիւրեանց փոքրիկըն խաղալիկ:

Սիրտ մեր սովոր է ըղձըտաց երթալ ըղհետ.
Ո՛չ յաղբերէ աստի իջեալ
Կըռապաշտից մոլորութիւնն որ եկն ի յայտ
Ի մէջ այնչափ ազգաց երկրի։
Կային նոքա պնդով պաշտպան
Արտայօղ դից իւրեանց շահուն։
Պիգմաղիոն եղեւ սեղեխ
Ափրոդիտեայ որոյ էր հայր։
Իւրաքանչիւր ոք հընարի համեւ ըստոյգ,
Որչափ մարթի, զանուրջըս իւր։
Ճշմարտութեանց՝ սառոյց է մարդ,
Ստութեանց վառն է համակ հուր։

---

## ԱՌԱԿ Է.

*Մուկն փոխեալ ի կերպարանս աղջկան. 4—4*

Ա՜յն ի մըկանց ի բերանոյ բուոյն անկաւ.
Ոչ բառնայի ըզնա երբեք.
Այլ Պրահմին[149] մի եբարձ, կարծեմ,
ուրախութեամբ։
Զօրէնըս իւր իւրաքանչիւր աշխարհ ունի։
Մուկն էր ըլկեալ չարաչար յոյժ։
Զայսօրինակ զընկերէ մեք
Զառնեմք ինչ փոյթ . այլ ժողովուրդ Պըրահմինայ
Գ․նայ ՚նդ նոսա իբր ընդ եղբօր։ ՚Նոքա եդեալ են ի մըտի.
Եթէ հոգին յելանել անդ իւր ի մարմնոյ թագաւորի,
Մտանէ ի մուն մի եւ կամ յայլ ինչ անասուն,

Որպէս հաճոյ թըռչի բախտին։
Այս նոցա մասն է հաւատոյ։
Պիւթագորաս ի նոցանէ առ զայս գաղափարս։
Յայսպիսի ինչ հիման վերայ
կարծեաց Պըրահմինն առնել թարւոջ,
Ազատելով ըզկատուարդ ոռ մըկանն այնմիկ տալ ըմբռնել
Ի մարմին մի ուր նա կանխաւ իսկ լեալ էր հիւր։
Կախարդն ըզնա փոխեաց յաղջիկ
Հնգետասան ամաց եւ յոյժ չքնաղագեղ,
Մինչեւ որդին իսկ Պրիամու ցանկայր նըմա
Վասն այլում յոյն գեղեցկութեան։
Ընդ այսպիսի գործ նորասքանչ
զարմացաւ յոյժ Պըրահմինն այն։
Ասէ ցաղջիկըն գեղեցիկ,
"Ընտրեա դու քեզ զո եւ կամիս։
Իւրաքանչիւր է նախանձոտ
Պատուոյն փեսայ լինելոյ քեզ։"
"Ուրեմըն տամ," ասէ աղջիկն,
Զիմ ձայն որում քան զամենայն է զօրաւոր։
"Արեւ," գոչեաց յայնժամ Պըրահմինն
ի ծունր իջեալ,
"Դու եղիցիս մեզ ի փեսայ։"
"Ո՛չ, ո՛չ," ասէ նա. "այս ամպ թանձր
Հզօր է քան զիս, զի ծածկէ նա ըզնըշոյլս իմ։
Խորհուրդ տամ քեզ առնուլ ըզնա։"
"Թարւոջ ուրեմն," Պըրահմինն ասէ
ցամպըն թռչուն.
"Իջեր, աղէ, վարըն դատեր
մերոյ ծընեալ։" — "Ո՛չ, քանզի հողմ

Հալածէ զիս յորժամ կամի երկրէ յերկիր.
Իսկ հակառակ կալ զօրութեան
Հիւսիսային հողմոյն չիշխեմ:»
Ի բարկութիւն բրդեալ Պրահմինն
«Ո՛վ հողմ,» ասէ, «քանզի դու հողմ,
Ի գիրկ մերոյ գեղեցկին եկ:»
Նա փութայր գալ, այլ մինչդեռ գայր,
Լեառըն նըմա եղեւ արգել:
Գնդակն էանց ի վերջինս յայս,
Իսկ նա վանեաց յետս եւ ասէ. «Կռուել հասցէ
Ինձ ընդ մըկան. գրգռել ըզնա
Չէ ինձ օգուտ, ըզնա որ զիս ծակել կարէ:»
Յանուն մըկան օրիորդ մեր
Եբաց զականջ իւր, եւ եղեւ մուկն ամուսին.
Մո՞ւկն. այո, մուկն. ի հարուածոց անտի է այս
Զոր առնէ սէր. վըկայ կին այս եւ այս անուն:
Այլ եղեցի թող այս ի մէջ մեր ասացեալ:
Մարդ ըզտեղին սիրել սովոր
է ուստի եկ. եւ առակս այս
Զայս իմն առնել կամի մեզ յայտ.
բայց եթէ մանըր դիտեսցուք.
Ունի բազում ինչ անհեդեդ:
Որ ամուսին չէ քան զարեւ նախամեծար,
Եթէ բանիւ ոք խորհեսցի:
Ի՞ մարթ ասել թէ այր հսկայ
Չիցէ հըզօր ինչ քան ըզլու,
Թէպէտեւ սա խայթէ ըզնա:
Մուկնըն նոյնպէս պարտէր յըղել, այն էր վայել,
Զաղջիկն առ կուզ, եւ կուզն՝ առ շուն,

Եւ շունն՝ առ գայլ: Եւ զօրութեամբ
Շրջանի այսր ընծայութեան
Գիլպէյ կարող էր հասանել անդրէն յարեւն,
Եւ արեւուն էր վայելեալ ըզմանուկ գեղն:
Այլ եկեսցուք, եթէ մարթ է,
ի փոփոխումն հոգւոց դարձեալ:
Գըրահմենի կախարդասարն արար անշուշտ այնպիսի ինչ,
Որ փոխանակ հաստատելոյ յանդիմանէ ըզսըտութիւնն:
Նախ մատիցուք ընդ Գրահմենայ իսկ ի պայքար.
Զի ըստ ուսման նորա պարտ էր
Մարդոյ, մըկան, որդան, մի բան՝ ամենայնի,
Տանել զհոգին իւր ի գանձուէ հասարակաց:
Ամենքին են ի նըմին իսկ խըմորոյ,
Թէպէտ գործին այլ օրինակ,
Ըստ կազմածոյ իւրեանց եւեթ:
Մին համբառնայ, միւսըն սողայ:
Ուստի՞ եղեւ զի այն մարմին
յօդեալ կազմեալ այնպէս բարւոք,
Ստիպել ըզհիւր իւր ոչ կարաց
Ամուսնանալ ընդ արեւու, եւ ի չնչին մըկան հարաւ:
Քաջ մաքառեալ եւ քաջ կշռեալ,
Մըկան ոգին եւ գեղեցիկ կընոջ ոգին
Են ի միմեանց այլակերպք յոյժ.
Պարտ եւ պատշաճ է գալ միշտ յիւր ճակատագիր.
Այն է յօրէնըս հաստատեալս յերկնից անտի:
Խօսեաց առ դեւն, երթ ի հըմայս,
Ի վախճանէն իւրմէ շըջել կարես ոչինչ:

---

# ԱՌԱԿ Ը.

*Յիմար որ վաճառէ զիմաստութիւն. 4—4*

Մի՛ կար երբեք մօտ առ յիմարս.
Խըրատ քան զայս հանճարեղ չեմ
կարող տալ քեզ.
Ու գոյ ուսումն հանգոյն սըմին.
Ի բաց փախչել յունայն գլխոց.
Ի սոցանէ ո՞չ յաճախ իմըն տեսանեմք մեք յարքունիս.
Նոքա հաճոյ են իշխանաց քանզի տան միշտ
Զպատկեր խակաց, յիմարաց, ծաղըր կացելոց.
Այր ոմն յիմար երթայր գոչէր
ի գըլուխս անդ ճանապարհաց,
Թէ վաճառեմ զիմաստութիւն,
եւ ոչ սակաւ դիւրահաւանք
Ընթանային գընել, փութայր իւրաքանչիւր.
Յիմարն ըստէպ խեղկատակէր.
Ընդ արծաթոյն զոր առնոյր՝ տայր
Ապտակ ուժգին, եւ ասղանի կանգունս երկուս.
Զայրանային արդարեւ շատք, սակայն զի՞նչ շահ.
Ծաղըր սոքա լինէին. լաւ էր ծիծաղել,
Եւ կամ մեկնել երթալ անձայն,
Առեալ զապտակն եւ զասղանին.
Խնդրել թէ զի՞նչ այն առնէր յայտ,
Էր ապաքէն տալ ծաղրել զանձն իբրեւ տխմար.
Իցէ՞ ինչ բանն երաշխաւոր
Որում առնէին այր յիմար. Ի պատճառ դիպուածն
Ամենայնի որ անցանէ յուղեղ հիւանդ.

“Կարծեմ եւ իմ աչք չեն յոռի,„
Արկնեաց ընկերն, “երդնում զի ես
տեսի զոստրէն նախ քան զքեզ:„
“Բարւոք,„ ասէ միւսըն, “տեսեր
դու, սակայն ես առի զհոտն:„
Ի պատաղել նոցա այսու,
Եհաս Բերէն[150] Տանտէն. զգնա
կացուցին այքն իրաւարար:
Բերէն մեծաւ լրջմտութեամբ
բանայ զոստրէն եւ լափէ զայն.
Երկոքին այքն յառեալ հային:
Յետ ուտելոյն ասէ Բերէն ծոխութեամբ իմն.
“Ահա ատեանըն տայ միում
միում ի ձէնջ մէն մի պատեան
Առանց ծախուց. իւրաքանչիւր
թող երթիցէ խաղաղ յիւր տուն:„
Գիր որչափ ինչ ծախի այսօր ի վարել դատ,
Հաշուեա եւ զայն որ ընտանեաց բազմաց մընայ,
Տեսցես, Բերէն է որ կորզէ յինքըն զարծաթն.
Որոց վարեն զդատ թողու,
ըստ առակին, զպարկն եւեթ:

## ԱՌԱԿ Ժ.

*Գայլ եւ Շուն վտիտ. 4—4*

Երբեմըն ձագ ծածան ձըկան
Աղերս արկեալ ասաց բազում ինչ, այլ ի զուր·
Ի տապակ անդր արկին ըզնա։
Ասացեալ է իմ թէ թողուլ
զոր չունի ոք յիւրում ձեռին,
Առանց յուսոյ մեծի շահու,
Է կատարեալ յիմարութիւն։
Ձկնորսին գործն էր իրաւամբ·
չէր անիրաւ ինչ եւ ձկնիկն·
Իւրաքանչիւր ասէ զոր ինչ
ի պաշտպանել ղանձն է կարող։
Պարտ է այժմիկ զի յաւելից
Յայն զոր յայնժամ ասացի՝ եւ այլ եւս ինչ ինչ։
Գայլ մի ասեն այնչափ անմիտ,
որչափ ձկնորսն էր իմաստուն,
Գըտեալ շուն մի հեռի 'շինէն
Յափշտակել ըզնա կամէր։ Շունն ասէ ցնա.
“Վըտիտ եմ ես, մի թըւեսցի տեառնըդ հաճոյ
Առնուլ զիս յայսըմ պայմանի·
Սպասեա, տէր իմ հարսնացուցէ
Ըզմիամօր իւր դուստր, յայնժամ
Ի հարսանիս լեալ իմ եղէց ապաքէն գէր։„
Հաւատացեալ գայլոյն թողու ըզնա երթալ։
Յետ աւուրց ինչ անցանելոյ

Գրայ այսրէն գայլըն տեսանել
զհուր շուն թէ է՞ր ազնըւագոյն։
Այլ չարաճճին էր ի տան անդ.
Ասէ ցըգայլն ընդ անջրպետըս վանդակին.
«Տեսցես արտաքըս, բարեկամ,
թէ սակաւիկ մի ունիս ժոյժ.
Դռնապան տան մերոյ եւ ես
Վաղվաղակի ելցուք առ քեզ։
Դռնապանն էր շուն վիթխարի
Որ ըզգայլոց գործ վըճարէր ըստ օրինի։
Կասկածեալ գայլն, «Ողջոյն լինէն դռնապանիդ,»
Ասէ եւ տայ խոյս. էր արագ,
Սակայն ոչ էր նա խորագէտ։
Գայլս այս իւրում արուեստին չէր դեռ քաջ հըմուտ։

---

## ԱՌԱԿ ԺԱ.

*Մի ինչ կարի. 4—4*

Ոչ տեսանեմ յարարածոց
Ոք որ համովըն վարիցի։
Գոն խառնուածք ինչ
Զոր բնութեան տէրն
Տալ ողջ պահել կամի. սակայն
լինի այնպէս. կարծեմ ոչ բնաւ.
Ո՛չ բարւոյն, ո՛չ յոռւոյն երբեք հանդիպի այս։
Յորեան, առատ պարգեւ խարտեաշըն Դեմետրի,
Թէ ջովանայ յոյժ, ըսպառէ նա զոյժ երկրին.

Թէ առաւել քան զոր սովորն է՝ տարածի,
Եւ կամ առատ արձակէ ոճ,
Բառնայ ըզհիւթ պտղոյն իւրոյ։
Որմին նըման առնէ եւ ծառ.
այնպէս հաճոյ է զեղխութիւն։
Առ ուղղելոյ զցորեան թոյլ տայ Աստուած խաշին
Ի շռայլ հնձոց անտի ի բաց զոր աւելին է՝ յապաւել.
Խառնիխուռն իմն անկանի խաշն,
Ապականէ այնչափ, կրծէ ի բաց այնչափ,
Մինչեւ երկնից թոյլ տալ գայլոց
Ուտել խաշինս ինչ ի հօտէն. նոքա կերան զամենեսին.
Եթէ չկերան եւըս, գոնեա առնել այնպէս յօժարէին։
Ուստի երկինք թողին մարդկան
Պատժել զսոսա. բայց եւ մարդիկ եւըս զեղծան
Աստուածեղէն հըրամանաւն։
ՙՔան զհամօրէն ազգ անասնոց մարդ ոչ գիտէ
Կալ ի չափու։
Մեղապրութիւնս այս գայ ի դէպ
Մեծի, փոքու. ի կենդանեաց չէք ոք ուրեք
Որ յայսըմ ոչ մեղանչեցէ։
Մ՛ի ի՛նչ նորի՛ն լեալ է յառակս.
Ասել ասեմ ամենեքին, այլ պահեմք ոչ։

---

# ԱՌԱԿ ԺԲ.

*Մոմ. 4—4*

Գտան մեզ ի դիւց բնակութենէ անտի մեղուք։
Առաջին պարսն, ասեն, չորքաւ օթեւանել
Ի լերին որ կոչի Հիմետ,[151] եւ յղփացաւ
Ի զանձուց զոր ի տեղւոջ անդ պահեն զեփիւռք։
Իբրեւ հանին յապարանից այսց դստերաց երկնաւորաց
Զամբրոսիայն ըզմըլթերեալն ի մոմակերտ գուբըս նոցա,
Եւ կամ, ի հայ լեզու ասել,
Իբրեւ մընաց ի մեղուանոցսն առանց մեղու
Ոչ այլ ինչ բայց մոմ, ըսկըսան առնել ճրագունս.
Զուլեցան զայս օրինակ պէս պէս մոմեղէնք։
Մին ի սոցունց տեսեալ զի հող
Թրծեալ ի հուր լինի աղիւս,
Յաղթէ ճըգանց ամաց, ցանկայ
լինել եւ ինքըն նոյնպիսի.
Եւ իբրեւ նոր Եմբետոկղէս,[152]
դատապարտեալ զանձն իւր ի բոց,
Յիմարութեամբ իւրով լըկով
Անկաւ ի հուրն։ Անմիտ խորհուրդ,
Մոմեղէնս այս չէր բընաւին փիղիսոփոս։
Ամենայն ինչ է այլակերպ յամենայնի. հան ի մըտացդ
Եթէ գոյ այլ ինչ որ յօդեալ է նըման քեզ։
Եմբետոկղէսն այն ի մոմոյ ի կըրակի անդ հալեցաւ
Ոչինչ ընդհատ էր քան ըզմիւսըն նա յիմար։

---

## ԱՌԱԿ ԺԳ.

*Արամազդ եւ Անցորդ. 4—4*

Բամբէ, զհմրդ վըտանգն առնէ ըզգլխ ընչեղ,
Եթէ յիշեմք զուխտըս զոր տան առնել վըտանգք:
Այլ յանցանել անդ տագնապին ոչ ոք յիշէ
Զոր աստուածոցըն խոստացաւ:
Հաշուի միայն զոր աշխարհիս այսմիկ պարտի:
“Որմիզդ,„ ասէ այր ամբարիշտ,
“է պարտատէր մարդասէր յոյժ.
Ոչ վարի նա ոստիկանօք.„
Աղէ, զի՞նչ են ուրեմն ամպրոպք:
Զի՞նչ կոչես դու զահեղ զայն ազդ:
Ճանապարհորդ ոմն ըմբռնեալ ի մըրրկէ,
Ուխտեաց եզինս հարիւր նըմա
որ Տիտանացն եղէ— յաղթող:[153]
Մի եզն անգամ ոչ էր նորա.
եթէ ուխտեալ էր փիղս հարիւր,
Զարժէր նըմա աւելի ինչ:
Այրեաց ոսկերս ինչ իբրեւ եւ ողջ ի ցամաք:
Մինչեւ ի քիթ Արամազդայ ցոլացաւ ծուխն:
“Ո՛վ Արամազդ,„ ասէ, “ահա ընկալ զուխտ իմ,
Այս արջառոյ ճենճեր է զոր դու հոտոտես.
Ծուխն է բաժին
քո, ես ոչ այլ ինչ պարտիմ քեզ:„
Որմիզդ յայնժամ ծիծաղեցաւ.
Այլ յետ աւուրց ինչ ըզվըրէժըն խնդրեաց նա:
Յըղեաց երազ ասել ցընա,

Եթէ յայսնիշ տեղւոջ գոյ գանձ։ Այրն ուխտաւէր
Փութաց ի գանձ անդր իբրեւ այն թէ ի հրդեհ։
Պատահեցաւ նա անդ գողոց. եւ զի չունէր նա ի ծոցի
Բայց թէ սակաւ ինչ դահեկանս,
Հարիւր տաղանդ ոսկւոյ նոցա խոստացաւ նա
Ողջ բովանդակ, եւ ի գանձէն
Զորմէ ասէր թէ էր թաղեալ յայն ինչ չինի։
Կասկածեցան գողք ըզտեղւոյն, ուստի եւ մին
Ասէ ցայրն այն որ խոստանայր, "Ո՛վ բարեկամ,
Ծաղրես ըզմեւք. մեռիր եւ երթ առ Պղուտոն[154]
Ըզքանքար քո հարիւր տանել նըմա պարգեւ։"

---

# ԱՌԱԿ ԺԴ.

*Կուզ եւ Աղուէս. 4—4*

Կուզ եւ աղուէս, իբրեւ արդարեւ սուրբք ոմանք,
Երթային յուխտ։
Երկոքին եւըս կեղծաւորք, երկոքին եւըս խաբող քաջ.
Երկու Տարթիւֆ[155] որ ըզծախս ճանապարհին,
Ուտելով հաւս. գողանալով պանրոյ նշխարս.
Հանել մըցին։
Ճանապարհն էր երկայն, ուստի եւ տաղտկալից.
Ի կարճել զայն եկին ի վէգ։
Կագել երբեմն ունի օգուտ։
Առանց այնըր թմբրին մարդիկ.
Կերկերեցան կոկորդ մերոց ուխտաւորաց։
Յետ վիճելոյ երկար՝ խօսի այր զընկերէն։

Կուզն հուսկ ուրեմն ասէ ցաղուէսն.
«Պարծիս լինել դու խորագէտ.
Ե՞ս իբրեւ զիս ճարտար:» Ասէ
միւսն, «Ունիմ բիւր նենգ ի ծոցի:»
«Ո՛չ,» ասէ կուզն, «ես ունիմ մի
միայն հընարս ի մախաղիս.
Այլ արժէ այն, գիտեմ, հազար:»
Վիճին դարձեալ անդ ընդմիմեամբ ելանելով.
Ասէր, «Այո,» մին, միւսըն՝ «Ո՛չ:»
Ի յամառել նոցա այսպէս,
Պառականաց խումբ մի յանկարծ
ցածոյց զաղմուկն:
Կուզըն ցաղուէսն ասէ. «Օ՛ն, արկ
խիլ, բարեկամ, ի ծոցի քում.
Որոնեսջիր ի հանճարեղ խելս ուղղոյ քո
Հընարս ուրեմն հայթայթանաց.
Իսկ յաղագս իմ, աւասիկ իմն:»
Յայս բան կուզ մեր անապարեալ ել ի ծառ մի.
Միւսն ի զուր շուրջ եկեալ յածէր.
Եմուտ որջոյ յորջ, ի դերեւ. հան հարիւրիցս
Ըզպառականն:
Նա ամենայն ուրեք խնդրեաց իւր ապաստան,
Եւ ոչ ուրեք յաջողեցաւ:
Ծուխ,[156] որպէս եւ շունք կարճոտունք[157]
ի նոյն եղեն բազում նըպաստ:
Ընդ ելանել նորա յորջոյ
ուստեք, երկու շունք արագունք
Վազեալ ի նա խեղդեն իսկոյն:
Բազում հընարք մեզ խոչընդոտն լինել մարթեն.

Յամեմք յընտրելն, ի զուր փորձեմք,
զամենայն ինչ առնել կամիմք.
Թող մի դարման լինիցի մեր,
այլ եղիցի այն մին բաւուք:

---

## ԱՌԱԿ ԺԵ.

*Այր, Կին եւ Գող. 4—4*

Այր ամուսին յոյժ կաթոգի,
Յոյժ կաթոգի զիւրմէ կնոջէն.
Թէպէտ եւ էր բարենըշան,
այլ համարէր զանձըն թշուառ:
Ոչ հայեցուած տիկնոջն երբեք
Բարբառ շնորհաց եւ ողջոյ,
Ոչ բանք սիրոյ, ոչ ժըպիտ քաղցր,
Որովք գոգ այրն աստուածանայր,
Չետուն կարծել թէ սիրելի էր նա կընոջն:
Որպէս կարծեմ, էր արդարեւ այրն ամուսին.
Չէր նա մըտեալ յամուսնութիւն,
Բայց զի լեալ գոհ զիւրմէ բախտէն,
Շընորհ ըզդից ունիցի միշտ:
Սակայն, բարէ, եթէ սէր ոչ ամոքիցէ
Զուարթութիւնըն զոր շնորհեն մեզ հարսանիք,
Ոչ տեսանեմ թէ գոհ երբեք լինիցի ոք:
Արդ տիկին մեր լեալ այնպիսի,
Եւ ոչ ի կեանս իւր զգուեալ զայրն ամենեւին,

Ի գիշերի մթում մինչդեռ
տրտունջ լինէր այրըն, գող մի
Ըզտրտունջ առնըն կասեցոյց։
Զարհուրեցաւ տիկինն այնպէս,
Մինչեւ խնդրել իւր ապաւէն
Ի մէջ բազկաց առնըն իւրոյ։
Այրըն ցըգոյն, "Ո՛վ բարեկամ,
առանց քո զայս քաղցըր վայրկեան
Չէր իմ երբեք վայելեալ. ա՛ռ ուրեմն ի վարձ
Որ ինչ ի տան իմում հաճոյ թըւեսցի քեզ.
Ա՛ռ եւ գնա։" Գողք չեն մարդիկ
Որ պատկառեն ինչ կամ խնայեն։
Որում ձեռնհաս էր՝ արար գողն։
Ասել յայտ է
Թէ ի կարեաց հըզօրագոյնն
Է երկիւղ. սա ատելութեան իսկ տայ յաղթել,
Երբեմըն եւ սիրոյ, զոր եւ սանձէ երբեմն։
Հանդէս օրմին է այն սեղեխ[158]
Որ ըզտուն իւր արար հրձիգ զի այրեցէ զիրկըս սիրելւոյն,
Հանեալ ըզնա ի բորբոքեալ բոցոյն միջոյ։
Զայս հափափումըն սիրեմ ես.
Այն պատմութիւն է ինձ կարի իմն հեշտական.
Ըսպանիական ոգւոյ է այն,
Մեծ մանաւանդ քան անհաճար։

---

## ԱՌԱԿ ԺԶ.

*Գանձ եւ Երկու արք. 4—4*

*Այր մի որոյ չէր տուր եւ առ ինչ եւ ոչ հաս,*
*Եւ որոյ դեւ ի քըսակին իւրում բնակէր,*
*Իմա, ոչինչ գոյր ի նըմա,*
*Խորհեցաւ թէ առնէր բարւոք,*
*Եթէ կախէր զանձն եւ առնէր*
*Թշուառութեան իւրում վախճան,*
*Զի եւ առանց այնր իսկ սովոյ*
*եկեալ ըզնոյն էր առնելոց.*
*Ազգ օրհասի որ չէ հաճոյ*
*Որոց առնըլոյ ըզմահուն համ չեն ցանկացողք:*
*Յայն միտըս լեալ այրն ըզտուն մի հին խարխարեալ*
*Աւար տեղի ուր հանդերձեալ*
*էր կատարել այն պատահար.*
*Անդըր տարեալ չըւան կամի ընդ բեւեռ մի*
*Ի բարձրութեան՝ որմոյն կապել ըզծայր լարին:*
*Որմն հընացեալ որ ոչ էր պինդ՝*
*Յառաջին անդ հարուած խախտեալ հոսէ գանձիւ,*
*Զոր ժողովեալ այրն յուսահատ մեկնի ի բաց.*
*Թողու զչուանն, առեալ միայն զոսկին ընդ իւր.*
*Ոչ համարի. սակաւ կամ շատ*
*հաճոյ թըւի նըմա արծաթն:*
*Մինչ երթայր այր մեր տագնապաւ,*
*Տէր գանձուն գայ եւ գըտանէ զի արծաթ իւր*
*Չէր ի միջի:*

"Զի՞նչ," ասէ նա, "կորուսի՞ց ես
զարծաթն առանց մեռանելոյ.
Ո՞չ կախեցից զանձն իմ։ Առնել զայս ոչ էր մարթ,
Եթէ չըւան ինձ պակասէր։"
Այլ պատրաստ էր չըւան, միայն պակասէր մարդ։
Արդ խեղդ ընդ անձն արկ նա ըզլարն եւ կախեցաւ։
Թերեւս ընդ այն մըխիթարէր,
Զի ընդ նորա այլ ոք արար ըզծախ լարին.
Որպէս արծաթն, այնպէս եւ լարն եգիտ զիւր տէր,
Այր ագահ դուն ուրեք առնէ
զըրաւ կենացն առանց լալոյ.
Ինքն է միայն որ չունի մասն
ի գանձուէն զոր ծրարեալ պահէ.
Վասըն գողոց գանձէ, կամ վասն
Ազգականաց եւ կամ հողոյ։
Այլ զի՞նչ ասել պարտ է զխաղէն զոր արար Բախտ։
Ճարտարութիւն Բախտին է այս. զըօսնու այսպէս
Որչափ դարձուածն է նոր, այնչափ առնի նա գոհ։
Յողդողդ այս դէք
Թըւի թէ եդ յայնժամ ի մտի
Տեսանել զայր ոմըն կախեալ.
Սակայն որ էրըն կախելոց՝
Պարտէր լինել այն որ չունէր այնըմ բնաւ ակն։

---

# ԱՌԱԿ ԺԷ.

*Կապիկ եւ Կուզ. 4—4*

*Պերճլեան, Բատոն, մին էր կապիկ,*
*եւ միւսըն՝ կուզ.*
*Սեղանակիցք ի միում տան, ունէին տէր հասարակաց։*
*Զարաճըճեաց էր այն դասակ։*
*Ոչ յումեքէ երկնչէին, ո՛ ոք եւ էր։*
*Թէ գըտանէր ապականեալ ինչ ի տան անդ,*
*Ոչ ոք դընէր մեղ ինչ ումեք ի դըրացեաց.*
*Պերճլեան էր գող Բատոն նոյնպէս*
*Չէր այնչափ փոյթ ըղհետ մըկանց որչափ պանրոյ։*
*Յաւուր միում առ խարուկաւ չարաճըճիքն այն երկոքին*
*Տեսանէին կասկենւոյ պտուղս ի խորովի։*
*Գողանալ զայնս էր բարւոք յոյժ.*
*Զարախորհուրդքն անդ կրկին շահ տեսանէին.*
*Զիւրեանց օգուտ նախ, եւ ապա զայլոց վընաս։*
*Կապիկն ասէ ցըկուզն, "Եղբայր, այսօր պարտ է*
*Քեզ ժըրանալ*
*Հան ինձ ըզկասկադ։*
*Եթէ ստեղծեալ էր զիս Աստուած*
*Դիպող հանել հասկս ի կրակէ,*
*Տեսանէին զանձինըս կասկք։"*
*Ընդ ասելոյն կատարի գործն.*
*Բատոն անդէն թաթիւք իւրովք*
*Բազում խնամով*
*Պեղէ զմոխիրն, եւ ամփոփէ ըզմատունս իւր.*
*Ըզնոյն առնէ բազում անգամ.*

Ջանէ կասկ մի, ապա երկուս, ապա երիս գաղտագողէ,
Մինչդեռ Պերդլրան զՀանեալն ուտէր։
Աղախին մի գայ. խուսափեն
կապիկն եւ կուզ, այլ վերջինս այս
Չէր գոհ, ասեն։
“Նոյնպէս չեն գոհ եւ յիշխանաց անտի բազումք
Որ ողոքեալ նոյնօրինակ
Երթան խարշել յօտար գաւառս
Ի շահ այլոյ թագաւորի։

---

## ԱՌԱԿ ԺԲ.

*Ցին եւ Սոխակ. 4—4*

Յետ որոյ ցին, գող յայտնապէս,
Արկ ահ, երկիւղ շուրջանակի,
Եւ ետ գոչել ի վերայ իւր զմանկտի շենին,
Անկաւ սոխակ մի չարաչար ի ձեռս նորա։
Գարնան դիւցազնըն պաղատի խնայել յարեւն,
“Գտցես,” ասէ, “ուտել ինչ յիս
որ ոչ այլ ինչ ունիմ բայց ձայն.
Լուր դու զերգ իմ։
Պատմեցից քեզ ըզՏերեւս եւ զնախանձ նորա։”
“Ո՞ղք Տերեւան է,” ասէ ցին,
“կարէ՞ լինել ինձ կերակուր։”
Սոխակն ասէ, “Ոչ, թագաւոր
էր նա որոյ սաստիկ զայրուց
Ետ ինձ ըզգալ ըղձալրաշուք եռանդ նորա։

Ասացից քեզ ըզնըմանէ երգ գեղեցիկ,
Ընդ որ յապուշ հարցիս։ Երգք իմ
են, են հաճոյ ամենեցուն։»
Պատասխանի տայ յայնժամ ցին.
«Արդարեւ զի՞նչ քան զայս բարւոք.
մինչդեռ եմ ես սովալլուկ,
Դու ինձ զերգոց կաս եւ խօսիս։»
«Թագաւորաց իսկ խօսիմ ես,»
ասէ սոխակն։ «Թէ Թագաւոր
Ոք» ասէ ցին, «ունի ըզքեզ.
Նըմա երգեա զըսքանչելիսդ.
Ինձ որ եմ ցին, են ծաղու բանքդ։»
Որովայնի քաղցելոյ չէք, ասեն, ականջ։

---

## ԱՌԱԿ ԺԹ.

*Հովիւ եւ Հօտ Ոչխր. 4—4*

«Պակասեցէ՞ ինձ միշտ, բարբէ,
Յազգէ սատի ապիկարէ.
Կորիցէ՞ միշտ ի նոցունց գայլ։
Ի զուր հաշուիմ։ Քան ըզհազար էին նոքա.
Զանաւ յինէն հէքն իմ Ռոպէն։
Ռոպէն իմ խոյ, որ ընդ քաղաքն
Գայր զիմ կընի վասըն սակաւ միոյ հացկան.
Նա եւ գայր իսկ ըզկընի իմ մինչեւ ի ծագ իսկ աշխարհի։
Եղո՜ւկ, դընէր նա ունկն իմոյ տըկլին ձայնի.
Ի հարիւր քայլ հեռաստանէ ըզգայր թէ գամ։

Աւա՜ղ քեզ, խոյլ իմ եղկելի։»
Երբեւ հովիւըն կատարեաց,
ասեն, զիւր ճառ ըղձեռելոյն,
Եւ զյիշատակ խոյին գործեաց հուշակաւոր,
Առ համօրէն հօտըն խօսի,
Առ գլխաւորս, առ բազմութիւնն,
առ զառն անգամ կըրտսերագոյն,
Տըւեալ խըրատ կալ հաստատուն։
«Վանել ըղձայլն,» ասէ, «այս իսկ է բաւական։»
Երդուեալ յիւրեանց պատիւ ոչխարքըն խոստացան
Եւ ոչ մի ոտըն նահանջել։
«Խեղդեմք,» ասեն, «մեք զորկորեայն
Որ հան ի մէնջ ըզՐոպէն խոյ։»
Իւրաքանչիւր երդնու յիւր գլուխ։
Հաւատացեալ հովուին նոցա՝ արար ճաշ մեծ։
Այլ գիշերոյն չեւ էր հասեալ,
Յարեաւ աղմուկ.
Երեւեցաւ գայլ մի, եւ հօտն անդէն փախեաւ.
Այլ չէր նա գայլ, ըստուեր միայն էր այն գայլոյ։
Այկ վատասիրտ զինուորաց ճառ.
Խոստանան քեզ գործել նախճիրս.
Այլ արութիւն նոցա ցնդի ի հասանել անդ վըտանգին.
Ոչ օրինակ եւ ոչ խրախոյս ունել ըզվատըն չեն ատակ։



# ԳԻՐՔ ՏԱՍՆԵՐՈՐԴ

## ԱՌԱԿ Ա.

*Մկունաք երկու, Աղուէս եւ Ձուն.*

*4—4*

*Խօսք առ տիկին Սապլիէր:*



Իրիս, ըզքեզ գովէի ես.
դիւրին է այս.
Այլ մերժեցեր դու բիւր անգամ
ըզխունկըս մեր.
Յայսմիկ ոչինչ նըման ես դու
այլոց մարդկան,
Որ հանապազ են ի խնդիր
Նոր դրուատեաց:
Ոչ ոք նիրհէ ի սոյն աղմուկ ողոքանաց:
Ոչ պարսաւեմ ես ըզնոսա.
համբերեմ այնըմ խառնուածոյ.
Հասարակաց իմն է այն դից,
Թագաւորաց, կնոջ գեղեցկի:
Ըմպելին այն յարգեալ գովեալն ի պւետէից,
Այն է՝ նեկտար զոր պաշտեն տեառն փայլատականց,
Եւ որով տամք մեք արբենալ դից աշխարհիս,

Գովութիւնն է, Իրիս. այլ քեզ չէ այն հաճոյ.
Ա՛յլ բանք առ քեզ ունին քաջիկ զնորա տեղին.
Բանք, տուրեւառք հաճոյականք.
Ուր ըստ դիպաց ընծայանան իւրովի ճառք ազգի ազգիք.
Մինչեւ ի քո խօսելն ընդ մեզ,
Թարմատարք եւըս գան ի մէջ,
որոց աշխարհ ոչ հաւատայ:
Թողցուք զաշխարհ եւ ըզհաւատըս նորա եւս:
Ե՛ւ թարմատարք, եւ գիտութիւն,
Ե՛ւ առասպելք, եւ ոչինչն իսկ,
ամենայն ինչ լաւ է. պնդեմ
Զամենայնէ պարտ է խօսել.
Խօսք են ածուք ուր փըլորայն սփռէ զիւր գոյս:
Ի համասպրամն ծաղկանց վերայ նստի մեղուն,
Եւ գործէ մեղր յամենայնէ:
Եդեալ զայս հիմն՝ մի դիցես մեզ,
Եթէ յառակսըս յայսոսիկ խառնեմ ինչ բանս
Իմաստասէր կոչեցելոց.
Նուրբ, յանկուցիչ, նորօրինակ:
Նուրբ կոչին այն բանք, թէ իցէ քո, թէ չիցէ
Յըղեալ երբեք: Արդ, ըստ նոցա
Անասունն է լոկ մեքենայ,
Ուր ամենայն գործի յանդէտս եւ ինքնօրէն.
Ո՛չ ազդումն ինչ եւ ոչ ոգի, ամենայն է ի նմա մարմին:
Որպիսի ինչ է ժամացոյց մեր որ գընայ
Միշտ հաւասար ոտիւք, կոյր իմն եւ անխորհուրդ:
Այլ բաց ըզնա եւ ընթերցիր ի ծոց նորա:
Անիւք բազումք ունին անդէն զտեղի ոգւոյն տիեզերաց:
Առաջինն անդ շարժէ զերկրորդն,

Միւս եւս երրորդ գայ զհետ նորա,
մինչեւ յետոյ ուրեմն հնչէ։
Պէս զայս գունակ է անասունն, ասեն նոքա։
Ի մասին ինչ նորա ինչ մի գայ հարկանել.
Մասն այն հարեալ երթայ ուղիղ,
Ըստ մեզ, տանել լուր առ դրացին։
Զգայունն անդէն տակաւ տակաւ առնու ըզլուրն։
Լինի ազդումն, սակայն զիմրդ։
Ի հարկէ իմն, ասեն նոքա,
Առանց կարեաց, առանց կամաց
Ըզգայ յուզեալ զանձն անասունն
Ի շարժմանց զոր կոչէ ռամիկն
Վիշտ, խնդութիւն, հաճութիւն, սէր,
եւ ցաւ սաստիկ,
Եւ կամ այլ ինչ սոցին նման։
Սակայն չէ այս միայն. մի՛ ինչ խաբէք զանձինս։
Զի՞նչ իցէ այն։ — Ես ժամացոյց։
— Իսկ մեք. այլ ինչ։
Տես որպիսի օրինակաւ մեկնէ Տեքարդ.
Տեքարդ, ասեմ, մահկանացուն
այն որ յաստուած փոխէր թերեւս
Առ հեթանոս ազգօք, եւ է նա միջին իմն
Ընդ մարդ եւ ընդ ոգի, որպէս
եւ ընդ ոստրէ եւ ընդ մարդիկ
Են միջին իմն առ մեզ բազումք
որ չեն ընդհատ ինչ ի գլաստէ.
Տես, ասեմ, այլն այն իմաստուն զիմրդ խորհի։
Ի համօրէն շնչաւորաց, որդւոց Հաստչին,

Խորհելոյ ես լոկ ունիմ ձիր,
Նա եւ գիտեմ իսկ թէ խորհիմ։
Ապաքէն դու գիտես, Կրիս, ի գիտութեանց
Թէ անասունն յորժամ խորհի,
Այսրէն դառնալ չէ նա կարող
Ո՛չ անդրը յիրն, ոչ յիւր խորհուրդ։
Տեքարդ երթայ ուրս յառաջ, եւ պնդէ իսկ
Թէ անասունն ոչ խորհի բնաւ։
Ոչ վարանիս
Դու հաւատալ, եւ ոչ իսկ ես։
Սակայն յորժամ յանասունի անդ
Բարբառ փողոյն, բարբառ ձայնից,
Ոչ են տուեալ փախուցելոյ որսոյն դադար,
Ի զուր է նա զամենայն ջան եդեալ ի գործ
Յաղամողել եւ շփոթել ըզճանապարհն,
Անասունն այն անցեալ վաւուրբք,
եղջերու ծեր, տասնեղջերեայ,
Փոխանակէ միւս եւս մատաղ
ընդ իւր, եւ բուռն առնէ նորմա
Մատուցանել շանց նոր հրապոյր։
Ո՛վ, զի՞նչ հանճար ի պահպանել զաւուրըս իւր։
Յետըս դառնալ, նենգութիւն, խաղ,
Խաբել, բիւր դաւ պատերազմի,
Արժանի քաջ զօրավարաց, արժանի լաւ եւըս բախտի։
Այլ յետ մահուն յօշեն ըզնա.
Այս է նորմա յետին պատիւ։
Յորժամ կաքաւ
Տեսանիցէ ի տագնապի
Ըզմանկունս իւր որոց փետուրքըն դեռ են նոր,

Եւ չեն կարող խուսել ընդ օդս ի մահուանէ,
Կերպարանի նա վերս առեալ,
Եւ գայ ի քարշ թեւովք իւրովք,
Զգեալ զօրսորդն եւ ըզշանին ըզկընի իւր.
Այսպէս ըզվտանգըն դարձուցեալ՝ զիւրսըն փրկէ.
Ապա իբրեւ կարծէ որսորդըն թէ շուն իւր եհաս կալաւ,
Թռչունն առնու հրաժեշտ. թռուցեալ
ծառը առնէ նա
Զայրն որ յամօթ լեալ զհետ նորա պըշուցեալ կայ։
Աչինչ հեռի ի հիւսիսոյ գոյ աշխարհ մի,
Ուր գիտեմ թէ բնակիչք երկրին
Կեան որպէս թէ ի նախնի դարս
Յանհրընարին տըգիտութեան։
Զմարդոց խօսիմ. զի անասունք
Կանգնեն շինուածս
Ընդ արգելուլ ըզհեղեղաց յորդելոց զոյժ,
Եւ գործել անցս ի միջէ եզրէ ի միւսն։
Ողջոյն շինուածըն կայ տեւէ։
Յետ փայտեղէն խշտւոյ միոյ է միւս խշտի ի շաղախէ։
Իւրաքանչիւր շնջրի գործէ. հասարակաց է սակ գործոյն.
Որ ծերն է տայ մանկագունին գընալ անդուլ.
Ճարտարապետք բազում են անդ. վարեն ըզգործն.
Պըղատոնեան քաղաքացիք
Չեն աւելի քան աշակերտք
Առ այսոքիւք երկակենդան շնչաւորօք։
Գիտեն նոքա ձըմեռանի կանգնել զիւրեանց
բընակութիւնս.
Եւ ընդ ծովակըս կամրջօք անցեալ գընան,
Գործ հանճարեղ, ճարտարութեան նոցա արդիւնք.

Ի զուր տոհմ մեր ըղձանշանայ,
մեր բովանդակ գիտութիւն ցարդ
Էր անցանել ընդ ջուրս ի լեւղ:
Թէ շնջրիս այս ոչ այլ ինչ է
բայց ի մըտաց թափուր մարմին,
Ո՞ կարիցէ բռնադատել զիս հաւատալ:
Սակայն քան զայս աւելին է. լուր զոր ասեմս.
Ես առնում զայն ի մեծայաղթ թագաւորէ:
Պաշտպանիճն այն հիւսիսոյ եղեցի ինձ երաշխաւոր.
Կամիմ ասել, թագաւորն այն
որ սիրելին է Յաղթութեան.
Որոյ անունն իսկ է ընդդէմ
մեծի իմիք պետութեան թումբ.
Սա է արքայն Պօլոնեացւոց: Թագաւոր ոչ ստէ երբեք:
Արդ՝ ասէ սա, առ սահմանօք երկրին իւրոյ,
Ազգք անասնոց ի վաղուց իսկ
ունին կըռիւ ի մէջ իւրեանց.
Երիւն որ գայ ի հայց յորդիս
Զպատճառ կռուոցըն նորոգէ:
Այս անասունք, ասէ, եղբարք են աղուիսուն.
Երբեք ճակատ այնպիսի մեծ ճարտարութեամբ
Չէ յարդարեալ ի մէջ մարդկան,
Ոչ ի դարուս իսկ յորում կեամք.
Յառաջապահ գունդք, դէտք, լրտեսք,
Դարանակալք, գունդք պահեստի,
բիւր հայթայթանք
Վնասակարն եւ անիծեալ ճարտարութեան,
Դստեր Ստիւքսի, մօր դիւցազանց,
Հրահանգեն զայնց անասնոց

Հասարակաց բան եւ ըղփորձ:
Առ երգելոյ ըղպատերազմ նոցա պարտ էր Աքերոնի
Ըղձոմեր տալ մեզ: Ո՛հ, թէ տայր.
Եւ եթէ տայր եւըս զօտին Եպիկուրեայ,
Զի՞նչ ասելոց էր վերջինս այս զօրինակաց,
Եթէ ոչ զոր եսն ասէի, թէ յանասունըն բընութիւն
Տայ յանդէտս իմըն կատարել զայն ամենայն.
Թէ ուշ մըտաց է մարմնեղէն,
Եւ թէ յաղագս ազգի ազգի զարմանալեաց
Զորս յառակիս յայսմիկ յիշեմ,
Պէտս անասունըն ունի ուշոյ իւրում միայն:
Իսկ յորժամ գայ այսրէն, երթայ ի մթերանոց
Նորա խնդրել, ըստ նոյն շաւիղ,
Զպատկերըն վաղ իսկ նըկարեալ,
Որ եւ նովին ճանապարհաւ գայ միանգամ նըմանապէս,
(Խորհուրդ բընաւ չունի անդ գործ)
Նըմին նըման ազդեցութեան լինել պատճառ:
Բայց մեք գործեմք ա՛յլ օրինակ.
Որ տանըն մեզ առնել ինչ գործ՝ այն կամք մեր են,
Ո՛չ իրն եւ ոչ բընական ազդ: Խօսիմ, գընամ,
Ըզգամ յանձին զոմըն գործիչ.
Ամենայն է հնազանդ յիմում մեքենային
Գործչին այնմիկ բանաւորի:
Ուրոյն ինչ է այն ի մարմնոյ. է իրագէտ անձին իւրում,
Քաջ իրագէտ է քան մարմինն.
Է դատաւոր իրաւարար նա ամենայն շարժմանց մերոց:
Սակայն զիա՞րդ ազդի մարմինն ի նըմանէ:
Այս է խնդիրըն: Տեսանեմ ես զի գործիք

Հընազանդին ձեռաց: Այլ ո՞վ
է որ վարէ ըզձեռն ի գործ:
Բամբէ, ո՞վ այն է որ ուղղէ
զերկինս, ըզգնաց նորա արագ:
Թերեւս հրեշտակ ոմն է վարիչ
այնչափ մարմնոց մեծամեծաց:
Արդարեւ կայ ի մեզ ոգի.
եւ շարժէ նա ըզկազմած մեր.
Գործ ի ազդումն, այլ թէ զինչ՝ չեմ ես տեղեակ.
Ուսցուք մեք զայն ի ծոցի անդ աստուածութեան:
Եթէ խօսել ըզճշմարիտն իցէ արժան,
Տէքարդ եւս էր անգէտ սըմին.
Մեք եւ նա եմք յայդմ հաւասար.
Զոր ինչ գիտեմն է այս, Իրիս, զի յանասունս
Յորոց բերի ես օրինակ,
Ոչ գործէ այն ոգի. տաճար
նորա միայն եմք մեք մարդիկ:
Սակայն պարտ է տալ անասնոյն աւելի ինչ
Յորմէ անմասն են տունկ եւ բոյս:
Թէպէտ շունչ իմն ունի եւ տունկ:
Բայց զի՞նչ տացեն պատասխանի
այնըմ զոր արդ ասելոց եմ:
Մըկունք երկու խնդրեն պարէն,
եւ գըտանեն յանկարծ ձու մի:
Այն կերակուր էր բաւական երկուց նոցա,
Չէր ինչ նոցա պիտոյ այլջաւ:
Լի՝ ախորժիւ եւ խնդութեամբ
Երթան նոքա, իւրաքանչիւր
ի ձուոյ անտի ուտել զիւր մասն,

Մինչ հանդիպի ոմըն նոցա. աղուէս էր այն:
Վարանեցան մըկունքն ընդ այս.
Զխարդ փրկել մարթ էր ըզձուն. Ծըրարեալ քաջ
Ապ՝ առաջոյ ոտիւք սանե՞լ ի միասին,
Թէ թաւալել եւ կամ քարշել:
Անհընարին էր այս, նա վտանգ եւս էր ձըւոյն:
Թելադրէ հարկն
Նոցա հընարս ինչ հանճարեղ,
Եւ զի յիւրեանց ոչ հասանել էին կարող,
Եւ հացկատակն էր ի բացեայ
իբրեւ չորիր մասըն մղոնի,
Մին ի թիկանց վերայ անկեալ
ի մէջ բազկացն ունի ըզձուն.
Եւ ապա մերթ ընդհարեալ, մերթ օձտելով իմն,
Միւսըն ձըգէ ըզնա յագւոյն:
Թող սասացեն յետ պատմութեանս,
Թէ անասունք չունին հանճար
Իսկ ես ահա իշխեմ ասել.
Ունին նոքա հանճար, որպէս եւ մանկտին մեր:
Ո՞չ ապաքէն խորհին սոքա
յիւրեանց մատաղ տիոց անտի:
Ապա լինի խորհել, թէեւ այն որ խորհի չէ [illegible]ագէտ:
Զայս օրինակ
Տամ [illegible]նաանոյ
Հանճար, թէպէտ ոչ իբրեւ մե[illegible].
Բայց աւելի քան կոյր գործի:
Գտանեմ ըզնիւթն այնպէս անօսր
Զոր չիցէ մարթ ի միտ առնուլ բայց դժուարաւ.

Ուղեղ եւ ծուծ անհատ
մարմնոց, պարզուած լուսոյ,
Ինչ մի, ասեմ, որ սատակագոյն եւ շարժնագոյն
Է քան ըղձուլ. քանզի եթէ փայտ առնէ բոց,
Բոցըն պարզեալ չըկարիցէ՞ մեզ ըղձոգւոյ
Տալ զօրինակ. ո՞չ ապաքէն եւ ոսկին իսկ
Գայ յընդերաց կապարի յայտ։
Չէ՞ մարթ այնըմ բոցոյ լինել
Եւ ըղձայուն ինչ, եւ դատող. աւելի ինչ ո՛չ է պիտոյ.
Դատող, ասեմ, փոքր ի շատէ.
Կապիկ անգամ չէ բաւական
դոյզն ինչ խորհուրդ յայտնել երբեք։
Որ ինչ է վսեմն մեր մարդկան,
Ըզվիճակ մեր գըտանեմ ես լաւագոյն յոյժ։
Ո՞չ ունիմք մեք գանձըս կրկին,
Մին հոգին զոր ունին մարդիկ առհասարակ,
Ըզգօն, անմիտ, մանուկ, տըխմար,
Եւ որչափ ինչ են յաշխարհի
հիւլք շնչաւոր անուամբ ծանօթք։
Միւսն է նոյնպէս հոգի, եւ մեզ, եւ հրեշտակաց
Աստիճանաւ իմն հաւասար։
Եւ սոյն այս գանձ ստեղծեալ ուրոյն,
Երթիցէ զհետ յօդըս վաշտուց երկնաւորաց,
Մտցէ ուրեք բռնաբարեալ ոչ յումեքէ։
Վախճան երբեք չունի, թէպէտ ունէր ըսկիզբն։
Ճշմարիտ է այս արդարեւ, այլ նորաքանչ։
Յորչափ տեւէ տըղայութիւն,
Այս դուստր երկնից ի մեզ չէ այլ,
Բայց աղօտ իմն եւ տըկար լոյս.

*Յորժամ գործին զօրանայցէ, բանըն ծակէ*
*Զխաւար նիւթոյն*
*Որ միշտ պատէ*
*Ըզմիւս հոգին թերի եւ թանձր։*

---

# ԱՌԱԿ Բ.

## *Մարդ եւ Օձ. 4—4*

*Այր ոմն, ասեն, տեսեալ օձ մի,*
*«Ընզգամ դու,» ասէ, «ահա առնեմ գործ մի,*
*Որ հաճեսցէ զամենեսին։»*
*Յայս բան դժնեայն այն շնչաւոր*
*(Զօձէն, ասեմ,*
*Ոչ ըզմարդոյն, որպէս դիւրին իմն է կարծել,)*
*Յայս բան օձն այն լեալ ձերբակալ,*
*Եւ նըւաճեալ արկաւ ի պարկ,*
*եւ որ քան զայս չարագոյն է,*
*Հատաւ վըճիռ զի մեռցի նա,*
*Թէ իցէ, թէ ոչ մեղապարտ։*
*Այլ զի պատճառս ինչ ցուցցէ այրն,*
*Խօսի առ նա զայս օրինակ։*
*«Դու, նըշանակ ապաշնորհաց. որ ողորմին չարագործաց՝*
*Է յիմար մեծ. մեռիր ուրեմն.*
*ստամբութիւն քո եւ ժանիք*
*Ոչ երբեք ինձ վնասել կարեն»։ Օձն յիւր բարբառ*
*Պատասխանի ետ ըստ կարի.*
*«Դատապարտել եթէ պարտ էր*

Զամենայն անձն ապաշընորհ յաշխարհի աստ,
Ո՞ւմ ումեք մարթ էր մեզ ներել։
Դու իսկ ըզքեզ դատապարտես. առնեմ ինձ հիմն
Զքո իսկ ուսումն, հայեաց դու զամ մի յանձըն քո։
Իմ կեանք են արդ ի ձեռըս քո. արդարութիւն
Քո են շահ քո, համոյք եւ քիմք.
Ըստ օրինացս այսոցիկ զիս պարտաւորեա.
Թող տուր սակայն զի համարձակ
Ի մեռանել իմում գոնեա ասացից քեզ,
Թէ նըշանակ ապաշնորհաց
Չէ օձ, այլ մարդ։” Այս բանք օձին
Կասեցուցին զայրն. ընկրկի նա վայրկեան մի։
Յետոյ կրկնեալ ասէ. “Բանք քո են ընդունայն.
Կարեմ վճռել, քանզի է այս իմ իրաւունք.
Այլ կացուսցուք զայլ ոք միջնորդ։”
“Բարւոք,” ասէ ցընա զեռունն։
Անդ էր կով մի. կոչեն եւ գայ։
Իբրեւ բերաւ խնդիրն ի մէջ, “Դիւրին է այդ,”
Ասէ երինջն, “եւ զի՞ պիտոյ
էր կոչել զիս վասն այսորիկ։
Արդար են բանք օձիդ առանց աչառութեան.
Սընուցանեմ ես զայրըդ զայդ
աստ ի բազում ամաց հետէ.
Առանց իմոց բարեաց չանցոյց նա ոչ մի օր.
Վաստըն նորա է ամենայն. կաթն իմ եւ որթք
Տան նըմա միշտ դառնալ ի տուն իւր լի ձեռօք։
Նա եւ ես իսկ հաստատեցի
զառողջութիւն նորա զոր ամք
Իւրն եղծեալ, եւ իմ վաստակք

Չունին այլ կէտ նպատակի,
բայց ըզհաճոյս նորա եւ պէտս։
Համառօտ իսկ, ահա եմ ծեր,
եւ թողու զիս յանկեան ուրեք
Առանց խոտոյ. եթէ երթալ
արածել ինձ թողոյր գոնեա.
Բայց աւանիկ կապէ իսկ զիս. եթէ երբեք ունէի տէր
Օձ մի, միթէ հասուցանէ՞ր մինչեւ ցայս վայր
Զապախտիս իւր։ Զոր խորհէիս՝ ասացի արդ։"
Զարմացեալ առն ընդ այս վճիռ,
Ասէ նա ցօձն. "Իցէ՞ արժան
ինչ հաւատալ բանից դորա.
Բանդագուշի մըտակորոյսն։
Հարցցուք զայս եզն։" "Հարցցուք," ասէ
սողուն գազանն։
Արարին իսկ զոր ասացին։
Մատեաւ յառաջ եզնըն մեղմով։
Յետ զիրսն քաջ որոճալոյ ի միտըս իւր,
Ասէ. "Ի ջանս ամաց բազմաց
Ծանրատաղտուկ հոգոց տանիմք վասըն մարդկան.
Անցեալ անդուլ ընդ վաստակոց երկայն շըջան,
Որ զառածեալ զինքեամբ բերէ յարտորայս ձեր
Զոր ինչ Դեմետր ի պէտըս ձեր
եւ անասնոց ձերոց շնորհէ.
Եւ յետ այնչափ երկայնաձիգ աշխատութեան,
Ի հատուցումն ի ձէնջ ոչ այլ ինչ ընդունիմք,
Եթէ ոչ գան, շնորհս ինչ ոչ.
ապա յորժամ ծերանայցեմք,
Առնել պատիւ մեզ համարիք, եթէ զընել

Մերով արեամբ ըզքաւութիւն ի դից կամիք։„
Ի խօսել զայս եղին, ասէ այրըն «տացուք լռել, աղէ,
Բանաքաղիս որ տայ ձանձրոյթ.
Ճամարտակէ. թըւի եկեալ այսըր լինել
Ոչ դատաւոր, այլ դատախազ։
Մերժեմ ըզդա։„ Նառն ընտրեցաւ իրաւարար.
Սակայն եղեւ այս եւըս չար։
«Մեք,„ ասէր նա, «եմք ապաւէն
Ընդդէմ տօթոյ եւ անձրեւաց,
Նա եւ հողմոց բըքաբերաց.
Պարտէզք եւ դաշտք վասըն մարդկան
մեւք զարդարին.
Ոչ հովանի միայն առնեմք,
Ընդ պտղովք ոստք մեր կորանան. եւ փոխարէն
Բիրտ ոմըն գայ, տապալէ զմեզ. այս են մեր վարձք։
Թէպէտեւ մեք զողջոյն տարին տամք լիութեամբ
Ի գարնայնի՝ ծաղիկ, եւ միրգըս՝ յաշնայնի.
Ըզհովանի՝ յամարայնի,
ըզձմեռն՝ հեշտանս առ խարուկաւ։
Զի՞մ ոչ քշտէք զաւելորդ մեր,
առանց առնլոյ տապար ի ձեռն.
Թէ խառնուածոյ մերում թողուք,
կեամք մեք յերկար։„
Եւ զի ծանր էր առնըն մտանել ի պարտութիւն,
Ուստի կամէր նա օն թէ օն շահել զիւր դատ.
«Կարի նեխող եղէ,„ ասէ, «զի լուայ նոցա։„
Ընդէն եւ անդ եհար ըզպարկն օձիւն հանդերձ
Զօրմոյն մինչեւ եսպան ըզնա։
Այսպէս է միշտ առ մեծամեծս.

Ընդ արդար բանըս զայրանան. կարծեն նոքա
Թէ ամենայն իցէ ծընեալ
վասըն նոցա, անասուն, մարդ,
Որպէս եւ օձ:
Եթէ բանայ ոք ըզբերան,
Կարծի յիմար: Ընդունիմ զայս.
այլ զի՞նչ առնել իցէ արժան:
Խօսել հեռուստ, եւ կամ լռել:

---

## ԱՌԱԿ Գ.

*Կրայ եւ երկու Բադք. 4—4*

Կրայ մի էր թեթեւամիտ
Որ ձանձրացեալ յիւրմէ բունոյն,
կամէր երթալ ի տար աշխարհ:
Մըտադիւր իմն սիրեն մարդիկ զօտար երկիր.
Մըտադիւր կաղք ատեան ըզտուն:
Արդ բադք երկու որոց կըրայն
Զիւր գեղեցիկ խորհուրդ զեկոյց,
Ասեն ցընա, "Կարող եմք մեք հանել ըզքեզ:
Տեսանե՞ս դու զայդ լայն ուղի.
Բարձեալ տարցուք ըզքեզ ընդ օդս յԱմերիկա.
Բազում քաղաքըս տեսցես դու,
Եւ պետութիւնըս ոչ սակաւ,
ազգըս յոլովս, եւ շահեսցիս
Յազգի ազգի բարուց որոց լեցիս տեղեակ:
Այսպէս արար եւ Ոդիսեւս: Ոչ ոք յուսայր

Եթէ յայս միտս էր Ոդիսեւս:„
Կըրայն լուաւ բանից նոցա:
Եդեալ պայման, հաւքըն կազմեն նոր մեքենայ
Առնուլ տանել ըզկըրայն պանդուխտ:
Զող ընդ բերանն անցուցանեն խոտորնակի:
“Պինդ կալ,„ ասեն,
“եւ լեր ըզգոյշ տալ ճողոպրել:„
Ապա ունի իւրաքանչիւր բադ ըզմիոյ ծայրէ ձողոյն:
Թռանայ կըրայն, զարմանք ունին զամենեսին,
Տեսեալ զի գնայր զայսօրինակ
Անասունն այն ծանրախաղաց գաղտակըրիւն
Արշիռ ի մէջ երկուց հաւուց:
“Ըսքանչելի՛ք,„ գոչեն, “եկայք տեսանել յամպս
Օ՛ի անցանէ տիկին կըրայն:„
“Տիկի՛ն,„ ասէ կըրայն, “այո՛,
կարի իսկ քաջ. եմ այնպիսի.
Մի՛ առնէք ծաղր.„ Լաւ եւս առնէր,
Եթէ երթայր զիւր ճանապարհ
առանց բընաւ ասելոյ ինչ:
Քանզի բացեալ ըզբերան իւր,
իբրեւ ըզձողըն թողացոյց,
Անկեալ յերկիր ջախջախեցաւ
անդէն առ ոտըս տեսողաց.
Անմըտութիւնն եղեւ պատճառ զի կորեաւ նա:
Անհանճար միտք, շաղփաղփութիւն եւ սին պարծանք,
Եւ գիտելոյ ունայն տենչանք
Ունին անձուկ խընամութիւն մին ընդ միւսոյն,
Նա՛, են որդիք միոյ մեկնակ ազգատոհմի:

---

# ԱՌԱԿ Դ.

*Ձկունք եւ ճայ. 4—4*

Ուր գոյ ծովակ անդ մօտ ուրեք
Յորմէ չառնոյր հարկըս ճայ մի։
Ամենայն լիճ եւ աւազան ձըկանց տային նըման բաժին.
Խոհակերոց ունէր բարուք. իբրեւ տիոց երկարութիւն
Սառոյց ըղհէքըն զանասուն,
Վատթարացաւ խոհակերոցն։
Ամենայն ճայ է իւրուրոյն հազարապետ.
Մերըն սակաւ մի կարի ծեր ոչ տեսանէր ի խորըս ջուրց.
Եւ զի չունէր ցանց կամ արձըլ,
Կըրէր սով մեծ։
Զի՞նչ արար նա։
Պէտք վարդապետ հայթայթանաց,
Նոր իմն հընարըս թելադրեն։
Զափամբ միոյ ծովակի նա
Ետես յանկարծ խեցգետի մի։
«Եղբա՛յր,» ասէ, «երթ փոյթ ընդ փոյթ
Տանել զայս լուր կարեւոր յոյժ
Ազգին այնմիկ եթէ կորուստ կայ մօտալուտ։
Զի տէր տեղւոյս յետ ութ աւուրց ելցէ որսալ։»
Արդ խեցգետին երթայ փութով
Ազդ առնել զիրն։ Յառնէ աղմուկ.
Աճապարեն, գան ի մի վայր, յըղեն պատգամ
Առ թռչուն մեր, «Տէր ճայ,» ասեն,
Ուստի՞ համբաւդ այդ եկըն քեզ. ունի՞ս վըկայս.
Իցե՞ս զիրաց այտի վստահ։

Գիտե՞ս դարմանս, եւ զի՞նչ առնել պարտ իցէ մեզ :»
«փոխել զտեղիդ,» ասէ: «Օխա՞րդ,»
ասեն, «առնել մարթ է մեզ զայդ:»
«Մի ինչ հոգայք,» ասէ ցնոսա
ձայն. «Ես ինքնին տարայց ըզձեզ
Մի առ մի անդըր յիմ դադար:
Աստուած եւ ես միայն գիտեմք ըզճանապարհն.
Չիք ինչ տեղի քան զայն անքոյթ:
Լիճ մի է այն զոր բընութիւն ինքնին փորեաց.
Ընծանօթ է մատնիչ մարդկան.
Այն փրկեսցէ ըզժողովս ձեր:»
Հաւատացին նըմա, եւ ազգն այն ջըրական
փոխեցաւ անդըր մի առ մի,
Յապառաժուտ յանկոխ տեղին:
Ընդ առաքեալ մեր ճայ թռչուն
Արկ ըզնոսա ի ծովակ մի,
Յստակաջուր, ծանծաղ եւ նեղ,
Ուր չէր նըմա դժուարին ինչ զնոսա որսալ օր ըստ օրէ:
Ուստի նոցա վնասուն իւրեանց
Թէ չէ արժան լինել վստահ
Յայնս որ իցեն կերող այլոց:
Այլ կորուսին նոքա սակաւ, զի ազգ մարդկան
Էր ուտելոց ի նոցանէ ըզբարուոք մասն:
Չէ փոյթ թէ ով կերիցէ զիս,
մա՞րդ եթէ գայլ. ամենայն փոր
Յայսմիկ վասն իմ է հաւասար.
Աւուրբ միով կանուխ, եւ կամ
Թէ անագան աւուրբ միով,
Չէ խնդիր մեծ:

---

# ԱՌԱԿ Ե.

*Ագահն որ թաղէ զարծաթ, եւ Ընկեր նորա. 4—4*

Այր ոմն ագահ մանրակծծի դիզեաց այնչափ,
Մինչեւ թէ ուր դիցէ զարծաթ իւր ոչ գիտէր։
Ագահութիւն ընկեր եւ քոյր տըգիտութեան,
Հարկ ըզնա ի մեծ վարանս
Յընտրել զոք իւր աւանդապահ,
Զի խնդրէր նա այնպիսի ոք. ահա պատճառն.
«Ինչք», ասէր նա, «են փորձութիւն.
եղծանիցի անշուշտ այս կոյտ,
Եթէ թողում ըզնա ի տան։
Իմոց ընչից ապաքէն ես ինքն եղէց գող։»
Գո՜ղ. բա՜բէ, զի՞նչ, վայելել է՞ գողանալ զիւրն։
Ընդ վըրիպանըս քո այդ մեծ
արգահատեմ ես, բարեկամ։
Ուսիր յինէն դու զայս խրատ.
Ինչք չեն բարիք թէ ոչ յորժամ հանես ի քէն.
Ապա թէ ոչ չարիք են այն։ Կամի՞ս պահել դու ըզնոսա
Վաղըն տիոց, ժամանակաց որոց չեն այնք պիտանացու։
Ըստանալոյ տառապանք, հոգ պահպանելոյ
Բառնան ըզգլին յոսկւոյ, զոր մարդ
կարծէ յանչափըս կարեւոր։
Առ ազատել զանձն ի հոգոց
Այրն այն կարէր գըտանել զոք հաւատարիմ.
Այլ նա ընտրեաց զերկիր, եւ զոմն էառ ընկեր
Օգնել նըմա, եւ թաղեցաւ զանձն ի գետնի։
Յետ աւուրց ինչ այց արար այրն ոսկւոյ իւրում,

Եւ ըստամբքն եղեւ զատարել:
Կատաղեալ նա, եւ յերդուեալ,
զօգնականն էն, խոյս երթայ
Առնել զայն. 'Նենգեր զատաղատատ զի Ահան առ իս
Դարձեալ կանք ինչ. բայց նա եւս
եկ խառնեցաք ընդ սառուցեալն:
Ընկերն խոյս երթայ դնել յերկուս առեալ
Զարմացեալ գոլ էր զարձեալ. զի խորհեցաւ
Իջուցանողաքն առնուլ ապարէն,
զի մի ինչ ընդ ապականիցէ:
Այլ զայս նուազ միւսոյն վարի իմաստութեամբ:
Ա՛ռ զամենայն արծաթն առ իւր,
եդեալ ի միտս իւր վայելել.
Ոչ կուտել ինչ, եւ ոչ թաղել:
Իսկ թշուառ գողն ոչ ժամանեալ որում յուսայրն,
Անդէն ի կոր կործանեցաւ:
Արդարեւ հեշտ իմն է խաբել զայր խաբեբայ:

---

## ԱՌԱԿ Զ.

*Գայլ եւ Հովիւք. 4—4*

Գայլ մի որ էր մարդասէր յոյժ,
(Եթէ իցէ յաշխարհի աստ գայլ այնպիսի)
Յաւուր միում նստեալ ընդ իւր անգթութիւն,
Թէպէտ չառնէր դժնդակ ինչ բայց ի հարկէ,
Մտախոհ զանձն իւր մեղադրէր:
“Ատելի եմ,” ասէ, “եւ ո՞ւմ: Ամենեցուն:

Գայլն համարեալ է թշնամի հասարակաց.
Շուն եւ որսորդ եւ շինական
փութան ըզնա կորուսանել,
Մինչեւ խռովել Արամազդայ յաղմուկ նոցա։
Այս է պատճառ զի Անգղիա ամայացեալ է ի գայլոց.
Անդ որ բերեն ըզգլուխ գայլոյ ընդունին վարձս.
Չիք անդ իշխան որ ոչ իցէ
Հանեալ ըզմեզ վըտարանդիս յերկրէ իւրմէ.
Չիք անդ մանկիկ յորոյ ի լալն
Չըսպառնայցէ անդէն եւ անդ մայր նորա գայլ։
Այս ամենայն վասըն քստո իշոյ միոյ,
Շարաւահոտ ոչխարի, շան ժանտացելոյ,
Որովք ըզքաղց մեր հարկանել համարիմք շատ։
Բայց եւ այնպէս ոչ կերիցուք
այսուհետեւ շունչ կենդանի.
Կերիցուք խոտ, ճարակեսցուք,
նա՛ սովամահ եւըս լիցուք։
Իցէ՞ ինչ այս անագորոյն.
Սակայն ըզհեռ ամենեցուն
կորզել իցէ՞ քան զայս բարւոք։„
Յասելըն զայս ետես հովիւս ի ճաշ բազմեալ,
Որ ուտէին ըզմիս գառին խորովելոյ։
“Բա՛բէ,„ ասէ, “մինչ ես անձին եմ մեղաւոր,
Զի զայնր ազգի զարիւն հեղի,
այս պահապանք ահաւասիկ
Ճարակին զայն, ինքեանք եւ շունք եւըս նոյա։
Եւ ես որ եմ գայլ խղճիցե՞մ։
Ոչ, ոչ, երդուեալ ի դիս զի ոչ եղէց ես ծաղր։
Ընդ կոկորդ իմ անցցէ ամիկ,

Առանց բընաւ արկանելոյ զնա ի խորովս.
Եւ ոչ միայն նա, այլ եւ մայրն յորմէ դիէ,
Եւ որ ծընաւն ըզնա հայր իւր։„
Արդար էր դայլն։ Մինթէ միայն մե՞զ է օրէն
Զամենայն որս առնել խորտիկ
Եւ զանասունս ուտել, փոխեալ զամենեսին
Ի կերակուրս դարուն ոսկւոյ որչափ մարթ է,
Յորժամ չէր կարթ եւ ոչ կաթսայ։
Հովուք, հովուք, գայլ ոչ երբեք է անիրաւ,
Բայց յորժամ չէ հըզօրագոյն.
Կամիք եթէ կեցցէ որպէս միայնակեա՞ց։

---

## ԱՌԱԿ Է.

*Սարդ եւ ծիծառն. 4—4*

«Ո՜վ Արամազդ, որ գիտացեր յուղղոյ քումմէ
«Նոր ինչ գաղտնեօք որդեծնութեան
Հանել զՊաղղաս[159] որ թշնամի էր ինձ վաղուց,
Լուր զիմ տրտունջ այս մի անգամ ի կեանըս քո։
Պրոգնէս[160] եկեալ առ իս հանէ յինէն նշխարս.
Շուրջ յածելով տայ խորշոմել օդոյ եւ ջուրց.
Կայ առ դըրան իմում, ըզճանճս իմ ըմբռնէ.
Զիմ ճանճս, այո. եւ ոստայն իմ
Լընոյր նոքօք, թէ անիծեալն այն թռչուն չէր։
Ես անկանեմ զայն ի նիւթոյ որ պինդ է յոյժ։„
Այսպէս բանիւք յանդգնութեան
Տրտնջէր սարդ որ յառաջն էր օթոցարար,

Եւ ոստայնանկ եղեալ յայնժամ,
Մտաբերէր նա զամենայն
միջատ թռչուն պարաւանդել։
Փիլոմելայ[161] քոյրըն զօրով իւրով զբաղեալ,
Եւ զանանիկն արհամարհեալ՝
Ճանճըս կորզէր կտցաւ իւրով
Ձագուց իւրոց կեր, եւ վասն իւր
ուրախութիւն անագորոյն,
Մինչ որկորեայ մանկունք նորա բացաւ կտցով,
Կիսով ձայնիւ, նոր ձագք որ դեռ թոթովէին,
Եւ ի գոչիւն դժուարալուր խնդրէին կեր։
Թռչուառըն սարդ որոյ ոչ այլ ինչ էր մնացեալ
Բայց գլուխ եւ ոտք, արուեստագէտք անկարեւորք,
Նոյն եւ զանձն յափշտակեալ.
Յանցանելն իւր ծիծառն առեալ
տարաւ զոստայն եւ զամենայն.
Զանասունն իսկ կախեալ զծայրէն։
Երամազդ վասն անցնիւր ջոկոյ
երկուս սեղանըս կանգնեալ է.
Որ յաջողակ, արթուն եւ բուռն ոք է՝ նստի
Առ առաջնոյն. իսկ փոքրագոյնք
Առ երկրորդին ըզմընացորդ նոցա ուտեն։

---

## ԱՌԱԿ Ը.

*Կաքաւ եւ Աքաղաղ. 4—4*

Ի մէջ ոմանց յաքաղաղաց որ էին բիրտք եւ անհամբոյրք
Միշտ յաղմկի եւ խռովութեան,
Կաքաւ մի եւըս սընանէր:
Լինել նորա էգ, եւ հիւր եւս,
Տայր նըմա ակն ունել բազում մեծարանաց
Յաքաղաղաց որ միտագոյն են ի տարփանս.
Նա եւ պատիւ տանտիկնութեան նմա էր վայել:
Սակայն այն ջոկ որ կատաղեալն է ի բընէ,
Եւ զի չառնէր շուք երեսաց օտար տիկնոջն,
Բազում այն էր զի հարկանէր ըզնա կտցաւ:
Տխրէր կաքաւն ի սկըզբան անդ
Սակայն իբրեւ ետես ըզխումբըն կատաղեալ,
Զի ընդ միմեանըս գոռային, զիրերաց կողս ծակոտէին,
Ըսփոփեցաւ: "Այս են նոցա բարք," ասէ նա.
"Մի՛ մեղադիր լերուք նոցա,
Նա՛ գըթասցուք իսկ մանաւանդ:
Որմիզդ միով օրինակաւ
Զարար զոգիս ամենեցուն:
Այլ է բնութիւն աքաղաղի, այլ՝ կաքաւի:
Եթէ յիմ ձեռս էր, կամէի անցուցանել ես ըզկեանս իմ
Յեւըս բարւոք ընկերութեան:
Որ տեղւոյս տէրն է՝ այլ իմն ազդ հրամայէ
Նա ըմբռնէ ըզմեզ վարմիւ

Եւ տայ բնակել ընդ աքաղաղս,
եւ հատանէ ըզթեւըս մեր.
Զմարդոյն միայն արժան է մեզ տրտունջ լինել:

---

## ԱՌԱԿ Թ.

*Շուն զորոյ կտրեն զականջս. 4—4*

Զի՞նչ արարի զի տեսանեմ ես զիս այսպէս
Յիմմէ տեառնէն իսկ յապաւեալ:
Գեղեցիկ բախտ ինձ աւասիկ:
Յանդիման շանց այլոց իշխե՞մ ես երեւել:
Ո՜վ թագաւորք դուք անասնոց,
կամ մանաւանդ թէ բռնակալք.
Իցիւ ըզնոյն առնէր ոք ձեզ:
Այսպէս գոչէր Մուֆլար, մանուկ
շուն, մինչ որեարն
Ոչ գըթացեալ ընդ կոծ նորա ողորմ եւ սուր,
Զականջըս շանն հատին ի բաց:
Մուֆլար կարծէր թէ կորոյս ինչ.
սակայն յետոյ ուրեմն ետես,
Եթէ բազում ինչ էր շահեալ, զի ի բընէ եղեալ նորա
Առ նըրմանիս իւր սէգ եւ վէս,
եթէ յանկարծ՝ լինէր նըկուն,
Մարթէր դառնալ յիւր տուն այարէն
Մասամբն այնուիկ բազում ուրեք հերձատելով.
Շուն ժանտ բարուք ունի զականջ
պատառեալ միշտ:

Թագաւորն այն ետես հօտ մի
որ զամենայն դաշտըս ծածկէր.
Ճարակէր լաւ, առոյգ մարմնով,
որ եւ բերէր ամ ըստ ամէ,
Ընդ խընամով հովուին, բազում ինչ հաս եւ մուտ.
Հովուին եղեւ վաղըն փութոյն իւրոյ հաճոյ թագաւորին:
"Արժանի ես," ասէ արքայն,
"դու լինելոյ հովիւ մարդկան.
Թող ըղխաշինըս քո եւ եկ հովուել մարդոց
Կարգեցի զքեզ իրաւարար միահեծան:"
Ահա հովիւ մեր ի ձեռին իւրում կշռորդ.
Թէպէտեւ չէր նորա տեսեալ բայց մենակեաց,
Ըզհօտ իւր, զիւր շանին, ըզգայլ, եւ ոչ այլ ինչ,
Սակայն ունէր նա առողջ միտս.
այլն ամենայն գայ զայնր ըզհետ:
Համառօտիւ, էր բաւական
նա զամենայն վըճարելոյ:
Դրացի նորա միայնակեացն աճապարեաց ասել ցընա.
"Իցե՞մ արթուն, թէ է երազ զոր տեսանեմ:
Սիրելիդ այժմ արքայի, մեծդ,
յայր թագաւոր մի վստահիր.
Շընորհ նոցա է յողդողդուն,
մի խաբիր. նա, որ չար եւս է,
Բազում վնասու լինիցի քեզ.
մոլորութիւնք այսօրինակ
Լինին պատճառք մեծ եղեռանց:
Ոչ ճանաչես ըզհըրապոյրն որ զքեզ պատրէ.
Խօսիմ իբրեւ բարեկամ քեզ.
‚յամենայնէ երկիր:" Այլ միւսըն ծիծաղէ.

Եւ մենակեացն յաւել ասել.
“Տես, արքունիք արդէն որչափ
նուազեցուցին ըզհանճար քո:
Թո՛ղ ինձ զայն կոյր տեսանել
որում յերթալն ի ճանապարհ,
Օձ ի ցրտոյ ընդարմացեալ
Եկն ընդ ձեռամբ. այրն համարի ըզնա մտրակ.
Կորուսեալ էր իւրն ի գօտւոյ նորա անկեալ:
Մատուցանէր շընորհս երկնից ընդ յաջող գիւտն,
Մինչ անցորդ ոմն աղաղակեաց:
‘Զի՞նչ է այդ զոր կալար, բարէ,
Ընկեա զգազանդ մատնիչ եւ ժանտ,
Զօձըդ:’, ‘Մտրակ է’, ասէ միւսն:
‘Ո՛չ’, կրկնէ այրն, ‘օձ է’, ասեմ:
Զի՞նչ օգուտ ինձ իցէ այսչափ խնամով հոգալ:
Կամի՞ս պահել ըզգանձըդ զայդ:’,
‘Եւ ընդէ՞ր ոչ’, ասէ այրն այն.
‘Իմ մտրակ էր հին եւ մաշեալ.
ազնըւագոյն քան զայն գըտի.
Դու պարսաւես առ նախանձու:’,
Համառօտիւ, ոչ հաւատաց նըմա կոյրն այն.
Սակայն ըզկեանս իւր կորոյս նա:
Սթափեալ գազանն ըզբազուկ առնըն հարկանէ:
Իսկ վասըն քո, համարձակիմ գուշակել քեզ,
Թէ չարագոյն քան ըզսա քեզ պատահեսցէ:„
“Եւ զի՞նչ կարէ,„ ասէ հովիւն,
“պատահել ինձ չար քան ըզմահ:„
“Բազում տագնապ հասցէ,„ ասէ միայնակեացն.
Եւ արդարեւ եհաս. միանձն ասաց ըստոյգ:

Բազում ժանտախտք յայքունիս անդ
առնեն այնչափ պէսպէս հնարիւք,
Զի պարզութիւն դատաւորին,
որպէս եւ մեծ վաստակ նորա
Յաչս արքայի կասկածելի
եղեն։ Գործի նենգ եւ յառնեն
Ամբաստանողք, եւ որոց էր
կրեալ վընաս վճռովք նորա։
“Յընչից մերոց,„ ասեն, “արար նա ապարանս։„
Ըզմեծութիւն նորա ամբաւ խնդրեաց արքայն,
Եւ զոր եգիտն էր չափաւոր.
Լըսէր յարգանս ի զըկելոց եւ յաղքատաց.
Ողբիմբք էր այն պայծառացեալ։
Այլք ասեն, “Ինչք նորա քարինք են պատուականք.
Արկղ ունի մեծ լցեալ անգին
ակամբք, փակեալ աղխիւք տասամբք։„
Բանայ նա զարկղն, առնէ յամօթ
Զորս էր ըզդաւն մեքենայեալ։
Ի բանալ անդ արկեղն արքայն եգիտ կապերտս,
Մեկնոցակ մի խաշնարածի,
Խոյր մի փոքրիկ, ներքնակ, մախաղ
եւ ցուպ հովուի,
Կարծեմ եւ տիկըն հովուական։
“Գանձք հեշտականք են,„ ասէր նա.
“զըրաւք սիրոյ որ ոչ երբեք
Կորզէք ի ձեզ նախանձ եւ դաւ.
Առնում ըզձեզ այսրէն. եկցուք
յայսըմ շըքեղ պալատանէ,
Որպէս յորժամ ելանիցէ ոք յանրջոց։

Տէ՛ր, ներեսջի՛ք ինձ զայս բարբառ.
Կանխաւ տեսեալ էի զանկումն
իմ յելանելս յայս բարձրութիւն։
Ընդ այս ուրախ եղէ կարի. այլ ո՞ չունի ի գլուխ իւր
Անապարծութեան հատ ինչ փոքրիկ։»

---

## ԱՌԱԿ ԺԱ.

*Ձկունք եւ Հովիւն որ հարկանէ սրինգ. 4—4*

Մինչդեռ Տիրկիս վասն Ընեդի
Տըւեալ հնչէր զերգ նըւագաց
Զայնիւ եւ տկաւ,
Զերգ որ մարթ էր զմեռեալս անգամ խանդաղատել,
Արմնչէր օր մի առ եզերբ
Առուի միոյ որ ոռոգէր մարգագետինս
Յորոց ի դաշտսըն ծաղկաւէտս
ունէր զեփիւռ զիւր բնակութիւն,
Ընէդ որսայր կարթիւ ձըկունս,
Այլ մերձենայր եւ ոչ մի ձուկն.
Հովիւ աղջկանն աշխատութիւն էր ընդունայն։
Սակայն հովիւն որ յերգըս իւր
Մարթէր ձըգել եւ ըզկարի անագորոյնս,
Կարծէր, սակայն կարծէր ի զուր, ձըգել եւ ձկունս.
Երգեաց նոցա զայս երգ, ասէ.
«Ով դուք, առուիս քաղաքացիք,
Թողէք ըզձեր Նայադս ի խոր այրիդ յայդմիկ.
Եկայք, տեսէք ինչ մի հազար անգամ սիրուն.

Մ՛ի երկնչիք մտանել ի բանտըս գեղեցկին.
Միայն առ մեզ է նա անգութ։
Ընդ ձեզ գընայ նա քաղցրութեամբ.
Կենաց ձերոց չէ նա ոսոխ.
Աւազան մի է ձեզ պատրաստ,
պայծառագոյն քան ըզվանակն.
Եւ եթէ խայծն ոմանց ի ձէնջ բերցէ եղեռն,
Յանեղի ձեռըն մեռանել
է բախտ ընդ որ ես նախանձիմ։»
Այս բանիբուն ճառ ոչ եղեւ արդիւնարար,
Զի խուլ եւ համր էին լըսողք.
Զուր քարոզեաց Տիրկիս։ Ըզքանըս նորա,
մեղըր ծորածոյ,
Առ. տարաւ հողմ.
Զըգեաց ապա ուռկան երկայն,
ահա ձըկունք ըմբռնեցան.
Ահա ձըկունքըն կան առ ոտս հովուի աղջկան։
Ո՛վ դուք որ էքդ հովիւք մարդկան եւ ոչ խաշանց,
Թագաւորք, որ կարծէք շահել բանիւ զոգիս
Անչափ մարդկան օտարոտւոց,
Ոչ թէ այնուիկ մարթ է երբեք վըճարել ինչ.
Առ այն պիտոյ է եւ այլ ինչ.
Արկէք ի կիր զուռկանըս ձեր.
իշխանութիւն վըճարէ զայն։

---

# ԱՌԱԿ ԺԲ.

*Պապկայք երկու, Թագաւոր եւ Որդի նորա. 4—4*

Պապկայք երկու, հայր եւ որդին,
Հայթայթէին զիւրեանց պարէն
յընթրեաց անտի Թագաւորին,
Կէս դից երկուց, որդւոյն եւ հօր,
Էին Թռչունքըս սիրելի:
Տիք կապէին մըտերմութիւն սեռըն եւ սերտ
Ի մէջ նոցա. հարք ըզմիմեանըս սիրէին.
Երկու որդիք, սրտիւ յողդողդք,
Սակայն էին հաշտք ընդ իրեարս.
Սննդակիցք, դպրոցակիցք:
Էր այս մանուկ պապկային մեծ պատիւ փառաց.
Զի որդին էր իշխան եւ հայրըն Թագաւոր:
Ի բնէ անտի բարուց զօր ետ որդւոյն Պարկայն,
Նա զամենայն Թռչուն սիրէր:
Ճնճղուկ մի եւըս հտպիտ յոյժ,
Եւ ցանկասէր քան զամենայն ճնճղուկ երկրին,
Էր բաժանորդ լեալ բերկրանաց արքայորդւոյն:
Երկու ոսոխքն յաւուր միում մինչ խաղային ի միասին,
Որպէս դիպի ի մէջ մանկանց,
փոխեցաւ խաղ նոցա ի կռիւ:
Ճնճղուկըն մեր ոչ գիտացեալ ըզգուշանալ,
Այնչափ հարուած կտցոյ առնու,
Մինչեւ կիսով մեռեալ, ըզթեւսըն քարշելով,
Թուէր իմըն թէ էր առանց բժշկութեան:
Ի բարկութիւն բրդեալ իշխանն՝ ի մահ մատնէ

Զիւր պապկայն, այլ բօթ ըսպանմանն
հասեալ առ հայրն,
Անմըխիթար ծերն արտասուէ, ողբայ, կոծի.
Բայց վայրապար, ունայն աղմուկ.
Խօսող թռչունն էր ընդ մեռեալս:
Լաւ եւս ասել, թռչունն անխօս
Առնէ զի լի ցասմամբ յորդի թագաւորին
Յարձակի հայրն եւ հանէ զակն,
Եւ ապա տայ խոյս, եւ ընտրէ իւր ապաւէն
Զեղեւնոյ գլուխ. անդ ի ծոց դից
Առնու ըզհամ վրիժուն իւրոյ
յապահովի եւ անկասկած:
Արքայ ինքնին անդր ընթանայ,
եւ ի կորզել ըղնա՝ ասէ.
"Բարեկամ, եկ առ իս. զի՞նչ շահ
մեզ արտասուել:
Զատելութիւն, ըզքէն, ըզսուգ,
եւ զամենայն թողցուք առ գրան:
Ստիպեալ իմն եմ առնել յայտ,
Թէպէտ իմ ցաւ եւս է սաստիկ,
Թէ մեր է մեղ. իմ որդին իսկ է պարտաւոր:
Իմ որդի՜ն. ո՛չ. բախտն է գլոտակ պատահարին.
Պարկայն անդուստ ի վերուստ էր
գըրեալ յիւրում դպրութեան անդ,
Եթէ յորդւոց անտի մերոց մին ի կեղոյ դադարեսցէ,
Եւ մեւսն յաչաց տեսանելոյ,
այսու ձախող պատահարաւ:
Մըխիթարել արժան է մեզ
երկոցունց. եկ ի վանդակ քո:„

Պապկայն ասէ, “Տէր իմ արքայ,
Համարիցիս թէ յետ այնչափ թշնամանաց
Կարեմ վստահ լինել ի քեզ:
Դու պատճառիս ըզբախտ, երդմամբ
համարիս ինձ
Գործող լեզուի արկանել կեր:
Թէ՞ տեսչութիւն իցէ, եւ թէ՞ հրաման կապեալ
Որ զաշխարհի իւս յարդարէ,
Ընդ ի բարձունըս գըրեալ է թէ եղեւնոյս ի գագաթան,
Կամ այլ ուրեք խոր անտառի
Կատարեցից ես զաւուրս իմ հեռի ի դառըն տեսլենէ,
Որ լեցի քեզ արդար պատճառք
Ատելութեան եւ ղայրանաց:
Գիտեմ եթէ վրէժխնդրութիւն
Է մասն անձին թագաւորի.
քանզի կեայք դուք աստուածաբար:
Դու մոռանալ կամիս զայդ վիշտ.
Հաւատամ ես, այլ ինձ պարտ է,
առ զգօնութեան,
Ի ձեռանէ քումմէ ի բաց կալ եւ յաչաց:
Տէր իմ արքայ, բարեկամ իմ,
երթ, մի՛ ընդ վայր լինիր աշխատ.
Մի՛ խօսիր ինձ զայսրէն դարձէ.
Հեռին լինել է քաջ դարման ատելութեան,
Որպէս ընդդէմ սիրոյ է զէն:„

# ԱՌԱԿ ԺԳ.

*Մատաղ Առեւծ եւ Արջ. 4—4*

Առեւծըն մայր էր կորուսեալ ըզկորիւն իւր.
Ըզնա որսորդ մի կալեալ էր։ Մայրըն թշուառ
Հանէր մռնչիւնս այնպէս ահեղ
Զի բովանդակ անտառըն կայր ի տագնապի։
Ոչ գիշեր ինչ եւ ոչ խաւար,
Ոչ լռութիւն եւ ոչ այլ ինչ հրապոյր նորա
Ըզդշխոյին անտառաց կոծ մեղմել կարէր։
Ի գազանաց եւ ոչ միոյն յաչըս մարթէր մըտանել քուն։
Արջըն հուսկ ուրեմն ասէ ցընա. “Տիկին քոյր իմ,
Թող ինձ ասել մի միայն բան. այնչափ մանկանց
Որ են անցեալ ընդ ժանիս քո՝
Չէ՞ր հայր եւ մայր։„
“Էր,„ ետ առեւծն պատասխանի։
“Ապա ուրեմըն,„ կրկնէ արջ,
“Զիա՞րդ ոչ մին ընդ մահ որդւոյն
տագնապեցոյց ըզգըլուխ մեր.
Եթէ այնչափ մարք լռեցին,
Հի՞մ ոչ լռես ուրեմն եւ դու։„
“Ե՛ս, լռեցի՞ց, թշուառական,„ ասէ առիւծն.
“Բա՛րէ, զորդեակ իմ կորուսի. պարտիմ քարշել
Ծերութիւն իմըն ցաւագին։„
Պատասխանի տայ արջն, “Այդ է,
Ո՞վ ըզքեզ յայդ բռնադատէ։„
“Բախտն է,„ ասէ, “որ զիս ատեայ։„
Այսպիսի բանք

Հանապազորդ են ի բերանս ամենեցուն։
Թշուառ մարդիկ, առ ձեզ ուղղեալ է առակս այս։
Ոչ լսեմ այլ ինչ եթէ ոչ ունայն տրտունջս։
Որ միանգամ յայսպիսի իրս զանձն ատելի կարծէ երկնից,
Թող զՀեկուբէ[162] անցէ զմտաւ,
եւ մատուսցէ շնորհըս դից։

---

# ԱՌԱԿ ԺԴ.

## Պանդուխտք երկու եւ յուռութք. 4—4

Ճանապարհ որ է ծաղկաւէտ՝ չածէ ի փառս։
Այսըմ վըկայ չկամիմ զայլ ոք
բայց զՀերակղէս եւ զգործըս իւր։
Պատերազմի այս դիք չունի իւր նախանձորդ.
Սակաւք ոմանք գտանին յառակս,
եւըս սակաւք՝ ի պատմութեան.
Սակայն ահա ոմն յայնցանէ որում յուռութք
Ետուն խնդրել ըզբախտ յերկրին առասպելաց։
Այս այր երթայր ի Ճանապարհ ընկերութեամբ.
Ինքն եւ ընկեր նորա գըտին, ասեն, կոթող
Յորոյ վերայ էր գիր այսպէս.
“Թափառական տէր, թէ ցանկաս
Տեսանել զոր եւ ոչ մի ոք յուղեւորաց ետես երբեք,
Ընդ այս հեղեղ եւեթ պարտիս անցանել դու.
Ապա բարձեալ ի գիրկըս քո փիղ քարեղէն
Զոր ի գետնի տեսանիցես անկեալ դընել,
Տանել միով շնչով ի գլուխ այնըր լերին,

Որ ըսպառնայ երկնից իւրով պերճ ճակատուն:»
Յուղեւորաց անտի երկուց
մին զարհուրի: «Եթէ հեղեղդ
Այնչափ արագ է որչափ խոր,»
Ասէ,... «եւ դիր թէ անցանել ընդ այն մարթ է,
Վասն փըղին ընդէ՞ր այնչափ տարակուսել:
Գո՛րծ ծաղրալի:
Այր իմաստուն առնէ հնարիւք իմն եւ այնպէս,
Զի գոնեա քայլըս չորս կարէ տանել ըզնա:
Սակայն մինչեւ ի գլուխ լերին տանել միով շնչով ոչ է
Հընարաւոր մահկանացուի, բայց թէ տեսիլն
Իցէ փըղի որ է թըզուկ, կարճիկ, վըժած,
Զոր հարկանել ի գլուխ ցըպոյ իցէ հընար.
Եւ այնպիսւոյ արուլթեան փառք
ո՞ւր մընացէ այնուհետեւ:
Կամին ունել ըզմեզ այդու արձանագրաւ.
Թուի թէ է առեղծուած իմն
առ ի զմանկունըս խաբելոյ.
Ուստի թողում ըզքեզ փըղաւդ:»
Որ զայս խորհէրըն՝ մեկնեցաւ,
այլ միւսն յանդուգըն զանձն էարկ
փակեալ աչօք ի մէջ ջըրոյն:
Ոչ խորութիւն, ոչ ոյժ ալեաց
Կարացին տալ նըմա կասել,
եւ ըստ բանից արձանագրին,
Յայնկոյս գետոյն ետես ըզփիղն:
Եբարձ, տարաւ ըզնա, եհաս ի գլուխ լերին.
Էր անդ բացատ, ապա քաղաք մի առ նովաւ:
Փիղն արձակէ անդէն գոչիւն.

Մարդիկըն գան իսկոյն արտաքս ըսպառազէն։
Ու եւ իջէ այլ ուղեւոր ընդ այն ամբոխ աղաղակի
Սրանայր ի բաց. սա փոխանակ դառնալոյ յետս,
Կամէր դընել զանձն ի կըշիռ,
եւ մեռանել իբրեւ դիւցազն։
Զարմացաւ նա իբրեւ լըւաւ թէ բազմութիւնն
Ընտրեաց ըզնա ընդ վախճանեալ
Թագաւորին իւրոյ արքայ։
Ընդդիմացաւ այրըն դոյզն ինչ,
"Թէպէտեւ բեռն է արդարեւ ծանր," ասէր նա։
Սեքստոս ըզնոյն ասէր, յորժամ լինէր Սուրբ Հայր.
Միթէ եղե՞ռն ինչ է լինել
Պապ կամ արքայ։
Ընդ հուպ եղեւ յայտ թէ չէին
յանկեղծաւոր մըտաց այն բանք։
Այլ բախտ երթայ ըզկընի կոյր յանդգնութեան.
Եւ իր իմաստուն առնէ երբեմըն բալուռք յոյժ զի կատարէ,
Մինչեւ տըւեալ իմաստութեան ժամ պարապոյ,
Զխոսըն քննել, եւ ոչ հարցեալ նըմա խորհուրդ։

# ԱՌԱԿ ԺԵ.

*Ճագարք. 4—4*

*Խօսք առ դուքսն Ռոշֆուքոյ.*

Բազում անգամ ասեմ ցանձն իմ,
ի տեսանել իմ թէ զիարդ
Գործեն մարդիկ, եւ զի գընան
Յաճախագոյն իբրեւ զանբանս.
Այր թագաւոր ոչ է պակաս թերակատար
Քան ընդհպատակս իւր, եւ բնութիւն
Է պարգեւեալ իւրաքանչիւր արարածոյ
Ի զանգուածոյ իմեքէ հատ ինչ. անտի հանեն ոգիք.
Կամիմ ասել ոգի մարմինք, որ եւ թըրեալ են ի նիւթոյ:
Օ՛ն առ տացուք զհանդէս բանիս:
Ի ժամ որսոյ դարանելոյ, թէ յորժամ լոյս
Առաւօտուն հոսէ ընդշող իւր ի խոնաւ տարրը ջրոյ,
Եւ թէ յորժամ արեւն ի մառըն մըտանէ,
Մինչ ոչ գիշեր է, եւ ոչ տիւ է տակաւին,
Յեզեր ուրեք անտառի իմ ելեալ ի ծառ,
Իբրեւ նոր Զեւս յՈղիմպոսէ անտի բարձուէ
Հարի շանթիւ ըստ հաճոյից
Ի ճագարաց ըզմին յանկարծ.
Տեսի իսկոյն ի փախստեան զողջոյն իսկ զազգ
Ըզճագարաց որ ի վերայ հաւամրգեաց
Կային յակճիռս իմն եւ յաթիռս,
Զուարճանային, եւ ճաշ նոցա
բուրէր ծոթրին անուշահոտ:
Ձայն հրացանին փախոյց ըզխումբն

Անքոյթ տեղի գըտանել իւր
Ի գետնափոր քաղաքի անդ։
Այլ ըզվըտանգըն մոռանան. երկիւղըն մեծ
Փարատի փոյթ, եւ ըզճագարսըն տեսանեմ
Զի լըջագոյն քան զառաջինն
գան ընդ ձեռամբ իմով այսրէն։
Ո՞չ այս պատկեր իցէ մարդկան
Որոց ցըրուեալ ի փոթորկէ,
Հասեալ յանքոյթ նաւահանգիստ,
Դիմագրաւեալ գընան դարձեալ
Ի նոյն մըրրիկ, ի նոյն ծըփանս.
Իբրեւ ճագարըս տեսանես
Ի ձեռս բախտին ապաստանեալ։
Սովորական ինչ յաւելցուք յայս օրինակ։
Յորժամ օտար շունք անցանեն ընդ տեղի ինչ
Որ ըստ իւրեանց սահման անդր է,
Զմըտաւ ածել թողում զինչ տօն։
Տեղւոյն շանին որ չունին այլ ինչ ի մըտի
Թէ ոչ ղիւրեանց կոկորդին շահ,
մերթ հաչեն եւ մերթ խածատեն
Մինչեւ զօտարսն հալածական վարեալ տանին
Ըստ սահման անդր երկրին իւրեանց։
Ընչից ծարաւ, աւագութեան եւ փառաց տենչ
Կուսակալաց եւ յաւագաց անտի ոմանց,
Եւ ամենայն կարգի մարդկան, տան առնել զայս։
Ի տեսանել զամենեսին առհասարակ
Զորս ի ձեռին գան կողոպտել,
եւ ի մորթոյն վերայ խռնել։
Կին պչրող, այր մատենագիր են այսպիսիք.

Վայ է նորոյ մատենագրի։
Որչափ մարթ է՝ սակաւ մարդիկ ըղձքաքարիւ.
Այս իսկ խաղոյ են իրաւունք, եւ գործ այս է։
Բիւր օրինակ մարթ էր բերել նեցուկ ճառիս։
Այլ կարճագոյնք ի գըրենոյ
Են լաւագոյն միշտ։ Միշտ ի սմին ունիմ ուղղիչ
Ըզվարդապետս արուեստին. փոյթ իմ է թողուլ
Ինչ ի կարի իսկ գեղեցիկ ճառս ի խորհել։
Ապա պարտ է ճառիս աստէն առնուլ ըզկայ։
Դու ետուր ինձ զոր ինչ ունիմըն հաստատուն,
Եւ որ որչափ է մեծ, նոյնչափ եւս է համեստ.
Դու որ լսել չեղեր երբեք յօժար առանց պատկառելոյ
Ըզկարեն իսկ պատշաճ գովեստ,
Եւ ըզկարեն արդար եւ զոր
ժառանգեալ ես արժանապէս.
Համառօտիւ, դու ես յորմէ
հազիւ առեալ եմ ես հրաման,
Զի ընկալցի աստէն անուն քո պատիւ ինչ,
Որ պահեսցէ ըզվէպս իմ զայս
ի նախանձուէ եւ յեղծուածոյ,
Իբրեւ անուն որ դարուց եւ ազգաց ծանօթ,
Յաւելու փառս Դաղխայւոց,
որ մեծ անուամբ են պտղաբեր
Քան զայլ կողմանս տիեզերաց,
Թոյլ տուր գոնեա զի ուսուցից ես աշխարհի
Թէ ըզվիպլիս այսորիկ նիւթ դու ետուր ինձ։

---

## ԱՌԱԿ ԺԶ.

*Վաճառական, ազնուական Հովիւ եւ Որդի Թագաւորի. 4—4*

Զորք խուզարկուք նոր աշխարհաց,
Գրաթէ մերկ, պրծեալ յալեաց բարկութենէ,
Մին վաճառող, միւսն աւագ, միւսն
հովիւ, չորրորդն արքայորդի,
Իբրեւ նոր ոմն Բեղիսար[163]
Խնդրէին տուրս յանցաւորաց,
Թշուառութեան իւրեանց զարման։
Պատմել թէ զինչ դէպք ընդոստ գումարեցին,
Զի յայլ եւ այլ տեղիս ծնեալ էր չորեցունց,
Երկայնածիգ բանից պէտք են։
Յետոյ ուրեմն նստան զեզերբ աղբեր միոյ,
Անդ ի խորհուրդ մտին որեարքն տառապեալ։
Իշխանն հարուստ ժամըս խօսի
զտառապանաց մեծամեծաց։
Հովուին այն իմն էին կարծիք
եթէ արկեալ ի մոռացօնս
Իւրաքանչիւր զիւր պատահար,
Առնէր բարւոք փութալ ճեպել
Խորհել հընարս հասարակաց կարօտութեան։
“Տրտունջ լինել,” ասէր, “իցէ՞ մարդոյ օգուտ։
Աշխատ լիցուք. այս է ջանալ
տանել ընդմեզ մինչեւ ի Հռոմ։”
Այր մի հովիւ այսպէս խօսի.
այսպէս խօսի. կարծիցէ՞ ոք

Եթէ երկնից իջէ տըւեալ միայն գլխոց պսակելոց
Միտս եւ հանճար.
Եւ թէ հովուի, որպէս խաշին,
Իմաստութիւն իջէ՞ չափով։
Խորհուրդ սորա ի սկզբան անդ թըւեցաւ քաջ
Մեւս երեցունց, յետ խրելոյ նոցա յափունս Ամերիկայ։
Մին, այսինքն է, վաճառականն
էր արդարեւ քաջ համարող.
“Ես այսքանոյ,” ասէր, “յամենայն համարըս տամ։”
“Եւ ես զօրէնըս քաղաքի ուսուցանեմ,”
Ասէ որդի Թագաւորին։ Ազնըւականն ապա ասէ.
“Խելամուտ լեալ իմ նըշանաց
տանց աւագաց՝ բանամ վարժոց։”
Որպէս թէ անդ ի մէջ Հնդկաց դընէր ոք միտ
Մըտակոյտս յիմարութեան այնպիսի սին բաջաղանաց:
Հովիւն ասէ. “Ո՛վ բարեկամ,
բարւոք ասես. այլ զի՞նչ, բա՛րէ.
Աւուրք յամենայն են երեսուն. մինչեւ ցայն վայր
Կացցո՞ւք նօթի, աղէ, ասա.
Դու տաս ինձ յոյս
Գեղեցիկ, այլ հեռաւոր յոյժ,
մինչ կորնչիմ ես սովամահ։
Ո՞վ հոգացէ մեզ ըզվաղուեան աւուր ընթրիս.
Կամ մանաւանդ յի՞նչ ապաստան
Ակն ունիս զայր աւուր ճաշ։
Քան զամենայն իսկ կարեւոր
Խնդիր այս է։ Գիտութիւն քո
Չէ այժմ հասու. ի ձեռս իմ է դարման դորա։”
Յայս բան մեկնի հովիւն ի բաց,

Երթայ յանտառն հատանել փայտ զոր վաճառէ
Զայն օր, որպէս եւ ի վաղիւն.
Ուշ թողու զի քաղցն յերկարեալ
արասցէ հուսկ ուրեմն այնպէս,
Մինչեւ երթեալ անդ ի խոնարհ
ցուցանիցէն զեւրեանց տաղանդ։
Իբրեւ վախճան առակիս զայս իմն ասեմ ես,
Թէ ի պահել ըզկեանըս մեր
ոչ է պիտոյ այնչափ արուեստ.
Եւ թէ նպաստիւք տըրոց բնութեան՝
Ե՛ւ ապահով են, եւ ըստոյգ
քան զամենայն օգնութիւն ձեռք։



# ԳԻՐՔ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

## ԱՌԱԿ Ա.



*Առնւժ. 4—4*

Արքայն յովազ ժամանակաւ
Ունէր, ասեն, յօտար ընչից
Ի մարգս անդ իւր բազում եղինս,
եւ եղջերուս յանտառս իւր,
Եւ ի դաշտի բազում ոչխարս։
Ի մերձաւոր անտառի անդ
ծընաւ առիւծ։
Յետ երկուստեք բանից բարեաց
Որպէս առնել աւագաց է սովորութիւն,
Արքայն յովազ կոչեաց զաղուէս զիւր փոխանորդ,
Հին պաշտօնեայ, եւ քաղաքի իւրոց հըմուտ.
“Դու երկնչիս,„ ասէ, “յիմոյ
դրացւոյ անտի, ի կորենէ.
Սակայն մեռեալ է հայր նորա.
զինչ կարիցէ նա առնել քեզ.
Լեր մանաւանդ արգահատող թշուառ որբոյն

Ունի բազում վիշտ վըտանգի.
Եւ շընորհ մեծ կալցի բախտին,
Եթէ պահէ զոր ինչ ունի,
Առանց բընաւ նոր յաղթութեանց առնելոյ ուշ:»
Աղուէսն ըզգըլուխ իւր շարժելով՝ ասէ ցընա.
«Տէր, այսպիսի որբոց երբեք ոչ գըթամ ես.
Ըզմտերմութիւն պարտ է պահել միշտ ընդ նըմա,
Կամ սատակել ջանալ ըզնա,
Մինչեւ ժանեաց եւ ճիրանանց
Նորա աճեալ, եւ մինչեւ լեալ վընասելոյ մեզ բաւական:
Մի վայրկեան մի՛ կորուսաներ:
Ես դիտեցի զաստըղ նորա. աճեսցի նա պատերազմօք.
Եղիցի նա առիւծ բարի
Առ ամենայն սիրելիս իւր որ են յերկրի:
Ապա ջանա զի սիրելի լիցիս նըմա, ապա թէ ոչ
Գուն դիր առնել ըզնա նըկուն:»
Այլ ընդունայն եղեւ այս ճառ:
Յայնժամ ի քուն էր թագաւորն,
եւ ընդ իւրով իշխանութեամբ
Ի քուն էին ամենեքեան,
գազանք, մարդիկ, մինչ հուսկ ուրեմն
Եղեւ կորիւնըն բուն առեւծ: Եւ յայնժամ փող
Պատերազմին հնչեաց անդուստ
ընդդէմ նորա. տագնապ գուժի
Գայր ի կողմանց կողմանց բազմաց, եւ պաշտօնեայն
Վասն այսորիկ հարցեալ, ասէ յոգւոց հանեալ.
«Զիմ գրգռես դու ըզնա. չիք այլ ուստեք դարման.
Ի զուր կոչեմք ամբոխ բազում մեզ ի թիկունս.

Որչափ բազում լիցին այնչափ
են մեզ ի վնաս. ըստ իս չեն լաւ,
Բայց ի խաշնէ անտի ուտել զիւրեանց բաժին:
Ցածո՛ զառիւծն, զի նա միայն
է զօրութեամբ գեր ի վերոյ
Քան զայս ամբոխ դաշնաւորաց
որ կեան յընչից անտի մերոց:
Առիւծու են երեք իրք որ չեն նըմա ծանր.
Քաջութիւն իւր, եւ զօրութիւն եւ արթնութիւն.
Փութա ընկեա ընդ ճիրանամբք նորա ոչխար.
Եթէ չառնի ինչ գոհ այնու, արկ եւ այլ եւս.
Յաւել ի նա եւ եզըն մի. վասն ընծայիդ այդմիկ ընտրեա
Բզկարին իսկ պարարտ յանդւոյ:
Այսպէս փրկես ըզմընացեալըն:„
Այլ այս խորհուրդ չեղեւ հաճոյ:
Կարծեցաւ չար, եւ ոչ սակաւք ի տէրութեանց
Որ դըրացիք էին նորա՝ կըրեցին վիշտըս ոչ սակաւ.
Շահեցաւ ոչ մի ոք, կորոյս իւրաքանչիւր:
Զինչ եւ արար թշնամեաց այն մեծ բազմութիւն,
Յորմէ երկիւղն էր նոցա՝ այն եղեւ յաղթող:
Ջանա առնել զառիւծըն քեզ ի բարեկամ,
Եթէ կամիս թողուլ ըզնա զի աճեսցի:

---

# ԱՌԱԿ Բ.

*Դիք որ կամին կրթել զորդին Արամազդայ.* 4—4

*վասն Դքսին Մենայ:*

Արամազդայ էր որդի մի որ նշմարանս տայր ըզտեղւոյն
Աստի ծագումըն նորա էր.
Ունէր ոգի աստուածեղէն:
Տըղայութիւն ոչ սիրէ ինչ.
սակայն աստուած մեր այս մանուկ
Նոր արարեալ իւր ըզբաղումըն գլխաւոր
փութալ սիրել, լինել հաճոյ.
Նա ի նըմա սէր եւ հանճար
Կանխեցին իմն ըզժամանակն օր թեւք թեթեւք
Ածեն, բարէ, կարի փութով
ըզտարւոյ մէն մի փոփոխումն.
Նախ Փըլորայն զուարթ աչօք
եւ վայելուչ շարժմամբք մարմնոյ
Յանկոյց ըզսիրտ ողիմպիական պատանեկին:
Որչափ ինչ հնարս են ձեռընհաս ազդել տարփանք,
Սէր կաթոգի, խանդաղատանս,
Լալ, հառաչել, եկին ի յայտ.
համառօտիւ՝ չմընաց թերի:
Արամազդայ որդին պարտէր
ի բնէ անտի իւրոյ ծննդեան
Ունել այլ միտս եւ այլ պարգեւս աստուածատուրս
Քան ըզմանկունըս դից այլոց,
Նա, թըւէր իսկ թէ բընածին ազդմամբ գործէր.
Իբր այն թէ էր վարեալ կանխաւ գործ հոմանւոյ,

Այնպէս զարուեստըն զայն վարէր յաջողութեամբ։
Այլ Արամազդ կամեցաւ տալ կրթել ըզնա։
Գումարեալ նա ըզդիս՝ ասէ.
«Գիտացի ես առաջնորդել
Միայն, առանց ընկերի, ցարդ տիեզերաց.
Սակայն են գործք ազգի ազգիք
Զորըս բաշխեմ նորընծայ դից։
Ի վերայ այսըր սիրելւոյ մանկան արկի զհայեցուած իմ.
Արիւն իմ է. համօրէն վայրք են ահա լի բագնօք նորա։
Առ ի լինել արժանաւոր աստիճանի դից անմահից,
Պարտի գիտել զամենայն ինչ։» Տէր որոտմանց
Այն ինչ ըզբան իւր վախճանեալ՝
ամենեքին հարին ըզծափ։
Առ ի գիտել զամենայն ինչ
բաւական միտս ունէր մանուկն։
Պատերազմի չաստուածն ասէ,
«Ես առնում յանձն
Կրթել ըզնա անձամբ յիմում արուեստի աստ,
Որով յոլովք ի դիւցազանց եղեալ հաղորդ
Պատուոյ փառաց Ողիմպոսի,
մեծացուցին զայս պետութիւն։»

«Եւ ըզքընար հարկանել նմա ուսուցից ես,»
Ասէ խարտեաշն Ապողոն քաջ եւ հանճարեղ։
«Իսկ ես,» ասէ Հերակղ իւրով առիւծենեաւ,
«Ուսուցանեմ նըմա յաղթել ախտից հոգւոյ.
Ըզկարիս, լի թունովք ճիւաղըս նըւաճել,
Որ ցանգ ի սիրտըս ծընանին իբրեւ Հիդրայս.
Լեալ թշնամի ցոփ հեշտանաց՝
Ուսցի յինէն շաւիղս ընդ որ գընան սակաւք,

Եւ որ տանէին ի փառս ընդ հետոյս քաջութեան:„
Իբրեւ եհաս կարգն առ աստուածըն Կիթերայ,
“Ես ցուցանեմ նըմա,„ ասէ, “զամենայն ինչ:„
Յիրաւի իսկ ասէր զայս Սէր:
Զի՞նչ է զոր ոչ վըճարիցէ
՝Սա որ հանդերձ իմաստութեամբ
փափաքէ եւս հաճոյ լինել:

---

## ԱՌԱԿ Գ.

*Հողագործ, Շուն եւ Աղուէս. 4—4*

Գայլ եւ աղուէս են դըրացիք նորանըշանք:
Ոչ շինեցից ըղձնակութեամբ նոցա երբեք:
Աղուէսըն կայ յամենայն ժամ դարանակալ
Հաւուց ուրուք հողագործի.
Թէպէտ եւ էր նա խորամանկ,
Չեղեւ ատակ առնել հաւուցըն վընաս ինչ:
Ի միջէ կողմանէ քաղց, եւ ի միւսմէ կուսէ վըտանգ,
Չէին թեթեւ ինչ տարակոյս խորագիտին:
“Բա՛րէ,„ ասէ, “այս խաժամուժ
Ո՛աղը իմն առնէ զիս լըքաբար:
Երթամ եւ գամ եւ աշխատիմ,
Խորհիմ հընարըս բիւր, մինչ այս
բիրտ շինական ի տան իւրում
Յամենայնէ շահի արծաթ, փոխէ ի դրամ
Զաքաղաղս իւր, եւ ըզհաւս իւր,
ունի նա եւ հաւս ի կարթի:

Մինչ ես որ տէրս եմ հինաւուրց,
Թէ ըմբռնեմ յանկարծ հաւ մի,
Եմ ի կատար ուրախութեան.
Ընդէ՞ր ուրեմն Արամազդ մեծն հրաւիրեաց զիս
Յաղուխութիւն: Երդուեալ իմ բայց
յիշխանութիւնս
Ողիմպոսի եւ Ըստիւքսայ, զի խօսեցի ըզարմանէ:„
Արծայով յիւրում սրտի զայս ոխ քինու,
Ընտրեաց գիշեր որ մեկնիւք[164] էր առատ յոյժ.
Իւրաքանչիւր ոք ընկղմեալ էր ի խոր քուն,
Եւ տանուտէրն, եւ սպասաւորք, եւ շունն անգամ,
Հաւք, ձագք նոցա եւ աքաղաղք,
էին ի քուն: Հողագործին
Էր զհաւնոց իւր թողեալ ի բաց.
Յիմարութիւն մեծ գործեաց նա:
Գողն յածի շուրջ այնչափ մինչեւ
գտանէ մուտ յոր դարանէրն.
Առնէ անձեռ, լընու զքաղաքըն մեռելովք:
Անգըթութեան նորա նըշանք
Երեւեցան յայգուն. անդ էր
տեսանել հաւըս դիտապաստ
Համակ յարիւն եւ յապաժոյժ:
Փոքըր միւս եւս եւ արեգակն
Ամփոփէր զինքն առ երկիւղի
ի բնակութիւն անդըր ջրեղէն:
Որպէս սըմին նըման տեսլեամբ
Ապողոնի ցասուցեալ յոյժ ընդ Ադրիտէս[165] անագորոյն՝
Լից ըզբանակ նորա դիովք. տեսաւ գըրէ թէ ըրնաջինջ
Զօրն յունական. եւ այս եղեւ միոյ եւեթ գիշերոյ գործ.

Այսպէս եւ շուրջ ըզմըրանաւն
Առ չըժուժալ ոգւոյն Այաքս[166]
Գործեաց նախճիր մեծ ոչխարաց եւ նոխազաց,
Կարծեալ զոսոխ իւր զՈդիսեւս[167] ըսպանանել,
Եւ ըզգործիչըս զըկանաց
Որովք տարեալ էր Ոդիսեւս ըզմրցանակն։
Միւս եւս Այաքս, աղուէս, հաւուց աղխատարար,
Զոր կարողն էր առեալ տարաւ,
Եթող տապաստ ըզմընացորդն.
Տէրն ոչ եգիտ այլ հընարս բայց աղաղակել
Ալանց իւրոց եւ շանն. այս է սովորութիւն։
"Ո՛հ, անիծեալ անասուն դու,"
ասէր, "հեղձնլոյ ես արժանի,
Զի՞մ չարարեր դու կանխաւ ազդ զկոտորածէն։"
"Եւ դու ընդէ՞ր," ասէ ցնա շունն,
"չեղեր ըզգոյշ. շատ իսկ էր այն։
Եթէ դու տէրդ եւ հողագործ ում անկ է գործն,
Ննջես ոչինչ փոյթ արարեալ փակել ըզդուռն,
Կամիս զի ես, շունս, որ չունիմ մասն ինչ յիրիդ,
Առանց շահու իրիք զհանգիստ իմ կորուսից։"
Կարի ի դէպ խօսեցաւ շունն.
Խորհուրդ նորա մարթէր լինել
Ի բերան տեառըն բարւոք յոյժ.
Այլ վասըն զի էր նա լոկ շուն,
Ընպիտան ինչ թըւեցաւ բանն.
Տոռամբ թշուառն այն կապեցաւ։
Եւ դու ուրեմն, ո ոք եւ ես, ընտանեաց հայր,
(Չիք իմ երբեք խանտացեալ տալ
զայդ պատիւ քեզ.)

Եթէ յայլոց աչս յուսացեալ
ի քուն լինիս, գործես սխալ։
Ննջեա դու յետ ամենեցուն,
փոյթ կալ փակել ըզդուռըն քո։
Եւ եթէ գործ ինչ կարեւոր կայ առաջի,
Մի միջնորդաւ առնիցես զայն։

---

## ԱՌԱԿ Դ.

*Երազ միոյ ի ճանկչաց աշխարհին Մողոլաց. 4—4*

Երբեմն Մողոլ ումն յերազի ետես բղեաշխ
Որ վայելէր յԵղիսեան դաշտըս բերկրութիւն
Սուրբ եւ անեզր, որ ոչ էր գին եւ ոչ վախճան։
Ետես յայլում աշխարհի նոյն երազատես
Զայր մենակեաց պատեալ ի հրոյ,
Որ եւ զկարի թշուառս ի գութ խանդաղատէր։
Նորանըշան թըւեցաւ այս, եւ օտար ինձ.
Մինոսս[168] թըւէր յերկուս մեռեալ
սըս յայսոսիկ անիրաւեալ։
Զարմացեալ ննջողն առ կարի ինձ զարմանալոյն.
Սակայն զերազ իւր համարէր խորհըրդաւոր,
Եւ մեկնել զայն։
Մեկնիչն ասէ, «Մի զարմանար.
Են միտք անդէն յերազի քում,
եւ եթէ եմ յիրիդ յայդմիկ
Գտնեա սակաւ ինչ խելամուտ,
Ըզգ ինձ է այս քեզ յաստուածոց
Մինչ յաշխարհի աստ բընակէր

Բդեաշխն երբեմն էր ի խնդիր միայնութեան․„
Եւ մենակեացն առնէր բդեշխին այնմիկ պաշտօն։
Եթէ արժան է յաւելուլ ինչ ի բանս անդըր մեկնիչին,
Օ՛ն առ աստէն ազդեցից սէր առանձնութեան։
Առանձնութիւն որոց սիրենն
ըզնա բարիս տայ անխըռով․
Անեղծ բարիս, պարգեւք երկնից
որ բուսանին գոգ ընդ ոտիւք։
Առանձնութիւն, ուր գըտանեմ ծածուկ հեշտանս։
Տեղիք զոր միշտ սիրեմ, չեղէ՞ց երբեք կարող
Յաշխարհական հոգոց հեռի կեալ հովասուն․
Ո՞վ կալցէ զիս ընդ ձեռով մութ ապաստանաւ։
Ո՛ւր քորք իննունք կարող լիցին
ի քաղաքաց եւ յարքունեաց
Հեռի ունել զիս բովանդակ,
եւ խելամուտ առնել երկնից
Պէսպէս շարժմանց որ են անտես յաչաց մերոց,
Ընուան, ուժոյ այն մոլորող լուսաւորաց
Որ են ուղղիչք մերոց բախտից,
ազգի ազգի մերոց բարուց։
Թէ չեմ ծընեալ վասըն գործոց մեծամեծաց,
Գոնեա առուք մատուսցեն ինձ իւրս հեշտականս․
Նըկարեցից վէպօք իմովք ըզգետափունըս ծաղկալիս,
Պարկայն ոսկի ցանցիւք զիմ կեանս մի՛ հենուցու․
Ոչ ննջեցից ընդ ոսկեզօծ ձեղուամբ ուրեք,
Այլ քուն միթէ կորուսանէ՞ այնու զիւր գին․
Միթէ չէ՞ նա վասն այնորիկ
բաւական խոր եւ հեշտական։
Նուիրեմ նըմա յանապատի նոր պատարագս։

Յորժամ գայցէ ժամն առնելոյ մեռելոց այց,
Եղէց կեցեալ անհոգ, մեռայց առանց խղճի։

---

## ԱՌԱԿ Ե.

*Առիւծ, Կապիկ եւ Էշք երկու. 4—4*

Առիւծ առ լաւ եւըս վարել զիշխանութիւն,
Եւ ուսանել բարըս բարուոքըս կամեցեալ,
Յաւուր միում կոչեաց առ իւր
Զմին ի կապկաց որ խորագէտ
էր քան ըզբնաւ ազգ անասնոց։
Առաջին խրատըն զոր նըմա ետ պաշտօնեայն՝
Եղեւ այս. «Ո՛վ թագաւոր մեծ,
առ ի տիրել իմաստութեամբ,
Պարտ է կարծեմ զի ամենայն
իշխան կալցի նախամեծար
Ըզշահ երկրին քան զայն շարժումն
Զոր սովոր են կոչել մարդիկ
Հըպարտութիւն, զի այս է հայր,
Այս է պատճառ այլոց ախտից
Զոր տեսանեմք ի շնչաւորս։
Առնել զի այս ախտ չար ըզմեզ թողցէ իսպառ,
Չէ դիւրին գործ,
Եւ զոր ի գլուխ հանել իցէ մեզ բաւական մի միայն օր։
Շատ է թէ ոք կարիցէ դնել չափ այնմ ախտի.
Այսպէս քո անձըն մեծափառ
Մի՛ թողուցու երբեք յանձին

*Են արժանի ծաղու մարդիկ զի առաւել լինել պնդին*
*Քան ըղձեր տոհմ։ Ոչ, ոչ, խօսել քեզ արժան է,*
*Պատագովեալ նորա լռել։*
*Ճշմարտապէս են շաղակրատք։*
*Սակայն Թողցուք մեք ըղձոսս։*
*Դու իմանաս զիս, ես՝ ըզքեզ.*
*Եւ այն շատ է։ Իսկ յաղագս այնց զարմանալեաց*
*Որով քո երգ աստուածեղէն գայ հարկանել ըզլըսելիս,*
*Ասեմ թէ ինքն իսկ Փիլոմէլ*
*է նորընծայ յայսմ արուեստի.*
*Դու անցանես ըզԱմպէրդիւ։,*[169]
*Մինս էշըն տայ պատասխանի.*
*‘Տէր, ըղնոյն ձիրս ես զարմանօք գտանեմ ի քեզ։,*
*Այս էշք զիրեարս ողոքելով ոչ շատացեալք,*
*Շըջին քաղաք ի քաղաքէ*
*Յարգել գովել այր զընկեր իւր,*
*Իւրաքանչիւր կարծէր առնել*
*Դրուատելով զիւր նըմանին գործ բարւոք յոյժ,*
*Ի մտի եդեալ եթէ պատիւն*
*էր դառնալոց անդրէն յանձնիւր։*
*Այսօր զբաղումս ճանաչեմ,*
*Ոչ ի միջի իշոց ասեմ, այլ տէրութեանց,*
*Զորս կամեցան դիք ամբառնալ յաստիճան մեծ.*
*Որ զիշխանի ըզպարզ անուն փոխեալ առնուն,*
*Եթէ իշխենս զանունըն ‘Տէր միահեծան։,*
*Թերեւս ասեմ քան զոր արժանն*
*է աւելի, եւ ակն ունիմ*
*Եթէ տէրդ իմ արքայ գիտէ պահել գաղտնիս։*
*Յանկացաւ տէրդ իմ ուսանել ինչ ինչ դիպող*

Ի ցուցանել նըմա, թող զայլ եւս բազում ինչ,
Ըզհպարտութիւն որ ծաղրալեցս առնէ զմարդիկ:
«Նոյն դիպեցի անիրաւին.
այլ աւելի ժամանակք են այնըմ պիտոյ:»
Այսպէս կապիկըն խօսեցաւ:
Սակայն ոչ ոք գիտաց ասել
Թէ զինչ ճառեաց նա զերկըորդէն,
զի փափուկ յոյժ է այն խնդիր.
Եւ մեր սեպուհն ամենարուեստ
որ չէր ինչ ցուրտ ոք եւ թեթեւ,
Հայէր յառեւծն իբրեւ յիշխան ոմն ահաւոր:

---

## ԱՌԱԿ Զ.

*Գայլ եւ Աղուէս. 4—4*

Այլ ուստի՞ է զի Եզովպոս ընծայէ ձիր մի աղուեսուն.
Այն է հնարող ճարտարութիւն:
Ըզպատճառն ես խնդրեմ, սակայն ոչ գըտանեմ:
Յորժամ գայլն է պաշտպանելոյ զանձըն կարօտ,
Կամ դիմելոյ յայլոյ վերայ,
Չըգիտիցէ՞ ըզհանգամանս
իւրացն այնչափ որչափ աղուէս:
Գիտէ. թերեւս աւելի իսկ. ուստի իշխեմ
Վարդապետին իմում յայտնիկ հակառակել:
Սակայն ահա դէպք ինչ յորում
անկան պատիւըն բովանդակ
Հիւրոյն որջոց:[170] Յերեկոյի միում աղուէս մի տեսանէր

Օձուսին ի խորըս ջրհորոյ, ուր պատկերն այն բոլորաձեւ
Թուեցաւ նըմա իբրեւ պանրոյ մաճառակ մեծ:
Դոյլք երկու ջրոյ փոխանակաւ
Ըզլոյծ զայն տալըր հանէին:
Աղուէսըն մեր սովալըլուկ
Նմուտ ի դոյլն որ էր ի գլուխ մեքենային,
Եւ որ զերկրորդն ունէր կախեալ:
Անասունն էջ,
Գիտաց թէ էր խաբեալ, սակայն մուտ ի վարանս,
Տեսեալ զկորուստ իւր մօտալուտ:
Քանզի զիա՞րդ ելանել մարթ էր, եթէ ոչ այլ սովալլուկ
Ընդ նոյն պատկեր ըսքանչացեալ,
Իջեալ եղեւան նորա յաջորդ,
Ընդ նոյն շաւիղ ոչ էր հանեալ
զաղուէսըն մեր ի տագնապէն:
Աւուրք երկու անցին, եւ չէր
ի ջրհոր անդր եկեալ ուրուք.
Եւ ժամանակն որ միշտ գընայ, յերկուս գիշերս
Էր յապաւեալ ըստ օրինի
Ըզբոլորշի երեսս աստեղն որոյ ճակատն է արծաթի:
Սեպուհն աղուէս էր յուսահատ:
Ժանտաբարոյն զայլ ներգեւեալ ի ծարաւոյ,
Եկն անցանել ընդ այն: Գոչէ աղուէսն, "Ընկեր,
Ունիմ քեզ ճաշ. տեսանե՞ս զայս.
Է սա պանիր ազնըւագոյն.
աստուածըն Փաւն[171] յօրինեաց զայն.
Կովն Յով[172] ըզկաթըն նըմա ետ:
Թէ խօթանայ երբեք Արմիզդ,
Յայսըմ խորտկէ կերեալ առնու զուտեւլոյն տենչ:

Ես կերայ զայս մասն յապաւեալ,
Որ ինչ մընայն՝ քեզ բաւական լիցի ճարակ։
Էջ դու դուլիւն որ անդ պատրաստ կայ վասըն քո։ »
Թէպէտեւ ոչ կարի անճահս
էր յօրինեալ այս պատմութիւն,
Հաւատալ այնմ յիմարութիւն մեծ էր գայլոյն։
Եւ նա ի դոյլն, եւ զի ծանր էր քան ըզմիւս մասն,
Աղուէսն ի վեր եղ եւ զերծաւ։
Մի ծաղրեսցուք, քանզի խաբիմք
Ի չնչին իսկ բանից անգամ։
Իւրաքանչիւր ոք հաւատայ կարի դիւրաւ
Այնըմ յորմէ երկնչի, եւ որում ցանկայ։

---

## ԱՌԱԿ Է.

### *Շինական ոմն Դանուբայ. 4—4*

Ըզմարդիկ չէ արժան դատել
ըստ արտաքին կերպարանաց։
Բարւոք է այս խորհուրդ, սակայն ոչ է նոր ինչ։
Վաղ իսկ վրիպակ մըկան ձագուն[173]
Ետ ինձ պատճառս ի հաստատել զոր ասացիս։
Ի հանդէս այսր ունիմ այժմիկ
ԶՍոկրատ, զԵսովպ, եւ միւս եւս ոմըն շինական
Կողմանց ափանցըն Դանուբայ,
այր՝ զոյր Մարկոսն Աւրելիոս[174]
Հաւաստեաւ իմըն նըկարէ մեզ ըզպատկեր։

Սոկրատ, Եսոպ չէին անծանօթ.
ծն առ զերրորդն առցուք ի մէջ
Կարճառօտիւ. ահա նորին նըկարագիր:
Ըզծընօտիւըն մօրուս թաւ ունէր այս այր.
Մազեղ մարմինն
Արջոյ բերէր ըզնմանութիւն, անլեզ արջոյ.
Ընդ թաւ յօնիւքն ունէր ծածկեալ նա զաչըս իւր.
Գոժնէհայեաց, խոշորաշուրթըն, կորաքիթ.
Տառատոկ մի ունէր այծեայ,
Ի ծովային պրտուէ գօտի:
Այսպիսի այր առաքեցաւ
հրեշտակութեամբ ի քաղաքաց
Զօրս ոռոգէ Դանուբ: Ոչ գոյր յայնժամ տեղի
Ուր Հռովմայն ագահութիւն
Չէր սըպրդեալ եւ արկեալ ձեռն:
Պատգամաւորն եկեալ այսպէս արկանէ ճառ:
"Հռովմայեցիք, եւ ծերակոյտ
որ նստեալ էք ի լըսել զիս.
Ես նախ առ դիսըն պաղատիմ ձեռըն տալ ինձ.
Եւ ո՛ տայր ինձ եթէ անմահքն
ուղղէին զիմ լեզու այնպէս
Զի մի՛ բընաւ մեղադրութեան
հասանէր ինձ բարբառել բան.
Թէ նոքա ոչ օգնեն, ի միտըս գըտանէ ոչ այլ ինչ մուտ,
Եթէ ոչ չար եւ անիրաւ.
Որ առ նոսա չապաւինին՝ բռնաբարեն զօրէնս նոցա.
Վըկայ եմք մեք զորըս պատժէ
ժըլատութիւնն հռովմէական:

Ոչ թէ իւրոց ինչ արութեանց
վասն, այլ առ մեղս մեր Հռոմէ
Ի պատժոց մեզ եղեալ գործի։
Այլ երկերուք, Հռոմայեցիք,
երկերուք, մի երկինք օր մի
Ի ձեր գլուխ իսկ դարձուսցեն
զայս ամենայն ողբ եւ աղէտ.
Այլ եւ իւրովքն արդար վճռովք
ի ձեռըս մեր արարեալ յանձն
Զամենայն չէնսըն զայնոսիկ որովք ի վրէժ
մեր պաշտի նա,
Առ սաստկութեան իւրոյ ցասման
Կքրեւ ըզմեզ գերիս ըզձեզ առնիցէ մեզ։
Եւ ընդէ՞ր իսկ իցեմք արդեւք,
աղէ, գերիք ձեր. ասացէք,
Թէ ի՞ւ իցէք ազնըւագոյն
դուք քան զայլ ազգըս հողածնաց.
Եւ կամ ո՞ր այն իրաւունք տեարս
զձեզ արարին տիեզերաց.
Ապա վասն է՞ր գայցէք խռովել
դուք զանմեղաց մարդկան ըզկեանս։
Մե՞ք զանդըս մեր ըզշայեկա-
նըս վարէաք հանդարտ. ձեռք մեր
Չի՞ն յարուեստըս կրթագոյնք, որպէս ի վար.
Զի՞նչ ուսուցէք դուք Գերմանաց.
Նոքա են քաջք եւ յաջողակք.
Թէ էր նոցա ժըլատութիւն,
Եւ բռնութիւն, որպէս է ձեր,

Փոխանակ ձեր նոցա լինէր
իշխանութիւնդ այդ ապաքէն.
Եւ գիտէին վարել առանց անգթութեան։
Անգթութիւն դատաւորաց ձերոց ի մեզ
Ըստ ամենայն մտաս անցանէ։
Ճոխք եւ պատիւ բազմաց ձերոց
Իսկ թշնամանս կրեն անտի.
Այլ գիտասջիք եթէ անմահք
Հոգին ի մեզ։ Նոքա ձերով օրինակօք
Համակ զարշանըս տեսանեն դէմ յանդիման։
Ըզդիս ատել եւ ըզմեհեանըս կողոպտել.
Ագահութիւն հասեալ մինչեւ ի մոլութիւն։
Գործակալք իսկ զորըս յղէք
ի Հռոմայ մեզ՝ ոչ ասեն բաւ.
Երկիր եւ գործք ձեռաց մարդկան
Ի զուր ջանան մատուցանել յագուրդ նոցա։
Ըզդոսա յետըս կոչեցէք, ոչ եւս կամիմք
Զանդըս հերկել վասըն նոցա։
Ահա զքաղաքըս մեր լքեալ,
ի լերինս անդր խուսափեմք.
Ըզսիրելիս մեր զամուսինս եւըս թողեալ
Ընդ ահագին արջըս միայն եմք կենակիցք.
Ի ծնանելոյ յուսահատեալք որդիս թշուառս,
Եւ յառնելոյ վասըն Հռոմայ
զերկիր մեր չէն զոր կեղեքէ.
Իսկ զորդիս մեր զարդէն ծընեալս,
Վաղամեռիկըս տեսանել ըղձոսս լաւ համարիմք մեք։
Դատաւորք ձեր ի չարիս անդր
տան յաւելուլ մեզ եւ զոծիր։

Ո՛ն, կոչեցէք ըզզուսա յետս.
ուսուցանեն մեզ ոչ այլ ինչ,
Բայց մեղկութիւն եւ ախտըս չարս.
Գերմանք լեցին իբրեւ զնոսա
Յափշտակիչք եւ ընչաքաղցք:
Ես զայսոսիկ միայն տեսի, իբրեւ եկի այսր ի Հռոմ:
Ջուներցի՞ ոք ինչ ի պարգեւ,
Ո՛չ ծիրանիս մատուցանել, վայրապար իմն ունիցի ակն
Պաշտպանութեան ինչ յօրինաց.
բայց այնու եւս օձան նոցա
Յերկարի յոյժ: Այս ճառ սակաւ մի խստագոյն
Լեցի թերեւս ձեզ անհաճոյ:
Բովանդակեմ: Աշտամբեցէք մահու պատժով
Տրտունջ մի որ արդար է յոյժ:
Ըռ այս բան այրն անկեալ դընի.
ամենեքին ափ ի բերան
Ըզքանչանան ընդ մեծանձն այն,
ընդ բանիբուն, կորովամիտ
Վայրենին այր գետնատարած:
Պատրիկ[175] իսկոյն կարգեցաւ նա.
եւ այս եղեւ քէն վըրիժուն
Որում այն ճառ համարեցաւ
արժանաւոր: Եւ ընտրեցան
Այլ դատաւորք, եւ գըրով եւս
Խնդրեցաւ ճառն զոր յատենի խօսեցաւ այրն,
Զի օրինակ լեցի խօսող մարդկան որ գան:
Այլ ընդ երկար չեղեւ ի Հռոմ հընարաւոր
Յակատանի ունել ըզնոյն խօսողութիւն:

---

# ԱՌԱԿ Ը.

*Ծերունի, եւ Երիտասարդք երեք. 4—4*

Ութսնամեայ ոմն, ասեն, տնկէր։
"Թող շինեսցէ․ սակայն տնկել եւս յայնըմ տիս,"
Ասեն երեք երիտասարդք ի դըրացեաց,
"Գործ է մարդոյ աղճատելոյ։"
"Նըրդուեալ ի դիս," ասեն ցընա,
"Ի վաստակոց այտի զի՞նչ պտուղ քաղեսցես դու։
Միթէ ունի՞ս ծերանալոյ ակըն զօրէն Նահապետաց։
Զի՞նչ օգուտ քեզ ծանրաբեռնել ըզկեանըս քո
Հանդերձելոյն հոգովք որ չեն ինչ քեզ ի շահ։
Մի՛ խորհիր այլ ինչ յայսմ հետէ
բայց ըզվըրիպանըս քո անցելոյ․
Թող զերկայն յոյս եւ լայն խորհուրդս․
Այս ամենայն վայելէ մեզ։"
"Եւ ոչ իսկ ձեզ,"
Պատասխանի ետ ծերունին։
"Զի ամենայն հաստատութիւն
Գայ անագան, եւ է սակաւ։
Գունատեալ ձեռըն Պարկայից
Որպէս իմովս, նոյնպէս ձերով աւուրքք խաղայ։
Կատարած մեր է նոյն ըստ կարճըն տեւելոյ։
Ո՞ղք ի մէնջ ըզկապուտակ կամարին լոյս
Վայելեսցէ յերկարագոյն։ Իցէ՞ րոպէ
Որ լիցի քեզ երաշխաւոր
միւս եւս այլոյ վայրկեան ժամու։
Իմ թոռնորդիք պարտիցեն ինձ զայս հովանի։

Սակայն ահա պատմութիւն մի
զոր արտաքոյ մարթ է հաշուել.
Առ սքանչելիս ունիմ ես զայն,
եւ իբրու թէ առասպելաց
Ունի նա դէմս եւ երեւոյթ,
թէպէտեւ է ճշմարտութիւն:
Տապալեցին եղեւին մի, քանզի էր ծեր.
Հինք ապարանք բուոյ, տրխուր, մութ ապաւէն
Թռչնոյն զոր առ վասն իւր թարգման
Պարկայն Ատրոպ:
Ի բուն անդ որ լին էր սորովք,
փորեալ մաշեալ ժամանակաւ,
Առնէին վանս հանդերձ պլրովք
Մրկունք բազումք առանց ոտից,
Ճարպով համակ բոլորաձեւք:
Սընուցանէր զնոսա թռչունն ի մէջ շեղջիցն ցորենոյ,
Եւ յապաւէր կտցաւ իւրով ըղխումն նոցա:
Ճարտարամտէր թռչունն, է պարտ խոստովանել:
Ի դէպ ժամու, թէպէտ եւ էր
ընկեր, առնէր որս ի մրկունսն.
Զորս միանգամ խուսափէին
յորջոյն ունէր նա ի սկըզբան:
Առ ի դարման տանել այսմիկ չարաճըճին սկսաւ խեղել
Զորըս կալեալ յետ այնորիկ. եւ կտրելով զոտըս նոցա
Ըստ հեշտի իւր ուտէր զնոսա այնուհետեւ,
Ըղձին՝ այսօր, վաղիւ՝ ըղձիւսն:
Զամենեսին միահաղոյն ուտել չէր մարթ.
Զառողջութիւն իւր եւս հոգայր.

Յառաջատեսն իմաստութիւն նորա մերոյն էր հաւասար.
Նա մնացանդ այնչափ մինչեւ բերել նոցա
Պարէն եւ հատըս եւս յուտեստ։
Թող Կարգեսեանն[176] յամառեսցի
Թէ բուն այն էր ժամացոյց իմն եւ մեքենայ.
Ո՞ր այն հընարք էին կարող ի տալ նըմա
Այնպիսի միտս, յարգելանի
փակել զազգ մի, եւ կըրճատել։
Ճարտարամտել եթէ չէր այս,
Վասն իմ հանճար եւ խորհուրդ են անծանօթ ինչ։
Տես որպիսի հաւանութիւն ած թափեաց նա.
“Յորժամ այս ազգ ըմբռնիցի, փախիչի ի բաց.
Ապա պարտ է զնոսա ուտել ընդ ըմբռնելն։
Զամենեսի՞ն. չէ հըճարին։
Եւ դարձեալ վասըն պիտոյից
Չիցէ՞ արժան պահել զոմանս։
Ապա պարտ է տանել խընամ
Սընուցանել զնոսա զի մի խուսափեսցեն։
Սակայն զի՞արդ։ Ի բաց խլեսցուք
զոտըս նոցա։„ Գտցե՞ս արդեւք
Ի մարդկանէ զմըտաւ ածեալ
քան զայս դիպող ինչ ի վախճան։
Զի՞նչ այլ արուեստ խորհելոյ մեզ
Արիստոտել եւ յաջորդք իւր
Ուսուցանեն, աղէ ասա։

Չէ այս առակ. եւ իրքն, թէպէտեւ զարմանալի իմն, նա չհաւատալի իսկ, սակայն ճշմարիտ են։ Թերեւս կարի իմն ստուարացուցի զյառաջատեսն զգօնութիւն բուոյն. քանզի չպնդեմ հաստատել թէ գուցէ

յանսատունս այնպիսի ինչ ճարտարմտութիւն որպիսի է այս. սակայն ստուապացուցանել այսպէս՝ չէ առանց ներելոյ ի վէպս, մանաւանդ յայս ազգ մատենագրութեան զոր ես արկանեմ ի կիր։

---

## Վերջին բանք:[177]

Այսպէս մուսայն իմ առ եզերբ յստակ առուի
Նստեալ գրրէր ի լեզու դից
Զոր ինչ ասեն աստ ընդ երկնաւ
Այնչափ անթիւք յարարածոց
ի փոխ առեալ ըզձայն բնութեան։
Իբրեւ թարգմանս ազգի ազգի շնչաւորաց,
Արարի ես զնոսա գործիչ ի մատենիս,
Քանզի խօսի ամենայն ինչ յաշխարհի աստ։
Չիք ինչ որոյ իւր առանձին բարբառ չիցէ։
Նոքա յիւրեանս են առաւել
բանիբուն քան թէ ի վէպս իմ.
Եթէ այնք զորս մուծանեմ ես՝
ոչ գտանեն զիս հաւատարիմ.
Եթէ մատեան իմ չէ խրատու լաւ օրինակ,
Գոնեա հորդեաց նա ճանապարհ,
Թող այլք ի նա արկանիցեն ըզվերջին ձեռն։
Սիրելիք քերց Ինունց, ըզգործն հանէք ի գլուխ.
Տուք այլ պատուէրս զորս իմ թողեալ է ապաքէն.
Այսու գիւտիւ պաճուճել պարտ է ըզնոսա։
Այլ բազում ինչ կայ առաջի ձեր ի զբաղել.

Մինչ Մուսայն իմ անմեղ այսու
քաղցր ըսպասու է պատաղեալ
Լուդովիկոս նուաճէ զԵւրոպ, եւ հզօր ձեռամբ
Ածէ յիւրեանց փախճան զազնիւ ազնիւ խորհուրդս,
Զորս յօրինեալ կազմեալ իցէ
երբեք իշխան միահեծան։
Ո՛վ դուք ինունց քերց սիրելիք,
այնպիսի ինչ իրք են սոքա,
Որ յաղթեն ե՛ւ ժամանակին, ե՛ւ Պարկայից։



# ԳԻՐՔ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

## ԱՌԱԿ Ա.



*Ընկերք Ոդիսեայ. 4—4*

*Առ Տէր Դուքս Դուրկոմէի:*

չխանդ որում անմահքն ունին
ուրոյն խընամ,
Թող զի խունկք իմ ի սեղանի
քում ծըխեսցին։
Մատուցանեմ անագան իմն
ըզՄուսային իմոյ պարգեւս.
Տէք եւ վաստակք տան ինձ կարծեմ
արդարանալ.
Պակասէ իմ հանճար, մինչ զօդ յամենայն ժամ
Տեսանի քոյդ տակաւ յաճման.
Ու թէ զընայ, այլ ընթանայ,
նա թըւի թէ ունիցի թեւս։
Գիւցազն յորմէ ունի նա ձիրըս գեղեցիկս
Յարուեստի անդ Երեայ՝ վառի առնել նոյնչափ
Չէ ի նորա ձեռս, ըստիպեալ ըզյաղթութիւն,

Զրգնալ յառաջ հսկայաբար
Անդ ի փառաց ասպարիզէն.
Յաստուածոց ոմն ունի ըղձա. արքայն մեր է
Զոր մի եւեթ ամիս արար Հըռենոսի տէր եւ յաղթող:
Արագութիւնս այս կարեւոր իմն էր յայնժամ.
Թերեւս այսօր եղիցի այն յանդգնութիւն:
Լըռեմ, զի եւ ծիծաղք եւ Սէր
Ոչ կասկածեմ թէ սիրիցեն ճառըս յերկարս:
Յայսգունակ դիւց կազմեալ եւ կան ալքունիք քո.
Սոքա ոչ բնաւ թողուն ըզքեզ: Բայց եւ այնպէս
Այլ եւըս դիք ոչ թէ չունէին անդ բարձըր գահ.
Միտք եւ հանճար վարեն անդէն զամենայն ինչ:
Հարց ըզնոսա վասըն գործոյ իւրեանց ուր Յոյնք,
Անմիտք, սակաւ յառաջիմացք,
Ետուն զանձինս հըմայութեանց
Որ փոխէին ի կերպարանս անասնոյ զմարդ:
Ընկերակիցք Ոդիսեայ յետ աղմըկելոյ իբր տասն ամ,
Մոլորէին ըստ հաճելոյ
հողմոց, անգէտք իւրեանց բախտին:
Ի ցամաք մի ելին նոքա
Ուր դուստրն, ասեն, դից տուընջեան,
Կիրկէ, ունէր իւր ապարանս:
Արբոյց նըմա ըմպելի ինչ
Ախորժական, այլ լի թունովք մահաբերօք:
Նախ անըզգայ եղեն նոքա.
Յետ սակաւուց մարմին նոցա եւ կերպարանք
Զազգի ազգի ճճեաց առին ըզնմանութիւն եւ ըզտեսիլ.
Ահա եղեն արջ, փիղ, առեւծ.
Ոմանք էին յաղթ, վիթխարի,

Եւ այլք այլազգ.
Էր տեսանել եւ փոքրկունս, որպէս խլուրդք:
Ոդիսեւս լոկ պրծաւ անտի.
Ի դըժնդակ ըմպելւոյն նա եղեւ ըզգոյշ:
Զի ունէր նա ընդ հանճարոյն
Դիւցազին դէմս եւ քաղցրութիւն,
Արար այնչափ զի կախարդն այն
Էառ այլ թոյն ոչինչ ընդհատ յիւրմէ անտի:
Դիք սովոր են, ասել զոր ինչ ի մտի ունին.
Կախարդս այս յայտ արար զիւր բոց:
Խորագիտին Ոդիսեայ ոչ էր մարթ չօգտել
Ի դիպուածոյն.
Հաւանեցոյց նա ըզկախարդն
տալ զիւրեանց դէմս անդրէն Յունաց:
“Այլ կամիցի՞ն,„ ասէ Նիմփայն, “նոքա հաճել:
Երթ տալ զըրոյց խմբին այնմիկ:„
Ոդիսեւս իսկ եւ իսկ երթեալ
ասէ, “Բաժակըն թունաւոր
Ունի նաեւ զիւր անդեղեայն,
եւ գամ զայն ձեզ մատուցանել.
Ո՛վ սիրելիք, կամի՞ք լինել դարձեալ մարդիկ:
Ահա տուաւ ձեզ բարբառել:„
Առեւծն ասէ, իբրեւ խորհէր նա մռնչել.
“Չեմ ես այնպէս պակասամիտ.
Հրաժարեցա՞յց ի պարգեւէն զոր ըստացայ.
Են իմ ժանիք եւ ճիրանունք,
գիշատեմ զորս գան յիմ վերայ:
Թագաւոր եմ, զիա՞րդ եղէց քաղաքացի լոկ Իթակայ.
Դու արասցես թերեւըս զիս սոսկ զօրական.

փոխել զվիճակ իմ ոչ կամիմ:»

Թողեալ զառեւծն ընթանայ նա
առ արջն, ասէ, «Ո՜հ, եղբայր իմ,
Որպիսի՜ ինչ եղեր քանի՜ սիրուն ըզքեզ տեսանեմ ես:»
«Արդարեւ եմ ես այսպիսի,»
Պատասխանի ետ ըստ կարի արջըն նըմա.
«Եմ այնպիսի որպիսի արջ պարտի լինել:
Ո՞ ասաց քեզ թէ այս ինչ ձեւ
է գեղեցիկ քան ըզմիւս այլ.
Միթէ իցէ՞ մարթ ի քումմէն դատել ըզմերն:
Ես ըղտարփանս մատակ արջոյ ունիմ վըկայ:
Զե՞մ քեզ հաճոյ. մեկնեաց աստի,
գընա զուղի քո եւ թող զիս.
Կեամ ես ազատ, գոհ եւ առանց
հոգոց որ զիս տագնապեցին.
Եւ ասեմ քեզ պարզ եւ մեկին.
փոխել զվիճակ իմ ոչ կամիմ:»

Իշխանն հեղլէն երթայ առ գայլն
առնել ըզնոյն բան առաջի.
Ասէ ցընա, թէպէտ գիտէր թէ մերժեսցի.
«Ընկեր,» ասէ, «ամաչեմ յոյժ,
Զի կին հովիւ տիովք մանուկ եւ գեղեցիկ
Արձագանգաց պատմէ զանձուկ քո որկորեայ,
Որ զոչխարս իւր ետ քեզ ուտել.
Ժամանակաւ զողջոյն իսկ հօտն էր քո փրկեալ,
Ազնուական կեանս վարէիր:
Թող զայդ անտառ եւ եղիջիր
փոխանակ ընդ գայլոյ՝ այր լաւ:»

«Գուցէ՞ ինչ այր լաւ,» ասէ գայլն,
«Վասն իմ, ես ոչ տեսանեմ զոք.
Եկեալ ես այսր իբր առ գազան մի շաղղակեր.
Դու որ խօսիս, զի՞նչ ես, ասէ.
ո՞չ եւ քո իսկ, թէ չէի ես,
Կերեալ էր զայն ամենայն խաշն,
զոր ողբայ շէնըն բովանդակ։
Թէ էի մարդ, երդնում ի դիս,
Ո՞չ սիրելոց էի նոյնչափ ըզկոտորած։
Վասըն միոյ բանի երբեմըն փողոտէք դուք ըզմիմեանս.
Ո՞չ դուք էք գայլ, այր ընկերի։
Զամենայն քաջ կշռեալ պնդեմ համառօտիւ,
Թէ երկուստեք լեալ չարագործ,
Լաւ իցէ գայլ լինել քան մարդ.
փոխել զվիճակ իմ ոչ կամիմ։»
Ոդիսեւս ետ ամենեցուն ըզնոյն խրատ.
Ամենքին ետուն ըզնոյն պատասխանի,
Այնպէս աւագն, որպէս կրտսեր։
Ազատութիւն, անտառ, գընալ ըստ հաճոյից,
Էր մեծագոյն հեշտանք նոցա։
Ամենքին տան արութեան գործոց հրաժեշտ։
Համարէին լինել ազատ՝
ըզհետ երթեալ իւրեանց կարեաց.
Էին անձամբ անձանց գերիք։
Իշխանդ, իմ կամք էին ընտրել այնպիսի ինչ,
Որ կարէի զախորժականս եւ զօգտակար խառնել ի մի։
Խորհուրդս այս էր գեղեցիկ յոյժ,
Եթէ դիւրին էր ընտրութիւնն։
Ես զՈդիսեայ զընկերսն ածի իբր օրինակ.

Նոցին նման են ոչ սակաւք յաշխարհի աստ.
Մարդիկ որոց տամ ի պատիժ
Զատեղութիւն քո եւ վճիռ:

---

## ԱՌԱԿ Բ.

*Կուզ եւ երկու ճնճղուկք. 6—6*

Կուզ մի եւ ճնճղուկ մի, հասակակիցք միմեանց
Էին եւ բնակակիցք անդստին յորրոցէ.
Վանդակին, կողովոյ եւս էին նոյն թերափք.
Թռչունն, ասեն, զրգռէր ըստէպ ըստէպ ըզկուզն.
Ըզկըտուց սըրէր մին, միւսըն խաղայր թաթիւք.
Բայց սակայն վերջինս այս խընայէր դըրացւոյն.
Ողջէր ըզնա կիսով.
Խածէր նա մանաւանդ
Զիւր թաթ վառել սայրիւք:
Այլ ճնճղուկն անըզգաստ
Հարկանէր միշտ կտցաւ.
Կուզն ըզգօն եւ հանդարտ
Ներէր նըմա զայն խաղ:
Առըն բարեկամի չէ արժան զանձըն տալ
Քինու սաստիկ ցասման:
Եւ զի էին ծանօթ միմեանց ի տղայ տիոց,
Երկար սովորութիւնն ունէր զնոսա խաղաղ:
Երբեք ոչ դառնայր խաղն ի կագ եւ ի կռիւ:
Յորժամ ճնճղուկ դըրացի
Եկն այց առնել նոցա, նաեւ եղեւ ընկեր

Խըռովարար թռչնոյն եւ իմաստնոյն կըղզոյ,
Ի մէջ երկուց թռչնոց յանժամ յարեաւ կըռուիւ,
Եւ կուզն եղեւ հաղորդ։
“Ընծանօթս այս,„ ասէ, “Գայ խըռովել ըզմեզ․
Ըզքարեկամ մեր նա այսպէս թշնամանէ․
Զի՞նչ, ճնճղուկ գըռացւոյն զայցէ՞ ուտել ըզմերն․
Ո՛չ, երդնում ի պատիւ կըղզոյ։„ Եմուտ ի կռիւն,
Եկեր զօտարոտին։ “Արդարեւ,„ ասէ կուզն,
“Մ՛իս ճնճղկաց ունի համ ընտիր եւ ազնիւ։„
Զայս ասացեալ ապա ուտէ եւ ըզմիւսն եւս։
Զի՞նչ խրատ իցէ մարթ հանել ինձ յառակէս․
Առանց այսր ամենայն առակ մնայ թերի։
Տեսանեմ նշմարանս, ըստուեր որ խաբէ զիս․
Այլ դու, իշխան, կարես լինել իսկոյն հասու։
Խաղ են այսոքիկ քեզ, ո՛չ Մուսայիս իմում․
Ո՛չ նա, ոչ քորք նորա ըզքո հանճար ունին։

---

## ԱՌԱԿ Գ.

*Այր որ գանձէ եւ Կապիկ. 4—4*

Դիզէր այր մի։ Յայտ է թէ այս մոլորութիւն
Բազում անգամ ի խօլութիւն զառածանի։
Այս այր ոչ այլ ինչ ըզմըտաւ
ածէր թէ ոչ ոսկի, արծաթ։
Ոսկի, արծաթ թէ ոչ յարգին,
սընոտի ինչ են եւ ունայն։
Ի զգուշութիւն իւրոյ գանձուն

Փորձէր նա զիւր ճարտարութիւն յընկենուլն անդ
Զայնս ի մետաղեայ դրամոց որոց են ցանկացող
Մարդիկ ի վեր քան զամենայն։
Թէ ագահին չէր տեսեալ զիւր համարակալ,
Զի ի փականս դրամն արկանէր զիւր բանալին,
Դահեկանացն ամենեցուն
ըղձոյն առեալ էր ճանապարհ,
Ըզմի եւ զնոյն տագնապ կրեալ։
Կապկին անշուշտ էր թըռուցեալ մինչ ի վերջինն
Ի խոր անդունդ անդր ի նաւուց
խորտակելոց լեալ մեծատուն։
Պահեսցէ Տէր ի մեծատանց անտի զըազումս,
Որ չըգիտեն վարել բարւոք քան զայս ագահ։

---

## ԱՌԱԿ Դ.

*Երկու այծք. 4—4*

Ընդ արածել այծից ուրեք,
Ընդէն ոգի ազատութեան
Նոցա խնդրել տայ բախտ. երթան ի տարաշխարհ,
Յարօտաշատ տեղիս անկոխ ի մարդկանէ։
Ընդ եթէ գոյ տեղի անել եւ անմատոյց,
Քարանձաւ, լեառն ինչ գահավէժ,
Շուրջ զան անդէն յուպէտ յուկամ։
Յընդ ափափայս ընթանալոյ
ոչինչ կարէ արգելուլ զայծ։

Արդ այծք երկու օձտելով իմն,
Երկոքին եւս սպիտակ թաթիւք,
Թողին ըղձարգ, իւրաքանչիւր այծ առանձին։
Մին ընդ առաջ երթեալ միւսոյն ըստ դիպուածոյ,
Հանդիպեցան գետոյ յորոյ
վերայ տախտակ մի էր կամուրջ․
Աքիսք երկու անցանել դէմ
առ դէմ հազիւ էին կարող
Ընդ այն կամուրջ։
Դարձեալ, հոսանք ջըրոյն արագ եւ գետըն խոր
Շատ էին տալ դողալ երկուց ամազոնաց։[179]
Հանդերձ այնու մեծ վըտանգաւ, մին յերկոցունց
Ի տախտակին վերայ եդ զոտն, ապա եւ միւսն։
Թուի տեսանել ինձ ընդ մեծին Լուդովիկեայ,
ԸզՓիլիպպոս չորրորդ որ գնայ
Ի կղզի[180] անդր որ փասնից կոչի կղզի։
Այսպէս յառաջ կոյս խաղացին ոտն առ ոտին,
Եւ քիթ առ քիթ ախոյեանք մեր։
Երկոքին եւս վէս եւ գոռոզ,
Ի միջոցի անդ կամրջին չառնուին յանձն
Միմեանս տեղի տալ։ Մանաւանդ պարծէին եւս,
Յիւրեանց տոհմէ անտի հաշուել ըստ զըրուցաց,
Մին այծ մի մեծ համբաւոյ տէր,
Զոր Պողիփեմըն[181] Կաղադեայ մատոյց պարգեւ․
Իսկ միւսն, ասեն, զայծն Ամաղթեան,[182]
Ըզսընուցիչն Արամազդայ։
Եւ զի չառին յանձն ընկրկել,
Երկոքին եւս անկան ի ջուրն։

Այս պատահար ոչ է նոր ինչ
Որոց գրնան զբախտին շաւիղ:

---

# Ա Ռ Տ Է Ր Ն Ի Մ

*Դուքս Պուրկոնեի:*

*Դուքսն խնդրեալ էր ի Լաֆոնդենայ առակ մի որոյ անունն իցէ Կուզ եւ Մուկն:*

Առ ի հաճել զմանուկ իշխանն որում Համբաւն
Է սահմանեալ տաճար ի վէպս իմ յայսոսիկ,
Զխարդ յօղեալ յօրինեցից առակ որոյ անունն իցէ,
Մուկըն եւ Կուզ:
Ածից ի մէջ յերգս յայսոսիկ կին գեղեցիկ,
Ըստ արտաքին կերպարանացն
հեզ եւ համբոյր, սակայն անգութ,
Որ խաղ առնէ զոգիս զորս է ածեալ ըզքռամբ,
Որպէս առնէ ըզմուկըն կուզ:
Կամ առից նիւթ ըզխաղս Բախտին
Որում չէ ինչ համոյական, եւ որոյ է սովորութիւն
Ընդ այնոսիկ անգամ որոց նա բարեկամ կարծի՝ վարել,
Որպէս վարի կուզ ընդ մըկան:
Կամ թէ ածից թագաւոր զոմն
զոր քան ըզքնաւ սիրելիս իւր
Մեծարէ Բախտ. թագաւոր որ
կալեալ ունի զանիւ նորին,
Որում չէ բնաւ արգել աշխարհ մի թշնամեաց,
Եւ որ զկարի հզօրս առնէ խաղ, թէ կամի,

Որպէս առնէ ըզմուկըն կուզ:
Այլ յակամայս ի դարձուածիս յոր ձեռն արկի՝
Խորհուրդ իմ եկն յայտ, եւ, եթէ ոչ սխալեմ,
Ապականեմ ըզբնաւ կարի յերկարելով,
Մանուկ իշխանն յայնժամ ծաղրէ ըզմուսայն իմ,
Որպէս ծաղրէ ըզմուկըն կուզ:

---

## ԱՌԱԿ Ե.

*Կուզ ծեր եւ Մուկն մանուկ: 4—4*

Մուկըն մանուկ որ չէր ինչ փորձ,
Կարծէր ածել յաղերս կուզ ծեր,
ի գութ նորա ապաստանեալ,
Հաւանութիւնս տըւեալ նըմա զայսօրինակ.
«Աղէ, թող զիս կեալ, մուկըն մի
Որ եւ ծախիւք, եւ հասակաւ լեալ իբրեւ զիս,
Խցէ՞ քեզ բեռն ի տանս յայսմիկ:
Սովեցուցի՞ց, ըստ կարծեաց քոց,
Ըզտանուտէրն, ըզտան տիկին, զամենայն մարդ:
Միով միայն ես ցորենոյ հատիւ սնանիմ.
Կաղին մի ըրկ զիս բոլորակ գործել բաւէ:
Այժմ եմ վըտիտ, համբեր վայր մի.
Պահեա որդւոց քոց զայս խորտիկ:»
Մուկն ըմբռնեալ զայս օրինակ խօսէր առ կուզն:
Պատասխանի տըւեալ միւսոյն, ասէ, «Խաբիս.
Առնի՞ն առ իս այնպիսի խօսք:
Ո՞չ շահէիր աւելի ինչ, եթէ առ խուլս էր խօսեալ քո.

Կուզ, եւ այն ծեր, ներեսցէ քեզ. չէ մարթ այդմիկ:
Օրէնք այս են. էջ ի խոնարհ,
Մեռիր եւ երթ դու դէպուղիղ
Առ մանող քորս արկանել ճառ.
Մանկունք իմ այլ խորտիկ գտցեն:„
Կուզըն կալաւ զիւր բան: Իսկ վասն առասպելիս,
Նաւսիկ խրատ բարոյական որ է դիպող,
Մանկութիւն է յուսով, կարծէ
առնուլ զոր ինչ եւ խնդրեսցէ.
Ծերութիւն է անագորոյն:

---

## ԱՌԱԿ Զ.

*Եղջերուն հիւանդ. 4—4*

Յերկրի ուրեք լի եղջերուօք,
եղջերու մի անկաւ հիւանդ:
Շատք յընկերաց նորա իսկոյն
Եկին ի տես նորա, օգնել,
Մխիթարել զնա. ամբոխ ծանրատաղտուկ:
“Ո՜ն անդըր, տեարք,„ ասէ, “թողէք զիս մեռանել.
Թոյլ տուք, որպէս է իսկ արժան.
Թող զիս Պարկայն յուղարկեսցէ
եւ ի լալոյ դադարեսջիք:„
Բայց ոչ այնպէս. մխիթարիչք
Կատարեցին ընդ երկար զայն տխուր պարտիս.
Եւ ի հաճելն Աստուծոյ եւ գնաց ամբոխն.
Այլ չեղեւ այս առանց բաժակ մի ըմպելոյ,

Այն է առանց առնլոյ բաժին ինչ յայրօտէն.
Ամենեքին ի մօտաւոր անտառի անդ ճարակեցան.
Եւ եղջերուին պաշար կայր նուազեցաւ։
Ոչ գտանէր այլ եւըս բուտ
Այսպէս անկաւ ի յուսոյն նա յեւս յոռեգոյն,
Եւ ետես զանձն ի վախճանի
Մնալ նօթի, նա եւ լինել իսկ սովամահ։
Տոյժըս կըրեն որ միանգամ կոչեն ըզձեզ,
Բըժիշկք մարմնոյ դուք եւ հոգւոյ։
Ո՛վ ժամանակ, ո՛վ բարք, ի զուր աղաղակեմ.
Ամենայն ոք խնդրէ զիւր վարձ։

---

## ԱՌԱԿ Է.

*Բու, Թուփ եւ Բադ. 4—4*

Թուփ, բադ եւ բու,
Որք էին եւս տեսեալ զի անդ յերկրին իւրեանց
Շահին դոյզն ինչ,
Հեռի ուրեք գնան ի վաճառ,
առնեն քըսակ հասարակաց։
Էին սոցա ուրոյն սենեակ, սատարք, զովոզք,
Ալք խընամոտք, հըմուտ գործոյ,
Արծաթոյ տուր եւ առ հարեալք ի մատենի։
Ամենայն ինչ էր ի կարգի, յորժամ վաճառք
Նոցա անցեալ ընդ տեղիս ինչ,
Խըթովք լցեալս եւ անցուկ յոյժ,
Ընդ անջըպետըս դժուարինս,

Կապեալ պնդեալ ընկղմեցան ի վիհըս խորս
Որ են դրացիք տարտարոսին։
Եըրբեակըն մեր հան հառաչանըս վայրապար,
Կամ մանաւանդ չեհան բընաւ։
Վաճառականըն փոքրագոյն իմաստնագոյն է ի սըմին.
Առ ի պահել ըզհամբաւ իւր,
ըզկորուստ իւր պարտ է ծածկել։
Այլ այն զոր մեղքըն կըրեցին, եղո՛ւկ նոցա,
Էր անդարման, զի պատահարն եղեւ յայտնի.
Մնացին անյոյս եւ անարծաթ, առանց հնարից,
Մերձ ի կըրել ըզկանաչ խոյրն[183]։
Ոչ ոք եբաց նոցա զքըսակ
Ե՛ւ գլուխ պարտուց, ե՛ւ տոկոսիք,
Ե՛ւ նըւիրակք, ե՛ւ դատաստանք,
Ե՛ւ պարտատէրն առաջի դրան
Հասեալ վաղ քաջ ընդ առաւօտն,
Ոչ տային թոյլ նոցա զբաղել
յայլ ինչ թէ ոչ խորհել հընարս
Հաճել զայն գունդ։
Թուէին հարկանէր զանցորդաց բուռն
յամենայն ժամ.
“Տեա՛րք իմ,„ ասէր, “աղաչեմ, տուք
տեղեկութիւն
Յորում վայրի իցեն վաճառք
Զորս անդունդք ինչ հանին ի մէջ։„
Բադն ընդ ջըրով երթայր խնդրել.
Թռչունըն բու. չիշխէր այլ եւըս մերձենալ
Ի բնակութիւն ուրուք ցերեկ.
Ի նուիրակաց հալածական յամենայն ժամ՝

Ի ծակս, ի սորս երթայր թաքչել։
Ճանաչեմ ես այր պարտապան որ չէ, ո՛չ բու,
Ո՛չ թուփ, ո՛չ բադ, ո՛չ յայնպիսի ինչ վիշտ անկեալ,
Այլ է իշխան, եւ զամենայն օր մաղապուր
Ընդ գաղտնի ինչ սանդուղ զանձն իւր զերծուցանէ։

---

## ԱՌԱԿ Ը.

*Կռիւ Շանց եւ Կզոց, եւ մարտ Կզոց եւ Մկանց.*

*4—4*

Հերձուած տիրէ ընդ տիեզերըս հանապազ.
Աշխարհ մեր տայ բիւր օրինակըս մեզ անտի.
Այս դիք առ մեզ բազում ունի իւր հարկատուս։
Սկիզբն արասցուք ի տարերաց։
Զարմանայցես ի տեսանել
զի յամենայն վայրկեան ժամու
Են ընդ միմեանս նոքա ի մարտ պատերազմի։
Թող ըզտարերացըն չորեսին,
Այլ եւս որչափ յարարածոց
Կըռուին անցնիւր ընդ ընկերին։
Ժամանակաւ տուն մի լցեալ շամբք եւ կըզովք,
Ետես իբրեւ հարիւր վճռովք տըւեալովք յոճ ատենական
Զամենայն կագ եւ վէճ նոցա խաղաղացեալ։
Կարգեալ տէր տանն ըզգործ նոցա եւ ըզռոճիկ,
Եւ սպառնացեալ մտրակ որոց յարուցեն կագ,
Իբր հօրեղբօր որդիք կէին անասունքն այն։
Միութիւնս այս քաղցրը, գոգ իմն եղբայրական,

Ի շինութիւն էր դըրացեաց:
Այլ միութիւնըն դադարեաց: Պընակ մի թան
Կամ ոսկըր մի առ ականէ տըւեալ միում ի նոցանէ՝
Նըզեւ պատճառ զի եկըն միւսըն զայրացեալ
Ցուցանել զիրն իբր անիրաւ:
Իրաւագէտք ոմանք զայն գործ համարեցան
Իբրեւ շընորհս էգ շան որ էր ծնընդական:

Զխարդ եւ է այս գուպարած
Վառեաց սըրահ, խոհակերոց,
Իւրաքանչիւր իւրում կըղզոյ
եւ իւրում շան եկաց պաշտպան:
Նըշաւ կանոն ընդ որ տրտունջ լինէին կուզք,
Եւ ըղձքաղաքն ապկին ի յոյզ:
Խօսնակ նոցա ասէր թէ պարտ է եւ պատշած
Միտ դընել քաջ դատավճռոյ:
Զուր ի խնդիր եղեն նոցա
Ցանկեան ուրեք ուր յանձանձչաց
նոցա ծածկեալ էր ըղնոսա.
Զորս հուսկ ուրեմն կերան մըկունք:
Յարեաւ նոր դատ: Տոհմըն մըկանց
Կըրեաց չարիս. ծեր ոմըն կուզ,
Նուրբ, խորագէտ, չարաճըճի,
Որ ունէր ոխ ընդ մըկանց տոհմին
Մուտ ի դարան, կալաւ զնոսա եւ սատակեաց:
Ընդ այս եղեւ գոհ տանուտէրն:
Եկից յայն զոր ասելոց եմ: Ընդ երկնաւ ոչ գոյ տեսանել,
Ո՛չ անասուն. ոչինչ որ էն, ոչ արարած,
Որ չունիցի զիւր հակառակն.
այս իմն օրէնք են բընութեան:

Խնդրել զպատճառն է աւելորդ
Զոր միանգամ արար Աստուած՝
արար բարւոք. գիտեմ այսչափ
Բայց զոր գիտեմ քաջ այս է զի բանք մեծամեծք
Յոչինչ յանգին բազում անգամ:
Մարդիկ, պարտ է, նաեւ յորժամ
էք վաթսնամեայ,
Առ մօրուանի դաստիարակս յղել ըղձեղ:

---

## ԱՌԱԿ Թ.

*Գայլ եւ Աղուէս. 4—4*

Ուստի՞ է զի ոչ ոք յաստիս
Զիւրոց կենաց ըզպայմանէն գըտանի գոհ:
Այս անուն որ կամէր եթէ էր զօրական,
Զի ընդ զինուոր այր նախանձի:
Պատմի եթէ մին յաղուեսուց փափաքեցաւ
Փոխել ի գայլ: Եւ ո՞ բընաւ ասել իշխէ
Թէ արուեստին իսկ ոչխարի
Գայլ ոչ երբեք ցանկանայցէ:
Ես ընդ այն իմն զարմանամ զի ութամենի
Ոմն յիշխանաց արկ զայս յառակ,
Մինչ ես արդէն ալեւորեալ
Բազում աշխատ լեալ յօրինեմ
Վէպս ինչ որ չեն քան ըզնորայն
արձակ զըրուցըս հանճարեղ:
Զարդք յառակի նորա ցանեալք

Ոչ գոն ի գիրս վիպասանաց,
Ո՛չ բովանդակ, եւ ոչ այնպէս բարւոք կարգեալ,
Յայսմիկ է նա գովելի յոյժ
Երգել ըզնա տրկով իմով
Ես իմ քանքար. այլ ըսպասեմ,
Զի դիւցազն իմ յետ սակաւուց
Տացէ առնուլ ինձ ըզշեփոր։
Չեմ ես մեծ ինչ ոք մարգարէ,
Այլ ընթեռնում անդէն յերկինս,
Եթէ ընդ հուպ արութիւնք իւր
Պահանջեսցեն բազում հոմերս
Եւ ժամանակս այս զայնպիսիս ոչ ծընանի։
Զայս ամենայն գաղտնիս թողեալ,
Ո՛ն առ զառակն առցուք պատմել յաջողութեամբ։
Աղուէսն, ասեն, ասէ ցըգայլ.
"Սիրելի՛դ մեր, իմ կերակուր
Գըրեա թէ միշտ է աքաղաղ
Ծեր, եւ կամ հաւ վըտիտ մարմնով.
Յայսըմ մըսոյ եմ տաղտկացեալ։
Դու առնես ճաշ ազնըւագոյնս եւ անվըտանգ.
Ես հուպ երթամ տանց, իսկ դու կաս հեռի անտի։
Զարուեստ քո ինձ ուսո՛, ընկեր.
Ի ջոկի աստ իմում արա զիս առաջին,
Զորոյ կարթէն իցէ կախեալ ոչխար պարարտ.
Մի՛ դընէր զիս ի համարի ապաշնորհաց։"
"Մըտադիւր իսկ," ասէ ցնա գայլն.
"է իմ եղբայր մի վախճանեալ.
Երթայց առնուլ ըզմորթ նորա. արկ զայն ըզքեւ։"

Գնացին, եւ գայլն ասէ ցընա.

"Ահա պարտիս առնել այսպէս,

Եթէ կամիս զի հեռացին շունք ի հօտէն:"

Աղուէսն արկեալ զանձամբ իւրով ըզմորթ գայլոյն,

Սկսնէր զուսումն զոր վարդապետ իւր աւանդէր:

Ի սկզբան անդ արար յոռի, ապա լաւ եւս, յետոյ բարւոք,

Յետոյ ոչինչ արար թերի:

Այն ինչ ուսաւ որչափ ինչ մարթ էր ուսանել,

Ետես հօտ մի անդ մօտ ուրեք:

Ընթանայ անդըր գայլըն նոր.

Արկանէ ահ շուրջ ըզտեղեաւն:

Զոր օրինակ զԱքիլլեայ զէնսն առեալ զանձամբ

Պատրոկղէս[184] արկ ի մեծ տագնապ

Եւ ըզբանակն, եւ ըզքաղաք:

Մարք եւ նըւանք եւ ծերունիք

ի մեհեան անդըր խուժէին:

Գունդ բառաչող ազգին կարծէր

տեսանել գայլս յիսուն թըւով.

Շուն եւ հովիւ եւ հօտ փախեան ի շէնըն կոյս.

Թողեալ միայն ոչխար մի իբր առհաւատչեայ:

Գողըն կալաւ ըզնա: Անտի քայլս ինչ հեռի

Լըւաւ զի հաւ մի խօսեցաւ անդ մօտ ուրեք:

Աշակերտ մեր չոգաւ իսկոյն առ աքաղաղն,

Թողեալ զորսոյն հանդերձ ի բաց,

Մոռանալով զոչխար, զուսումն, ըզվարդապետ,

Եւ ընթացեալ փութանակի:

Զի՞նչ օգուտ է ծպտել, ասէ.

Կարծել այսպէս զանձըն փոխել է լոկ պատրանք.

Մարդ զառաջին կերպարանս իւր փոխէ անդըրէն

Յառաջնում անդ պատեհ ժամուն։
Ի հանճարոյ քումմէ որոյ չէք հաւատար,
Իշխան, առնում զայս նիւթ ողջոյն։
Դո՛ւ է տուեալ ինձ եւ ըզնիւթն,
Ե՛ւ ըզխրատուն, եւ ըզխօսիցն ըզհանգամանս։

---

# ԱՌԱԿ Ժ.

*Խեցգետինն եւ Դուստր նորա. 4—4*

Գիտունք երբեմն, զոր օրինակ եւ խեցգետին,
Գնան յետս յետս, զթիկն դէպ ի
նաւահանգիստ անդրը շրջեալ։
Այս է արուեստ նաւավարաց,
այս է նոյնպէս հնարողութիւն
Նոցա որ վասըն ծածկելոյ հզօր ինչ ջան,
Ի հակառակ կողմըն դիմել կերպարանեալ՝
Զոսոխ իւրեանց վարեն յայն կողմն։
Նիւթ իմս է փոքր, սակայն է մեծ յառաջաբանս.
Այսմ օրինակ ցուցանեմ ես զաշխարհակալ,
Որ առանձինըն շփոթէ
հարիւրգլխեան դաշնակցութիւն։
Ե՛ւ այն յոր ձեռն արկանէ նա,
եւ այն յոր ոչ արկանէ ձեռն,
Ի սկզբան անդ են գաղտնիք ինչ,
եւ յաղթութիւն լինին յետոյ.
Ի զուր ուղղին աչք մարդկան յայն ինչ զոր ծածկէ.
Վըճիռք իմն են բախտին զոր չէ մարթ արգելուլ.

Լինի հեղեղն ի վախճանի անհընարին ի նուաճել.
Հարիւր աստուածք են անկարող
ընդդէմ միոյն Արամազդայ։
Լուդովիկոս եւ բախտ Թըւին ինձ միաբան
Ըզտիեզերս ձըգել տանել։ Այլ եկեսցուք ի մեր առակ։
Խեցգետին մայր յաւուր միում ասէ ցիւր դուստր.
«Ո՞րպէս գընաս. բա՜բէ, չկարե՞ս գընալ ուղիղ։»
«Ա՛յնպէս,» ասէ դստրիկն, «որպէս դու իսկ գընաս.
Միթէ կարե՞մ գընալ այլազգ,
քան որպէս գնայ իմ ազգատոհմ.
Կամի՞ս դու զի երթայց ուղիղ,
մինչդեռ գընան այլք կամակոր։»
Յիրաւի իսկ ասէր նա զայս, զի զօրութիւն
Ընդելական օրինակաց
Է ընդհանուր եւ ազդական
Ի բարին եւ ի չարն, ի բնաւս,
առնէ յիմարս եւ իմաստունս,
Բայց մանաւանդ ի սոցանէ։ Իսկ վասն ըզթիկըն շըջելոյ
‘Նըպատակին, ասեմ դարձեալ կանոն է քաջ,
‘Նա մանաւանդ յարուեստի անդ պատերազմի,
Սակայն առնել զայն արժան է ի դէպ ժամու։

---

# ԱՌԱԿ ԺԱ.

*Արծուի եւ Անձեղ. 4—4*

Արծուի, դշխոյն օդոց, եւ միւս
եւս այլ Թռչուն անձեղ անուն.
Այլաբարոյք, այլալեզուք, այլախորհուրդք,
Նա՛ հանդերձիւք եւս այլակերպք,
Անցանէին ընդ մարմանդ մի։
Դէպք այնպէս տան զի երկոքին
գան ի մի վայր յանկեան ուրեք։
Ըշկաչաղակն ունի երկիւղ,
այլ արծուի էր կերեալ ցըյագ,
Քաջալերեալ ըզնա՝ ասէ. "Եկ, երթիցուք ի միասին.
Եթէ իշխանըն դից տաղտկայ բազում անգամ,
Նա որ վարէ ըզտիեզերս,
Եւս առաւել տաղտկանամ ես,
ես որ գիտես պաշտեմ ըզնա։
Խօսեաց ընդ իս, խօսեաց առանց ակնածութեան։"
Անձեղն յանժամ առ շաղփաղփել
Մերթ զայսմանէ, մերթ զայնմանէ,
զամենայնէ։ Այրն Ովրատեայ
Որ խառնիխուռն ասէր ընդ դաշտըս՝ գիտէր ոչ
Զինչ բաջաղանք առնել կարեն.
կաչաղակ մեր զայս գիտէր քաջ։
Խոստացաւ նա զամենայնէ բերել զըրոյց
Վաղվաղելով եւ երթալով վայրէ ի վայր,
Իբրեւ լրտես քաջ։ Այլ չեղեւ
համոյ խոստումըն նորա այս։

Ասէ ցընա արծուին ցասմամբ.
"Մի թողուր դու ըզկաղապար քո,
Ո՛վ կաչաղակ, երթ, չունիմ պէտս
Յարքունիս իմ շաղակրատի.
Այդ բոյս բարուց է վատթար յոյժ:"
Ըզգոյն կամէր եւ անծեղ մեր:
Գտանել մուտ առ դիս չէ այն զոր կարծեն շատք.
Մահու տագնապ յաճախ կրել տայ այս պատիւ:
Պարուք, լուեալք, զուարթադէմն կերպարանօք,
Սակայն սրտիւք այլակերպք յոյժ,
զանձինս առնեն ատելիս անդ:
Թէպէտ որպէս անծեղըն պարտ է յայն անդիս
Կրել հանդերձ երկուց ազգաց:

---

## ԱՌԱԿ ԺԲ.

*Ցին, Թագաւոր եւ Որսորդ. 4—4*

*Առ իշխանն Ֆրանսուա Լուի տէ Քոնդի:*[185]

Որպէս աստուածք են բարերար.
կամին զի եւ թագաւորք եւս
Լիցին այնպէս, ներել թողուլ
Գեղեցկագոյնն է յիրաւանց անտի նոցա,
Ո՛չ քաղցրութիւն քինու վրիժուց:
Իշխան, այս իսկ են քո կարծիք:
Գիտեմ եթէ սրտմտութիւն
Այն ինչ ծընեալ անդէն փախչի ի սրտէ քում:
Աքիլլէս որ ցասման իւրում չիշխեաց տիրել՝

Չեղեւ այնու մեծ ոք դիւցազըն քան ըզքեզ.
Այս յորջորջումըն պատշաճի նոցա միայն ի մարդկանէ,
Որք որպէս էրն յոսկի դարուն,
բազում բարիս գործեն յաստիս:
Ի դարու աստ մերում սակաւք
յաւագ արանց են այնպիսիք.
Շնորհ ունի նոցա աշխարհ
ըզվըճարուց զոր ոչ առնեն:
Զօրինակին նոցա դու ոչ երթաս ըզհետ.
Նա՛, գործք անթիւք ազնըւականք
խոստանայցեն տաճարըս քեզ:
Եւ Ապողոն, այն հոյակապ վայրաց բնակիչ,
Իւրով քնարաւ ցանկայ պատմել զանուն քո անդ:
Գիտեմ, սպասեն քեզ յապարանս
անդ աստուածոց.
Մի դար բնակել աստ է քեզ շատ եւ բաւական:
Հիմէն կամի կալ մնալ առ քեզ դար մի ողջոյն:
Այն անուշակ բերկրանք իցէ
Պատրաստէր քեզ երանութիւն
Յայնմ համառօտ ժամանակի:
Իշխանակինն[186] եւ դու չէք ինչ այնմ անարժան:
Վըկայ են ինձ շընորհք նորա,
Վըկայ եւ այն զարմանալիք
Որով երկինք որ ի տուրս իւր շըռայլէ քեզ,
Չըրիւք որոց նըմանք ի քեզ ըռկ գըտանին՝
Ըզմանուկ տիս քո զարդարել հաւանեցաւ:
Ոգին Պուրպոն գիտէ զշընորհս իւր ամոքել.
Յանձին նորա երկինք ի մի վայր կըցեցին
Եւ զոր գիտէն տալ մեծարել,

Եւ զոր գիտէն տալ սիրել զանձն:
Չէ ինձ ի դէպ զուրախութիւն քո հռչակել:
Լռեցից ուրեմն եւ պատմեցից
Զոր ինչ Թռչուն մի գիշատիչ, ասեն, արար:
Ցին մի որ զիւր ըզքոյն ըղհին գրաւեալ ունէր,
Ընկալ, ասեն, յանկարծ ի ձեռս առն որսորդի:
Սա խորհի զնա Թագաւորին տանել ընծայ.
Եւ զի չքնաղ ինչ էր Թռչունն՝ էր պատուական:
Մեծարանօք մատուցանէ այլն ըզԹռչունն.
Եթէ չէ զրոյց այս պատմութիւն,
Իսկոյն երթայ Թռչունն ունել
Մագլօք ըզքիթ Թագաւորին:
— «Զի՞նչ, զարքային ունել ըզքի՛թ:»
— Այո, նորին իսկ արքայի:»
— «Ապա չունէր յայնըմ ժամու
արքայն ոչ Թագ, ոչ գաւազան:»
— «Եթէ ունէր եւս, էր նոյն բան.
Մարթ էր Թռչնոյն զարքային քիթ
ունել որպէս ըզքիթ այլոյ:»
Պատմել զազմուկ եւ զաղաղակ աւագանւոյն
Աշխատութիւն է ընդունայն:
Արքայն ոչինչ խռովեցաւ. աղաղակել ոչ է վայել
Աւգոստափառ Թագաւորի:
Թռչունն անշարժ եկաց. չեղեւ բընաւ հընար
Վանել ըզնա լոկ մի վայրկեան:
Տէրըն կոչէ ըզնա, գոչէ եւ տագնապի,
Կարկառէ զխայծ եւ ըզդաստակ, սակայն ի զուր:
՛Նա՛, Թըւէր իմն Թէ մինչեւ ցայգ
Ընիծեալ հուն չարամագիլ

Կալոց էր անդ զըսպառնալեօքն ունչս ապաւեալ,
Ի նուիրական քըլթին վերայ օթագայել:
Կորզել ըզնա բունի գըգուէր ըզկատաղին:
Ինքն հուսկ ուրեմն թողու զարքայն,
որ ասէ, "Թոյլ տուք հեռանալ
Թռչնոյդ այդմիկ եւ այնմ որ եբեր ընծայ.
Երկոքին եւս կատարեցին զիւրեանց պաշտօն.
Մին իբրեւ ցին, եւ միւսն իբրեւ անտառաբնակ:
Ես որ դիտեմ եթէ զիարդ
այր թագաւոր պալատի գործել,
Զերկոսին եւս ահա թողում անպատուհաս:"
Եւ արքունիքն էին ապշեալ: Աւագանին զահի հարեալ
Զուշակեցին զայն գործ որում
նմանող լինել չէին ատակ:
Կարի սակաւք յիշխանաց իսկ
զայն օրինակ առնել իշխեն:
Արտորդապետն հազիւ պրծաւ,
Թէպէտեւ էր յանցաւոր ինքն եւ թռչունն իւր.
Անգէտ էին թէ այնչափ հուպ
երթալ յարքայն ունէր վըտանգ.
Ճանաչել չէր նոցա ուսեալ
Բայց զանտառաց հիւրըս միայն.
միթէ մե՞ծ իմըն չար էր այս:
Պիլպէյ[187] դընէ զայս հանդիպեալ մօտ ի Գանգէս,
Ընդ ոչ մի ոք ի մարդկեղէն արարածոց
Մըխէ ըզձեռն իւր յանասունս
առ ի հեզուլ զարիւն նոցա,
Թագաւորք իսկ ունին երկիւղ մերձենալոյ:

"Մի՛թէ գիտե՞մք," ասեն նոքա,
"Եթէ Թռչունս այս գիշակեր
Ի պաշտպանման Տրովայ չէր։
Թերեւս էր նա անդ իշխան ոք եւ կամ դիւցազն,
Խորագէտ իմն եւ մեծաշուք.
Որ ինչ երբեմն եղեւ, կարէ լինել եւ արդ։
Հաւատամք մեք այժմ ըստ մեծին Պիւթագորայ.
Այսինքն թէ ըզկերպարանըս մեր փոխեմք ընդ անասնոց.
Մերթ լինիմք ցիռն, մերթ աղաւնի,
Մերթ մարդիկ, մերթ եւըս թռչուն,
Ազգ օդաթռիչ եւ օդակեաց։"
Եւ զի այլազգ եւըս պատմեն
Զիրս որսորդին, ահա միւս ազգն։
Այլ մի հաւաց գիշակերաց
որսորդ, ասեն, կալաւ երբեմն
Ցին մի յորսի (ինչ մի որ ոչ դիպի երբեք).
Կամեցաւ զայն առնել ընծայ թագաւորի,
Իբրեւ անօսր ինչ եւ չքնաղ։
Այս հանդիպի երբեմն ուրեմն ի հարիւր ամս.
Եւ յետին ծագ այնր արուեստի։
Մատչի որսորդն առ աւագ ումըն յարքունեաց,
Լի նախանձու, եռանդագին,
որչափ ի կեանս իւր ոչ էր լեալ։
Այսու չքնաղ նոր ընծայիւ
Մեծատուն զանձըն կարծէր լեալ,
Մինչ անասունն զանգակակիր,
Դեռ վայրենի եւ անհեզեդ,
Պողպատեայ մագլօք իւրովք
Զորսորդին քիթ ունի եւ տայ վէրս եղկելւոյն.

Աղաղակէ այրըն, մինչ այլքըն ծիծաղին,
Եւ՛ Թագաւորն, եւ արքունիք.
ո՞ ծիծաղի ոչ. եւ ես իսկ
Ոչ թողուի զիմ մասն, եթէ
տային եւս ինձ զարքայութիւն:
Թէ ծիծաղի Պապ, հաւաստեաւ
Հաստատել ոչ իշխեմ, սակայն զայր Թագաւոր
Համարիմ հէք թէ չառնու յանձըն ծիծաղել:
Զայս բերկրութիւն ունին եւ դիք:
Թէպէտեւ յոնըս թուխս ունի,
Արամազդ եւ գունդն անմահից ծիծաղին եւս:
Արամազդ բարձ քըքիջ, որպէս
եւ պատմութիւնըն վըկայէ
Մինչ Հեփեստոս կաղալով գայր
մատուցանել նըմա ըմպել:
Թէ անմահից գունդ ցուցցէ զանձն ըզգօն կամ ոչ,
Ես փոխեցի զիմ նիւթ, եւ մեծ իսկ իրաւամբ,
Զի յառակէս պահանջի խրատ,
Եւ որսորդըն ձախող դիպուած զի՞նչ կարէ մեզ
Ուսուցանել, թէ ոչ զայն թէ
յամենայն ժամ է տեսանել
Որսորդ անմիտ քան Թագաւոր արգահատող:

---

# ԱՌԱԿ ԺԳ.

*Աղուէս, ճանճք եւ Ոզնի. 4—4*

Ընկնի հետոց արեան իւրոյ
Ծերացեալ ոմն անտառաց հիւր,
Աղուէս ճարտար, նուրբ, խորագէտ,
Վիրաւորեալ յորսորդաց եւ անկեալ ի տիղմ,
Զգեաց երբեմն ըզթեւաւորն զայն հացկատակ
Զոր մեք սովոր եմք կոչել ճանճք։
Տրտունջ լինէր աղուէսն ըզդից,
եւ համարէր զարմանալի
Զի բախտն այնպէս խստիւ սանձել ըզնա կամէր,
Մինչեւ մատնել ըզնա ճանճից ի կերակուր։
"Զի՞նչ," ասէ, "գան յիմ վերայ, յիմ որ եմ ճարտար
Քան զամենայն հիւրս անտառի։
Միթէ եղե՞ւ երբեք աղուէս մի կերակուր.
Եւ ընդէ՞ր իմ այս ձետ իցէ.
անօգուտ բե՞ռն ինչ իցէ այն։
Ե՛րթ, թող երկինք հարցեն ըզքեզ,
ո՛վ անասուն դու տաղտկալի.
Ցե՞րբ կեաս վնասու հասարակաց։"
Այլ ոզնի մի որ կեայր անդ մօտ,
Որ յառակս իմ յայս առաջին անգամ մուծաւ,
Զերծուցանել փութաց ըզնա յանձկութենէն,
Զոր տայր նմա ճըճին ժլատ։
Ընդուցանեմ ի սլաքս իմ հարիւրաւորս ի նոցանէ,
Եղբայր աղուէս," ասէ ցնա,
"եւ նեղութեան քում տամ վախճան։"

"Զգո՜յշ լեր," ասէ,
"ով բարեկամ, մի՛ առներ զայդ.
Թող, աղաչեմ, կատարեսցեն զիւրեանց ընթրիս:
Այս անասունք են այժմ յագեալ, նոր իմքն խումբ
Գայցէ խուժել ի վերայ իմ,
խստագոյն եւս եւ ժանտագոյն:"
Բազում կերողս գտանեմք յաշխարհի աստ.
Ոմանք մարդիկ են արքունեաց, այլք դատաւորք:
Ախտոտել կարծէ դիպող
առնուլ զառակս ըզմարդկանէ:
Հասարակաց են օրինակք
Յերկրիս յայսմիկ, մանաւանդ ուր գտանիմք մեք:
Որչափ են լի այն մարդիկ, չեն այնչափ տաղտուկ:

---

## ԱՌԱԿ ԺԴ.

*Սէր եւ Յիմարութիւն. 4—4*

Ամենայն է խորհուրդ ի Սէր.
Նետք եւ կապարճք, ջահ, մանկութիւն.
Ոչ է գործ ինչ միոյ աւուր
Ուսմանս այսմիկ խելամըտել:
Ուստի չիշխեմ աստ զամենայն ինչ մեկնել ես.
Իմ միտք այս են, ասել միայն որչափ մարթիմ,
Եթէ զիա՛րդ կոյրն այն որ աստ
(Աստուած է նա), զիա՛րդ, ասեմ, կորոյս ըզլոյս.
Զի՞նչ ըզհետ եկն այնըմ չարի որ է թերեւըս բարի ինչ:
Դատաւոր զնեմ հոմանի մի, ոչ վճռեմ ես,

Յիմարութիւն եւ սէր խաղան յաւուր միում ի միասին.
Վերջինս այս, Սէր, դեռ եւըս չէր զրկեալ յաչաց:
Նուազեցաւ վէճ. Սէր ի մի վայր կամէր ածել
Վասն այնորիկ ըզժողով դից.
Միւսըն չեղեւ այնըմ հաւան,
Եւ աքացի եհար ըզնա այնպէս ուժգին,
Մինչ տալ նըմա կորուսանել ըզլոյս երկնից:
Աստղիկ խնդրեաց ըզվրէժ նորա,
Էր կին եւ մայր, այս բաւական է ի դատել զողբոց նորա:
Դիք ամենայն խըռովեցան.
Եւ Արամազդ, եւ Նեմեսիս,[188]
Եւ դատաւոր տարտարոսին,
միով բանիւ, դիք համօրէն:
Զանհընարին գործ աղետիցն եցոյց Աստղիկ.
Որդի նորա առանց ցըպոյ չըկարէր ոտըն մի փոխել.
Եւ ոչ մի ինչ պատիժ էր մեծ ոճրոյն այնմիկ,
Եւ ըզվընասն եւըս պարտ էր հատուցանել:
Բարուք կշռեալ
Զհասարակաց շահ, եւ ըզշահ դատախազին,
Դատակընիք վըճռոյ վերին ատենի դից
Պարտաւորէ զՅիմարութիւն
Զի առաջնորդ լիցի Սիրոյ:

---

## ԱՌԱԿ ԺԵ.

*Ագռաւ, Վիթ, Կրայ եւ Մուկն. 4—4*

*Առ տիկին Սապլիէր:*[109]

Պահէի քեզ մեհեան ի վէպս իմ յայսոսիկ,
Որ լինելոց էր կատարած ընդ աշխարհի:
Տեւելոյ իսկ նորա իմ ձեռն արկեալ էր հիմն
Այն գեղեցիկ արուեստիւ որ է դիցըն գիւտ,
Եւ յանուն այնր աստուածութեան
Որ պաշտելոց էր ի նորին մեհենի անդ:
Ի կողակի դրանն էր գրելոց զայս
«Երեւելական տաճար Իրիսն աստուածութեան:»
Ոչ այն Իրիս զոր ի սպաս իւր ունի Հերա,
Քանզի Հերա եւ հայրըն դից
Սըպասաւելոց էին սմին, եւ փառըս եւս համարելոց
Ըզպատգամաց նորա տանել գուշակութիւն:
Նոր աստուածն էր երեւելոց ի կամարին.
Ողիմպ ողջոյն տեսանելոց էր մեծ շըքով
Ընդ լուսեղէն իւմն հովանեաւ կացեալ զԻրիս:
Որմք ունելոց էին առատ եւ բովանդակ
Զամենայն կեանս նորա, տեսիլ հաճոյական,
Այլ ոչ դիպօք այնոքիւք լի
Որ տէրութեանց են կործանումն:
Ի ծագ անդըր մեհենին էր կալոց պատկերն,
Ուր շողային տեսիլ դիմացն,
Ժըպիտ նորա եւ հըրապոյրք,
Արուեստ նորա հաճեցուցիչ
առանց բընաւ իսկ խորհելոյ.

Վայելչութիւն որում բոլորք տան մեծարանս:
Ցուցանելոց էր 'նդ ոտիւք նորա մարդիկ,
Եւ դիւցազունս եւ կէս աստուածս,
Ըղձիս անգամ. որոց աշխարհ երկրպագէ՝
Գայցեն ծըխել երբեմըն խունկ ի բագինս իւր:
Տալոց էր յաչըս նորա փայլել զհոգւոյն
Զամենայն զանձ, թէպէտ եւ ոչ լի բովանդակ.
Քանզի զայն սիրտ ժիր եւ գըթաց ամենեւին
Առ բարեկամն իւր, եւ ոչ ընաւ այլօրինակ,
(Զի այն ոգի ծընեալ անդէն յերկնից բարձունս՝
Ունի հանդերձ արու գեղով նաեւ շընորհըս կանացիս,)
Չէ հնարաւոր որպէս կամի ոք նըկարել:
Ո՛վ դու Իրիս, որ զամենայն գիտես դիւթել,
Որ եւ յետին աստիճանաւ հաճոյ լինել եւըս գիտես,
Դու զոր սիրէ մարդ իբրեւ զանձն
(Զայս ասեմ ես առանց տալոյ
ըղտուփանաց բընաւ կասկած,
Զի ի սրտէ մերմէ այս բան է հալածեալ,
Թողցուք ուրեմն զայն,) հաճեսջիր զի մուսայն իմ
Կատարեսցէ յաւուր միում զայս ծըրագիր:
Զայսըր պատկեր եւ ըղխորհուրդ,
Առ առաւել վայելչութեան,
կացուցից ա՛յլ ազգ յանդիման,
Ուր տայ նըշանըս մըտերիմ սէր այնպիսի
Եւ այնպէս իմըն մեծարգի,
զի պատմութիւնն անգամ միայն
Ժամանակ մի բաւական է զբօսուցանել ըղմիտըս քո.
Ոչ զի այս անցք անցին ի մէջ թագաւորաց.
Զի զոր առ քեզըդ տեսանեմք լեալ մեծարգի՝

Չէ թագաւոր որ ոչ գիտէ զինչ է սիրել.
Մահկանացու մի է որ գտնել զանձն իւր գիտէ
Առ սէր իւրոյ բարեկամին։
Այսչափ բարի չէք իմ տեսեալ։
Անասունք չորք որ միաբան կէին ուրեք՝
Զայսըր զուսումըն տան մարդկան։
Վիթ, մուկն, ագռաւ ընդ կրիայի
Կեան միաբան ի միասին.
արդարեւ քաղցր ընկերութիւն։
Բնակութիւն նոցա հեռի ի մարդկանէ
Առնէր զնոսա երանելիս։
Այլ զի՞նչ. մարդիկ ի վախճանի
զամենայն խորշ ածեն ի յայտ.
Լեր դու ի մէջ անապատի,
Ի խորըս ջուրց, յօդըս վերինս,
Չես ի յամրի ի դարանաց նոցա գաղտնեաց։
Երթայր անմեղս ըզբօսնուլ վիթ,
Յորժամ շուն մի, դժնեայ գործիք
Չարախորհուրդ կամաց մարդկան,
Եկն ի վերայ խոտոյ հանել ի վեր ըզհետս ոտից նորա։
Վիթ տայ փախուստ,
եւ մուկն ի գալ ընթրեաց ժամուն,
Բարեկամաց մընացելոց ասէ. "Ուստի՞ է զի եմք մեք
Այսօր երեք ի սեղանի։
Վիթ մոռացա՞ւ արդեւք ըզմեզ։"
Յայս բան կրիայն
Ձայն բառնայ եւ ասէ. "Բա՜բէ, եթէ էի
Իբրեւ զագռաւ թռչուն թեւովք,
Առժամայն իսկ երթայի ես

Գիտել գոնեա թէ ո՛ր երկիր,
Ո՛ր պատահար ունի կալեալ
Զընկերըն մեր ոտիւք թեթեւ,
Զի ըստ սրտին չէ պարտ ըզնա դատել այնպէս:»
Ագռաւն յայնժամ թռուցեալ երթայ.
Բացուստ ի բաց տեսանէ նա զանմիտըն վիթ
Ընկեալ ի հաղբ եւ ի վշտի:
Դառնայ այսրէն նոյնհետայն ազդ առնել այլոց:
Զի հարցանել նըմա թէ ե՛րբ, ընդէ՛ր, զիա՛րդ
Անկաւ եղեռն այն յիւր վերայ,
Եւ յունայն բանս կորուսանել ըզպատեհ ժամն,
Որպէս առնէր դաստիարակ մի դպրոցի,
Ոչ վարկաւ նա իմաստութիւն:
Թռեաւ ագռաւն եւ եկն այսրէն:
Ըստ համբաւոյ նորա ընկերքըն այն երեքին
Կալան խորհուրդ: Երկոքին յայն կարծիս էին,
Թէ պարտ էր գնալ փաղփաղակի
Ի տեղին ուր վիթն էր կալեալ:
«Խակ միւսն,» ասէ ագռաւն, «որջոյն ունիցի պահ,
Զի իւրով յամրըն գընացիւք
Ե՞րբ կարէր նա հասանել անդր,
Թերեւս ըզկնի մահուան վըթին:»
Զայս ասացեալ երթան օգնել
Հաւատարմին եւ սիրելոյն իւրեանց եղբօր,
Այծեմնըկան հիւքին լերանց:
Կըրայն նոյնպէս կամի գընալ.
Անկանի իսկ իբրեւ զնոսա ի ճանապարհ,
Անիծեալ զոտս իւր կարճաքիս, եւ յիրաւի,
Եւ ըզտուն իւր կըրելոյ հարկ:

Վարմից կրծողն (այս անուն է պատշաճ մրկան)
Կորէ զհանգոյցըս ծուղակին.
Թողում պատմել զուրախութիւնն։
Եկեալ որսորդն, ասէ. «Ո՞ ոք
յափշտակեաց յինէն զորս իմ։»
Վարմից կրծողն յայս բան ի ծակ մի խուսափէ,
Ագռաւն ի ծառ, եւ վիթն յանտառ.
Եւ որսորդին զայրացեալ յոյժ,
Զի ոչ եղեւ ակահ գործոյն,
Ետես ըզկրայն, եւ կասեցոյց ըզցասումն իւր։
«Ընդէ՞ր,» ասէ, «տագնապիմ ես.
Սա զփոխարէնն առնել կարող է յընթրիս իմ։»
Ի մախաղ իւր արկ ըզկըրայն
որ լինելոց էր հատուցումն,
Եթէ ագռաւն չէր արարեալ ազդ այծեման։
Սորա թողեալ ըզդադար իւր,
Կերպարանի կաղ, եւ երթեալ անկանի յակն։
Այրըն պնդի ըզհետ նորա, եւ ընկենու
Որչափ ինչ ծանր ունէր զիւրեւ. եւ յայնժամ մուկն
Գտեալ պարապ կրծելոյ զկապըս մախաղին՝
Ջանայ այնչափ,
Մինչեւ փրկէ ըզմիւս քոյր իւր,
Յորմէ որսորդն յուսայր զընթրիս իւր պատրաստել։
Պիլպէյ պատմէ թէ իւրն այսպէս կատարեցաւ։
Թէ զԱպողոն միայն կոչեմ ինձ ի թիկունս,
Յօրինեցից առ ի հաճել ըզքեզ մատեան այնպէս երկայն,
Որպիսի են Եղիականն, եւ կամ որպէս Ոդիսականն։
Ընդ եղեցի վարմից կրծողն երեւելին ի դիւցազանց.
Թէպէտ է եւըս ճշմարիտ, թէ կարեւոր են աստ եւ այլք։

Տնակիր կըրայն այնպիսի բանս անդէն խօսի,
Զի քաջն ագռաւ գնայ կատարել
Գործ լրտեսի, յետ այնորիկ սուրհանդակի.
Այծեամն ունի ճարտարութիւն ըստխպելոյ
Զորսորդըն տալ կըծող մըկան ժամ պարապոյ.
Այսպէս անցնիւր յիւրում կարգի
Մըխի, գործէ եւ աշխատի:
Ո՞ւմ տալ արժան իցէ ըզվարձ:
Աստի, թէ ոք հաւատայ ինձ:
Զի՞նչ ոչ ժըտի եւ ոչ կարէ
մըտերմութիւն հաւատարիմ:
Միւս այն կարիք զոր կոչեն սէր՝
Չէ արժանի այնչափ պատուոյ.
բայց եւ այնպէս զօր ամենայն
Գովեմ ըզնա եւ նըւագեմ.
Նզմուկ, այսու չառնէ նա զիս առաւել գոհ:
Դու պաշտպանես ըզքոյր նորա,
այս բաւական է, եւ իմ վէպք
Վասըն նորա վաստակեսցեն այլ օրինակ:
Տէր իմ էր սէր. այժըմ տարայց ըսպաս այլում,
Եւ հռչակել ընդ տիեզերս
Ըզնորա փառս, որպէս ըզքոյն:

---

## ԱՌԱԿ ԺԶ.

*Անտառ եւ Մայրեւոր. 4—4*

Մայրեւոր ումն էր կորուսեալ եւ կամ բեկեալ
Ըզփայտըն զոր էր անցուցեալ ընդ կացին իւր։
Նորոգել զայս կորուստ չէր մարթ վաղվաղակի,
Ուստի առ վայր մի խընայեալ լինէր անտառն։
Հուսկ յետոյ այրն աղաչէ զնա խոնարհաբար
Մեղմով իմըն թողուլ նըմա
Առնուլ տանել ոստ մի միայն
Նոր մեղեխ մի առնել կացնին։
Ասէր երթալ այլուր շահել զիւր ոգեպահ.
Այսպէս թողլոց էր ոչ սակաւ
կաղնի, եւ ոչ սակաւ սոճի,
Որոց գըլնէր իւրաքանչիւր
ոք շուք գեղոյն եւ ծերութեան։
Նըմա այլ զէնըս շընորհեաց անտառն անմեղ,
Այլ զղջացաւ։ Անցոյց մեղեխ այրըն կացնին։
Թշուառականն արկ զայս ի կիր
Ի մերկանալ զիւր բարերարն
Ի գլխաւոր զարդուց նորա.
Հեծէ անտառն յամենայն ժամ.
Պարգեւ նորա եղեւ նըմա պատճառ վշտաց։
Ահա այս են բարք աշխարհի եւ նորայոց.
Մարդիկ վարին բարեօք ընդդէմ բարերարաց։
Ի զուր ողբամ ես զայսմանէ. քանի՛ն քաղցըր հովանիք
Են նըշաւակ այսց զըկանաց.
Զայսմանէ ո՞վ ոչ տրտնջէ։

Ի զուր գոչեմ, եւ առնեմ զանձն իմ աշխատ,
Ապախտաւորք եւ անշընորհք
Վասն այսորիկ չառնեն պակաս յաշխարհի աստ:

---

## ԱՌԱԿ ԺԷ.

*Աղուէս, Գայլ եւ Ձի. 4—4*

Աղուէս մի դեռ մանուկ, սակայն յոյժ նենգաւոր,
Ետես նժոյգ զոր ի կեանս իւր ոչ էր տեսեալ:
Ասէ ցըգայլ, տակաւին խակ, «Աճապարեա,
Անասուն մի ի մարգըս մեր ճարակի խոտ,
Գեղեցիկ, մեծ, ես ընդ տեսիլն եմ հիացեալ:»
«Իցէ՞ հզօր ինչ քան ըզմեզ,» ասէ ցընա գայլըն ծաղու.
«Զնկարագիր նորա արա ինձ, աղաչեմ:»
«Եթէ էի ես նըկարիչ պատկերահան,»
Ասէ աղուէսն, «տայի կանխաւ զուրախութիւնն
Զոր ունիցիս, եթէ տեսցես:
Այլ եկ, աղէ: Եւ ո՞ գիտէ, թերեւս է որս
Զոր առաքէ այսըր մեզ բախտ:»
Երթան նոքա, եւ ձին զոր տէրն
էր արձակեալ ի ճարակել,
Եւ չէր հաճ կալ ընդ այնպիսի բարեկամաց,
Խորհէր խոյս տալ,
Մինչ մատուցեալ աղուէսն
ասէ, «Տէր, ծառայք քո.
Ցանկան գիտել թէ զինչ անունըդ քո իցէ:»
Ձին որ պակաս չէր ի խելաց՝

Ասէ ցնոսա, "Ընթերցարուք
դուք զանուն իմ. կարող էք, տեարք.
Կարուակն իմ է գրեալ զայն շուրջ ըզներբանաւս:"
Աղուէսն այնու զի չէր հըմուտ գըրոց՝ չառ յանձն.
"Ծնողք իմ," ասէ, "ոչ ետուն զիս ի հըրահանգս.
Աղքատ են յոյժ. ծակ մի միայն է ամենայն արար նոցա.
Ծնողք գայլոյն, աւագ մարդիկ ետուն նըմա ուսանել գիր:
Մեծամտեալ գայլն ընդ այս բան՝
Գնայ մօտ. սակայն ունայնութիւնն
Արժէ նըմա չորս ատամունս: Ձին տայ նըմա
Կից, եւ սրանայ: Ահա գայլ մեր տապաստ յերկրի,
Զարալըրուկ, յարիւն թաթաւ, վատթարացեալ:
"Եղբայր," ասէ աղուէսն, "այս մեզ արդարացոյց
Զոր ասացեալ են ինձ երբեմն արք հանճարեղք.
Անասունս այս ի ծամելիսըդ քո դըրոշմեաց
Թէ իմաստունն ըզգուշանայ յանծանօթէ:"

---

## ԱՌԱԿ ԺԲ.

*Աղուէս եւ Հնդիկ Հաւք. 4—4*

Ընդ յարձակման դէմ աղուիսու
Ծառ մի էր լեալ հնդիկ հաւուց իբրեւ ամրոց.
Նենգաւորին ըզպատուարաւըն շուրջ եկեալ,
Եւ տեսեալ եւս ի զգուշութեան զիւրաքանչիւրն,
Գոչեաց, "Իա՛բէ, սոքա ահա ծաղր առնեն զիս:
Միթէ սոքա՞ միայն լիցին զերծ յօրինաց հասարակաց.
Ո՛չ, ի դիս անդր երդուեալ իմ, ոչ:"
Եւ զոր ասացըն կատարեաց:

Լուսին յայնժամ ծագեալ՝ թըւէր
    քաջին մերում առնել հեծուկս,
  Եւ կամել կալ պաշտպան ազգին հնդիկ հաւուց։
  Ինքն որ անվարժ չէր յարուեստին պաշարելոյ՝
  Յիւր չարանիւթ նենգութեանց պարկն
    ապաւինեալ,
Կեղծաւորէր ի ծառ անդըր
    մագլել, նախ կայր յոտն ի մատին.
  Ապա որպէս թէ մեռանէր։ յետոյ յառնէր։
   Հոպիտն անգամ չէր բաւական
  Զայնչափ անձանց այլակերպից ըզդէմս առնուլ։
   Կանգնէր ըզձետն եւ տայր շողալ,
   Եւ այլ բիւր խաղըս ցուցանէր։
  Յայնչափ ժամու եւ ոչ մի հաւ չիշխեաց նիրհել.
  Թշնամին ետ ունել նոցա ըզհայեցուածս՝
   Ի մի եւ նոյն ինչ յառեալ միշտ,
  Մինչեւ յետուստ ուրեմըն հէքքըն շըլացեալ,
Անկանէին մի 'ստ միոջէ,
    զորս միանգամ ունէր աղուէսն,
Անդէն գէշ գէշ պատառէր նա.
    գըրեա թէ կէսն այսպէս կորեաւ։
  Զարագաղանն ի մառան իւր տանէր զնոսա։
  Կարի իմըն պընդով ունել ուշ վըտանգին՝
  Լինի պատճառ յաճախ ի նոյն անկանելոյ։

---

## ԱՌԱԿ ԺԹ.

*Կաքաւիկ. 4—4*

Ի քաղաքին Պարիսացւոց էր կաքաւիկ մի,
Որում կին մի էին տուեալ։
Իւր արդարեւ նա կանամբեաց բազմաց կաքաւիկ։
Ծեծէր ըզկինըն. Թշուառն այն
Յոգւոց եհան այնչափ, մինչեւ չէր ի միջի։
Որդի նոցա ողբայր կոծէր անհընարին.
Աղաղակէր յաւելորդ ճիչ։
Ծիծաղի հայրն. կինն է մեռեալ.
Արդէն ունի այլ հոմանի
Զոր կարծի թէ զան հարցէ միշտ.
Յաճախէ նա յաշխարհաւանդս, արբենայ ստէպ։
Բարւոյ իմիք մի ունիցիս ակըն յառնէ նըմանողէ,
Թէ՛ իցէ նա կաքաւիկ, եւ թէ դընիցէ գիրս.
Յոռեգոյնն է մատենագիրն։

———

## ԱՌԱԿ Ի.

*Սկիւթացի փիլիսոփոս. 4—4*

Փիլիսոփոս խիստ, եւ ծընեալ ի Սկիւթիա,
Քաղցրագոյն կեանս վարել եդեալ ի մտի իւրում,
Պանդխտեցաւ ի մէջ Յունաց,
եւ ի տեղւոջ ուրեք ետես
Իմաստուն ոմըն Վիրգիլեայ ծերոյն նըման,

Այր հաւասար թագաւորաց, մերձաւոր դից,
Եւ, որպէս այս վերջինք, եւ գոհ, եւ անխռով:
Գեղեցկութեամբ պարտիզին այն էր երջանիկ:
Ըսկիւթացին եգիտ ըզնա զի ի ձեռին իւրում յատոց՝
Ի պտղատու ծառոց իւրոց զանպիտան ոստսն յապաւէր.
Վըշտէր, յատէր, բառնայր մերթ զայս
ինչ եւ մերթ զայն,
Նա՛ ամենայն ուրեք ուղղէր ըզբընութիւն,
Որ կարող էր հատուցանել շարիատիւ ըզխընամ իւր:
Ըսկիւթացին եհարց ցնա.
“Ընդ իմէ՞ այդ աւեր. իցէ՞ գործ իմաստնոյ
Ըզհէք բնակիչսըն կըճատել զայս օրինակ.
Թող ըզյատոց քո, ըզգործին վընասակար,
Եւ մանգաղոյ ժամանակին թոյլ տուր գործել.
Երթան նոքա վաղվաղակի
ըզսեաւ ափունսըն զարդարել:„
“Այս,„ ասէ այլն, “միայն զանշահսըն
յապաւեմ, զայս արարեալ,
Տամ ջովանալ մընացելոցն:„
Ըսկիւթացին դառնայ այսրէն յիւր տըխուր տուն.
Ինքըն նոյնպէս առնու յատոց,
յամենայն ժամ կտրէ, քշտէ.
Ըզդըրացիս իւր խըրատէ,
եւ տայ պատուէր բարեկամաց
Ըզբընաւ ջարդել:
Բառնայ յիւրմէն ըզգեղեցիկ գեղեցիկ ոստս,
Եւ կըճատէ ըզդարաստան իւր անխընայ,
Ոչ խորհէ նա ըզժամանակ, ոչ ըզտարւոյ ինչ փոփոխումն,
Եւ ոչ լուսին հին եւ կամ նոր:

Ամենայն ինչ ծնգի, բընաւըն գօսանայ։
Ըսկիւթացիս այս առնէ յայտ
Ընխորհուրդ ոմն ըստոյիկեան,
Որ ի հոգւոյ տայ յապաւել
Իղձ եւ կարիս, բարի եւ չար,
Մինչեւ յանմեղ իսկ ցանկութիւն։
Ընդ այսպիսի արանց դէմ ես բառնամ բողոք.
Ոռքա ջնջեն յոգւոյ անտի ըղկարեւորն.
Տան մեռանել մինչչեւ մեռեալ իցէ մարդոյ։

---

## ԱՌԱԿ ԻԱ.

*Փիղ եւ Կապիկն Արամազդայ. 4—4*

Երբեմըն փիղ եւ ռընգեղջիւր
Ի պայքարի վասըն գնալոյ եւ իրաւանց աւագութեան,
Կամեցան տալ վախճան կռուոյն յուրոյն տեղւոջ։
Էին նոքա լեալ ժամադիր, մինչ ոմն եկեալ ասէ ցնոսա,
Եթէ կապիկն Արամազդայ
Ցուպն օձապատ յիւրում ձեռին երեւեցաւ ի մէջ օդոյն։
Անուն կապկին էր Գիղ, որպէս ասէ զըրոյցն։
Փիղըն կարծէ անդէն եւ անդ
Եթէ իբրեւ պատգամաւոր
Գայր գըտանել զիւր մեծութիւն։
Մեծամտեալ ընդ փառասէր այս խորհուրդ իւր,
Մընայ կապկին, եւ գըտանէ ըզնա սակաւ ինչ անագան
Եկեալ ի տալ նըմա ըզգիր դեսպանութեանն։
Պաշտօնեայն Գիղ յանցանել անդ իւրում ընդ այն՝
Մատուցանէ ողջոյն փըղին։

Սա ունէր ակըն պատգամին,
Այլ չերգեն բանք։ Ըզհոգ խնամոյն
Զոր կարծէր նա թէ ունէին դիք ըղկուոյն,
Տակաւին չէր յուզեալ այն լուր։
Զի՞ փոյթ որոց ենըն յերկինս՝
Թէ ճանճ իցէ ոք եւ կամ փիղ։
Ուստի հարկէր անձամբ անձին առնել ըսկիզըն։
"Եղբայրըն մեր Արմիզդ," ասէ,
"տեսանիցէ յետ սակաւուց
Ճակատամարտ մի գեղեցիկ յիւրմէ գահէն։"
Աչքունիքն այն լեցին վըկայ չքնաղ խաղոյ։"
"Զի՞նչ իցէ այն ճակատամարտ,"
ասէ կապիկըն ժանտ դիմօք։
Պատասխանի տայ փիղըն, "Զի՞նչ, չիցե՞ս գիտակ,
Թէ ռընգեղջիւր քան զիս արագ լինել պնդի,
Եւ թէ ունին Եղեփանտոն[190]
եւ Աինոհեր[191] պատերազմ մեծ։
Այս քաղաքաց տեղեակ ես դու, են անուանիք։"
"Արդարեւ գոհ եմ զի զանուն նոցա ուսայ,"
Արկնեաց կապիկն, "ոչ լինին բանք
Զայնպիսի ինչ իրաց ի լայն սըրահըս մեր։"
Փիղն ակնկոր, ափիբերան,
Ասէ ցընա. "Ազէ՛, ուրեմն զի՞նչ առնել գաս ի միջի մեր։"
"Բաշխել չիղ ինչ խոտոյ ի մէջ մըջնոց ոմանց.
Զամենայնէ ունիմք մեք խնամ.
իսկ ըղկուոյ անտի քումմէ
Ի ժողովէ դից տակաւին ոչ խօսի ինչ.
Փոքունք եւ մեծք են հաւասար յաչըս նոցա։"

---

# ԱՌԱԿ ԻԲ.

*Ցիմար եւ Իմաստունն. 4—4*

Ի յիմարաց ումն հալածէր
զայր իմաստուն. գիրս արձակէր:
Այրն իմաստուն դարձաւ, ասէ, "Ո՛վ բարեկամ,
Ազնիւ, բարուք առնես, առ քեզ
ահաւասիկ դահեկան մի:
Վաստակիս դու, արժանի ես աւելագոյնըս շահելոյ.
Ամենայն ջան է արժանի, ասեն, վարձու փոխարինի:
Տեսանե՞ս զայրդ որ անցանէ.
նա ունի ինչս հատուցանել.
Ուղղեա ի նա ըզվաստակ քո,
ըզհատուցումն ընդ այն առցես:"
Հըրապուրեալ իմն ի շահէն՝ յիմարըն մեր ժըտի առնել
Ըզնոյն լուտանս առ այրն օտար:
Այլ զայս նըւազ հատուցաւ նա ոչ արծաթով.
Բազում սպասիկք գան եւ վարեն զայրն անհանճար.
Թողուն ըզնա չարաչըրուկ եւ չարագան:
Առ թագաւորըս գոն յիմարք սըմին նըմանք.
Վընասեն քեզ զի տէր իւրեանց զըւարճասցի:
Առ ի դընել բաջաղանաց նոցա համ թէ յօժարեսցիս
Պատուհասել ըզնոսա, ոչ իցես թերեւս
Առնել կարող: Պարտ է լինել նոցա ուրեմըն թելադիր.
Գործել զայլ ոք որ ըզվըրէժ
իւր պահանջել է ձեռընհաս:

---

# ԱՌԱԿ ԻԳ.

## *Աղուէս անգղիական. 4—4*

*Առ տիկին Հարվէյ:*

*Սիրտ բարի է առ քեզ ընկեր ուղիղ բանի,*
*Ընթիւ ձըրիւք զորս առնել աստ*
*մանրապատում՝ յերկարի յոյժ.*
*Ազնըւութիւն ոգւոյ, տաղանդ յառաջնորդել*
*Իրաց մարդկան եւ մարդկան եւս.*
*Բոյս բարուց պարզ, ազատ, եւ ձիր*
*առնելոյ զանձըն բարեկամ*
*Յակամայ իսկ Արամազդայ եւ մըրկայոյզ ժամանակաց.*
*Այս ամենայն է արժանի մեծ յարգանաց,*
*Զոր ըստ ոգւոյ քո յաճախել ոչ է արժան.*
*Շուք չէ հաճոյ քեզ, եւ տաղտկաս ընդ դրուատիս:*
*Ուստի անցի համառօտիւ*
*եւ պարզութեամբ: Սակայն կամիմ*
*Յայն կըցել մի բան կամ երկու*
*Ի մեծարանս քոց հայրենեաց.*
*Դու. սիրես զայն: Անգղիացիքըն խորհին խոր*
*Միտք նոցա յայսմ երթան ըղհետ բարուց նոցա.*
*Միջամուխ լեալ յիրս, եւ հարուստք*
*փորձիւք իրաց,*
*Տարածանեն նոքա ընդ բնաւս*
*ըզգիտութեանց իշխանութիւն.*
*Զասեմ ես զայս առ ի հաճել ըզմիտըս քո.*
*Փոյքըդ քան զայս են առաւել ի գուշակել,*
*Շանց իսկ որ են ի տունս նոցա՝*

Հոտոտելիք քան ըզմերոցն են սըրագոյն.
Ողուէսք ձեր են առաւել նուրբ.
զՀանդէս սորա ցուցից ահա
Մխով նոցա որ առ պրծել
Հայթայթանս ինչ էարկ ի կիր,
Բարուոք խորհեալ,
այլ ցայնժամ ոչ արկեալ ի գործ:
Զարագործին յանհըրնարին տագնապ հասեալ,
Եւ գըրեթէ արկեալ ի նեղ
ի շանց որոց ունգունք են լաւ
Ընցանէր մօտ ի կախաղան,
Ուր անասունք յափշտակիչք,
Աքիսք, աղուէսք,
բուք, ցեղք միտեալք յառնել չարիս,
Էին կախեալք առ առակէ եւ ի խըլատ անցաւորաց:
Զովող նոցա անկեալն ի նեղ զետեղի՝ մէջ ըսպանելոցն:
Էր տեսանել անդ զԸննիբաղ
որ խուճապեալ ի Հռոմոց,
Ըզզօրավար նոցա խաբէ,
եւ կամ յայլ ոք կերպարանեալ՝
Իբրեւ ըզծեր աղուէս գիտէ ճողոպրել զանձն ի նոցանէ:
Պառականին գըլուխք հասեալ
Ի տեղին ուր իբրեւ մեռեալ
զանձն էր կախեալ չարաճըճին,
Զօդըն լըցին աղաղակաւ. դադարեցոյց ըզնոսա տէրն,
Թէպէտ ընդ ամպս անցանէր թափ գոչիւն նոցա.
Ոչ կասկածէր նա ըզխաղոյն, որ արդարեւ էր զուարճալի.
“Որջ մի,„ ասէ, “ըզխորամանկն ազատեցոյց.
Ոչ կոչեն շունք իմ անդըր քան ըզկախաղանն

Ուր են այնչափ աւագ անձինք,
Գնացէ նա անդր, անըզգամն այն։»
Եկն արդարեւ չարոյ իւրում։
Տակաւին խումբ մի շանց հաջէր.
Ազուէսըն մեր ամբառնայ զանձն
անդր ի տեղի ոսկերոտւոյն.
Կարծէր դարձեալ յաջողել նա,
Որպէս արար նովին խաղու ի լարելոց հաղեից այլոց.
Այլ զայս նըւագ չըւառականն եթող զարեւն։
Ճշմարիտ է թէ փոփոխել պարտ է ըզդաւ.
Սակայն որսորդն ի դընել զանձն իւր ի զգուշի
Այնպիսի ինչ խաղ ճարտարել չէր ձեռընհաս։
Ուշ զի թերի էր ի մըտաց. զի ուրանալ է՞ ոք կարող
Թէ ամենայն Անդղիացւոյ
չիք հանճարոյ առատ համբար։
Սակայն ըզկեանս սիրել սակաւ,
Վնասէ նոցա բազում անգամ։
Եկից առ քեզ, ոչ առ ասել
Զայլ դըրուատիս յաղագըս քո.
Որ եւ իցէ երկար գովեստ է հայթայթանք
Որ չէ ի նպաստ քնարին իմում։
Սակաւք յերգոց մերոց, սակաւք վիպաց մերոց
Ոգոքանաց խնկովք կարեն լինել համոյ տիեզերաց,
Եւ լըսելի լինին ազգաց օտարոտւոց։
Իշխանըն քո յաւուր միում ասիցէ քեզ,
Եթէ լաւ է նըմա դոյզն ինչ նըշան սիրոյ
Քան գովեստից էջք չորեքին։
Ընկալ միայն ըզտուրըս զոր արդ առնեմ քեզ
Ըզմուսային իմոյ վերջին աշխատութեան։

Դոյզն ինչ է այս. նա ամաչէ իսկ մուսայն իմ,
Զի այս գործք են թերակատար։
Այլ միթէ չե՞ս կարող առնել
Զի նոյն պատիւ լիցի հաճոյ
Այնմ որ ածեալ ելեց յերկիր ձեր բընակիչս
Ի Կիթերայ կղզւոյն գաղթեալս։
Սովին ուրեմըն տեսանես զի իմանամ
ԸզՄազարէն, ըզդիս պաշտպանըս տարփանաց։

---

## ԱՌԱԿ ԻԴ.

*Արեգակն եւ Գորտք. 4—4*

Դստերք կաւոյ ձըգէին այսըր յաստեղաց թագաւորէն
Պաշտպանութիւն եւ օգնութիւն
Ոչ կռուիւ, ոչ աղքատութիւն,
եւ ոչ աղէտք սոցին նըմանք
Չին ձեռնհաս մերձենալոյ ազգին այնմիկ.
Իշխանութեան իւրում մեծի
տայր նա զօրել ի բիւր տեղիս։
Դշխոյք մօրաց եւ ծովակաց, զգորտոց ասեմ,
(Զի զի՞նչ վընաս լիցէ կոչել
Զերրըս պատուոյ յորջորջանօք,)
Ընդդէմ իւրեանց բարերարին դաւաճանել մըտաբերեն,
Մինչեւ չըտալ եւս հանդուրժել։
Ըմբըտութիւն, դոռոզութիւն եւ ապախտիք
Որ են ծընունդք յաջողութեան,
Ըտուն յետուստ ուրեմն անսանձ
խմբին այնմիկ բառնալ բողոք.

Անհնարին իմն էր խաղաղ ի քուն լինել։
Թէ բողոքոյ նոցա երբեք հաւատայր ոք,
Աղաղակաւ իւրեանց նոցա
Ուր յարուցեալ ըզմեծամեծս եւ ըզփոքունս
Ընդդէմ որոյ ակն է բնութեան։
Տրտնջէին թէ արեգակըն զամենայն ինչ ըսպառէր,
Պարտ է, ասեն, վառել փութով,
Եւ դունդ հըզօր յարուցանել։
Այն ինչ մատչէր նա ոտըն մի եւեթ յառաջ,
Հրեշտակութիւն կարկաչողաց
Ընդ ամենայն աշխարհ երթայր։
Ըստ ասելոյ նոցա, աշխարհ,
Մեքենայս այս մեր բոլորշի,
Թուալէր իմն ի շահ օգտի
Զորից մօրաց դուզնաքէից։
Այս քըրթմընջիւն յանդգնութեան
Հանապազ իսկ տեւէ, սակայն
Լռել, կարծեմ, պարտ է գորտոց,
Մի հատանել յայնչափ տրտունջ.
Զի արեգակն եթէ ցամնու,
Անշուշտ տացէ նոցա ըզգալ.
Եւ ջըրայնոց յանդուգն այն ազգ
Զղջանայցէ։

---

## ԱՌԱԿ ԻԵ.

*Միաբանութիւն մկանց. 4—4*

Մուկըն մի փոքրը զարհուրեալ էր ի կըզոյ,
Որ ի վաղուց էր դարանեալ հետոց նորա։
Արդ զի՞նչ առնել մուկնըն կարէր։
Էր նա ըզգօն եւ իմաստուն.
Ընդ դըրացւոյն կալաւ խորհուրդ.
էր սա այլ մուկըն մեծ ճարտար,
Որ իբրեւ ոմն յաւագ մըկանց
Էր բընակեալ ի պանդոկւոջ ուրեք մեծի,
Եւ ասեն թէ էր հարիւրիցըս պարծեցեալ,
Թէ չերկնչէր յարու կըզոյ եւ ոչ իգի
Ոչ յատամանց, ոչ ի թաթիցըն հարուածոց։
Ամենապարծս այս խոստովանի սակայն, ասէ.
“Տիկի՛ն մկնիկ,
Երդնում յարեւ իմ թէ զոր ինչ եւ առնիցեմ,
Ես առանձինըն չեմ ձեռնհաս
ըզթշնամին քո կուզ վանել.
Այլ համօրէն մըկունք տեղւոյս գումարեսցուք.
Խաղալ ինչ խաղ նըմա կարող եղէց յայնժամ։„
Մեծարանս իմն խոնարհութեան
առնէ նըմա մուկնըն փոքրիկ.
Եւ մուկնըն մեծ երթայ փութով
Ի տուն անդըր խորտկաց, որ եւ կոչի մառան,
Ուր ժողովեալ բազում մըկունք
Առնէին անդ ճաշ ծախիւք տեառըն պանդոկւոյն։
Հասանէ նա անդըր խռովեալ,

Սիրտ ի բերան։
“Զի՞նչ ունիս դու, խօսեաց,„ ասէ մին ի մրկանց։
“Համառօտիւ,„ ասէ Նորեկն,
“իմոյ գալոյն այս է պատճառ,
Զի պարտ է մեզ երթալ օգնել
մրկան միոյ փոքու հիքի։
Կուզ մի անուն Ռամինագրոբ
Որդ կոտորած մեծ ամենայն ուրեք առնէ։
Զարադեւս այս կուզ, ասեմ ձեզ,
Ի պակասել մրկանց փոքունց ըզմեծամեծսըն կերիցէ։
“Ճշմարիտ է, ծն ընթացուք ի զէն,„ ասէ իւրաքանչիւր․
Նա՛, ի տիկին մրկանց ոմանք
յարտասուս իսկ հարան, ասեն։
Բայց ոչ մի ինչ արգել ըզքաջըն զայն խորհուրդ․
Իւրաքանչիւր վառի ի զէն,
Իւրաքանչիւր արկ յիւր մախաղ պանրոյ նշխար,
Համառօտիւ, իւրաքանչիւր
ոք խոստանայ պինդ կալ ցըմահ։
Իբրեւ ի տօն ինչ երթային ամենեքեան,
Սըտադիւր իմն եւ խնդագին։
Այլ առաւել քան ըզնոսա խորագէտ կուզն,
Արդէն կալեալ էր ըզփոքրիկ մուկն ըզգլխոյն։
Յառաջ մատեան նոքա արագ
Բարեկամին իւրեանց օգնել․
Այլ կուզն առանց թողլոյ զորս իւր,
Մըռմըռալով ել ընդ առաջ խմբին այնմիկ։
Յայն մռնչիւն իմաստնադոյնքն ի նոցանէ
Երկուցեալ թէ հանդիպեցին չարոյ իմիք,

*Նռանց յառաջ եւս վարելոյ*
*ըղխիզախել իւրեանց յախուռն,*
*Յաջողութեամբ ընկրկին յետս:*
*Իւրաքանչիւր մուկն ի բայոց իւր մըտանէ,*
*Վա՜յ այնըմ որ ելցէ արտաքս.*
*կուզն էր անդէն դարանակալ:*

---

## ԱՌԱԿ ԻԳ.

*Դափնիս եւ Աղկիմատուռ. 4—4*

*Նմանութիւն Թէոկրիտեայ*

*Առ տիկին տը լա Մէզանժէր:*

*Ուրումըն մօր դուստըր սիրուն,*
*Որում միայն այսօր հազար սիրտ հընարի լինել հաճոյ,*
*Թո՛ղ զայնոսիկ որ ըզքեզ ի-*
*բըր բարեկամ հաճել փութան.*
*Նաեւ զայլ եւս ոմանըս զոր պահէ քեզ Մէր,*
*Ի համառօտ պատճենի աստ չէ ինձ հընար,*
*Ոչ բաժանել գոնեա ի մէջ նորա եւ քո*
*Սակաւիկ մի յայնըմ խնկոյ որ ժողովի անդ ի Պառնաս,*
*Նու զոր առնել ընտիր եւ քաղցր եմ խելամուտ:*
*Ըսեմ ուրեմն..: Սակայն ասել զամենայն ինչ*
*Կարի իմն է. պարտ է ընտրել,*
*Խընայելով ձայնի իմում եւ քընարի,*
*Որ ի մօտոյ պակասեսցին յուժոյ, նաեւ ի պարապոյ:*
*Գովեմ միայն ըզսիրտ որ լի՛ն է գըթութեամբ.*

Եւ զազդմունս ինչ ազնըւականս,
շնորհ եւ հանճար:

Յայտնիկ չէք քո վարդապետ, ոչ այր ոչ կին,
Բաց յայնմանէ որոյ գովեստ ցայտէ ի քեզ:
Ըզգուշացիր զայնպիսի վարդըս պաշարել
Անչափ փըշովք, եթէ երբեք
Մեր ըզնոյն բան ասիցէ քեզ,
Ապաքէն նա կարէ քան զիս բարւոք ասել:
Նա գիտէ եւս պատուհասել
զորս միանգամ խըցնուն զականջ
Խրատուց նորա: Տեսցես ահա:
Երբեմն, ասեն, մանկամարդ մի չքնաղագեղ
Արհամարհէր զայնր Աստուծոյ մեծ զօրութիւն.
Աղկեմատուր անուանէր նա.
Անագորոյն իմն եւ գոռոզ,
եւ ընթանայր նա միշտ յանտառ,
Վազէր ի մարգըս միշտ, յարօտըս կաքաւէր,
Եւ ոչ գիտէր նա զայլ օրէնս
Բայց զհուր հաճոյս. յոյժ գեղեցկաց էր հաւասար,
Նա եւ դըլէր ըզկարի իսկ անագորոյնս:
Զունէր ինչ մի որ չէր հաճոյ
ի խստութեան իւրում անգամ.
Որպիսի ինչ էր նա ուրեմն
ի սաստկութեան շնորհաց իւրոց:
Տափնիս մանուկ եւ գեղեցիկ, յազնըւական ազգէ հովիւ,
Սիրեաց ըզնա չարոյ իւրում.
դուզնաքեայ ինչ շընորհս անգամ,
Եւ ոչ թեթեւ ինչ հայեցուած,
միով բանիւ՝ դոյզըն խոստումն

Ոչ շընորհեաց նըմա սիրտն այն անագորոյն:
Ի զուր ըղձեալ մըտանելոյ ձանձրացեալ նա,
Ըզմեռանելն համարէր լաւ:
Անյոյս ուրեմն լեալ ընթանայ
Անդր ի դըրունս խստասրտին:
Նշո՛ւկ, պատմեաց զիւր վիշտ հողմոց.
Նա բանալ իսկ ոչ հաճեցաւ
Ըզդուռնըն ժանտ ուր ընդ ընկերս իւր աղջըկունս,
Ապաշընորհն յաղագս աւուր իւրոյ ծննդեան
Ի ծաղիկս անդր գեղոյն կըցէր
Նա զպարտիզաց եւ ըզկանաչ դաշտաց ըզզանձ:
"Այն ունէի," ասէ Գաւինիս,
"Մեռանել իսկ յանդիման քո,
Այլ եմ կարի ատելի քեզ.
Եւ չեն զարմանք ինձ թէ որպէս զայլն ամենայն,
Զըլանաս ինձ եւ զդըժնդակ զայս հաճութիւն:
Հայր իմ ըզկնի մահուան իմոյ,
եւ զայս նըմա արարի յանձն,
Ունի դընել առ ոտըս քո զժառանգութիւնն
Զորով սիրտ քո անփոյթ արար:
Կամիմ նաեւ զի յաւելցին յայն եւ արօտն,
Եւ բովանդակ հօտն իմ եւ շուն.
Եւ ի մնացեալ ընչից իմոց
Ընկերըք իմ թող կանգնեն տաճար,
Ուր պատկեր քո երեւեսցի,
Եւ ըզսեղանն յամենայն ժամ
զարդարեսցեն ծաղկօք նորովք:
Առ տաճարին լիցի շիրիմ իմ անպաճոյճ,
Զորոյ եզերբ քանդակեսցեն,

‘Պամփիլիս մեռաւ ի սիրոյ, կաց, ով անցորդ դու,
Լաց եւ ասա, Ընկճեցաւ սա ընդ օրինօք
Անագորոյնն Աղեխմտորոյ:,,
Յայս բան հովիւն ըզգաց հարեալ զանձն ի Պարկայ.
Մատուցանել կամէր յառաջ, այլ կանխեաց ցաւն:
Ապախտաւորըն նորա եւ
պանծանօք իմն եւ զարդարեալ.
Կամեցաւ ոմն, սակայն ի զուր,
ըզնա վայրկեան մի արգելուլ,
Զի արտասուս ինչ հեղուցու
ընդ սիրելոյն իւրոյ վիճակ:
Թշնամանեաց նա միշտ զորդի Կիթերացւոյն,
Տարեալ ի նմին երեկոյի, յարհամարհանս իմըն նորա,
Զաղջկունս ընկերս ըզպատկերաւ նորա պարել:
Դիքն ի վերայ նորա անկաւ,
եւ ընդ բեռամբն ընկճեաց ըզնա.
Յամպոց անտի եկըն բարբառ,
Արձագանգ յօդըս տարածեալ կրկնեաց զայս բան.
“Թող ամենայն սիրեսցէ այժմ.
անըզգայն չէ այլ ի միջի:,,
Այլ ի Ստիւքս անդր
իջեալ Տափնեայ ուրուականին,
Զահի հարեալ զարմացաւ յոյժ
տեսեալ ըզնա զի ընթանայր.
Լըւաւ ողջոյն իսկ Կերբերոս զի ըսպանողն այն գեղեցիկ
Զատագովէր զանձն առ հովուին որ արժանի չարար լսել.
Որպէս Այաքս՝ Ոդիսեայ, եւ
Դիդոն՝ իւրում նենգաւորին:

---

## ԱՌԱԿ ԻԷ.

*Արամազդ եւ Երկու Կարասք. 4—4*

Մուսայք իմ ինձ ուսուցանեն
Թէ աշխարհի տըղայութիւն,
Պարզ եւ առանց կարեաց, անպտուղ
ի ցանկութիւնս,
Կեայր սակաւուք, չէր զեղխ, ազատ էր ի ցաւոց.
Ոչ ունէաք ի մեզ զաղբիւր թշուառութեանց
Որ այսօր տան մեզ պատերազմ.
Երկինք յայնժամ ոչ հարկս յերկրէ պահանջէին.
Մարդ անտեղեակ էր աստուածոց
զորս ի պիտոյս միայն խնդրէ.
Ուսուցանել ըզնոսա մեզ ջանաց Պանդոր:
Գըտաւ թունովք լի տուփ նորա:
Նա ի զչարիս եւ ըզբարիս կենաց բաշխել,
Երկոքին եւս եդան ուրոյն յերկու կարաս:
Նոքա ի մէնջ զորս բարեկամ համարի Զեւս՝
Ի ծընընդեան իւրեանց հանեն
ի կարասուէ անտի մահու
Հաւասար իմն բաժնիւ խառնուրդ յերկուց անտի.
Իսկ այլ մարդիկ առատացեալ են ի չարիս:
Զեւս առ դըրան ապարանիցն
եդ ըզկարասըն զայնոսիկ.
Տըտունջ, բողոք յաճախեցին յաշխարհի աստ.
Բանքատէին թէ չարիքն են անհընարին:
Յաղաղակէ մերմէ արքայն դիւց ձանձրացեալ,

Իւրովն գայ յաշխարհ լինել իրացն հրմուտ։
Համբաւն իսկոյն եհար հռչակ։

Ի յայտ առնել նըմա զտագնապ մեր եւ ըզվիշտ,
Ճարտարախօսք երկու առ նա առաքեցան,
Ընմըտագոյն զոյգ յամենայն ազգէ մարդկան,
Որք կարի իմն ճոռոմ բանիւք
Ցուցին ըստուար ըզցաւըս մեր.
Արամազդ զոգ սասանեցաւ։

Նոքա այնպէս իմն ահարկու
նըկարագրեն ըզկեանըս մեր,
Մինչեւ անդէն յօժարել դիցն ուղղել ըզընաւ։
Մոմոս որ մօտ էր անդ եցոյց ծաղէ ի ծաղ,
Թէ հրեշտակաց մերոց երկուց բանք էին սին։
“Մի՛ ինչ անսար,„ ասէ ցըԶեւս, “բանաքաղեցդ.
Թող ըզչարիս իւրեանց գրեսցեն
զեղծմանց իւրեանց,
Եւ մի՛ նոցա որ խառնուածոյ նոցա են հարք.
Այս ազգ կարէր, թէ էր սակաւ մի իմաստուն,
Ի պարգեւաց մերոց հանել օգուտ բազում։„
Զեւս հաւատայ Մոմեայ, ի վեր պրկէ ըզյօնս.
Նա՛ Ողիմպոս իսկ ի հիմանց սասանեցաւ։
Որոց ըզճառըն խօսեցան՝
ասէ Որմիզդ, “Եթէ, անիծեալ,
Դուք էք միայն որ ըզքաժի-
նըն վայն առնէք անհաւասար.
Ի զեղծանել ձեր ըզքարեաւն,
առնէք զի այն լիցի ձեզ չար.
Ապա այն չար աճէ ձերով անմըտութեամբ։„

Զեւս էր արդար․ յանիրաւի լինիմք տրտունջ․
Վնասըն չէ բախտին միայն, այլ եւ է մեր։
Դիք երկուս ինչըս սահմանեալ են վասըն մեր․
Համատատութիւն ի վիշտս ապա ժուժկալութիւն․
Զանհարթութիւն բաժնին սոքա մարթեն ուղղել։
Այլ մեք զիմըրդ վարիմք սոքօք։
փոխանակ վանս ի տունըս մեր տալոյ նոցա,
Այնց դատերաց երկնից երկուց,
այնց իմաստուն խորհրդատուաց,
Զընտելութիւն նոցա խոտեմք․
ոչ այլ ուրեք բնակեն նոքա,
Թէ ոչ ի վայրս զորս անարգեմք։
Մարդ ուժգնութեամբ մեծաւ երթայ յամենայնի
ի նմանութիւն անդր անասնոց՝
Նոյր ըզկուրայն, մինչեւ դընել ի մէջ չարեաց
Ըզքեան խրատուց ժուժկալութեան։

---

# ԱՌԱԿ ԻԲ.

*Դաստակոր իրակարար, Աստվածայինա եւ Միայ-*
*նանեաց. 4—4*

Սուրբք երեքին որ փրկութեան
իւրեանց էին նախանձաւորք,
Առաջնորդեալք նովին ոգւով,
մէտք ի նոյն կէտ նըպատակի,
Զեռն արկին յայն երիւք պէսպէս ճանապարհօք,

Ընցնիւր շաւիղ տանի ի Հռոմ.
վասն այնորիկ նախանձորդք մեր
Համարեցան մարթել ընտրել պէսպէս շաւիղս։
Մին հայեցեալ ի հոգս, ի վիշտս, ի ձախողանս,
Որ անբաժին են ի դատից իբրեւ կալուածք,
Յանձն առ դատել առանց վարձուց,
Ի հաստատել իւր ըստացուած յաստիս անփոյթ։
Յորմէ հետէ կան օրէնք, մարդ
ի պատուհաս իւրոց մեղաց
Պատապարտէ զանձն ի վարել
դատ իբր ըզկէս կենաց իւրոց.
Զի՞ ասեմ կէս, երիս չորրորդս
իսկ, եւ յաճախ զամենայն կեանս։
Հաշտարարս այս կարծէր եթէ լիցի ձեռնհաս
Ապաքինել զայս դժնդակ խօլ ցանկութիւն։
Յերից սրբոց անտի երկրորդն
ընտրեաց վասն իւր հիւանդանոցս։
Գովեմ ըզնա. խընամ տանել ախտացելոց
Է՛ գործ սիրոյ զոր ես ընտրեմ նախամեծար։
Այնըր դարու հիւանդք եղեալ
այնպէս որպէս են այժըմ մերք,
Տային բազում տանջանըս հէք խընամածուին.
Ցասկոտք, անժոյժք, տրտնջէին հանապազորդ։
"Զայս անուն ոք," ասէին, "դա
առանձին իմըն խընամէ.
Բարեկամք են նորա. ըզմեզ լքեալ թողու։"
Այլ այս տրտունջք
դոյզն ինչ էին առ անձկութեամբ

Յորում գտանէր համողակերն կռուողաց.
Ոչ ոք էր գոհ. վճիռն զոր տայր իրաւարարն
Եւ ոչ միում յերկուց կողմանց թուէր հաճոյ.
"Չունի երբեք դատաւորս այս,"
Ասեն, "կըշիռ արդարութեան:"

Այսպիսի բանք տաղտկացուցին զիրաւարարն.
Ընթացաւ նա զհիւանդանոցն
եւ ըզտեսուչըն տեսանել:
Երկոցունց եւս չէր տեսեալ այլ
ինչ բայց բողոք եւ քըրթմնջիւն:
Լեալ սրտառուչ ըստիպեցան
իւրաքանչիւր զիւր գործ թողուլ.
Երթան պատմել ըզվիշտ իւրեանց
ի լըռութեան անդ անտառաց:
Ընդ յառապար տեղւոջ ուրեք
մօտ յառու մի ջինջ եւ պայծառ,
Տեղի հովմոց մեծարոյ յոյժ,
անգիտացեալ յարեգակնէ,
Գտին ըզմիւս սուրբն եւ հարցին նըմա խորհուրդ:
"Պարտ է," ասէ բարեկամն այն,
"պարտ է յանձնէ առնել ըսկիզըն.
Ո՞ք գիտէ քաջ քան ըզքեզ ըզպէտըս քո:
Ուսանել զանձըն ճանաչել է առաջին փոյթ խընամոյ
Զոր յամենայն մահկանացուէ
պահանջեն կամք փառաց վերնոյն:
Ծանեա՞ր երբեք դու զանձըն քո
ի բազմամբոխ մարդկան միջի.
Չըմարթի այս, բայց ի տեղիս
յորըս տիրէ հանդարտութիւն:

Մոլորութիւն յետին է զայս խնդրել այլուր։
Պղտորեա զջուր. տեսանիցես զանձն ի նըմա։
Յուզեա ըզսա։ Զիա՞րդ զանձինըս մեր տեսցուք։„
Սիկն է իբրեւ ամպ թանձրամած
Զոր վանականն ազդեցութեան եդաք ընդդէմ։
“Եղբարք,„ ասէ սուրբըն, “թողէք ըզնա հանգչել,
Յայնժամ տեսջիք ըզպատկեր ձեր։
Առ նըկատել զանձըն քո քաջ բընակեսջիր յանապատի։„
Զայս խօսեցաւ միայնակեացն։
Հաւատացին, եւ փրկարար
այնըմ խրատու չըքան ըզհետ։
Ոչ եթէ չէ պատշաճ ունել ժոյժ պաշտաման.
Զի դատ վարեն, եւ մեռանին,
Նա եւ հիւանդ լինին մարդիկ.
Ապա են պէտք եւ բըժշկաց, եւ խօսնակաց։
Այս օգնութիւնք, շնորհք Աստուծոյ,
չեն մեզ երբեք պակասելոց.
Պատիւ եւ շահ, ամենայն ինձ տայ հաւանել։
Այլ մոռանայ մարդ զիւր օգուտ յայտնիկ պէտս։
Ո՛վ դուք զորոց զամենայն հոգ
եւ փոյթ առնուն տանին մարդիկ,
Ո՛վ դատաւորք, իշխանք եւ պետք,
Դուք որ խռովէք ի բիւր ձախող պատահարաց,
Զորըս չարիք առնեն նըկուն,
յաջողութիւն զեղծուցանէ,
Ոչ տեսանէք զանձինըս ձեր,
եւ զայլ ոք եւս ոչ տեսանէք։
Եթէ բարուք ինչ վայրկեան տայ
երբեք ըզձեզ այսց խորհրդոց,

*Սուտակապաս ումըն լինի անդէն խափան։*
*Ա՛յս խըրատ թող լիցի վախճան մատենիս այսմ.*
*Իցի՛ւ լինէր այն օգտակար ի յամայր ամն*
*ը՛նծայեմ զայն թագաւորաց,*
*առաջի դնեմ եւ իմաստնոց։*
*Ի՞ւ բարւոք քան այսու մարթ էր ինձ վախճանել։*



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1 Որդի Լուդովիկոսի ԺԴ.ի։

2 Առակախօս յոյն։

3 Կասանդրէ, դուստր Պրիամու, գուշակէր զմօտալուտ աղէտըս Տրովացւոցն, այլ ոչ ոք հաւատայր նմա։

4 Անուանի պուէտ գաղիացի, 1555—1628։

5 Պուէտ յոյն, եղերերգու, ծնեալ ի Կղէոմն կղզւոջ յամին 558 Ն. Ք. զՔր., եւ մեռեալ յամին 468։ Ի գործոց նորա կան մնան հատակոտորք միայն։

6 Կաստոր եւ Պողիտեւկէս որ եւ Դիոսկուրք, այն է մանկունք Դիայ, երկուորեակք, կէս դիք ըստ առասպելաց, պաշտպանք Աթենացւոց։ Վասն յաջողակութեան իւրեանց յըմբշամարտս եւ վասն քաջութեանն փոխեցան յաստեղատունս յետ մահուն իւրեանց։ Ի նոցա անուն կոչի Երկուորեակն անուանեալ աստեղատուն։

7 Մեղպոմենէ, մին ի Մուսայից, վերակացու ողբերգութեան։ Այսպէս կոչին երբեմն եւ պուէտք, իբրեւ ազդեալք ի նմանէ։ Ըստ հեթանոսական առասպելաց Մուսայք են ինն դստերք Արամազդայ եւ Մնեմոսինեայ, վերակացուք կամ պաշտպանք արուեստից եւ գիտութեանց։

8 Ողիմպոս, լեառն Յունաց աշխարհին, ի հարաւոյ Թեսաղացւոց։ Վասն բարձրութեանն կարծեցաւ ի հեթանոսաց լինել տեղի բնակութեան Դից։

9 Պառնաս, բարձրադոյն լեառն երկրին Փոկէացւոց։ Անդ բնակէին Ապողոն եւ Մուսայք ըստ առասպելաց։

10 Մեկենաս, սիրելին Աւգոստեայ, բարեկամ Վիրգիլեայ եւ Ովրատեայ։ Զբանսն Մեկենասայ զորս ի մէջ բերէ Լաֆոնդէն՝ յիշէ Սենեկա։ "Արա զձեռս իմ տկար, արա զոտս իմ տկար եւ կաղ, հան սապատ ի թիկունս իմ, խախտեա ղատամունս իմ. շատ է թէ իցեմ կենդանի։ Պահեա զկեանս իմ, թէպէտ եւ իցեմ ի տանջանս խաչի։" Սենեկ. Թղթ. 181։

11 Գետ ի Գաղիա. անցանէ ընդ մայրաքաղաքն։

12 Լիշել զարջ, է ի բանս կարգի առակաց, որպէս թէ ի զուր ջանալ։

13 Լեառն բարձր յԱսիա, ի Հիւսիսոյ Հայոց։

14 Կաղիոպէ, մին յիննն Մուսայից անտի առասպելաց, վերակացու վիպասանութեան եւ ճարտարխօսութեան։

15 Աթենաս, դուստր Արամազդայ, ըստ առասպելաց դիք իմաստութեան եւ արուեստից։ Ըստ մեզ Նանէական դիք։

16 Ոդիսեւս, ըստ առասպելաց մին ի դիւցազանց անտի տրովական պատերազմին, արքայ Իթակայ, միոյ ի յոնիական կղզեաց։ Ի սորա անուն է Ոդիսականն, մին ի վիպասանութեանց Հոմերի։

17 Դիոմեդ, մին ի դիւցազանց տրովական պատերազմին, թագաւոր Արգոսի։

18 Այաքս, անուն երկուց դիւցազանց տրովական պատերազմին։

19 Ամարիղլիս. անուն զոր տայ Վիրգիլիոս ումեմն ի կանանց հովուաց ի միում ի Հովուականաց իւրոց։

20 Աղկիպպոս, հոմանին Ամարիղեայ ըստ Վիրգիլիոսի։

21 Տիրկիս, անուն հովուի որ էր նուագածու քաջ ըստ Վիրգիլեայ։

22 Բոդիլարդոս որ նշանակէ ի լատին լեզու ճարպակեր, այսինքն որ կրծէ զճարպ խոզի, է պիտակ անուն զոր Բապլէ տայ կզոյ։

23 Կախել զանդակ ի պարանոց կզոյ, է ի բանս կարգի առակաց, ուր բանք են զդժուարութենէ գործոյ։

24 Թեմիս, դիք ատենի արդարութեան։

25 Մանկունք Յապետոյ, այսինքն Որդիք մարդկան։ Յապետն է արարիչ մարդկան ըստ առասպելաց։

26 Արքայ, այսու անուամբ իմանայ Լաֆոնդէն զՀենրիկոս Գ., եւ զՀենրիկոս Դ., որպէս եւ Դաշնաւորն անուամբ իմանայ զկողմն Հռոմէականաց որ յարեան ընդդէմ նոցա առաջնորդութեամբ Կիզեանց։

27 Գանիմէդ էր ըստ առասպելաց մատռուակ կամ տաճարապետ Արամազդայ։

28 Աֆրոդիտէ, ըստ մեզ Աստղիկ, դիք որում նուիրական էր աղաւնի։

29 Փչողք. այսպէս կոչեցան քիմիագէտք որ կարծէին գտանել զգաղտնիս յօրինելոյ զոսկի։ Այս անուն տուաւ նոցա վասն անդադարն փչելոյ նոցա զհուր հնոցի հալոցաց իւրեանց։ Արուեստ սոցա որպէս եւ աստեղագիտացն, այն է քաւդէից, էր ունայն եւ պատիր։

30 Պողիփեմ, յաղթանդամն քան զամենայն կիկղոպայս։

31 Հերա, կին Արամազդայ, դշխոյ դից։

32 Մենտոր, զօրական յոյն ըստ Հոմերի, ունէր զզօրութիւն ձայնի արանց յիսնից, եւ էր փոխանակ փողոյ ի տրովական մարտին։

33 Արիսպագոսն որ էր աւագ ատեան ժողովոյ ատենակալաց յԱթէնս՝ նշանակէ բլուր Արեայ, դից պատերազմի, զի ի բլրի անդ գումարէր ատեանն։

34 Նէապոլիս Մաղուասիայ. անուն տեղւոյ ի Մորէա. այն է Պեղոպոնեսոսն Յունաց։

35 Փռիւգացի, այն է Եզովպոս որ կարծէր լինել ի Փռիւգիայ։

36 Մալէրպ, բանաստեղծ գաղիացի, ծնեալ ի Գաճէն 1555, եւ մեռեալ ի Պարիս յամին 1628։ Րաքան, բանաստեղծ հովուերգու, աշակերտ Մալէրպայ, ծնեալ ի Րոշ-Րաքան ի Թուրէն յամին 1589, մեռեալ յամին 1670։

37 Ովրատիոս, անուանի պւէտ լատին, դարուն Աւգոստեայ։

38 Ապողոն, դիք վիպասանութեան, երաժշտութեան եւ գեղեցիկ արուեստից։

39 Արէս, դիք պատերազմի։

40 Մեննինոս Ագրիպպա, հիւպատոս 493 ամօք յառաջ քան զՔր.։ Այս Մեննինոս է որ առակաւն ստամոքսի եւ անդամոց՝ ցածոյց զռամիկն, որոց խրոխտացեալ ընդդէմ աւագաց՝ ապստամբեալ էին ի Նուիրականն անուանեալ լեառն։ Այլ հնազանդութիւն ռամկին չեղեւ վայրապար, զի կացուցան դատաւորք որ Տրիբունքն կոչեցան, եւ որոց գործ էր ակել օգտի ժողովրդեանն։

41 Իրաւափառ, հասարակաց անուն զոր մարթ է տալ հովուաց, որպէս աստ ուր եդեալ է փոխանակ հովուի։

42 Որմիզդ, նոյն ընդ Արամազդ անուան։

43 Պանդոր, Հեփեստեայ դուստր, որում շնորհեալ էր դից ազգի ազգի պարգեւս։ Արամազդ, ասեն, առաքեաց զնա յերկիր տփով, ընդ որ ելին տարածեցան ընդ աշխարհ չարիք, յոյս միայն մնաց ի ներքս։

44 Արքանեակ Բաքոսի, այսինքն է արբշիռ, գինեմոլ. իսկ Բաքոսն, ըստ մեզ Սպանդարամետ, է, որպէս յայտ է, չաստուած գինւոյ։

45 Աղեկտոն, մին յերից կատաղեաց դժոխոց, ըստ առասպելաց։

46 Հիպպոկրատ, անուանի բժիշկ յոյն, ծնեալ ի Կով կղզւոջ իբրեւ 460 ամօք յառաջ քան զՔր.։ Աստ փոխանակ բժշկի առհասարակ։

47 Կասգոն, Նորման, իբրեւ այր ազէտ եւ շինական նենգաւոր։

48 Պրոգնէս էր ըստ առասպելաց կին արքային Թրակացւոց որ կոչէր Տերեւս. իսկ Փիղոմեղ էր քոյր Պրոգնեայ։ Տերեւս, ասեն, խարդաւանեաց զՓիղոմեղ, եւ երկոքին քորք ի վրէժ Թշնամանացն

զենեալ զորդին Ցերեայ ետուն նմա ուտել: Ի պատուհաս այսր ապա-նութեան Պրոգնէս փոխեցաւ ի ծիծառն, եւ Փիղոմեղ՝ ի սոխակ:

49 Աղեքսանդր մակեդոնացի որ անուանեալ կոչի մեծ՝ վասն աշխարհակալութեանն:

50 Ատտիղա էր արքայ Հոնաց որ դողացոյց զԵւրոպա (434), եւ որ Աստուածահարուած զանձն կոչէր:

51 Կերպերոս, ըստ առասպելաց շուն երեքգլխեան, պահապան մտից դժոխոց:

52 Ի բնագրին է Միդիս որ ի լատին լեզու նշանակէ հեզ, զգօն, եւ էր անուն յորջորջանաց կզոյ: Միդիսն անուն, որպէս եւ հայերէն Լուալուան, ի դէպ գան կզոյ առակին Լաֆոնդենայ, զի էր նա անհնարին կեղծաւոր եւ խորամանկ:

Տիկին գաղղիացի որ ծաղկեցաւ 1626—1696. Նշանաւոր են թուղթ նորա առ դուստր իւր: Առ վերջինս այս հային բանք Լա-ֆոնդենայ:

53 Ամփիտրիտ, դիք ծովու, դուստր Ովկիանու, կին Պոսիդոնի:

54 Կորիտոն, Տիրկիս են հովիւ իշխանք:

55 Բերոյ, հովիւ վարձկան:

56 Զեւս, Արամազդ:

57 Ճանճ գաղիերէն կոչի մուշ, իսկ մուշար որ մօտ է ձայնիւ ի նա՝ նշանակէ լրտես եւ քսու:

58 Փեբոս է անուն Ապողոնի եւ նշանակէ արեգակն:

59 Միրոյ, անուն շան:

60 Անուանք ծաղու զորս Հոմերոս տայ մկանց յերգսն որ անուանեալ կոչի գորտամկնամարտ:

61 Լաֆոնդէն ակնարկէ զԱրիոն, անուանի պուէտ եւ երաժիշտ յոյն յէ. դարու նախ քան զՔր.: Ըստ առասպելաց դեղփինք զերծուցին զնա ի լինելոյ ծովամոյն՝ յափշտակեալ ի քաղցրութենէ նուագաց նորա:

62 Նաւահանգիստ Աթենացւոց, շինեալ, որպէս ասեն, ի Թեմիստոկլեայ:

63 Վոժիրար է գիւղ մօտ ի Պարիս:

64 Մէրլին, անուանի թովիչ կամ հմայող:

65 Հարիւրբերանեան դիք է Համբաւ:

66 Դիւցազն որմզդածին, Աղեքսանդր որ համբաւէր զանձնէ լինել որդի Արամազդայ:

67 Այսինքն՝ Ազատութեան:

68 Սոկրատ, անուանի փիլիսոփայ յոյն. 468—399 Ն. ք. զՔր.:

69 Գերի փռիւգացի է Եսովպոս ըստ հասարակաց կարծեաց ժամանակին:

70 Այսինքն՝ զոր այրելոց էին իբրեւ անաստուած:

71 Ապողոն ունէր մեհեան ի Դեղփիս ուր կին հարցուկ տայր պատգամ։

72 Մին ի հնոցն փիլիսոփայից Յունաց, անուանի վասն կամաւոր աղքատութեանն։ Բազում ինչ պատմի զնմանէ։ Կոչի շնական, զի սովոր էր անխնայ կծանել զմարդիկ բանիւք։

73 Վահագն, ըստ Յունաց՝ Հերակղէս, դիւցազն ըստ առասպելաց, անուանի երկոտասան արութեամբքն։

74 Հերմէս, ըստ Հայոց Տիւր դիք, էր պատգամաւոր դից։

75 Քոյրք մանողք, երեքին Պարկայք, Կղոթոն, Ղաքեսիս եւ Ատրոպոս, որոց գործ էր, ասեն, մանել զկեանս մարդկան։

76 Թետիս, դիք ծովու, նա եւ ծով իսկ գլխովին։ Պէտք համարէին թէ արեգակն զոր Փեբոս կոչեն՝ մտանէ ի ծով զամենայն երեկոյ, եւ ելանէ անտի այգուն այգուն։

77 Քարիբդա եւ Սկիւղա էին երկու խութք ի նեղցին Սիկիլիայ։ Սկիւղայն վտանգաւոր էր նաւաց որ մերձենային ի ցամաք անդըր Իտալիայ. միւսն՝ անդունդ ահագին ի Սիկիլիա, դէմ յանդիման Սկիւղայ։ Յաճախ դէպ լինէր զի ի ջանալ խուսել նաւին ի միոջէ անտի՝ անկանէր ի միւսն. ուստի եղեւ յառակս ասել, Անկանել ի Քարիբդայ ի Սկիւղա։

78 Շահապետք վայրի ոմանք, ըստ առասպելաց, բնակէին յանտառս, եւ էին կիսով չափ մարդ, եւ կիսով չափ՝ քաղ, համակ ի լկտութիւնս հառեալք։

79 Տիտանեանք, հսկայք, որդիք Տիտանայ, փորձեցին ելանել յերկինս կուտել բազում լերինս մի զմիով. այլ Արամազդ սատակեաց զնոսա շանթահար։

80 "Հողմ։" Բան հակիրճ, այլ զօրեղ, զի յայտ առնէ բարւոք, արագութեամբն, զսակաւ գին յոռի գրոց որ մեծամեծ խոստմամբ ելանեն ի հրապարակ։ Ովրատիոս ասաց. "Երկնեն լերինք, ծնանի մուկն չնչին։" Պուալոյ թարգմանէ, "Լեառն յերկունս՝ ծնանի մուկն։" Նոյն միտք են երեցունցն, այլ ոչ նոյն պատկեր։

81 Անուն շան որսոյ։

82 Թռչուն Աթենասայ, բու։

83 Տենտոյ, վաճառական խաշին որ պատժեցաւ խստիւ, զի թշնամանեաց զՊանտակրուէլ, գլխաւոր անձն զոր ստեղծանէ Րապլէ ի համանուն վիպին, եւ զի կարի բարձր գին եդ վաճառուն իւրում։

84 Այրինքն՝ Փեդրոս, նմանող Եզովպայ։

85 Բորէաս, հողմն հիւսիսոյ որ է սաստկաշունչ։

86 Ծիածան, ըստ առասպելաց՝ Իրիս, հին պատգամաւոր դից, փոխեալ հրամանաւ Հերայ ի ծիածան կամ յաղեղն. նկարի թեւաւոր։

87 Վիրգիլիոս ի մշակականին, Գիրք 1. Ե։

88 «Ի կաղանդ անդր յղէ.» այսինքն՝ արձակէ ունայն, զի առ Յոյնս չգոյր ի տարւոջն օր որ կոչէր Կաղանդ։

89 Սոխուքս, գետ դժոխոց ըստ առասպելաց։

90 Չէր պարտ Լաֆոնդենայ այսպէս դժուարին գտանել զխնդիրն։ Բարւոք է լինել ողորմած առ ամենեսին. «Բարի արարէք ատելեաց ձերոց» (Մատթ. Ե. 44.)։

91 Փայեթոն, որդի արեգական, կամեցաւ վարել զկառս հօր իւրոյ։ Յայտնի է թէ զինչ եղեւ վախճան յանդգուգն գործոյն։ Լաֆոնդէն կոչէ Փայեթոն զկառավարն չաղաղակ։

92 Այս բանք յառակաց կարգի են։

93 Աքերոն, գետ դժոխոց։ Կամի ասել՝ ծիծաղի զմահուամբ. արարեալ փորձս կարի վտանգաւորս ի վերայ անձին իւրոյ, առ ի ցուցանել հանդիսատեսաց թէ քանի ազգոյ էին գեղջքն։

94 Այսինքն՝ ճարտարախօս քաջ, այր բանիբուն։

95 Պատմուճան, այդ ինչ պճղնաւորի զոր սովորութիւն էր տալ զգենուլ որոց ելանէին վարդապետս ի գիտութեան։

96 Արկադիա, գաւառ Յունաց ուր բնակիչքն էին հովիւք տաւարածականք։ Եւ զի ձիք անօսր էին յԱրկադիա, այլ էշք բազում, զէշ ընտիր սովորութիւն էր առ հինսն կոչել նժոյգ Արկադիոյ։

97 Կամի ասել, Գնել ի հրահանգս դպրոցաց, ի վարժուսմանց։

98 Մոնկոլք, տէրութիւն մեծ ի Հնդիկս, յարեւելից Պարսից աշխարհին։

99 Գանգէս, գետ մեծ ի Հնդիկս։

100 Նորուեկիա, երկիր անհնարին ցուրտ, ի հիւսիսակողման Եւրոպայ։

101 Հնդիկ, բնակիչ Հնդկաստանի։

102 Բնակիչ Լապոնացւոց աշխարհին, որ է ի ծագ անդր հիւսիսակողման Եւրոպայ։

103 Մին ի կարի անարգորոյն կայսերաց Հռոմայ։ Լաֆոնդէն թուի ակնարկել աստ զանարգորոյնութենէն որ պատմի զԿաղիգուլայ, որ պատժեաց, ասեն, մահու եւ զորս լային զմահ քեռ իւրոյ Դրուսիղայ, եւ զորս ոչն լային. զառաջինսն՝ զի զարտասուս նոցա թշնամանս համարէր Դրուսիղայ զոր հանեալ էր ի կարգ աստուածոց, զերկրորդսն՝ զի անհոգս ցուցանէին զանձինս ընդ կորուստ նորա։

104 Այսինքն՝ երկդիմի բանիւք։

105 Աստղիկ որ եւ Ափրոդիտէ, դիք գեղեցկութեան եւ ցանկութեան։ Սա ծնաւ ասեն ի փրփրոյ ծովու, եւ նկարի յաճախ ելեալ ի միջոյ ալեաց՝ քամելով զհերսն։

106 «Մայրն սիրոյ» իմա Աստղիկ, որոյ որդի համարէր Սէր որ եւ ցանկութիւն, ի կերպարանս մանկան։

107 Անգղ մի, ասեն, կրծէր զլեարդն Պրոմեթեայ ըստ բուսանելոյ լերդին միւսանգամ ի պատուհաս, զի գողացեալ հուր յերկնից՝ ետ ոգի մարդկան։

108 Քաղաք մեծ վաճառաշահ ի Մոնկոլս ի խորշին որ կոչի Գամպէյ։

109 Ճապոն, հզօր տէրութիւն ի հիւսիսոյ արեւելից Չինաց։

110 Մին յերից Պարկայց որում յանձն էր կտրել զթել կենաց մարդկան։

111 Եղբայր Արամազդայ եւ դիք ծովու։

112 Սիբիլլայք էին մարգարէ կանայք առ հինսն։

113 Ժողով գիշերական զոր առնեն ասէին կախարդք։

114 Պիտակ անուն կղզայ։

116 Պիտակ անուն կղզայ։

117 Դեմոկրիտ էր այն։

118 Եպիկուրոս։

119 Ակնարկէ զՄուսայս դստերս Արամազդայ եւ Մնեմոսինեայ, դից ուշոյ յիշատակի։

120 Կարոլոս Բ., արքայ Անգղիացւոց։

121 Յուլիոս կայսր որ եղեւ առաջին ի կայսերս։

122 Եւթն իմաստունք Յունաց էին՝ Թաղէս, Սողոն, Քիղոն, Պիտտակոս, Բիաս, Կղէոբուղոս եւ Պերիանդր։

123 Հիդրա, օձ առասպելեալ կամ վիշապ զորմէ ասեն պուէտք թէ ունէր եւթն գլուխ, եւ եթէ հատանէր ոք զմին, բազումք բուսանէին ընդ այնր։

124 Այսպէս կոչէ զժողովուրդն։

125 Դեմետր, ըստ մեզ Սանդարամետապետ, դիք հնձոց։

126 Աթենացիք էին ընդ պաշտպանութեամբ Դեմետրի։

127 Արքայ Մակեդոնացւոց որ յայնժամ տայր պատերազմ ընդ Յոյնս։

128 Գօտի լերանց որ գնայ ընդ երկայնութիւն Իտալացւոց աշխարհին։

129 Արքայ հզօր եւ քաջ ըստ առասպելաց, որ յետ գործելոյ բազում արութիւնս քաջութեանց՝ անկեալ յախտ մաղձոտութեան, առանձնացաւ յանապատի ուրեք հեռի ի հաղորդութենէ մարդկան։ Լաֆոնդեն նմանեցուցանէ սմա զարջ իւր միայնակեաց։

130 Է ի բանս կարգի առակաց։

131 Դիք ծաղկանց եւ պարտիզաց, սիրելի Զեփիւռն անուանեալ հողմոյ եւ մայր գարնան.

132 Պոմոնա, դիք պտղոց։

133 Մորփեւս, դիք քնոյ։

134 Պոգաչչիոյ, պւէտ եւ մատենագիր Իտալացի, յօրինիչ Տեգամերոն անուն վիպասանութեան։ Ծաղկէր 1313—1375։

135 Անձինք ի Հովուականին Վիրգիլեայ։

136 Անասնիկ մի սողուն որ առնու ասեն զգոյն մարմնոյ յորս մերձենայ։

137 Եղիւսիան դաշտք, տեղի բնակութեան երանելեաց ի դժոխս ըստ առասպելաց։

138 Ասկղեպիադէս, դիք բժշկութեան։

139 Եսքիղ, յոյն պւէտ հին յորոյ գործոցն հատակոտորք միայն գոն։

140 Քորք սեաւք, այսինքն՝ անուանեալ կատաղիք դժոխոց։

141 Կատաղիք կոչին եւ Եւմենիդք։

142 Հեփեստոս, ըստ Հայոց՝ Միհր, դիք հրոյ։

143 Սովորութիւն էր կոչել Ցովհան Նիւէլ, զշուն որ խոյս տայ ի կոչել ուրուք զնա, յանուանէ Ցովհաննու Նիւել, որոյ ոչ կամեցեալ երթալ պատերազմաւ ի վերայ Դքսին Պուրկոնեի, ըստ հրամանի հօրն, աճապարեաց ի փախուստ՝ ոչ անսացեալ ստէպ խրատուն որ կոչէր զնա յետս։

144 Մանս. գաւառ ի Գաղիա, նշանաւոր վասն հաւուցն պարարելոց։ Լաֆոնդէն յայն սակս կոչէ քաղաքացի Մանսայ, եւ ի ստորեւ՝ Մանսացի՝ զաքաղաղ իւր կուրտ։

145 Սովորութիւն էր զՄանսացիս, այն է զբնակիչս Մանսայ, կոչել Նորման եւ կէս, զի դահեկան նահանգին Մենայ որոյ է մայրաքաղաք Մանս՝ արժէր մի եւ կէս դահեկան առաւել քան զդահեկանն Նորմանտացւոց։

146 Այսինքն՝ հեղձնուլ։

147 Մաթուսաղա, նահապետ նախաջրհեղեղեան, զորմէ ասէ գիր թէ եկեաց ամս 969, որչափ չիք ուրուք ի մարդկանէ կեցեալ երբեք։

148 Դեմոկրիտէս, մին ի նշանաւոր փիլիսոփայից Յունաց, ծնեալ յԱբդէր, քաղաք Թրակացւոց ծովեզերեայ։

149 Քուրմ կամ Վարդապետ Պրահմինեան աղանդոյն Հնդկաց։

150 Անուն ծաղու զոր հնարեաց Րապլէ տալ զառաջինն դատաւորի կամ ատենակալի իբրեւ ընդ հենդն։

151 Առ Նախնիս էր լեառն ըստ առասպելաց յԱտտիկէ, ուստի Ցոյնք առնուին մեղր ազնիւ։

152 Եմբեդոկղէս ի հնոց անտի փիլիսոփայից Յունաց, ոչ կարացեալ հասու լինել զարմանալեաց Ետնայ լերին, արկ զանձն յանդունդս անդր սնոտի պարծանօք որ արժանի էր ծաղու. եւ զի մեծ եւ գեղեցիկ զգործն համարէր, առ երկիւղի թէ կորիցէ յիշատակն առ յապայ եկելոց՝ զհողաթափն ասեն հան եւ եթող առ ոտս լերինն։

153 Այսինքն է Արամազդ։

154 Պղուտոն, դիք դժոխոց. երթալ առ Պղուտոն՝ նշանակէ իջանել ի դժոխս, մեռանել։

155 Թալթ մազեղ յայտ առնէ խորամանկ որ մեղմիկանօք ի գլուխ հանէ զդաւն։

156 Ծխեն ի մուտս որջոց զի արտաքս ելանիցեն աղուեսունք։

157 Ազգ ինչ շանց փոքունց որ մտանեն ի սորս։

158 Լաֆոնդէն թուի ակնարկել զդէպս կոմսին Վիլլայ Մէտինայ ընդ Եղիսաբեթի Գաղիացւոյ, դստեր Հենրիկոսի Դ.ի, եւ կնոջ Փիլիպպոսի Դ.ի արքայի Սպանիացւոց։ Առ ի կորզել զԵղիսաբեթ ի տուն իւր՝ կոմսն հնարեցաւ այսպիսի ինչ. ետ տեսիլ թատերական բազում ծախիւք ի տան իւրում, եւ մինչ ընծայանայր տեսիլն, հար հուր զտամբն եւ յաղմկի անդ հրդեհին, մինչդեռ ամենեքին զահի հարեալ տագնապաւ դիմէին այսր անդր, գիրկս արկեալ կոմսին տիկնոջն որպէս թէ զերծուցանել կամէր զնա ի վտանգէն, տարաւ ի տեղի ապահով։ Այսպէս հար զփափաք ցանկութեանն փարելոյ գոնեայ վայր մի զսիրելեաւն։

159 Պալլաս, մին յանուանց Աթենասայ, իբրեւ դից պատերազմի. ծնաւ առեն ապառաժէն յուղղոյ անտի Արամազդայ. փոխեաց զԱրաքնէ, մանկամարդ Լիւդացի, ճարտար յարուեստի ոստայնանկութեան, մինչեւ մրցել ընդ դիցն թէ ո յերկոցունց հենուցու բարւոք։ Բարկացեալ առեն Աթենասայ՝ պատառեաց ոստայն մի յոստայնից նորա, եւ Արաքնէ առ վշտին խեղդ առեալ զանձամբ մեռանէր. այլ Աթենաս առեն փոխեաց զնա ի սարդ։

160 Կին իշխան որ փոխեցաւ ի ծիծառն։

161 Փիլոմէլ, քոյր առաջնոյն, փոխեցաւ ի սոխակ։

162 Հեկուբէ կին Պրիամու արքային Տրովացւոց. վարեալ ի գերութիւն՝ յետ տեսանելոյ ի մահ մատնեալ զայր իւր եւ զբազում յորդւոց իւրոց։

163 Բեղիսարիոս, զօրավար մեծ, որ յետ լինելոյ հրամանատար զօրուն Յուստինիանոսի կայսեր, եւ կորուսանելոյ զշնորհս տեառն իւրոյ, անկաւ յայնպիսի մեծ թշուառութիւն, մինչեւ ստիպել խնդրել ողորմութիւն յանցս ճանապարհաց։ Այլ զայս պատմութիւն սուտ առնեն ոմանք։

164 Մեկոնիոն, բոյս որ կարծէր ածել քուն։

165 Ակնարկէ զԱգամեմնոն, մին ի նշանաւոր դիւցազանց Յունաց որ չոքան ի պաշարումն Տրովայ։ Սա, որպէս եւ եղբայր նորա Մենեղաս, որդիք Ատրեայ արքային Միկենայ, նաեւ համօրէն տոհմն, համբաւեալ էր վասն անագորունութեանն։

166 Այաքս, մին ի դիւցազանց Յունաց որ չոքան ի կռիւ ընդդէմ Տրովացւոց։

167 Ոդիսեւս, այլ դիւցազն յոյն հակառակորդ Աքիլլեայ:

168 Մինովս, արքայ Կրետացւոց, օրէնսդիր իմաստուն եւ դատաւոր մեռելոց ի դժոխս:

169 Անուանի երաժիշտ զոր յիշէ Պուալոյ:

170 Աղուխոուն:

171 Փառն, դիք հօտից եւ անդէոց:

172 Յով, դուստր Ինաքայ արքային Արգոսի ըստ առասպելաց: Արամազդայ սոեն փոխեալ զնա յերինջ:

173 Տես գիրք Զ. տաղ Ե.:

174 Փիլիսոփա եւ կայսր Հռոմայեցւոց Բ. դարու:

175 Սինկլիտիկոս, ատենակալ:

176 Կորդեսեան, աշակերտ Կորդեսեայ կամ Տեքարդայ, հռչակաւոր իմաստնոյն Գաղիացւոց որ ասէր թէ անասունք մեքենայ լոկ են:

177 Բովանդակութիւն:

178 Ծով:

179 Ազգ կանանց պատերազմողաց որ բնակէին ի Կապադովկիա, եւ զորոց պատմի բազում ինչ, այլ ամենայն առասպելք են:

180 Ակնարկէ զկղզին մերձ ի Սէն ժան տը Լիւզ, ուր Լուդովիկոս ԺԴ. եւ Փիլիպպոս Ե. արքայ Սպանիացւոց չոքան կնքել դաշինս յամին 1659:

181 Անուանին ի Կիկղոպայս, հոմանի Գաղատեայ Նիմփայի:

182 Ամալթէա այծալէս կոչի ըստ առասպելաց այծն որ սնոյց սոեն զԱրամազդ, եւ վասն այնորիկ կարգեցաւ յաստեղս:

183 Ժամանակաւ սովորութիւն էր սեղանաքեկաց (սնանկացելոց) կրել խոյր կանաչ:

184 Պատրոկլէս, բարեկամ Աքիլլեայ, վառեալ զինու դիւցազինն այնորիկ, արկ ահ եւ երկիւղ ի Տրովացիս, այլ սպանաւ ի մարտին ուր եկաց նա առանձինն ատեւ Հեկտորի:

185 Եղբայր մեծին Գոնտէի:

186 Դուստր Լուդովիկոսի ԺԴ.ի, առն լեալ յամին 1680:

187 Մատենագիր Հնդկաց:

188 Դիք վրէժխնդրութեան:

189 Կին հռչակաւոր, պաշտպան Լաֆոնդենի:

190 Մայրաքաղաք փղաց:

191 Մայրաքաղաք անդեղջերաց:

# ՅՈՒՑԱԿ



## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ



## ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

## ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ



## ԳԻՐՔ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ԳԻՐՔ ՎԵՑԵՐՈՐԴ



## ԳԻՐՔ ԵՕԹՆԵՐՈՐԴ

## ԳԻՐՔ ՈՒԹԵՐՈՐԴ

## ԳԻՐՔ ԻՆՆԵՐՈՐԴ



## ԳԻՐՔ ՏԱՍՆԵՐՈՐԴ

## ԳԻՐՔ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ



## ԳԻՐՔ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# ՎՐԻՊԱԿՔ

| Էջ | Տող | ընթերցիր |
|---|---|---|
| 22 | 8 | կրէ |
| 25 | 17 | Պողիտեւկիս |
| 25 | 25 | Ետ |
| 26 | 7 | ղովող |
| 32 | 2 | կորնչիմ |
| 44 | 16 | յետ |
| 50 | 11 | սրուակս. |
| 60 | 5 | ղորոյ |
| 61 | 27 | Այնչափ |
| 65 | 8 | զերրորդըն |
| 65 | 18 | Ցերկրորդումն |
| 72 | 14 | որեարըդ |
| 74 | 14 | զոյժ: |
| 75 | 17 | իւր |
| 77 | 28 | կլանէր |
| 79 | 4 | խորհուրդդ |
| 81 | 23 | մինչչեւ |
| 83 | 4 | Ցահ |
| 85 | 8 | գայ արագիլն |
| 88 | 13 | պատանդք |
| 94 | 27 | ապդ |
| 123 | 20 | պճնեն |
| 130 | 3 | Ո՞չ |
| 131 | 2 | է վասն քո. |
| 136 | 28 | եթէ ուր |
| 142 | 7 | խորհուրդդ |
| 142 | 11 | մարթ |
| 146 | 4 | ապաքինեմ |
| 149 | 24 | Դարմանոյն |
| 152 | 11 | ժամագործքն. |
| 155 | 1 | Ջինչ. |
| 155 | 5 | Նըկարեա |
| 159 | 21 | չորրորդս |
| 163 | 13 | ղայսոսիկ |
| 173 | 15 | ընկեր, |
| 190 | 10 | հըմուտ |
| 196 | 22 | Երթամք |
| 197 | 7 | հասանելոց |
| 199 | 21 | ծընունդ, |
| 201 | 7 | նոյնպէս. |
| 201 | 19 | պարտէզ |
| 202 | 2 | ջանայր |
| 217 | 11 | ըղՏըրովա |
| 224 | 21 | Գուլիէլմայ |
| 224 | 25 | ի Պետրայ |
| 238 | 7 | Են քո |
| 244 | 19 | անտի որոց |
| 249 | 19 | ըզգօն: |
| 249 | 20 | Պարտէզք |
| 253 | 8 | իբրու |
| 256 | 4 | Գեղեցիկ |
| 264 | 8 | գոնէ ոք ի նոցունց |
| 269 | 15 | Ջընչեղ |
| 280 | 17 | Եւ զոր |
| 281 | 9 | Ահա չո՜ւնք |
| 281 | 9 | ըսպառի |
| 290 | 4 | ամենարուեստն: |
| 311 | 20 | լինի՞ |
| 312 | 22 | ասեմք |
| 341 | 1 | Ոչ գոյր |
| 366 | 2 | գրեա թէ |
| 381 | 20 | յանձն իւր |
| 381 | 25 | իշխեն, |
| 391 | 8 | հին |
| 400 | 10 | Ուղղէր |
| 404 | 21 | Միմեանց |
| 408 | 22 | անձուկ |
| 417 | 23 | վազվազելով |
| 422 | 14 | հաւուց |
| 428 | 8 | գըթած |
| 434 | 3 | չառնին |
| 435 | 7 | Նըմա |

# ԱՆՈՒԱՆՔ ԱՆԴԱՄՈՑ ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

| Թիւ ընկալագրի | Անուանք անդամոց Արամեան Ընկերութեան | Անդամակցութեան ժամանակը | | Բաժին | Դրամագլուխ | |
|---|---|---|---|---|---|---|
| | | | | | Ֆլ. | քր. |
| 1 | Ղարամեան Ռաֆայէլ Աղեքսանդր Ասպետ . . . . . . . . . | 1843 | Մարտ 4 | 5 | 500 | — |
| 2 | Եուսուֆեան Պետրոս Ամիրա . . | 1843 | Ապրիլ 10 | 5 | 500 | — |
| 3 | Ապրոյեան Աբրահամ . . . . . | 1843 | " 10 | 2 | 200 | — |
| 4 | " Յոսեփան . . . . . | 1843 | " 10 | 4 | 400 | — |
| 5 | Աբէլեան Գրիգոր . . . . . . | 1843 | " 10 | 2 | 200 | |
| 6 | Սարգսեան Յակոբ . . . . . . | 1843 | Դեկտ. 1 | 2 | 200 | — |
| 7 | Ազարեան Յովհաննէս . . . . . | 1843 | " 1 | 3 | 300 | — |
| 8 | Համսօն Վիչէն . . . . . . . | 1843 | " 4 | 2 | 200 | — |
| 9 | Ճէվահիրճեան Գրիգոր (Ճիոյա) . | 1843 | " 10 | 2 | 200 | — |
| 10 | Սարգսեան Ռուտոլֆ . . . . . | 1843 | " 11 | 1 | 100 | — |
| 11 | Մանասեան Բուզանդ . . . . . | 1843 | " 11 | 1 | 100 | — |
| 12 | Կարապետեան Յովհաննէս . . . | 1843 | " 14 | 1 | 100 | — |
| 13 | Նիկողայոսեան Ղազարոս . . . . | 1843 | " 20 | 1 | 100 | — |
| 14 | Շանշեան Նիկողայոս . . . . . | 1845 | Յուլիս 8 | 1 | 100 | — |
| 15 | Մ. Վ. . . . . . . . . . . . | 1844 | Ապրիլ 18 | 1 | 100 | — |
| 16 | Եղիսաբեթուպոլսոյ Հասարակութիւն . . . . . . . . . | 1844 | Յուլիս 8 | 1 | 100 | — |
| 17 | Տիւզեան Յակոբ . . . . . . . | 1844 | " 27 | 2 | 200 | — |
| 18 | Սամոշույվարի Հասարակութիւն . | 1844 | " 31 | 1 | 100 | — |
| 19 | Լազարէվ Խաչատուր . . . . . | 1844 | Սեպտեմ. 30 | 3 | 300 | — |
| 20 | Բավլօ Մկրտիչ . . . . . . . | 1845 | Յունուար 1 | 1 | 100 | — |
| 21 | Ալլահվէրտեան Աբրահամ Ամիրա . | 1845 | Ապրիլ 11 | 1 | 100 | — |
| 22 | " Անտոն Պէյ . . . | 1845 | " 11 | 1 | 100 | — |
| 23 | Ջէմպէրէքճեան Պետրոս . . . . | 1845 | Յունիս 4 | 1 | 100 | — |
| 24 | Թընկըրեան Յովհաննէս . . . . | 1845 | Յուլիս 24 | 1 | 100 | — |
| 25 | Ագնաւորեան Միքայէլ . . . . | 1845 | Նոյեմբ. 2 | 1 | 100 | — |
| 26 | Տէվրիշեան Սերովբէ . . . . . | 1846 | Յունուար 11 | 1 | 100 | — |
| 27 | Քըլճեան Վիչէն . . . . . . . | 1846 | Փետր. 1 | 1 | 100 | — |
| 28 | Տատեան Յովհաննէս Ամիրա . . | 1847 | Մայ. 5 | 2 | 200 | — |
| 29 | Ալլահվէրտեան Գրիգոր եւ Յովհաննէս Պէյք . . . . . . . | 1847 | Յունիս 20 | 1 | 100 | — |
| 30 | Համազգեաց Ընկերութիւն . . . | 1848 | Յունուար 4 | 1 | 100 | — |
| 31 | Աւգալեան Յովհաննէս . . . . | 1846 | Յունիս 6 | 1 | 100 | — |
| 32 | Մարտիրոսեան Գալուստ . . . . | 1850 | Յունուար 30 | 1 | 100 | — |
| 33 | Յովհաննեան Ղազարոս . . . . | 1850 | " 30 | 1 | 100 | — |
| 34 | Պիւլպիւլճեան Յովսէփ . . . . | 1850 | " 25 | 1 | 100 | — |
| 35 | Ֆինճանճեան Ներսէս Վ. . . . . | 1851 | Օգոստ. 31 | 1 | 100 | — |
| 36 | Թօսունեան Անանիա . . . . . | 1852 | Դեկտ. 31 | 1 | 100 | — |
| 37 | Հանըմեան Յարութիւն . . . . | 1857 | Յունուար 30 | 1 | 100 | — |
| | Փոփոխեալ գհին Ֆլ. Աւստր. ի Նոր Ֆլ. յաւելաւ . . . . . . . | | | | 295 | — |
| 38 | Կաթողիկոսարան Զըմմառու. . . | 1861 | Հոկտ. 31 | 1 | 105 | — |
| 39 | Ջունդեան Աստուածատուր. . . | 1862 | Յուլ. 12 | 1 | 105 | — |
| 40 | Հայ մի . . . . . . . . . . | 1892 | Ապրիլ 11 | 1 | 100 | -- |
| 41 | Գարագաշեան Ա. Մ. . . . . . . | 1894 | Ապրիլ 30 | 2 | 220 | 73 |
| | | | | 64 | 6725 | 73 |

## Ժ. ՀԱՇԻՒ ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ
### Ի ՍԿԶԲԱՆԷ 1878 ՏԱՐՒՈՅ ՄԻՆՉԵՒ 30 ԱՊՐԻԼ 1894

Մուտք — Ելք

| Մուտք | ֆլ. | քր. | Ելք | ֆլ. | քր. |
|---|---|---|---|---|---|
| Թ. Հաշուէն կ'աւելնար[1] | 2239 | 16 | Բ. Տպագրումն Արուեստախօսութեան, 500 օր. | 427 | — |
| 4% Շահ 6.405 ֆլ. ի յամէ 1878—1894 Ապր. 30 . . | 4185 | 93 | Գ. Տպագրումն Արուեստախօսութեան 1000 օր. | 530 | — |
| 4% Շահ 100 ֆլ. ի նոր անդամոյ 12 Ապր. 1892—1894 Ապր. 30 . . . . . | 8 | 55 | Ծախուց առաքման եւ կազմից, եւն յամէ 1878—1894 Ապր. 30 . . . . | 550 | 78 |
| Ի վաճառմանէ մատենից 1878—1894 Ապր. 30 . | 1931 | 88 | Տպագրութեան Առակաց Լաֆոնդենի 600 օր. . . | 985 | 86 |
| | | | Կ'աւելնայ ԺԱ. Հաշուին անցուցանելի . . . . . | 5871 | 88 |
| | 8365 | 52 | | 8365 | 52 |

[1] Թ. Հաշուի յաւելուածն էր 1971.16. որուն վրայ աւելցուցինք Ը. Հաշուի յաւելուածէն ֆլ. 268.— (վասն զի Թ. Հաշուին մէջ փոխանակ 926.32ի՝ անցուած էր 658.32)։

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԿՇԻՌ
### ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

Մուտք — ՅԱՄԷՆ 1843—1894 ԱՊՐ. 30 — Ելք

| Մուտք | ֆլ. | քր. | Ելք | ֆլ. | քր. |
|---|---|---|---|---|---|
| Անձեռնմխելի դրամագլուխ . . . . . . . . . | 6725 | 73 | Տպագրութեան 14 մատենից Ընկերութեան ըստ Ա.—Ժ. հաշուոց . . . | 10866 | 64 |
| 4% Շահ դրամագլխոյ 1843 Մարտ—1894 Ապր. 30 ըստ Ա.—Ժ. հաշուոց . | 12235 | 13 | Ծախք առաքման, կազմից եւ այլն ըստ Ա.—Ժ. հաշուոց . . . . . . . | 1480 | 98 |
| Ի վաճառմանէ մատենից Ընկերութեան ըստ Ա.—Ժ. հաշուոց . . . . . | 603 | 34 | Ծախք փոփոխութեան դրամոյ՝ պակասը Զ. հաշուէն Է. հաշիւն անցընելու ժամանակ . . . . | 48 | 97 |
| Շտեմարան մատենից, արժէք . . . . . . . | 4080 | — | Ի հաւասարութիւն մնայ մաքուր ստացուածք Ընկերութեան . . . . . | 16677 | 61 |
| | 29074 | 20 | | 29074 | 20 |

# ՄԱՏԵԱՆՔ

## ·ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

Փր.

Ա. Նկարագիր ուսմանց, որ է Օգուտ իւրաքանչիւր մասանց գրագիտութեան. ի Հ. Մատաթիա Վ. Գարագաշեան, 1845 (գրաբար). . . . 1·50

Բ. Գիտութիւն Տէրութեանց, կամ Վիճակագրութիւն Եւրոպայ, ի Հ. Ղեւոնդ Վ. Յովհաննեան, Հատոր Ա. 1847 (գրաբար) . . . . . . 1·50

Գ. Գիտութիւն վաճառականութեան. ի Հ. Ղուկաս Վ. Տէրտէրեան. 1848 (աշխարհաբար). . . . . . . . . . . . . . . . . . . . 1·25

Դ. Պատմութիւն Հայոց, Հայկազանց Տէրութեան սկսեալ մինչեւ մեր ժամանակը. ի Հ. Եփրեմ Վ. Չագըճեան, 1851 (աշխարհաբար)։
Բ. Տպագրութիւն, 172. . . . . . . . . . . . . . . . . . . 3·30

Ե. Պատմութիւն քաղաքականութեան եւրոպական Տէրութեանց ընդհանրապէս, ի Հ. Ղեւոնդ Վ. Յովհաննեան, Հատոր Ա. 1856 (աշխրհբր.) 1·25

Զ. Նոյն Հատոր Բ. 1856. . . . . . . . . . . . . . . . . . . 1·25

Է. Գործնական Առեւտրախօսութիւն, կամ Գլխաւոր առեւտուրներու եւ անոնց դիւրին կերպով գործադրութեան առաջնորդ, ի Հ. Եփրեմ Վ. Չագըճեան, 1857 (աշխրհբր.)։
Բ. Տպագրութիւն, 1869։
Գ. Տպագրութիւն, 1884 . . . . . . . . . . . . . . . . . 2·—

Ը. Ատլաս կամ Աշխարհացոյց տախտակք ի պէտս ազգային դպրոցաց, յօրինեալ եւ ծրագրեալ ի Հ. Աստուածատուր Վ. Աւագեան, 1857։
Բ. Տպագրութիւն, 1860 . . . . . . . . . . . . . . . . . 4·—

Թ. Պատմութիւն քաղաքականութեան եւրոպական Տէրութեանց ընդհանրապէս, Հատոր Գ. 1857 . . . . . . . . . . . . . . . 1·25

Ժ. Նոյն, Հատոր Դ. 1860 . . . . . . . . . . . . . . . . . 1·25

ԺԱ. Գործնական վաճառագիտութիւն ի պէտս վաճառականաց, առեւտուորաց, դպրոցաց եւ տանուտեարց, ի Հ. Եւգինէոս Վ. Համբարեան, 1867 (աշխրհբր.) . . . . . . . . . . . . . . . . . 1·50

ԺԲ. Լուդովիկոս Թիլոյի սկզբնական դասագիրք պարզ ուսողութեան. Թարգմանեց Հ. Պետրոս Վ. Պիւլպիւլճեան, 1868 (աշխրհբր.). . . . 1· —

ԺԳ. Ընդհանուր Պատմութիւն Հայոց համառօտ. ազգային դպրոցաց համար ի Հ. Գրիգոր Վ. Գովրիկեան, 1879 (աշխրհբր.) . . . . . . . . 2· —

ԺԴ. Առակք Լաֆոնդենի, Թարգմանեաց Ա. Մ. Գարագաշեան, 1894 (գրաբար) . . . . . . . . . . . . . . . . . . . . 4·50

---

## ԸՆԴ ՄԱՄԼՈՎ

ԺԵ. Սրբազան Պատարագամատոյց Հայոց, ի Հ. Յովսէփ Վ. Գաթրճեան (աշխրբր.)

